Khosrov, Andzewatsi, 10th cent

Meknutiwn zhamakargutean

# ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

# ԺԱՄԱԿԱՐԳՈՒԹԵԱՆ

Արարեալ Երանելւոյն Խոսրովու Անձևացեաց Եպիսկոպոսի, և կարգաւորեալ Մաղաքեայ դիտնական վարդապետի:

253 ք.

Հրամանաւ ամենապատիւ և վեհափառ Պատրիարքի Թագաւորեալ մայրաքաղաքիս կոստանդնուպօլսոյ՝ Տ̅ե̅ն Յակով-բոսի բարեջան և մեծաւեան Արքեպիսկոպոսի.

Ի սոյն արձանացեալ

ՅԱՄԻ ՏԵԱՌՆ

1840 ═ ՌՄՁԹ

ՕՐԹԱԳԻՒՂ

Ի Տպարանի երից որդւոց Պօղոսի արապեան ատուչեանցւոյ.

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Բաղձանք մարդոյս են անհուն, և կարողութիւնքն՝ համառօտ. յայն սակս չէ հնար ՚ի ձեռս բերել զայն ամենայն, յոր միանգամ բաղձան բաղձանօք մարդիկ ըստ իւրաքանչիւր բաղձանաց, եթէ ոչ՝ նախախնամութիւնն աստուծոյ գայցէ օժանդակ նմին:

Ուստի ՚ի բազում գրոց որոց և հոգևշահ մատենագրութեանց նախնեաց՝ ցանկալի էր որդւոց մեզ Մատեանս այս, այսինքն՝ Մեկնութիւն ժամակարգութեան՝ արարեալ երանելւոյն Խոսրովու Անձևացեաց Եպիսկոպոսի, և կարգադրեալն Մովսէսի գիտնական վարդապետի. որ ըստ բաղձանաց մերոց գտաւ արդէն ուղղեալ և օրինակեալ ՚ի հնագոյն ձեռագիր գաղափարէ՝ ՚ի ձեռն հոգևլոյս պատուելի Գէորգ դպրի Պալատացւոյն, որ իւրով իսկ գրչաւն ՚ի սկզբան անդ մատենին նշանակէր այսպէս:

՚Ի յոյժ հնագոյն ձեռագիր օրինակէ իմն՝ բաղդատմամբ ուղղագրեցաւ, և
,, բազում տեղիքն ՚ի մթութենէ երկբայութեան ՚ի լոյս ածեալ պայծառացան,
,, որպէս լոկ ընթերցանողդ եթէ իցես խելամուտ և մտավարժ կարես իմանալ,
,, ուր որոշեցան կարմրով. և այս վճռութիւնք մանաւանդ ՚ի բանս Խոսրովու ե-
,, ղեն. քանզի գոն և այլ վարդապետաց բանք ՚ի սմա, և առաւել Մովսէսի ու-
,, րումն որպէս ցուցանէ յառաջաբանութիւն գրոցս. և այս ՚ի վայելս սիրողաց
,, հնաբանութեան ազգիս՝ նախնի վարդապետացն մերոց: ՚Ի Կոստանդնուպօլիս
,, ՚ի Պալատն. ՚ի ձեռն Գէորգ չնչին դպրի. յամի փրկութեան մերոյ 1775:

Ապաքէն զայս ընտիր օրինակ առեալ մեր և նախանձ բարւոյ յանձին բերեալ՝ կամեցաք եռանդն սիրով ՚ի լոյս ընծայել ըստ երկուց շարժառիթ պատճառաց:

Նախ՝ զի կարի հարկաւոր և առաւել պիտանի են ծանօթութիւն և տեղեկութիւն ստուգութեան մեկնութեանց եկեղեցական բանից, որք հանապազ ընթեռնանին ՚ի լուր ժողովրդոց՝ առ ՚ի զարթուցանել զնիրհեալս ՚ի գիշերային քնոյ թմրութենէ:

Երկրորդ՝ անկորուստ և անմոռաց պահել երախտագէտ մտօք զաշխատանս թէ հեղինակին և թէ արտագրիչ պատուելւոյն, յանձն առաք գիտնական Թովմայ վարդապետի մարաշցւոյ՝ զգուշաւոր և հաւատարիմ խորհրդածութեամբ ՚ի բաց յապաւել ՚ի նմանէ զ՚ի վերջոյ յաւելեալ զանպատեհ բանս, և զհետ երթեալ ուղղագիր օրինակին՝ զիւրաքանչիւր պարբերութիւնս բարւոք անջատել և ըստ պահանջման բանին կէտադրել ՚ի դիւրութիւն վերծանողաց:

Վասն որոյ այժմ գեղեցիկ և վայելուչ նորոգ տպագրութեամբ նուիրեմ ձրիաբար զայս հոգևշահ Մատեան՝ բարեմիտ ընթերցասիրաց հայրենի ազգիս, ՚ի յիշատակ հոգւոց համայն ննջեցելոց իմոց:

Ծախիւք
մահտեսի Սիմոնեան

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ.

Պատուէրն երջանիկ վարդապետին՝ սուրբ գրքոյս հաւաքողի.

Զչափ անձին ճանաչել՝ ուսուցանեն մեզ իմաստնոյն օրէնք և պատուիրանք, և մի՛ անցանելով սահմանել քան զարժանն. զի քան զանցանեաց պատիժս են յոլովակի ցուցանէ դատապարտիւ խոնարհութեան. Մանաւանդ թէ եղերի և յանձնեցունց, անխորհրդաբար համարձակիլն և ձեռնամուխ լինել յիր ինչ, որքան զկար զօրութեան ումեք բարձրագոյն իցէ. Նա և ոչ այս միայն, այլ և անվայելուչ և տղայական լիցի ամ առաջնորդութիւնքն, և նախատելի ամենեցուն վասն անյարմար և կատակելի բանիցն. Այլ և ինքն առ ինքն հարկեալ դատի ՚ի խղճէ մտացն, երկբայաբար միշտ գոլով ՚ի գործառնութիւն գործոյն, անստուգիւ դատաստանաւ սխալանելով զմտացն իւրոց յանդիմանութիւն. զի ահ մեծ է անկանել ՚ի ձեռս այ կենդանւոյ, ըստ գրեցելումն.

Զի նախ սուրբ լինել պարտ է, և ապա հանդիսանալ և ճառել զսրբութիւն մեծին այ. զի մի՛ փոխանակ վարձուց հատուցման՝ պատիժ կրեսցէ անարգ յանդգնութեան. Նա և կրթութեան յոյժ պիտոյ են գրոց սրբոց և ներքուստ վերծանութեան. այլ և արտաքնոց եւս տեղեկութեան զօրացուցութեանցն, և բայիցն և բառիցն. և ճանաչօղ միտս ունել, զի կարող լիցի ընտրութիւն առնել խորթաւետակ բանիցն. և մարմնոյ եւս պնդութեան և զգայարանացն առողջութեան յոյժ պիտոյ են. Նա և անդորրութեան ժամանակի և՝ յապահով տեղւոջ դեգերմանն, առ ընթեր միշտ ունելով զյոլովութիւն սորուն, յորս պարապեալ հանապազ հմտացի ճշմարիտ մակացու լինելով.

Այս յայսմ ամենայնի Թաքեաք իմ գոլով, և համառօ-կագոյն յաւէտ լցեալ, զոր Թուի Թէ ոչ այլ ոք այսպիսմամբ իմոք. բայց քանզի խնդրեցեր սիրելի՝ զկերպուածութիւն ամփիթեց զորս Թարգեալ է մեզ երանելւոյն Կրաւսոմի, ոչ բաւական համարելով զարարեալն, կարգեցեր զմեզ ընդ հարկաւ՝ գրաւելով 'ի ծառայութիւն։ Զի է ամենեցուն խնդրողաց հրամայէ ուրին տալ ըստ կարողութեան. և զոչ ծառայանդեալն կորստեան մատնէ իմաստնին։ Զի է ոչ կարելն՝ սկարութի սափ. իսկ ոչ կամիլն՝ անհաւատութիւն. զի հաստատկաց է չափ, և իւրաքանչիւր ոք վարձս առցէ։ Այսու որոյ աղաւինելով յայն որ առանց նախատելոյ շնորհէ հաւատով խնդրողաց, և աղօթիւք ձերովք և մեծաւ յուսով ձեռնարկեացուք 'ի գործս։

Բայց սկսցուք 'ի սկզբան գրոցս զոր սկզբնաւորեալ է մեծին Կրաւսոմի, հաւաքելով յանձնիւր սերկեր ըստ պատշաճի պիտոյից, և զիւրաքանչիւր սրբոցն խօսեցեալ բանս. Այլ Թէ առցէ ոք ըստ հաճոյից իւրոց յարմարել զամփոփկութիւնս, առատ շնորհ. և Թէ ոչ՝ և այնպէս շնորհ, զի գիտէ ըստ արժանւոյն բաշխել։ Այլ մերում տկարութեան ներեսցուք, զի ոչ գտաք ըստ արժանւոյն ոտոգել զքննական երկիր մտաց մերոց ածայնն գրոց վարդապետութեամբ, որով 'ի դէպ ժամու պտղաբերիցէք զարժանին։

Արդ ահա ծառայանդեալ հրամանաց քոց բարեացր և պատուելի եղբայր Թէոդորէ, Թէպէտ և յոյժ լրբութիւն գոլ մեզ և առաւել դատապարտութիւն, սկզբան արասցուք տատուծով 'ի գործս։ Այլ դու աղօթեա 'ի վերայ մեր, զի արժանի լիցուք առանց սայթաքելոյ յաւարտ հասանել. որով փառաւորի ամենաքաջն փառաց Աստ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Երանելւոյն Խոսրովու Անձեւացեաց Եպիսկոպոսի՝ սուրբ գրքոյս յօրինողի։

Ընդ ա͞յ և վասն ա͞յ խօսելով, ա͞մ արթնութեամբ և զգուշութեամբ պարտիմք միտ դնել բանիցն ասացելոց. զի մի ընդունայն կամ թէ ՚ի դատապարտութիւն մեզ ասացեալքն լինիցին։ Զի թէ ընդ մեր նման մարդոյ ոչ դանդաղեալ մտօք խօսիցիմք, այլ իմացուածովք զբանն բերիցեմք և յօժարաւոր ասիւք պատշաճեմք. և մանաւանդ յորժամ ընդ աւագաց ունիցիմք խօսել, երկիւղալից մտօք հոգ տանիմք։

Ապա որչափ անզգօս խորհրդովք ընդ ա͞յ և ընդ ա͞յինս պարտիմք խօսել, և ա͞մ երկիւղիւ ընդ նմա և վասն նորա բնաւ իմացուածովք աւարտել զբանսն. զի յաղագս այսորիկ բանաւորք եմք և ոչ յաղագս այլ իրիք. ապա թէ ոչ, մարթէաք զմարմնաւոր պէտսն անբանութեամբ հարկանել, որպէս անասնոցն ամենեցուն Չոկք։

Այլ եղաք բանաւորք և մտաւորք, և ազատաւորք յանբանիցն. զի զնոցայն և զմերն բովանդակ՝ մեք ասացուք ա͞յ բան՝ մտաց լուսաւորութեամբ. և զուգահրեշտակք յերկրի, նման երկնայնոցն լիցուք. և նոյնպէս սիրով և ահիւ առ նորայն լիցուք պատիւ և երկրպագութի և փառաւորութի։ Նաև առաւել ևս՝ որքան զպատուականսն անարգն, և քան զհաճոյսն յանցաւորքն, և զչափաւոր խնամեալսն յոքնաբար երախտաւորքն. զի ոչ առէ զհրեշտակաց բուռն հարկանէ՝ այլ զզաւակէն աբրահամու, որով և զամենայն մարդկանէ։

Իսկ զի պարզաբար եղիցին զենումն, և ա͞մ խրախճանութիւքն ոչ յաղագս հրեշտակաց անդրանիկ և հաճոյ և պատուական որդւոց. այլ վասն մեր փոքունցս և անհնազանդելոցս և տարագնացելոցս և զ͞ա͞մ հայրենիսն վատնողացս։ Իսկ եթէ շատ օգտողն և շատ թողութի տուողն, շատ խնդրի և շատ սէր պարտի որ͞պ ասաց տ͞րն երբեմն առ աշակերտսն, երբեմն առ կինն պոռնիկ. ապա յայտ է թէ կարի առաւել պարտին ազգք մարդկան քան զհրեշտակս երախտահատոյց լինել ա͞յ յոգն սիրոյն և յանձախ ներողութեն և անպատում առատ պարգևացն։

Արդ այս՝ այսպէս է, անշուշտ ջանասցո՛ւք ըստ կարի մե-րում զպաշտօնս մեր մատուցանել ք՟ո՝ 'ի մ՟ջ սրտէ և 'ի մտաց բարեաց և յանկեղծաւոր հաւատոց։ Պահանջէ և զայն 'ի պօ-ղոսէ աղաչեմք գթութ՟ն ք՟ո պաղատեալ, զի պատարագ կեն-դանի մ՟ք և հաճոյ ք՟ո զխօսուն պաշտօնս պատրաստեսցո՛ւք։ 'Ի սոյն և սաղմոսանուագն յորդորէ. երբեմն որպ՟ս յինքենէ, և երբեմն որպ՟ս 'ի դիմաց ք՟ո։ Յինքենէ՝ յասելն, մատո՛ ք՟ո պատարագ օրհնութե՟ն, և կատարեա՛ բարձրելոյն զուխտս քո։ Արդ դարձեալ՝ հատեր զկապանս իմ, քե՛զ մատուցից պատա-րագ օրհնութե՟ն։ Արդ դարձեալ յերեսաց ք՟ո, յորժամ ասէ՝ պատարագ օրհնութե՟ն փառաւոր արասցէ զիս։

Արդ զի մի՛ դարձեալ բանբասեսցիմք յ՟ոյ որպէս հրէայքն, լսել զայն թէ՝ ժողովուրդս այս շրթամբք պատուեն զիս. և սիրտք իւրեանց հեռացեալ 'ի բացեայ են յինէն, զուր պաշ-տեն զիս։ Արդ կամ անպտուղ միտք լինիցիմք՝ ո՟չ ասէ առա-քեալ. և կամ ըստ տէրունեան բանին, շատախօսք լեալ ա-ռանց մտացն առ ա՟ծ ամբառնալոյ, և առանց զբանս աղօթից ստուգապէս և յստակութ՟բ նմա մատուցանելոյ, համարեսցիմք ըստ հեթանոսացն 'ի բազում խօսից լսելի լինել։ Այլ զի սաղմոս ասասցո՛ւք և 'ի միտ առցո՛ւք. և զսակաւ բանսն միտք կամեսցուք ո՟չ ասացն պօղոս, քան զբանս բազումս լեզուով։ Արդ զի մի՛ լինիցիմք որպ՟ս ընդ օդս խօսեցեալք. և կամ ո՛չ գի-տելով զզօրութիւն ձայնին, լինիցիմք ասօղքս՝ խուժ, և լսօղքն՝ դուժ։

Յաղագս այսորիկ կամեցայ ես բացայայտել որ 'ի պաշտա-մանն եկեղեցւոյ քարոզութիւնք և աղօթք քահանայականք։ Զոր գիտակքն՝ մի՛ արհամարհեսցեն. զի թէ և ինքեանք ան-կարօտ են մերոց իմաստից, այլ 'ի պարզամտացն հայեցեալ օգտուս՝ ընկալցին զմեր ջանս վաստակոց, և զպակասութի՟ն՝ եղբայրաբար խնամով ուղղել խոկասցին։ Արդ հասարակաց հոգացօղն ք՟ս մեզ և ն՟ց օգնական, և տացէ բան աւետարա-նել զօրութ՟բ բազմաւ։ Արդ նմա փառք ընդ հօր և ընդ ս՟բ հոգւոյն. այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Հոգևոր երգով 'ի փառաբանութ̅ի և 'ի պատիւ ամենասուրբ անուան տեառն մերոյ և փրկչին յի̅ ք̅ի։ Հոգևոր երգով, ասելով երգք, յայտ առնէ թէ հոգին սուրբ 'ի թիկունս և 'ի գործակցութիւն և յօգնականութ̅ի տկարութեանս մերում գայ ըստ պօղոսի․ և երգակից լինի ուղղեցելոցն մօք սրբութեանք, և յորդորելոցն 'ի փառաբանութիւն աստուծոյ։

Փառաբանութիւն կոչի, զի. բանիւ փառաւորեմք զանկարօտ բնութիւնն ա̅յ։ Եւ տէրն ասելով և փրկիչն․ զտէրն, վասն ստեղծանելոյն․ և զի տիրէ մեզ։ Իսկ փրկիչն, զի զանձն փրկանս տուեալ փրկեաց զմեզ արեամբն իւրով 'ի մեղաց և 'ի մահուանէ․ և եբարձ զանէծսն որ 'ի վերայ մեր։ Սակս այսր զնա յաճախ անուանեմք յերկոցունց․ զի յարարչութենէն և 'ի խնամակալութենէն, և որով ընտանութիւն ընդ մեզ եցոյց՝ գոհացուք զնմանէ։

Ահիւ և դողութ̅ե կացցուք յաղօթս առաջի ն̅ր։ Զհրեշտակացն հրամայէ ունել զահ և զերկիւղ և զդողումն․ վասն այնր յաւել թէ՝ առաջի նորա։ Զի որպէս հրեշտակք 'ի տեսլենէ փառաց ն̅ր միշտ յահեալք են․ նոյնպէս և մեք միշտ յած զմիտս ամբարձեալք և առաջի կացեալք ահագին փառացն՝ դողութ̅ե զնա պաշտեսցուք։

Եւ գոհացարուք զնմանէ 'ի գիշերային ժամուս յայսմիկ վասն իրաւանց և արդարութ̅ե նորա։ Որպէս ասէ դաւիթ, *'Ի մէջ գիշերի յառնէի գոհանալ զքէն վասն իրաւանց և արդարութ̅ե քո։ Զնոյն և մեզ հրամայէ առնել․ և ցուցանէ զիրաւունս և զարդարութիւն նորա զոր արար ընդ մեզ․ և ոչ ըստ արժանեաց, այլ ողորմելով․ վասն այնորիկ ասէ,

Որ ընտրեաց զմեզ ողորմութեամբն իւրով։ Զի ողորմեցաւ ասէ՝ յայն սակս ընտրեաց։ Եբր զի խոտանք էաք և ընկեցեալք յերեսաց ա̅յ, ողորմութ̅ի ն̅ր ընտիրս արար ըստ առաքելական բանին։ *Ընտրեաց զմեզ ասէ նովաւ, այսինքն ք̅իւ, յառաջ քան զլինելն աշխարհի․ լինել մեզ ս̅ըս և անարատս առաջի ն̅ր։

Եւ շնորհեաց մեզ բերել զնմանութ̅ի երկնային հրեշտակացն։ Զի նոքա յերկինս փառաբանիչք են, ոչ յաւել թէ՝ երկնային հրեշտակացն, եւ լինել մեզ յերկրի հրեշտակս փառաբանիչս ա̅յ․ վասն այնր յարէ 'ի նոյն, փառաբանիչս ա̅ն ա̅յ ամենեցուն՝ և մեզ լինել։ Եւ ա̅ծ և ա̅ր ամենեցուն ասելով, զարթուցանէ զմիտս մեր դիտել թէ զերկնից և զերկրի և զա̅մ արարածոց ստեղծիչն կարդեալ եմք փառաւորել։ Եւ դնէ առ նմին,

Իսկ մեք այսուհետև սրբելով զանձինս մեր։ Յայտնի՝ թէ որովհետև հրեշտակս արար զմեզ յերկրի, կոչեցուք յանձինս ըզ հրեշտակացն սրբութիւն։ Իսկ զոր ինչ ըստ մարդկային բնութեան սխալեալ իցեմք, խոստովանութեամբ և ապաշխարութեամբ սրբելով զայն, մաքուրք լիցուք. քանզի ասէ սրբել ՚ի խղճէ և ՚ի չար գործոց։ Իսկ քանզի մարգարէն հրամայէ, *՚Ի գիշերի համբառնալ զձեռս մեր ՚ի սրբութիւն։ Ըստ այնմ հրամայէ և քարոզս, նախ սրբել զխիղճ և զչար գործս, և ապա համբառնալ զձեռս ՚ի սրբութիւն։

Համբարձցուք զձեռս մեր ՚ի սրբութիւն առանց բարկութեան և երկմտութեան։ Յաւելլով ՚ի մարգարէականն և առաքելականն ևս խրատ, թէ առանց բարկութեան և երկմտութեան։ Զի պէտք են աղօթականին աներկմիտ հաւատով և անբարկանալի մտօք զաղօթսն՝ Այ նուիրել։ Ասան որոյ և տէրն ասէ, *Թող զպատարագն քո՝ զաղօթսն, և ե՛րթ նախ հաշտ արա զեղբայրն քո, և ապա՛ եկ։ Նոյն սակս և քարոզս զբարկութիւն թողուլ ասէ, և ապա զքաւութիւն հայցել. ասելով, խնդրեսցուք հաւատով զթողութիւն մեղաց։ Զի թողլով եղբարց, խնդրեսցուք և մեզ թողութիւն յԱյ, և հաւատասցուք եթէ առնումք։

Խոստովանելով զգաղտնիս սրտից մերոց ծածկագիտին Այ։ Զի ասաց յառաջ՝ սրբել ՚ի խղճէ զանձինս, աստ զօրինակն ցուցանէ թէ խոստովան լինելով և քաւութիւն խնդրելով սրբիմք։ Զի թէ և չխոստովանիմք, ՚ի ծածկագիտէն չկարեմք թաքուցանել. այլ խոստովանիլն և մեղապարտն զանձն առնել, ՚ի խոնարհութիւն ածէ զմեզ և յամօթ և ՚ի զղջումն և ՚ի պաղատանս. որով և զողորմելն և զներելն յԱյ գտանեմք և զարդարանալն։ Քանզի ասէ իսկ մարգարէն. *Ասա դու նախ զանօրէնութիւնս քո՝ զի արդարասցիս յառաջն։

Զի ընդունելով զպաղատանս մեր աղօթիւք և բարեխօսութեամբ սրբոց իւրոց։ Յայտնի է թէ՝ խոնարհիլն խոստովանութեամբ և անարժան համարել զանձինս՝ առ ՚ի սրբոցն ապաւինել բարեխօսութեանս, ընդունելի առնէ Այ զպաղատանսն։ Մանաւանդ թէ զարթնուցումք ոչ ՚ի քնոյ միայն, այլ և յամենայն զբաղմանց աշխարհիս, և յազգի ազգի ցնորից, և արթուն զոգին ունիցիմք։ Եւ նախ զոր ասիցեմքն մե-զէն, և ապա յամենալուր ականջն Այ արկանել։ Որոյ փոխարէն,

Շնորհեսցէ մեզ մարդասէրն Ած կալ առաքինութեամբ և անարատ վարուք ըստ կամաց Նորա յայսմ աշխարհիս. և արժանաւոր լինելով յաւիտենական ուրախութեանցն զոր խոստացաւ տալ սիրելեաց

դևանն լեալ, և զսիրոս ամենուն յինքն միացուցեալ, որպէս մի ոգի զամենեան ժողովեալ, զհասարակաց գոհութիւն և զաղօթս մի լեզուաւ իւր մատուցանէ. նախ զգոհութիւն՝ և ապա զաղօթսն։ Քանզի այսպէս ուսուցանէ առաքեալն. * Գոհութեամբ ասէ խնդրուածք ձեր յայտնի լիցին առ ած։ Զոր և երանելի վարդապետն յոհան առաւել զգաստն ասէ, թէ * Ըստ առաքելական խրատուն յորժամ կամիցիս խնդրել ինչ յիւր, նախ գոհացիր զորոց առեր, և ապա խնդրեսցես. զի այնպէս լսելի լինիցին։ Բայց այնմիկ և սկիզբն աղօթիցս գոհութիւն է։ Զքեն գոհանամք տէր ած մեր։

Դարձեալ զառաւել ընտանութիւն ընդ մեզ հաւատացելոց յուշ առնէ, տէր ած մեր ասելով։ Որպէս աբրահամու և իւրոցն ասէր՝ վասն մտերիմ նոցա ծառայութեան. թէ և ամենեցուն ած է, սակայն հաւատացելոց առաւել կոչի ած։

Նոյնպէս և տէր լուսաւորիչն ասէ. * Որ ասէքդ թէ ած քո՝ բարուոք առնէք. զի և որք ծանուցեալն զնա, նաև նոցա է ած. իսկ որք ոչն ծանուցեալն զնա, թէպէտ և են նորա արարածք, հեռի են ՚ի խնամոց և ՚ի բարերարութենէ նորա։

Զայս և մարգարէքն յաճախ առնեն. զի զած ժողովրդեանն կոչեն զնա տր, է՛ երբեմն զի և իւրեանց իսկ առանձին։ Ժողովրդեանն, յորժամ ասեն * Տէր ած իսրայէլի. կամ * Տէր ած մեր։ Իսկ իւրեանց առանձինն՝ * Ած ած իմ, ես առ քեզ առաւօտ առնեմ։ և թէ՝ * Դու ած իմ մի յամենար։ և թէ՝ * Ած իմ ես դու՝ խոստովան եղէց քեզ։ Զայսն և ՚ի պօղոսէ գտանեմք ասացեալ։ * Գոհանամ զայ իմոյ. և գուցէ նկուն ինչ առնիցէ զիս ած իմ առ ձեզ. և ած իմ լի՛ արասցէ զամ պէտս ձեր։ Նա այլ և բազում գտանեմք յառաքելոց և յայլոց որց ասացեալ։ Որք առ ջերմեռանդն սրտին սիրոյ խանդաղատեալն՝ և զհասարակաց տէրն կոչել որպէս առանձնակ։ Նոյնպէս և աղօթքս՝ տէր ած մեր ասելով, բորբոքէ զմեզ ՚ի սէր նորա, և զգութ նորա ՚ի մեզ յանգուցանէ։

Գոհանալն շնորհակալութիւն է։ Նա զորմէ՞ է գոհութիւն. զի հանգոյց քնով զաշխատութիւն մեր. և զի խաղաղութեամբ պահեաց։ Քանզի բազում և ազգի ազգի փորձութիւնք յերևելիս և յաներևութս կան մարդկային կենացս. մանաւանդ ՚ի քնոյ ժամանակ։

Զի բազում անգամ յարձակին դևք հեղձուցանել և սանջել և զարհուրեցուցանել, և խափանել ՚ի հրեշտակաց. ջանան և որոգայթս պատրաստել. և ած զանցուցանէ զմեզ։ Նմա և ՚ի գազանաց և ՚ի գեռնոց և ՚ի մողեսց ևս՝ և ՚ի փոքր ձկնեաց և դաւք և վտանգք մերձին և մահք, և փրկութեան գտանեմք յիւր։ Յաղագս որոյ և երանելին յոհան, * Առաւելապէս զօր երկիր մեզ և զ... , զանո

գիտելիսն տայ մեզ խնամս՝ և պահպանութիւն լինել յաղաւթս։
Եւ մեք զայս տամ զմտաւ ածելով պարտիմք գոհանալ յամէն․ որպէս ասէ առաքեալն, * Գոհացարուք յամ ժամ 'ի վերայ ամենայնի։ Որպէս և սոա աղօթիցն գոհութիւն վասն զի զհանգիստ քնոյ շնորհելով․ և զի խաղաղութեամբ շնորհեաց․ և զի զարթնուլ ետ և կանխել 'ի փառաբանութիւն անուան իւրոյ։ Դաւիթ ասէ,

Եւ ժամանեցուցեր զմեզ կանխել 'ի փառաբանութիւն և 'ի պաշտօն ամենասուրբ անուանդ քո։ Զոր մեծ երանութեան մարգարէն համարի․ * Երանելիք են ասէ որ բնակեալ են 'ի տան տեառն․ յաւիտեանս յաւիտենից օրհնեսցեն զքեզ տէր։ Այսմ երանութեան հասեալ կանխեալքն 'ի տան նորա և 'ի պաշտօն նորա և 'ի փառաբանութիւն անուան նորա, 'ի պատուել զմեծութիւն նորա, գոհանան զշնորհացն նորա՝ բերանով առաջնորդին և ոգւոցն միաբանութեամբ։ Այս ասէ,

Տուր մեզ տէր աղաչեմք զքեզ։ Զի աղաչանաց սովոր ես ողորմել, վասն այնր տուր, և ոչ զի արժանի եմք։ Եւ զինչ է խնդիրն։

Զառաջակայ ժամ գիշերիս առանց մեղաց և առանց գայթակղութեան անցուցանել։ Քանզի հանապազ խոկ՝ բայց առաւել 'ի ժամ աղօթիցն նեղաձիգ լինել սովոր է բանսարկուն, աղաչէ ապրել 'ի պատրանաց նորա, և ազատ մնալ յամ մեղաց ծառայութենէ, և ոչ զօրել մեզ գայթակղութեանց նորա․ այլ երկիւղիւն տեառն պարսպել։ Ոչ միայն 'ի մնացուած գիշերին, այլ և յամ ժամանակի կենաց․ այսպէս ասելով,

Եւ զամ ժամանակ պանդխտութեան մերոյ՝ երկիւղիւդ քո ամրացո։ Պանդխտութիւն կոչէ զսառի կեանս ըստ մարգարէին, որ զինքն և զամ հարսն պանդուխտ կոչեաց որ տէրքն էին։ Եւ ըստ տեառն որ ասաց թէ՝ * Դուք չէք յաշխարհէ․ այլ ես ընտրեցի զձեզ յաշխարհէ։
Յաղագս որոյ և առաքեալն յովհաննէս յաղագս այլոցն ասէ, * Յաշխարհէ՛ են, և աշխարհ լսէ նց․ մեք յայ եմք․ որ զած ճանաչէ, լսէ մեզ։ Եւ զի՝ որ յայ է, պանդուխտ է յաշխարհի․ յայն սակս և առաքեալն պետրոս պատուիրէ յասելն, * Եւ եթէ հայր կոչիցէք զառանց ակնառութեան դատօղն, ապա երկիւղիւ զձերոյ պանդխտութեան ժամանակն գնասջիք։ Եւ ըստ առաքելականիս խրատու՝ մաղթէ բան աղօթիցն եթէ, Զամ ժամանակս պանդխտութեան մերոյ՝ երկիւղիւդ քով ամրացո։
Քանզի չէք ինչ զգուշաւոր ամրութիւն քան զերկիւղն այ․ և ոչ դիւրըմբռնելի սատանայի քան զաներկիւղսն յայ․ զի հեռի են յայ՝ հեռացեալքն յերկիւղէ նր։ Իսկ երկիւղածք նորա մերձենան առ

նա . և այցելութիւն նո՛ր շուրջ է զնոքօք և պահէ զնո՛ա . քանզի և բանակօք հրեշտակաց պարփակէ զնո՛ա ։ Եւ ըստ ասացելոյն սողոմոնի , * Երկիւղ տե՛ռն ատէ զանիրաւութիւնս և զթշնամանս և զամբարտաւանութիւնս ։

Եւ ամն յերանելի վարդապետացն ասաց , * Ուրանօր երկիւղ է , պատուիրանաց պահպանութիւն և մարմնոյ մաքրութիւն և որ ՚ի կարգին ։ Որ և աղօթիցն բան՝ յետ զերկիւղն ՚ոյ հայցել՝ անարատ մնալ և զգուշաւոր տալ զկեալն յաշխարհի . այսպէս ասելով ,

Ի զգուշութե՛ և անարատ վարուք կրօնաւորեալք յայսմ աշխարհիս ։ Եւ որ երկնչին , զգո՛յշ և պատրաստ հանապազ կան . և զգուշանալովն ոչ ըմբռնին յարատոյ մեղաց . այլ ըստ ՚ոյ կրօնաւորին յայսմ աշխարհիս , և հասանին յապահով և ՚ի խաղաղ նաւահանգիստն . զոր անքոյթ բանն կոչէ ասելով ,

Հասանիցուք յանքոյթ և ՚ի խաղաղ նաւահանգիստ յաւիտենական կենացն ։ Ուր հողմք և ալիք մեղացն ոչ բերին . այլ աներկիւղ յա՛մ խռովութեանց կեանս յաւիտենականս ստանան , որ է անհատ և անսպառ՝ ՚ի ա՛մ բարութե՛ ։ Եւ լինի այս ,

Շնորհօք և մարդասիրութե՛ տեառն մերոյ և փրկչին յի՛ քի՛ ։ Քանզի քս տայ սիրելոյն զմարդիկ և գալոյն առ մեզ և ՚ի վե՛ մեր մեռանելոյն , հանդիպիմք այսմ ամենայնի . զոր և շնորհք քի՛ սովոր են գիրք կոչել ։ Եւ տէր և փրկիչ մեր ՚ի խոստովանելն զնա , ՚ի փառաբանութիւն փակէ զբանն յասելն ,

Որում վայելէ փառք իշխանութի՛ և պատիւ ։ Ա՛յաւելել նմա՝ ցուցանէ թէ նմա միայն անկաւորէ փառաւոր լինել և իշխել ՚ի վե՛ ա՛մի , և պատուիլ յամենեցունց ։

Այժմ , զառ ձեռն ժամանակն տայ . և Միշտ , զհանապազորդեանն ։ և Յաւիտեանս յաւիտենից , որ ՚ի հանդերձեալսն է անըսպառութեանն ։ Եւ ժողովուրդն միաբան տան զամէնն . և սակաբանիւս հաւատարիմ՝ բովանդակ ասացելոցս , գոհութե՛ և մաղթանաց ։ Եւ է ամէնն՝ եբրայեցի բարբառով՝ այո՛ , և արդարև՛ ։

Խաղաղութիւն ամենեցուն ։ Զ՛ի այսր խաղաղութե՛ երկայն բանիւք բազում գիրս խօսելով երանելի վարդապետն յովհան և այլք ՚ի վարդապետաց ՚ոցս , տանեն զառ զողջոյն զոր հրամայեաց քս՛ առաքելոցն՝ տալ տանցն յորս մտանիցեն ։ Եւ զի հասարակաց տուն է եկեղեցին , և ՚ի նմա հանապազ տայ գլխաւոր եկեղեցւոյն զողջոյնս զայս ։ Եւ աս է խաղաղութի՛ զոր տէրն հաստատեաց առաքելոցն .

որ լի է ամ[ենայն] բարեաց պարգևօք ։ Այլ զի միջնորդ կայ առաջնորդն՝ նոյ և մարդկան, հանէ զաղօթս ժողովրդեանն առ Ած՝ և իջուցանէ զնորա խաղաղութիւնն յերկիր առ մարդիկ ։

Վասն այնորիկ յետ օրհնութեանցն, և յետ աղօթիցն, կամ 'ի կամիլն կարդալ աւետարան, տայ զխաղաղութիւն . զի յաւետարանելն՝ առաքելաբար տայ զողջոյնն, և ապա աւետարանէ ։ Իսկ յօրհնելն կամ յաղօթելն՝ յերկինս զձեռն ամբառնալով զօրհնութիւն և զաղօթս, առ մեզ զամենապարգև խաղաղութիւն նորա բերէ ։

Զի ոչ հասարակաց ժողովրդեանն բերան է, նոյնպէս և նոյ . որպէս ասաց մարգարէն, * Թէ հանցես զպատուականն յանարգէն, բերան իմ եղիցիս ։ Այլ զի առաջնորդաց գործ է զպատուական մարդն որ է պատկեր նոյ՝ յանարգութէ մեղաց հանել մոլորութէ և ապաշխարութէ, վարդապետելով 'ի հաճոյսն նոյ . վասն այնորիկ բերան է նոյ ։ Այլ զոր օրինակ որք հրեշտակեն զպատգամաւորութի երկոցունց կողմանցն, տանին և բերեն զերկոցունց բանսն ։

Նոյնպէս առնեն և առաջնորդք եկեղեցւոյ, 'ի մէջ կալով նոյ և ժողովրդեանն, բանս տանին և բերեն . և կոչին հրեշտակք նոյ ամենակալի 'ի մարգարէէն ։ Որդ մատուցեալ նոյ զաղօթիցն հայցուածս, փոխադարձէ ժողովրդեանն՝ զխաղաղութեն ընդունելութի աւետարանելով . որպէս թէ ասիցէ, * Այն որոյ առաքեցիքն՝ լուաւ, և զխաղաղութի իւր առաքեաց բերել ձեզ զամ[ենայն] պարգևս . ոչ միում ումեք կամ երկուց, այլ բովանդակ ամ[ենայն] ժողովրդեանդ ։ Վասն այնր 'ի խաղաղութիւն յաւելու՝ զամենեցունն՝ ասելով, խաղաղութի ամենեցուն ։

Այլ զի աւետեաց է բանս, ըստ աւետեաց բանի առնեմք ըզդարձուած բանին ։ Զի երբ ասէ աւետաւորն թէ աւետիս ձեզ . ասեն նմա, և քեզ բարեացն աւետիս . այսինքն թէ՝ բարեացն աւետիք և քեզ պարգևեսցին ։ Նոյնպէս առնեն և ժողովուրդն . լսելով զխաղաղութե բան, ձայնեն ասելով, Եւ ընդ հոգւոյդ քում ։ Նմանի ինչ թէ, և հոգւոյդ քում եղիցի զոր և մեզ աւետարանեցեր ։

Այլ առ այս որ ոչ սրտի մտօք առնուցուն և տայցեն զխաղաղութիւն, դրեթէ թափուր միայն յամ պարգևաց խաղաղութեանն մնասցեն ։ Նաև որպէս ասացի՝ յոլով են առ այսպիսիս նոցին բանք ։ և մանաւանդ երանելոյն յովհաննու . անդ զուսումնականն առաքեսցուք, և մեք յառաջ ըստ կարգին զբանն վարեսցուք ։

Հրամայէ ապա սարկաւագն, Աստուծոյ երկիր պագեսցուք ։ Քանզի և այսպէս է օրէն . պարգևատուին 'ի թագաւորաց՝ ուսուցանեն հրահանգօղքն երկրպագութե շնորհ ունել ։ Զայն և սարկաւագն առնէ . նոյ ասէ՝ որ լուաւ զպատգամաւորին աղօթից

ղեան ․ և ես ձեզ զխաղաղութիւն իւր ․ որ ունի զամ ձեր զհայցուածոց լրումն ․ երկիր նմա պագէք ։ Եւ երկիրպագելով ամենցուն , անդէն առ պարգևատուն ասեն միաբան , Առաջի քո եմք ։

Որպ ինձ թուի՝ ասեն եթէ՝ դու տէր մեր առ ամենեսեան մերձենաս որ կարդան առ քեզ ․ և ուր երկրպագեն քեզ՝ առաջի քո է ․ և մեք այժմ զոր երկրպագեցաք առաջի քո է և տեսանի 'ի քէն ։ Եւ քանզի առ մարդիկ յոլով անգամ զայս առնեմք ․ և թէ տեսանի 'ի նմանէ երկրպագելն , սակայն մեք յաւելումք յաւելն , երկրպագի տեսանող իմում ։

Ապա անդրէն դառնայ առաջնորդն առ ած , կրկին տանել զժողովրդեանն զպաղատանս ։ Եւ զորօրինակ՝ պարգևաբերքն դառնալով 'ի պարգևատուսն , ասեն նախ եթէ՝ երկիրպագին և գոհացան ․ և ապա զայլ ևս խնդիրսն ասեն ։ Այնպէս և առաջնորդն՝ նոյնպիսի օրինակաւ առնէ սկիզբն բանիցս ասելով ,

Նայեաց տէր բարերար ողորմութեամբ քո յերկրպագուս և 'ի փառաբանիչս անուանդ քում սրբոյ ․ Եւ վս զի ողորմութեամբ սովոր ես խոնարհել առ մարդիկ , և 'ի գորովոյ և 'ի գթոյ հարկիս նայել յամենեսեան թէ և ոչ ունիցին արժանիս ․ Նայեաց , և 'ի քո ժողովուրդս նայեաց ողորմելով , տեսանել զոցա զերկրպագութիւնս , և ունկն դնել սոցա փառաբանութեանս ․ Եւ ապա ասացեալ վս երկրպագելոյ ժողովրդեանն , եթէ միշտ երկրպագուք և փառաբանիչք սբ անուանդ քո են , յարէ 'ի նոյն և զպաղատանսն ․

Ազատեա զանձինս մեր յամ սատանայական խռովութեանց և յաշխարհական զբօսանաց ։ Զհրեշտակ խաղաղութեան քո տէր առաքեա առ մեզ որ եկեալ պահեսցէ զմեզ անխռովս 'ի տուէ և 'ի գիշերի , յարթնութեան և 'ի հանգստեան մերում ։

Զանազան խորհուրդք ահագինք և խռովարարք զոգիս մեր վտանգեն ․ և աշխարհիս հոգք և զբաղմունք զմիտս մեր խաւարեցուցանեն ․ աղաչեմ զի խաղաղասցին ոգիք մեր յայնպիսեաց դաւան վտանգից ․ Եւ այս լինի թէ հրեշտակք սբ 'ի բաց հալածեն զդիւաց մարտս ․ և դիւրութիւն արասցեն մեզ 'ի զարհուրականաց դիւականաց և 'ի ցնորից աշխարհականաց ․ Որ 'ի քուն և 'ի յարթնութեան պղտորումն և երկիւղս զարհուրեցուցանօղս անձանց մերոց առնեն , անձառելի ցնորիւք 'ի տուէ և 'ի գիշերի ․

Վս որոյ արտասուելի պաղատանօք հայցելի է մեզ զհրեշտակացն պահպանութիւն ․ Զի որպ որոց 'ի թագաւորաց պահապանս կացին՝ աներկիւղս պահեն 'ի հակառակամարտից ․ նոյնպէս և վասն

որոց ոչ պատրաստեալ է հրեշտակաց իւրոց՝ պահել զնոսա, անհոգս մնան յամ չարին արկածից. և զերծեալք ՚ի ջանահարութե որսո-ղին, անխափան և զօրաւոր գնան զառաքինութեան ճանապարհ.

Վասն որոյ և յարէ ՚ի նոյն.

Որպէս զի՝ պարկեշտութբ և արժանաւորապէս քեզ տեառն ծառայելով ՚ի կեանս յայսմիկ. Քանզի արգելեն վատթար խոր-հուրդք զպարկեշտ վարս այսպիսի օրինակաւ. Կամիմք ՚ի կերակրոց և յըմպելեաց պարկեշտանալ, և խորհուրդք զորկրամոլութի ՚ի վերայ յարուցանեն. Կամիմք ՚ի քնոյ զգաստանալ, և խորհուրդքն՝ քնոյ զմեզ տալ դրդեն. Կամիմք և ազատանալ յընչից ծառայութենէ, և խորհուրդք զագահութիւն մեզ օրինադրեն. Կամիմք համբերել անարգանաց և թշնամանաց և զրկութեց և ցաւոց և աղքատութեց ՚ի վերայ հասելոց, և խորհուրդքն զամբարտաւանութի և զանհնա-զանդութի և զանհամբեր բարս մեզ ուսուցանեն. Նոյնպէս և այ-լովք առաքինութեբք կամիմք զգաստանալ, և խորհուրդքն զմեզ մեղ-կեն և լքուցանեն և անկարելիս մեզ զայսոսիկ առնեն.

Յաղագս այսորիկ հոգւոյն աղաչէ խաղաղանալ, և ՚ի հրեշտակէ ոչ ընկրկել խորհրդոցն ընդ դիմակաց. որպ զի նոյ խափանեալ՝ զօ-րասցուք մեք պարկեշտանալ, և արժանաւորապէս ծառայել այ. Այս է արժանաւորապէս ծառայելն այ, որչափ կարն մեր զօրէ. բաւ նոյ մեծութեն զծառայութի մեր բազում երկիւղիւ հաւա-ցանել. որպէս այ պարտ է ծառայել մարդոյս հողոյս և ստեղծուա-ծոյս անարգիս և փոքու՝ մեծին և փառաւորելոյն և անբաւի ա-րարչին և խնամողին և փրկողին. Ոչ եթէ որչափ նա արժանաւոր է կարեմք ծառայել նմա, այլ որչափ մերս բաւականանայ ակարութի, և մեք ոչ հեղգայցեմք, արժանաւոր ծառայութի մեզ համարի զայն.

Այս է զոր ասէն, պարկեշտութբ և արժանաւորապէս քեզ տեառնդ ծառայելով ՚ի կեանս յայսմիկ. Ոչ էր յաւել ՚ի կեանս յայսմիկ. քանզի այսու կենօքս մտերմութի առ արարիչն ցուցեալ, անսպառին և անապականին կենաց առ հասարակ տեառն ուրա-խութեանցն միշտ վայելելով. Որպէս յարէ ՚ի նոյն.

Ժամանեսցուք յաւիտենական երկնից արքայութե քո, զոր պատրաստեցեր ՚ի սկզբանէ աշխարհի որց քոց. Վասն որոյ և մեք զայս խմացուք, եթէ յերկրի և յանցաւոր ՚ի կեանս սակաւ աշխա-տելով, յերկինս յաւիտեանս յաւիտենից թագաւորեսցուք ընդ քի և ընդ սուրբս նորա. զի այսպէս է արքայութիւն թագաւորութի որում արժանանան սուրբքն.

Այլ ընդ նորին առէ գոհանալով փառաւորեսցուք զամենայնս զերրորդութիւնդ։ Որով յայտ է եթէ կցորդին մեզ սուրբքն 'ի գոհութն և 'ի փառաբանութն նր՝ և յայս ևս կեանս. քանզի 'ի մի շնորհս կոչեաց զմեզ և զնոսա յանանց Թագաւորութն. որոց պատրաստութիւն 'ի սկզբանէ աշխարհի յոյ կարգեցաւ։ Նոքա գնացին զճանապարհ որ յանգերանութիւն տանի. որ թէ և մեք նոյն ճանապարհաւն ուղևորդք լինիմք, աստէն իսկ զառհաւատչեայ յուսոյն ընկալցուք. աստէն և սրբոցն հաղորդ լիցուք յուրախալից փառաբանութիւնն նր, 'ի կեանս մերձակայս, և միշտ յամ աւուրս մեր, և յաւիտեանս յաւիտենից յայն յանկէտ և յանթիւ աւուրն յետնում որ ոչ ունի վախճան։ Այլ ժողովուրդն ասեն միաբան՝ ամէն. և այսու տակաւ բանիւս ամենայն գոհութեանցն և տօթիցն հաւաստարորդ լինին։

Սան որոյ և վկայութն սովոր եմք կոչել. զի զամէնն ասելով, վկայ լինիմք ամ ասացելոցն յառաջնորդէն։ Այլ յաւելու 'ի նոյն թէ, օրհնեամ տր։ Զի որպէս ասէ առաքեալն. * Հաւատամք եթէ առնումք զհայցուածն զոր հայցեմք առ 'ի նմանէ։ Սան այնորիկ և ըստ այնմ օրինակի զոր ասացին, երբև պատգամաւորաւ զմեր խնդիրն յոյ առաջնորդաւն հայցեալ և հաւատացեալ թէ առյ, ասեմք եթէ, օրհնեամ զած ընդ մեր։ Այլ նա անդէն օրհնէ ասելով, օրհնեալ է տէր մեր յս քս։ Այլ միաբան ասեմք՝ ամէն. զի յայտ լիցի թէ մեք շնորհակալութն առաք առնել առաջնորդի եկեղեցւոյն։

Բայց թէ էր աղագաւ աստանօր որպէս 'ի վախճան ժամուն օրհնել հայցեմք։ Թուի թէ առաջինքն յայսմ վայրի գիրս ընթեռնուին. և որպէս զկանոն 'ի կանոն չյարէին, այլ զատուցանէին կարգացմամբ. նոյնպէս և զսաղմոսս առաջաբանիցն 'ի կանոնն չյարէին, այլ գրովք մեկնէին։ Քանզի և կանոնական բանն այսպէս օրինադրէ չյարել զսաղմոսն 'ի միմեանս. և սաղմոս ասելով և ոչ կանոն, յայտ առնէ թէ և յառաջաբանից սաղմոսացն որոշել արժան է զսաղմոս՝ գրովք։ Այլ օրհնեամ տէր, ասելն՝ զնոյն գուշակէ դարձեալ։

Այլ զի կարևոր ևս է յայսմ տեղւոջ գրոց կարգացուածս վասն եկեղեցն՝ մասց նորոգութն, և վասն չև ևս եկեղեցն՝ գալոյ. որպէս զի ամենեքեան միաբան զսաղմոսին հոգևոր երգս ասասցեն նր, օժանդակ լեալ գրոցն խրատք և լուսաւորութիւն ոգւոյն։

Բայց թէ ընդէ՞ր այժմ խափանեալ է. ոչ վասն այլ իրի, այլ միայն վասն պղերգութն. քանզի և զկանոնին գիրս 'ի յոլով տեղիս այժմ խափանեալ տեսանեմք. և ուր կարդան, քնոյ պատճառ և ոչ խրատու օգտի զգիրսն առնեն բազումք։ Այլ ըստ յա-

ուղղանալոյ ժամանակին՝ Թուի թէ և սուտ կարդացումն այս խափանի․ քանզի աւելորդ իրս և ոչ կարևոր յոլովից թուի։

Այլ երանի թէ աւելորդ միայն՝ և ոչ վնաս ևս իսկ համարեին բազումք, և վայրապար դատարկութիւն 'ի հոգևոր և 'ի մարմնաւոր գործոյ։ Այլ ասեն այսպիսի բանս․ թէ զմեղս և զարդարութիւն ամ որ գիտէ․ և եթէ խոստովել կամի 'ի չարեն և զբարին առնել, աներևակ է ամ մարդ․ իսկ գրովք պատուիրելն չէ՛ ինչ շահ, այլ խափանումն 'ի կարևորացն։

Այլ այս է որ զամենակալական բաղադրանացումն յարդարենս ածէ․ զսովն ոչ հացի, և զծարաւն ոչ ջրոյ․ այլ սով լսելոյ զբանն ա̃ծ․ զի որպէս 'ի սովոյ՝ խարշին և ապականին ոգիքն որք ոչ լսեն զպատգամս ա̃յ, յայս առնէ մարգարէն։ Քանզի որպէս առանց մարմնական կերակրոց չարչրի մարմին, նոյնպէս և ոչ առանց խրատու գրոց կեալ կարէ ոգին․ զայս և մովսէս ասէ։

Զայն և տէրն 'ի վկայութիւն առնու ընդ դէմ փորձողին․ * Ո՛չ ասէ հացիւ միայն կեցցէ մարդ․ այլ ա̃մ բանիւ որ ելանէ 'ի բերանոյ ա̃յ։ Այլ դաւիթ՝ քան զմեղր քաղցր ասէ քմաց զբանն ա̃յ․ զոր և գրիգոր ա̃ծաբան ըստ ուղղէ յասելն, * Կերակուր իմն է վարդապետութիւն և կերակրողին։ Այլ երանելին յովհան ասէ, * Զի՞նչ չար քան զայն կայցէ՝ յորժամ զոր ա̃ծ 'ի ատենջանոց կարգի սպասանայ, դու անձամբ յանձն կուտես զապականիչ սովն։

Քանզի իմա զբանն եթէ չգոյ ինչ այլ չար քան զայն․ զի եթէ զկորնթացիսն ողբայ պօղոս․ զի չկարէին զհաստատուն կերակուր վարդապետութեան առնուլ, այլ կաթն ջամբել պիտոյացաւ․ ապա և որ ոչ կաթինն ջամբելոյ հասցեն, ո՞րքան ողբալիք են։ Այո՛, նոյնպէս և զեբրայեցիսն բանքաւէ ասելով, * Եղէք կարօտք կաթին և ոչ հաստատուն կերակրոյ։ Զի վասն ա̃յ բանին ասէ զայս, որ ոգւոցն է կերակուր, յայտ 'ի յաջորդէն է։ * Ամենայն որ կաթընկեր է ասէ՝ անգէտ է բանին արդարութեան։

Այլ ո՞ր է բան արդարութեան, եթէ ոչ՝ խրատք ա̃յ գրոց․ և որ նոցա անգէտն է․ անկաւին ապա է թէպէտ և լսէ զնոսա․ իսկ որ և լսէ ոչ, զի՞նչ ասելի։ * Կատարելոցն է հաստատուն կերակուր․ եթէ կերակուր է, ապա և կենաց է։ Որպէս ասաց տ̃րն թէ * Պատուէրն այն կեանք են յաւիտենական։ Այլ եթէ պատուիրանքն ա̃յ՝ կեանք են յաւիտենականք, յայտ է զի զրկեալքն 'ի պատուիրանացն ա̃յ՝ մեռեալ են յաւիտենական կենացն․ որպէս զրկեալքն 'ի հարկաւոր կերակրոցն՝ մեռեալ են յայսց կենաց։

Այլ ոչ միայն մեռեալ են այնմ կենաց, որք ոչն կերակրին պատուիրանօքն ա̃յ, այլ և 'ի խաւարի ասեն են․ քանզի ոչ ունեին զլոյս

պատուիրանացն ա՟յ: * Պատուիրանք տ՟ն լոյս են ասէ ; և լոյս առն աչաց: Նա ոչ լուսաւորէ միայն. այլ և իմաստուն առնէ: * Վկայութի տ՟ն ասէ հաւատարիմ է, և իմաստուն առնէ զտղայս: * Ճրագ է բան քո ոտից իմոց, և լոյս տայ շաւղաց իմոց:

Որով յայտ է թէ որոց շաւիղքն այսու ոչ լուսաւորին, միշտ 'ի գայթակղութեան են ոտք ն՟ց: Որպ՟ ասաց տէրն, * Որ գնայ 'ի գիշերի՝ գայթակղի. զի լոյս ոչ գոյ ընդ նմա: Պարզեալ և 'ի նոյն սաղմոսին ասէ զայն թէ, * Եւ իմաստուն առնէ զտղայս: Քան ըզծերս ասէ իմաստուն եղէ. զի զպատուիրանս քո քննեցի: Դարձեալ, * 'Ի պատուիրանաց քոց իմացեալ՝ ատեցի զճանապարհս չարաց. զի դու օրէնսդէտ արարեր զիս:

Տե՛ս և զի՞նչ սողոմոն ասէ, * Ճրագ է պատուիրանն օրինաց. միանգամայն և լոյս և յանդիմանութի և խրատ: Նոյն և գլուխ առաքելոցն պետրոս ասէ, * Ունիմք հաստատագոյն զբանս մարգարէից, որում թէ անսայցէք՝ բարւոք առնէք: * Իբրև զճրագն որ տայցէ լոյս 'ի խաւարչտին տեղւոջ. մինչև տիւն լուսաւորեսցէ և արուսեակն ծագեսցէ 'ի սիրտս ձեր:

Սմ ասաց որպ՟ մարգարէն ասաց թէ լուսաւոր առնէ. և պօղոս բառնոցին վկայէ թէ իմաստուն առնէ, առ տիմոթէոս գրէ, * Միտ դիր ընթերցուածոց մխիթարութե և վարդապետութեան: և թէ, * 'Ի մանկութէ զգիրս ս՟բս գիտես որ կարող են իմաստուն առնել զքեզ 'ի փրկութի, 'ի ձեռն հաւատոցն որ 'ի ք՟ս յ՟ս:

Նա յարէ 'ի նոյն թէ, * Ամենայն գիրք ա՟ծաշունչք և օգտակարք՝ 'ի յանդիմանութի են և յուղղութի և խրատ արդարութե. զի կատարեալ իցէ մարդն ա՟յ յա՟մ գործս բարութե հաստատեալ: Նա նորա ասեն՝ չե՛ն պէտք գրոց, և պօղոս ասէ՝ օգտակա՛ր են. խրատեն ուղղեն և կատարեալ մարդ ա՟յ առնեն և յա՟մ գործս բարութեան հաստատեն:

Արդ՝ դու քեզէն տուր զիրաւն՝ թէ ո՞ւմ հաւանել արժան է, պօղոսի՞ թէ մոլեգնոտացն որ արհամարհեն զգիրս ս՟բս. որոց մարգարէն եսայիաս վա՛յ տայ: * Վա՛յ արհամարհողաց, որ արհամարհեն արհամարհանօք զօրէնս: * Վա՛յ այնոցիկ որք առ իմաստունս ունիցին զանձինս, և յաչս անձանց իւրեանց խորհրդականք:

Դարձեալ ուշ կալ. թէ տիմոթէոս որ լի՛ էր հոգւով սրբով և 'ի հոգւոյն ս՟բյ ուսանէր՝ պէ՛տք էին գրոց, ո՞րչափ ևս առաւել մեզ: Նա զի՞նչ ասեմ տիմոթէոս, պօղոսի իսկ գլխովին պէ՛տք էին գրոց. գրէ առ նոյն իսկ տիմոթէոս, * Յորժամ գայցես, բերջիր զգիրսն. մանաւանդ զմատեանսն: Նա այն զի մօտ 'ի վախճան էր: * Ես այսուհետև նուիրեալ եմ ասէ. և ժամանակ դարձի իմոյ հասեալ կայ 'ի վ՟ր:

Աւսաի յայտ է թէ, որպէս հիւանդաց որոց յոյս հատեալ իցէ կենաց, հարկ առնեմք որչափ ունիցին շունչ՝ կերակրել դոյզն ինչ աղապէսաւ զի զօրասցին ոգիքն որչափ 'ի մարմնի իցեն: Նոյնպէս և հոգևոր կերակրոյն մինչև յելանել ոգւոյն 'ի մարմնոյն՝ պէտքն պահանջին. մանաւանդ եթէ յայնժամ առաւել, զի զղջմամբ և յուսով և կատարեալ հաւատով գնասցէ աստի:

Բայց հարցից զնոսա, վայրապար հրամայեաց ած մովսէսի և մարգարէիցն գրել զգիրս. և կամ ունայն գրեցին առաքեալքն զաւետարանս և զթուղթս իւրեանց և որ զգործս առաքելոցն գրեաց, և կամ վարդապետքն զոր ինչ գրեցին: Պիտակէս մի 'ի պատուիրանացն այ՝ պատուականագոյն է քան զերկինս և զերկիր:

Վասն որոյ պատուիրէ մովսէսիւ ած թէ, *Եղիցին քեզ պատգամքս այսորիկ զոր ես պատուիրեմ քեզ այսօր՝ 'ի սրտի քում և յանձին քում. և իմացուսցես զսա որդւոց քոց. և խօսեսցիս սոքօք 'ի նստել 'ի տան 'ի գնալ 'ի ճանապարհի, 'ի ննջել և 'ի յառնել: Եւ արկցես զսա նշան 'ի ձեռին քում. և եղիցին անշարժ առաջի աչաց քոց: Եւ գրեսցես զսոսա 'ի վր սեմոց տանց քոց և 'ի դրունս քո:

Եւ դաւիթ յայս հայեցեալ, երանէ որք յօրէնսն տն խորհիցին 'ի տուէ և 'ի գիշերի: Երանի տայ որք քննեն զվկայութիւնս տն. բոլորով սրտիւ իւրեանց խնդրեսցեն զնա: Նոյնպէս և երեմիաս երանի տայ խորհելի վասն այսր. զի պատուիրանք տն լոյս են նորա: Եւ եսայի 'ի գիշերոյն խաւարէ դիմէ առ ած, լոյս զպատուիրանս նորա ունելով. այսպէս ասէ, *'Ի գիշերաց կանխէ հոգի իմ առաւօտ առնել առ քեզ ած. վս զի լոյս են հրամանք քո 'ի վր երկրի: Եւ քարոզէ ամենեցուն, *Ուսարուք զարդարութի բնակիչք երկրի: Եւ ուստի՞ ուսանին զարդարութիւն. եթէ ոչ 'ի հրամանաց նորա որ լոյս է երկրի:

Եւ եթէ այս այսպէս է, մթացեալ խաւարաւ ծածկեալ են ոգիք ատեցողացն զպատուիրանս տն. և ոչ զլոյսն որ 'ի նոցանէն գիտեն. և ոչ իմաստութե որ 'ի նոցանէ են բաղձան: Խելագարեալք են և նման շամշելոցն խօսին. զի եթէ գիտէին լսել 'ի պօղոսէ, թերևս իմանային: *Հաւատք 'ի լսելոյ են. և լսել՝ 'ի բանէն քրիստոսի: Եւ կամ տէրունեանն ձայնին իսկ լսէին. *Քննեցէք ասէ զգիրս, զի նոքօք զկեանս ունել համարիք: Նա և մոլորեալս իսկ կոչեաց զայնպիսիսն որք անգէտ են պատուիրանացն այ. զի և զզօրութի այ անգիտանան: Իսկ որք զի պիտոյ են պատուիրանք այ՝ իմանան, այսպէս խօսին, թէ վասն այսր զի զայն խօսիմ՝ և ոչ վասն այլ իրիք եղաք բանաւորք. և եթէ այսու լաւ եմք քան զանասունս, իսկ յայլսն յոյժ տկարագոյնք եմք քան զնոսա:

Ո՛չ եթէ 'ի մարմնաւոր իրս իմաստնոցն իւրք զօրանան, քանզի՞ոն 'ի հոգևորն խօսեցեալքն յայս. և եթէ պղծոցն բանք և 'ի սատանայէ հնչեցեալ երգքն իբրև զքաղցկեղ ճարակ գտանեն, և զերեն զմիտս զգաստից 'ի կորուստ. ապա ո՛րչափ հոգւոյն սրբոյ ազդելով բանքն 'ի հնազանդութիւն ք͞ի գերեն զունկնդրացն ոգիս։ Ո՛չ եթէ սոսկ բան որպէս ասէ ա͞ծաբանն 'ի յարութեան ճառին՝ * Ցուցեալ ոչ սակաւ, այլ յոյժ օգտակար է. ա͞ծաշունչ բանքն քանզի՞ բազմապատիկ յաւելուն զարդարութեան առաւելումն. զի որքան միջոց ա͞յ ընդ մարդիկ է, նոյնքան և ընդ մարդկային իմաստութեամբ խօսեցեալն և ընդ ա͞յ շնորհիւն։

Իսկ եթէ մարդկայինքն ոչ միայն առ մարդիկ, այլ և առ անասունս կարողանան որպ͞ ասեն գիրք. և զհեղգութի͞ զեզին և զձիոյ զիշոյ և զշան 'ի փոյթ յորդորէ. ապա զմարդ որ անասնագոյն հանդիպի որպ͞ զեզն, և անմտագոյն որպ͞ զէշ, և զվրնջելն ունի 'ի կանայս նման ձիոյ, և շանց գունակ ազգի ազգի պղծի. չկարէ՞ քրիստոսատուր խրատն դարձուցանել 'ի չարէն 'ի բարին։

Իսկ, ո՛րքան 'ի միում աւուր որսոց ձկնորսն բանին ունկննաւ 'ի կեանս. ո՛րչափ բիւրս 'ի հրէիցն 'ի սակաւ ժամանակս աւետարանին հնազանդեաց։ Նա և խորանակարն ոչ ապաքէն յերուսաղէմէ մինչև 'ի կողմանս լիւրիկեցւոց՝ բանիւ ընծայեցոյց ք͞ի զանբաւութի͞ մարդկան։ Ո՞չ և այլ առաքելոցն բանք կարողացան ա͞մ երկրի լնուլ, և յա͞մ ազգաց ժողովել յարքայութեան անմահ։

Նաև որպ͞ երանելին Յովհան ասէ վարդապետն անեղերաց, թէ * Սատանայական մասն է այն՝ որ չտայ հայել մեզ 'ի գանձն, զի մի զմեծութիւնն որ առնի է շահեսցիմք։ Իսկ թէ՝ զոր օրինակ 'ի ծխոյ աչք բժաբերք և արտասուալիցք լինին. իսկ որք 'ի մարգս և յադախուրակուտս և 'ի ծը օդս զբօսնուցուն, սրատեսք և քաջահայեացք լինին։ Նոյն այնմ օրինակի և ախն ոգւոցն եթէ ընդ ծուխ աշխարհիս երաց գայցեն, բազում վտանգիւք խաւարեալ և մթով փարակեալ, ազգի ազգի լալիւնս լայցէ և սաս և անդ. ապա թէ յադախուրս հոգևոր բանից ճարակեսցի, քաջատես և սրակն լինի։

Դարձեալ և որոց լսեն և չպահեն 'ի մտի, սաստիկս մեղադրէ։ * Ամկաւ ասէ ոսկի գտեալ ուրուք 'ի քսակ արկանէ և զզգուշանայ կապով և կնքով և պահպանութե͞։ Իսկ մեք զբանն ա͞յ զցանկալին քան զոսկի և քան զականս պատուականս՝ ոչ յոգւոյս ամբարեմք. այլ թողումք սահել 'ի մտաց։ Իսկ ո՞ այնուհետև ողորմեսցի մեզ անձանց նենգաւորաց, և յայնքան աղքատութիւն իջելոց։

Իսկ զսերմնակաթն զպիղծն յօրինացն՝ երջանիկ վարդապետս յայլում գրի՝ նա͞ օրինակէ, * Որք ոչ պահեն 'ի միտս զսերմն բանին

նոյ, այլ ծործեցուցանեն 'ի մէնջ. վասն որոյ յոյժ պիղծ են. և եթէ որ ոչ պահեն 'ի միտս՝ յոյժ պիղծք են. և ուր մերձին՝ պղծեն: Որպէս յայտ է թէ բնութ պղծութեամբ լի են և կարի անմերձենալիք, որք և ոչ լսել անգամ և ընդունել զբանն նոյ անսան:

Եւ թէ անդաստան և այգի անսերմ և անգործ չպտղաբերի. ապա և ոչ ոգի որ ոչ գործի և սերմանի 'ի խրատուց նոյ՝ կարէ արդիւնս առնել: Ըստ որում օրինակէ եսայի վմ հոգևորին զերկրաւոր մշակութիւն ասելով, եթէ՝ *Նախ կակղեն, և ապա զազգ ազգ սերմանց սերմանեն: Եւ 'ի վերայ բերէ թէ, *Խրատեսցիս դու իրաւամբք նոյ քոյ: Յայտ արարեալ թէ այսպէս պիտոյ է օրինադրել նմ ոգւոյ մծայն երկիւղին, և զսերմն բանին կենաց ընդունիլ, և ապա պտղաբերել աստուծոյ:

Այնպէս և մք լուսաւորիչն օրինակէ երկրի սերմանց զսերմ ածպաշտութե. և յիշէ զակօսեն և զցախեն և զայլսն. և ասէ, *Նոյնպէս պարտիք կակղել զանդս մտացն, զի սերմանիքն սուրբ և օգտակարք ցանիցին 'ի ձեզ:

Եւ թէ այսպիսի ջանից պէտք են՝ անջանքն և անվաստակքն և ուր ոչ սերմն ածպաշտութեն ցանիցի, զիա՞րդ արդիւնաբերք լինիցին. զի թէ սերմանահանքն 'ի չորից մի մասն արդիւնացաւ, ապա անսերմնացանելոյն զիա՞րդ արմտիք լինիցին: Բայց զի 'ի սատանայէ խօսին որք խափան լինին գրոց լսելութե, ասացաք փոքր 'ի շատէ. 'ի կարգն դարձցուք ուր սկիզբն արարաք:

Զի թէ և կարևոր է ընդ դէմ նոցա երկայնել զբանս, և յաջողել են առ այս առասացութիւք սրբոցն հայրեաց, այլ ոչ թողու զմեզ պատմաղել զայսու՝ շատութն իրիս որ առաջի կայ: Վասն որոյ սակաւուք պատմեսցուք առ ետալ ուսումնասիրաց, 'ի մեր խնդրոցն լուծումն յառաջեսցուք:

Յաղագս սաղմոսին որ յետ աղօթիցն:

Յետ կատարման աղօթիցն՝ սկսանին զսաղմոսն կանոնին սաղմոսին եօթն գոբողոյիւք՝ փառաւորութ կատարելով. և սարկաւագն քարոզէ ըստ նմ գոբողայի,

Եւ ես խաղաղութեան զանէր աղաչեսցուք: Այսինքն թէ՝ և մն խաղաղութեն դարձեալ այլ աղաչանս նոյ մատուսցուք. զի՝ ևսն այլ է, և՝ ևեսն այլ. զի ուսցուք եթէ հանապազ զնորա խաղաղութ

Զի եթէ 'ի մարմնաւոր իրս իմաստնոցն իրք զօրանան, քանի՞օն 'ի հոգեւորսն խօսեցեալքն յիմ. և եթէ պղծոցն բանք և 'ի սատանայէ հնչեցեալ երգքն իբրև զքաղցկեղ ձարակ գտանեն, և գերեն զմիտս զգաստից 'ի կորուստ. ապա որչափ հոգւոյն սրբոյ ազդեցեալ բանքն 'ի հնազանդութիւն քի գերեն զունկնդրացն ոգիս։ Զի եթէ սուկ բան որպէս ասէ ածաբանն 'ի յարութեան ճառին՝ * Յաւելուած ոչ սակաւ, այլ յոյժ օգտակար է. ածաշունչ բանքն քանի՞ բազմապատիկ յաւելուն զարդարութեան աւելուլումն. զի որքան միջոց այ ընդ մարդիկ է, նոյնքան և ընդ մարդկային իմաստութեամբ խօսեցեալն և ընդ այ շնորհիւն։

Նա եթէ մարդկայինքն ոչ միայն առ մարդիկ, այլ և առ անասունս կարողանան որպ ասեն գիրք. և զհեղգութի զեզին և զձիոյ զհեշոյ և զշան 'ի փոյթ յորդորէ. ապա զմարդ որ անասնագոյն հանդիպի որպ զեզն, և անմտագոյն որպ զէշ, և զվրնջելն ունի 'ի կանայս նման ձիոյ, և շանց գտանակ ազգի ազգի պղծի. չկարէ՞ քրիստոսաւոր խրատն դարձուցանել 'ի չարէն 'ի բարին։

Իմա, որքան 'ի միում աւուր որսաց ձկնորսն բանին ուռկանաւ 'ի կեանս. որչափ բիւրս 'ի հրէիցն 'ի սակաւ ժամանակս աւետարանին հնազանդեաց։ Նա և խորանակարն ոչ աղաքէն յերուսաղէմէ մինչև 'ի կողմանս լիւրիկեցւոց՝ բանիւ ընծայեցոյց քի զանբառութի մարդկան։ Ոչ և այլ առաքելոցն բանք կարողացան ամ երկրի լնուլ, և յամ ազգաց ժողովել յարքայութեան ամեն։

Նաև ոպ երանելին յովհան ասէ վարդապետն տիեզերաց, թէ * Սատանայական մտաց է այն՝ որ չտայ հայել մեզ 'ի գանձն, զի մի զմեծութիւնն որ անդ է շահիցիմք։ Նա թէ՝ զոր օրինակ 'ի ծխոյ աչք բծաբերք և արտասուալիցք լինին. իսկ որք 'ի մարգս և յաղբիւրակունս և 'ի մք օդս զբօսնուցուն, սրատեսք և քաջահայեացք լինին։ Ըստ այնմ օրինակի և ակն ոգւոցն եթէ ընդ ծուխ աշխարհիկս իրաց գայցեն, բազում վտանգիւք խաւարեալ և մթով վարակեալ, ազգի ազգի լալիւնս լայցէ և սուս և անօգ. ապա թէ յազատիւրս հոգևոր բանից ձարակիցի, քաջատես և սրատեսն լինի։

Դարձեալ և որոց լսեն և չպահեն 'ի մտի, սաստիկս մեղադրէ։ * Սակաւ ասէ ոսկի գտեալ ուրուք 'ի քսակ արկանէ և զգուշանայ կապով և կնքով և պահպանութբ։ Նա մեք զբանն այ զցանկալին քան զոսկի և քան զականս պատուականս՝ ոչ յոգիս ամբարեմք. այլ թողումք տանիլ 'ի մտաց։ Նա ո՞ այնուհետև ողորմեսցի մեզ անձանց նենգաւորաց, և յայսքան աղքատութիւն իջելոց։

Նա զսերմանակաթն զպիղծն յօրինացն՝ երջանիկ վարդապետս յայլում գրի՝ նշ օրինակէ, * Որք ոչ պահեն 'ի միտս զսերմն բանին

նոյ, այլ ծորեցուցանեն 'ի մնաց. վասն որոյ յոյժ պիղծ են. և եթէ որ ոչ պահեն 'ի միսս՝ յոյժ պիղծք են. և ուր մերձինն աղծեն։ Այս յայտ է թէ բնաւր պղծութը՟ լի են և կարի անմերձենալիք, որք և ոչ լսել անգամ և ընդունել զբանն նոյ անսան։

Իսկ թէ անդաստան և այգի անսերմ և անգործ չորացեալ քերի. առաս և ոչ ոգի որ ոչ գործի և սերմանի 'ի խրատուց նոյ՝ կարէ արդիւնս տանել։ Որպէս որոշ օրինակէ եսայի վս՟ հոգևորին զերկրաւոր մշակութի ասելով, եթէ՝ * Նախ կակղեն, և ապա զազգ ազգ սերմանցն սերմանեն։ Իսկ 'ի վերայ բերէ թէ, * Խրատեցիս դու խրատամբք նոյ քոյ։ Յայտ արարեալ թէ այսպէս պիտոյ է օրինադրել ամ ոգւոյ ածային երկիւղիւն, և զսերմն բանին կենաց ընդունիլ, և ապա պտղաբերել աստուծոյ։

Այնպէս և ոք լուսաւորիչն օրինակէ երկրի սերմանց զսերմ ածպաշտութե. և յիշէ զակօսելն և զցախելն և զայլսն. և ասէ, * Նոյնպէս պարտիք կակղել զանդս մտացն, զի սերմանիքն սուրբ և օգտակարք ցանիցին 'ի ձեզ։

Իսկ թէ այսպիսի ջանից պէտք են՝ անջանքն և անվաստակքն և ուր ոչ սերմն ածպաշտութեն ցանիցի, զիա՞րդ արդիւնաւորք լինիցին. զի թէ սերմանահանին 'ի չորից մի մասն արդիւնացաւ, ապա անսերմացանելոյն զիա՞րդ արմտիք լինիցին. Բայց զի 'ի սատանայէ խօսին որք խափան լինին գրոց լսելութե, առացաք փոքր 'ի շատէ. 'ի կարգն դարձցուք ուր սկիզբն արարաք։

Զի թէ և կարևոր է ընդ դեմ նոցա երկայնել զբանս, և յաւելի են առ այս առատացութիք սրբոցն հայնից, այլ ոչ թողու զմեզ պատասղել զայսու՝ շատութի իրիս որ առաջի կայ։ Եւ վասն որոյ սակաւուք պատճառս առնեալ ուսումնասիրաց, 'ի մեր խնդրոցն լուծումն յառաջեսցուք։

---

Յաղագս սաղմոսին որ յետ աղօթիցն։

Յետ կատարման աղօթիցն՝ սկսանին զսաղմոսն կանոնին սաղմոսին եօթն գոբողոյիւք՝ փառաւորութը՟ կատարելով. և սարկաւագն քարոզէ ըստ ամ գոբողոյի,

Իսկ եւս խաղաղութեան զաէր աղաչեսցուք։ Այսինքն թէ՝ և վս՟ խաղաղութե դարձեալ այլ աղաչանս նոյ մատուսցուք. զի՝ եսն այլ է, և՝ եւեսն այլ. զի ուսցուք եթէ հանապազ զնորա խաղաղութ

պարտիմք խնդրել։ Այլ ապա ասեն ժողովուրդն, Տէր ողորմեա՛։ Այսու զխոնարհութիւն վարդապետիմք. զի ողորմիլ մաղթեմք, և զպարգևս խաղաղութեան շնորհել. զի ողորմելի է աղքատն և անանկն և աղկաղկն։ Այլ զի աղքատացաւ մարդկային բնութիւս ՚ի փառաց և ՚ի կենաց և յանապականութենէ և յարդարութենէ. և ամենայնիւ ողորմելի եղև։ Զոր թէպէտ և ողորմութիւն Աստուծոյ դարձեալ ՚ի փառս եած և նորոգեաց և անապական կեանս խոստացաւ, և արդարս և սուրբս և որդիս աստուծոյ զմեզ արար։

Համայն դիւրագայթ մեր բնութիւս յամէ վրիպեցուցեալ զմեզ ողորմելիս և եղկելիս առնէ. վասն այնր և նմանութեամբ անառակ որդւոյն զոչ արժանի լինել որդիութեան Աստուծոյ ընդ միտ ածեալ, ողորմութեան Աստուծոյ խնդրեալ զմեր օգուտն աղաչեմք։ Վասն այնր զխաղաղութիւն հրամայեալ խնդրել քարոզին, ասեմք միաբան, Տէր ողորմեա՛։

Ասէ ապա և քարոզողն, կեցո՛ և ողորմեա՛ մեզ Տէր։ Զի զամենապարգև խաղաղութիւնդ քո ասէ տուեալ վասն ողորմութեան, նոյն ողորմութեամբ կեանս շնորհեա՛ մեզ։ Այլ միաբանեալ նմա ասեմք միաձայն, կեցո՛ Տէր։ Այս ասէ առաջնորդն,

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։ Աստանօր զհամագոյութիւն երրորդութեան և զմիաբանականութիւն և զհաւասարութիւն պատուոյն յայտ բերեմք. միով օրհնութեամբ և փառօք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին բարեբանեմք. որ ՚ի մի աստուածութիւն երեք անձինք միանան։ Օրհնեալ և փառաւորեալ են այժմ և հանապազ և յանբաւ յաւիտեանս, ամէն։

Վասն յաւիտենին ասացեալ եմք նախ, կայ ասել և վասն յաւիտենից յաւիտենին, զի կոչի մի յաւիտեան յառաջ քան զարարածս։ Այլ կոչի այլ յաւիտեան ՚ի սկզբանց արարածոց մինչև ՚ի գալուստն Քրիստոսի երկրորդ։ Դարձեալ ասի յաւիտեան, որ ՚ի գալստենէն Քրիստոսի անհատն և անսպառն, որ ոչ ունի կատարումն։ Այլ զի ՚ի սկզբանն յաւիտեան կոչի՝ ուսցիս ՚ի մարգարէէն յասելն դաւթի, * Յաւիտենից մինչև յաւիտեանս դու ես։ Այլ ՚ի կուրին ասելոյ, * Յաւիտենից ոչ ոք լուաւ բանալ զաչս կուրի։ Այլ ՚ի պօղոսէ, որով զյաւիտեանս արար. վասն որդւոյն ասէ զհօրէ։

Այլ զի գալստեան Քրիստոսի՝ այսմ յաւիտենիս սպառումն է՝ Տէրն ուսանէք գիտելի է. նախ՝ յօրհնացն, յորում զբազում իրաց ասէ. * Օրէն յաւիտենական քեզ և որդւոց քոց։ Յայտ է, զի այսմ կենաց պիտոյ է օրինադրութիւն՝ և ոչ հանդերձելումն։ Այլ դաւիթ ասէ, * ՚Ի սկզբանէ ծանեայ ՚ի վկայութեանց քոց. զի յաւիտեան հաստատեցեր զնոսա։

Ըստ եպիփանու՝ զլուսաւորսն կոչէ վկայս. որք հաստատեալ են մինչև 'ի կատարումն այսր կենաց, և 'ի նշանս և 'ի ժամանակս յաւուրս և 'ի ամս: Իսկ ըստ միւսում բանին սոյն այս յայտնի ցուցանի: *Զաւակ նորա ասէ որ է դաւթի, յաւիտեան կացցէ. և աթոռ նորա զարեգակն առաջի իմ. և որպէս լուսին զի հաստատեալ է յաւիտեան վկայ հաւատարիմ յերկինս:

Իսկ պօղոս վասն քրիստոսի չարչարանացն խօսելով, *Միանգամ 'ի կատարած յաւիտենից ասէ իւրով պատարագաւն յայտնեալ է: Այսինքն՝ թէ մօտ 'ի սպառումն կենաց աշխարհիս. որպէս և յառաջ յիսկզբան թղթին յայտնագոյն զայն ասէ. *'Ի վախճան աւուրցս այսոցիկ խօսեցաւ ընդ մեզ որդւովն: Իսկ այլ գտանի 'ի գիրս բազումս ասել վասն վախճանի յաւիտենից այսորիկ:

Այդ՝ յաւիտենից, այս է յաւիտեան. 'ի սկզբանն և 'ի կատարածին: Իսկ միւս յաւիտեան երրորդն՝ որ 'ի հանդերձեալ գալըստենէն սկսանի, յաւիտենից յաւիտեան կոչի. զի յետ նոցունց սկսանի և այլ ոչ սպառի:

Իսկ յետ օրհնութեանցն միաձայնեն ամենեքեան զամէնն, զի հաստատակաց լիցի օրհնութիւնն. կրկնէ անդէն առաջնորդն զխաղաղութիւն յաստուծոյ առ ժողովուրդն:

Ապա կամիմ հարևանցի չանցանել ընդ տեղիս, այլ ցուցանել զգերակայութիւն քահանայութեանն զանազանապէս: Զի ամենեցուն իշխանութիւն է միաբանել 'ի սաղմոսն և 'ի փառս գոհաբանից, և 'ի քարոզութեանցն վկայութիւն. և զաւարտումն՝ քահանայութեանցն հաւատալ: Զի բովանդակ եկեղեցին չկարէ համեմատիլ քահանային և գլխաւորել զօրհնութիւն. այլ պէտք են քահանային զնոցա ասացեալ սաղմոսերգութիւն՝ իւրանձնապէս օրհնութեամբն իւր մատուցանել: Նոյն սակս լուէ ամ ժողովուրդն. և սարկաւագն ձայնէ առաջնորդին թէ՝ օրհնեա. որպէս թէ ասիցէ՝ մատո իւր զոր ժողովուրդդ օրհնեաց քով օրհնութեամբդ:

Իսկ դարձեալ երկի միւս ևս այլ առաւելութիւն քահանային. զի 'ի նոցա սաղմոսելն, և 'ի փառս տալն, չկարէ եպիսկոպոսն ժողովրդեանն տալ զխաղաղութիւն. այլ աղաչել միայն հրամային 'ի սարկաւագէն վասն խաղաղութեան: Իսկ յորժամ 'ի քահանայից մատուցանի օրհնութիւն, տայ ապա և եպիսկոպոսն զխաղաղութիւն. զի նա է գլուխ քահանայութեան: Իսկ զօրհնութիւն թէ ինքեամբ և թէ քահանայիւքն՝ առ իւծ հանեալ, առնու զխաղաղութիւն յիւր և տայ ժողովրդեանն: Զի որպէս հնոյն պատարագաց զոմանս ղևտացիքն 'ի նուիրացն մատուցանէին. բայց պարգևացն որ յիւր՝ մովսէս և ահարոն լինէին առիթ:

Դ. յայտ է բանաւոր պատարագացս թէ և այլ ոք ՚ի քահանայ-
յից իցէ մատուցանօղ, զխաղաղութի եպիսկոպոսն յորում եկեղեցւոյ
հանդիպի, առնու յնյ և տայ նց. որ քան զնմ պարգև գերագոյն է.
մանաւանդ թէ բովանդակ պարգևօք լցեալ: * Եւ զի նմ տուրք
բարիք և նմ պարգևք կատարեալք ՚ի վերուստ են իջեալ առ ՚ի հօ-
րէն լուսոյ: Եւ գլխաւոր եկեղեցւոյն զամենեսեան զնմ միով բա-
նիւս այսու աւետաւորէ. խաղաղութի ամենեցուն ասէ: Որում
առաքեալ ասէ, * Խաղաղութի նյ որ ՚ի վեր է քան զնմ միտս, պա-
հեսցէ զսիրտս ձեր և զմիտս ՚ի քս յս:

Ընդհասանելի ուրեմն հրեշտակաց և մարդկան մտաց, վկայ-
եաց զայս ասելով. յաղագս այսորիկ և ՚ի վեր ասաց քան զնմ միտս.
Սորին աղագաւ թէ օրհնէ քահանայն, թէ աղօթէ, առ ՚ի յնյ զխա-
ղաղութիս զայս բերէ պատասխանի. որ լի է անխափանելի պարգևօք:

Երրորդ ցուցումն առաւելութե քահանային այս է, զի կրկին
առնու միով անձամբն զպատիւ քան զժողովուրդն ամենեքումբք:
Զի ոչ միայն զիւրեանց փառաբանութիւն քահանայքն աւար-
տեն. այլ զի և նոցա ասեն, փառք հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ:
Իսկ առաջնորդքն և զօրհնութի ևս յաւելուն ՚ի փառսն. և չիշխէ
ոք ՚ի ժողովրդենէն զայս առնել, և ոչ բովանդակ իսկ ժողովուրդն:

Դ.ԺԼ որպէս յայլ իրս կրկին պահանջէ առաքեալ զերիցանցն
պատիւ ասելով, թէ * Բարւոք վերակացուքն երիցունք կրկին պատ-
ւոյ արժանի լիցին: Նոյնպէս և յօրհնութիւն ոչ կրկին կարգեալ
է զպատիւ երիցանցն:

Դարձեալ՝ զի չէք ինչ շնորհ, զոր առանց առաջնորդաց տայ
նծ. այլ վերստին ծննդեանն որ ՚ի հոգւոյն, և կենարար մարմնոյ և
արեան սեղան բաշխումն, թողութի մեղաց դարձելոցն ՚ի խոստո-
վանութի ապաշխարութե, ամուսնութի զուգութեան, ընծայից և
նուիրաց և պարգևաց մատուցումն, հոգւոյն հանգուցելոց առ քս
յուղարկումն, և մարմնոց նոցա ընդ ամենապահ աջոյն նյ ամփոփել.
և որ այլ ևս կարգք են քրիստոնէականք՝ և օրհնութի՝ եկեղեցեաց
նյ և սպասուց նց, կամ նշանի խաչին, կամ միւռոնին գերագունի,
կամ երկքի, կամ ջուրց, սերմանց, պտղոց, անկոց, անասնոց,
ախտից բուժելոյ նծային շնորհիւն, կամ այլ ինչ նծատուր պար-
գևի, միջնորդք՝ առաջնորդք եկեղեցւոյ լինին:

Նոքա առնուն ՚ի ժողովրդոցն զխոստովանութիւն՝ զաղօթս՝
զօրհնութի՝ զնուէրս մատուցանեն նյ: Եւ դարձեալ առնուն յնյ
զօրհնութիս զզանազան զշնորհսն զխաղաղութին երկնային, և տան
մարդկան մեռելոց և կենդանեաց: Ո՛չ վայրապար զայս յեղանակեմ
բազմօրինակապէս. այլ զի կարացից իմացուցանել առ հասարակ

քահանայից, և ժողովրդոց։

Քահանայից, զի 'ի հեղգալն կամ 'ի ագահանալն որ ինչ վասն ժողովրդեանն, գիտասցեն թէ որչափ առ ած մեղանչեն, կամ որքան զժողովուրդն վնասեն։ Կամ որչափ դատի քս որ զարիւնն իւր եհեղ վասն մարդկան՝ զայն որում զհրեշտակութիւն միջնորդութեան հաւատաց. և պատուիրեաց զգոյշ լինել միում 'ի փոքրկանցն, եթէ ոչ ամ սրտիւ և ամ մտօք յամ զօրութէ մատակարարիցեն զժողովրդեանն՝ այ, և զայն՝ ժողովրդեանն. և ամ ուղղութեամբ միջնորդեսցեն. Որպս և խրատէ գլուխ առաքելոցն պետրոս. * Եթէ ոք խօսեսցի իբրև զայ պատգամս, եթէ ոք մատակարարիցէ իբրև 'ի զօրութէ զոր շնորհէ ած. զի յամի փառաւորեսցի ած 'ի ձեռն յի քի։

Զի թէ որք վասն անցաւոր կենացս պատգամաւորեն 'ի հողեղինէ և 'ի մահկանացուէ առ նմանս, հոգան և զգուշանան զի մի՛ ամօթ և երկիւղ նը հասցէ 'ի պատգամաւորելն. և կամ վնասեսցին նոքօք որք ունիցին զնոսա խօսելիս 'ի միջի. այլ ամ իմաստութեամբ ջանան յիմանալ և 'ի բանս։ Որպս որ ընդ ած և ընդ մարդիկ ոչ միայն վասն անցաւորիս, այլ և վասն անանց կենացն առրուբերին, բանիւք և արդեամբք զգուշութիւն պիտի։ Որք այսմ կենաց կամ մահու և այնմ 'առիթ լինին 'ի չզգուշանալն կամ 'ի հեղգալն. արժանապարտք լինին ըստ մարգարէին 'ի ծուլանալն, և փառացն քի հաղորդ ըստ պետրոսի 'ի փոյթ գտանիլ։

Իսկ ժողովրդոցն, զի գիտասցեն թէ ո՞րպիսի պատիւ առ 'ի յայ ունին առաջնորդք. կամ ո՞րքան օգտից և շնորհաց առ 'ի յայ, նոցա բերօղք են. և որչափ բարեաց առաջնորդօղք։ Կամ քանիցն 'ի վերայ նը իշխանութի առեալ յայ՝ կապել և արձակել յերկինս և յերկրի։ Թողուլ զմեղս, և ունել, բանալ նը զերկինս և փակել. իջուցանել առ նոսա զողորմութի այ և արգելուլ. բերել նը և իրաց նը օրհնութի յայ՝ կամ անէծս. և զայլն ևս զոր յառաջն ասացաք։

Եւ զայս ամ իմացեալ նը, ընկալցին զնս որպս հրամայեցաւ 'ի տեառնէ այնպէս որպս թէ ինքն քս իցէ. Զի թէ ժողովրդեանն իրք ինչ 'ի քնէ նոցա շնորհի, ապա և ընդունել զնոսա որպէս զքս 'ի ժողովրդեանէն պահանջի. նոյնպէս ունկնդրութի և հպատակութիւն, որպէս հրեշտակի այ՝ զաստուածային խօսողի։

Դարձեալ՝ մարմնական պիտոյից լրումն որպս հօր հոգացի. որպս վարդապետի, որպս զհոգևորսն սերմանողի հնձեսցի. որպս աշխատաւոր մշակի և այգեգործի քի՝ պարգևատուեսցի։ Իբրև 'ի սեղանի այ գործողի, իբրև սեղանոյ այ պաշտօնէի, անդուստ հարկաւոր պիտոյիցն լցցի. իբրև զաւետարանն աւետարանողի, յաւետարանէն կեալ պատրաստեսցի։

Ո՛չ ապաքէն և առաքեալ այսու օրինօք իրաւաբանէ զառաջնորդացն հարկաւոր պարտիս դարմանատրութե ։ Ա՛ա զի՝ և երկոցունց կողմանցս սէր 'ի միմեանս առաւելեսցի քան զծնողաց և զըղծննդոց ։ Այնչափ՝ որչափ առաւել է քան զմարմնաւորն՝ հոգևոր ծնունդ և սնունդ ․ Նոյնչափ և գութք յաճախեսցին առ իրեարս քան զըարեկամաց առ իրեարս , այնքան՝ որքան օգտութի երկնային լաւ է քան զօգտութի երկրային ։ Այլ և վշտակցին և կարեկցին ևս առաւելագոյն քան որ մարմնոյ են կարեկիցք , այնքան՝ առաւել է որչափ հոգի քան զմարմին ․ և այլք սոցին նմանք բովանդակ իրերաց փոխադարձեալ հարկեսցին ։

Եւ զի ևս ինձ երկայնաբանելն է , օրինակ առաջի կացելոյք , և աշակերտացն առ միմեանս որպիսութիքն , և առաքելոցն առ իւրեանց աշակերտսն , և աշակերտացն առ նոսա իրագործութիքն ։ Որոց թէ ոչ նմանին երկաքանչիւրքն , մեծ դատաստան ընդունելոց են կողմն սխալելոցն , և բազում վարձս գտանելոց այնպէս արարողքն ։ Այլ ես 'ի յիմն դառնալով զյաճախելն 'ի նոյն բանս՝ առայլ թողլով ժամ և ժամանակ , եթէ տէր հրամայեսցէ ։

---

Յետ կանոնին և օրհնութեանն օրհնելոյ , կան քարոզք և աղօթք չորք կրկնով ։ Եւ պաշտին սոքա երկոցունց կանոնաց ․ մի մի քարոզ և աղօթք առ կանոն մի ։ Եւ իբրև գլխաւորի , դարձեալ սկիզբն առնու 'ի չորից կանոնացն մնացելոց ։

---

Քարոզ՝ Երանեալ և Իբրև կանոնացն , զկնի ասելոյ զՄաղթանքն՝ ըստ պատշաճի աւուրն ։

Վասն 'ի վերուստ խաղաղութե և փրկութե անձանց մերոց զՏէր աղաչեսցուք ։ Աղաչել հրամայէ , զի իջցէ խաղաղութիւն այ և փրկեսցէ զոգիս մեր ․ այն խաղաղութի զոր խոստացաւ տէրն թողուլ առաքելոցն ։ Եւ ընկալեալ զայն՝ փրկեսցին ոգիք նոցա 'ի ձեռնարկութէ սատանայի ․ և վերագոյնք գտան քան զընդդիմութի դիւացն և մարդկան , և առանց խռովութեան և ղանդիտելոյ , այսինքն չկասելոյ ։

Բայց դու հաւատոյ միտ դիր բանին , թէ որպէս յայն խորհուրդ խաղաղութեան զոր խոստացեալ է 'ի տեառնէ՝ բերէ զմիտս ․

զի անդ ասէ , * Ո՛չ որպէս աշխարհս տայ տամ ես ձեզ։ Եւ աստ ՚ի վերուստ ասելն՝ զշնորհ աշխարհիկն յայտնէ։ Տէրն ասէ , * Մի խռովեսցին սիրտ ձեր։ Որ զօգուտն արութիւնն յայտնէ . և քարոզն զօգտիցն փրկութի խնդրել հրամայէ և է նոյն խնդիրն . զի անխռով և առանց զանգման ոգին մնասցէ։ Յոր ոչինչ դիւական ախտք կամ երկրաւոր ահք ազդել կարասցեն , փրկութեն անճառելւոյ հասին։

Յաղագս այսորիկ և ժողովուրդքն միաբան՝ զտէր ողորմեայն ասեն . զի Թէպէտ և անարժան իցեմք , ողորմեսցի և պարգևեսցէ զխաղաղութիւն զխոստացեալն։

Վս̃ լսելոյ աւետն ոյ՝ ձայնի աղաչանաց մերոց զՏր̃ աղաչեսցուք։ Լսելն՝ զընդունելն զաղաչանս և տալ զխնդրելին ցուցանէ։

Վասն քաւիչ և ներող լինելոյ նոյ ՚ի վերայ մեղաց մերոց զՏր̃ աղաչեսցուք։ Քաւելն՝ սրբել է , և ներելն՝ ջնջել զպատիժսն ըստ մեղացն ՚ի վերայ . այլ տալ տեղի ապաշխարութեան։

Վասն Թողլոյ մեզ զա̃մ յանցանս մեր զկամայն և զակամայն զՏէր աղաչեսցուք։ Վասն զի և վասն ակամայ մեղացն դատիլ ունիմք , խնդրեմք Թողուլ զոր մեքն յօժարեցաք գործել , և զոր յանյօժար կամաց սխալեցաք ՚ի հարկէ։

Վասն զի մի ընդ խոտանս գտանիլ մեզ յաւուրն պատախանատուութե զՏէր աղաչեսցուք։ Որ պատասխանատուութե՝ է որ դատաստանին . յորում որք առաջի կան դատաւորին՝ զիւրաքանչիւր գործոց պատասխանիս պահանջին . և խոտան գտանին որք ոչ ընդ Քի յերկինս վերանին . և հեղեղաւ հրոյ ՚ի գեհեննն անկանին։ Ըստ տէրունական առակին՝ *Ցուցանէն յետ ժողովելոյ զբարի բարին յամանս , և զխոտանն ՚ի բաց ընկեցին։ Ոչ է արտաքոյ է գեհեննն ոչ միայն երկնից , այլ և այսմ երկրիս որ մարդաբնակ։ Ընդ հրամայիմք աղաչել զի մի յայնցանէ լիցուք , այլ որ ՚ի յարկան յաւիտենից ժողովին։

Զմենայն աւուրց քարոզս աւարտէ զՏր̃ աղաչեսցուք։ Եւ զողորմութիւն յոյ ըստ իւրաքանչիւրոցն ժողովուրդն հայցելով ասեն տէր ողորմեա։ Ոչ է ողորմելն հաւանեցուցանէ տալ խնդրողին Թէպէտ և չիցէ արժանի։



Աղօթք՝ Երանեալ և Իբրև կանոնայն.

Տէր. տունջեան և գոյացուցիչ գիշերոյ, որ արարեր զտիւն 'ի զբօսանս բարեգործութե 'ի փրկութի անձանց մերոց, և զգիշեր 'ի հանգիստ քնոյ ակարացեալ բնութեանս մերոյ։

Տէրն անուն՝ զտիրանալն և զտիրելն յայտնէ ծառայից. զի նր հաստատեալ է զտիւն և զգիշերն, վասն այնորիկ ծառայէ հաստչին, և հրամանի նր անսայ. որպէս ասէ դաւիթ, * Հրամանի քում մնայ տիւ, զի ամենայն ծառայ քո է։

Իսկ գոյացուցիչ գիշերոյ։ Մ. յսինքն՝ ստեղծիչ, որ 'ի չգոյէ 'ի գոյ ած. և զտիւն կարգեաց և հաստատեաց գործել և վաստակել յարարածս ոյ բարեաւն. զի 'ի նմա տեսանեմք զերկնից գեղեցկութիւն և զերկրի վայելչութի։ Զկենդանեաց յօրինուածս. և զազգազգս բուսոց և տնկոց և ծաղկանց. զաղբիւրաց՝ գետովք և ծովովք զա 'ի մեզ պիտանութի։ Իսկ զբօսնումք նորօք՝ վայելելով 'ի նոսա, և փառաւորելով զարարիչն, որ վասն մեր հաստատեաց զնոսա, և ետ մեզ գործել սորօք զկիրոյս մեր և զընկերաց, և օգնական մեծամեծաց լեալ, և մեծամեծք զմեծամեծս հոգացեալ։

Ամն իշխէ և ամն իշխի. ամն արուեստս բերէ յառաջ շինողութեամբ՝ և զհանգերձից և զանօթոց պէտս։ Իսկ ամն սերմանէ զերկիր բուսովք սերմանեօք և տնկօք, և զհասարակաց պէտս լնացուցանէ. ոչ զմարդկան միայն, այլ և զանասնոց։

Իսկ հրճուի իւրաքանչիւրոք 'ի վաստակս ձեռաց իւրոց, և հրճուանս այլոց կազմէ։ Իսկ անկարիցն ընծայ բերէ յորդոր վաստակոցն. զի ոչ միայն յայսմ աւուր կենացս միայն լիցի աշխատիլ տուընջեանն, այլ և 'ի հանդերձելումն։ Իսկ վն այնորիկ է գոհութիւնս. զի այնպիսի շնորհս գտաք յաստուծոյ։

Արարեր ասէ զտիւն 'ի զբօսանս բարեգործութե 'ի փրկութի անձանց մերոց։ Զի ոմ վաստակովքն ոյ՝ երախտաւոր լեալք, փրկեցաք 'ի չարէ և 'ի մեղաց և 'ի գեհենէ, և երկնից հասցուք։

Զի եթէ 'ի շինուածս զօտարն հանգուցանես, և զգեստուց զմերկն ծածկեսցես, և կերակրովք և ըմպելեօք զկարօտն լցուսցես, երկրաւս զերկինս գործեցեր. և շահեցար զմատախս և զանախն։ Նաև 'ի բանտարգելսն և 'ի հիւանդսն. և որ զըկինն՝ տունջեամբն բազումն թէ կամիս բարեգործես 'ի նոսա։ Փրկես և փրկիս. յուսովն ասա, և պարգևօքն անդ զուարճանաս։

Իսկ գիշերոյն հանգիստ որպէս բանն ասէ՝ նորոգումն առնէ տկարութեան. և զօրինակ մահու և զյայտ յարութե 'ի մեզ պատուէրէ.

Իսկ այժմ զարթուցեալ բացեր զձեռնս մեր 'ի փառաբանու-թիւն փառաւորեալ անուանդ քում սրբոյ։ Յոյժագին օգտութի զարթուցեր, զի հրեշտակաց լեզուք երգակիցք. քանզի տկար է բնու-թիւս, որ զանձամբքն ոչ զօրէ անդադար 'ի քում փառաբանութեն։

Յաղագս այնորիկ հանգուցանելովս զօրացուցեր զմարմինս մեր, և հոգւոյս օժանդակես ընդ հրեղէն փառաբանիչսն զքո փառաւոր-եալ անուանդ փառաւորել, որ յիւկզքանցն և յաւիտենից փառա-ւոր էր. և անկարօտ էր եղելովքս փառաւորիլ։

Նա և առ գութ արարչութեանն հաճեցաւ յարարածոցս պաշ-տօն առնուլ. ոչ զի ինքն յաւելուած կամ փառս առցէ, որ ամե-նակատարն է և անփոփոխ. այլ զի փառաւորիչքն պատուեսցին զփառաւորեալն օրհնելով. քան զոր պատիւ մեծ այլ ոչ գոյ։

Ընկալ և այժմ զաղաչանս մեր, և յաջողեա մեզ ուղիղ հա-ւատով և առաքինասէր վարուք միշտ 'ի պաշտօն քո կանխել երկ-նային կանոնիւ։

Տեսանեմ թէ որպիսի մեծապատիւ գիտացեալ զՔոյ փառաբա-նիչն լինիլ, տաղաչէ մեծ բաղձանօք միշտ 'ի նոյն կանխել, ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք, երկնայնոցն նմանիլ կարգաց։ Զոր և կանոն անուանէ. զի առանց ուղիղ հաւատոյ և առա-քինութեան անընդունակ է պաշտօնն. սակս այնորիկ երկոցունց լինել մարթէ. զի * Հաւատք առանց գործոց մեռեալ են, և գործք առանց հաւատոյ։

Իսկ որ ուղիղ հաւատով զբարիս գործէ, նա է որ արդեամբք և ոչ բանիւք և եթ զԱծ փառաւորէ. քանզի ասէ, * Լուսաւորեսցէ լոյս ձեր առաջի մարդկան. որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է։

Եւ մեք զայս ամ իմացեալ, նախ քան բանիւք՝ գործովք փա-ռաւորեսցուք. և զայն զայս 'ի տեառնէ խնդրեսցուք երկնային կա-նոնիւ անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգի. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամն։

Եւ յետ այսորիկ տայ և առնու զխաղաղութիւն աղօթամա-տոյցն՝ և ոչ ևս եպիսկոպոսն. զի դեռ ևս ունի դառնալոյ և տալոյ զմիացուածոյ ժողովրդեանն, և վասն գոհութեան նոցա և

երկրպագութեան. որում որպէս ասացաքն՝ շնորհակալութիւն առ ամե-ցուցանէ խոստման հայցուածոյն։ Եւ ապա սարկաւագն երկրպա-գել հրամայէ։ Օյս տուարեալ, ակնածի քահանայն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Օ քեզ որ յամի գթած և մարդասէր Տէր ես՝ աղաչեմք հանապազ. զի զօրացուսցես զմեզ օրըստօրէ՝ կալ ՚ի կարգի կրօնաւորութե մերում։ Խնթեացո Տէր զքաղցր լուծ քո զոր եդիր ՚ի վերայ մեր. զի կարասցուք կալ ՚ի պատուիրանի քում, և զհաճոյսն առնել առաջի քո յամժամ ՚ի տուէ և ՚ի գիշերի, հրեշտակային երգակցութեամբ զքեզ օրհնել։

Մ՛դէ՝ նայեաց դարձեալ թէ, որպէս մեծաքանչ պաղատանօք զնոյն հայցէ, զգաստութն և զմարդասիրութն յիշեցուցանելով, աղաչէ՝ օրըստօրէ զօրաւոր լինել ՚ի հրեշտակական կարգաւորութիւն. զայն ունել կրօնաւորութիւն՝ զոր հրեշտակքն։ Որոնք ասի հաւատք և վարք ուղիղ. յորմէ՝ աղաչէ անթերի մնալ և անմեղկելի ոչ վերինքն։

Զի թէպէտ և տաժանելի հողեղէն բնութեամբս է հրեշտակացն լուծ, այլ քեզ կարողութի է թեթև և քաղցր առնել զնա մեզ՝ քո սիրովդ և յուսովդ։ Եւ զհոգին ոք ՚ի թիկունս հաստատանելով, որոյ անհնարինքն հնարաւորք՝ և անկարելիքն կարելի լինին. քանզի զայս ակնարկէ յասելն, Զի կարասցուք կեալ ՚ի պատուիրանի քում։

Եւ զօրօրինակ յառաջին նուագ նուագեաց ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք միշտ ՚ի պաշտօնն կանխել ըստ երկնայնոցն։ Այնպէս և աստ զնոյն յայտ առնէ յասելն, զհաճոյս քո առնել յամ ժամ. զի հաճոյ է նմա հաւատք ուղիղ և վարք ոք։ Ընդ ասէ՝ երկնային կանոնիւ. այսինքն՝ երկնային կարգաւորութբ։ Եւ որ առաջին կայ՝ զնոյն մաղթէ,

՚Ի տուէ և ՚ի գիշերի հրեշտակային երգակցութեամբ զքեզ օրհնել, զքեզ գովել, և քեզ փառս մատուցանել։ Տեսանես զգուշանդակ աղօթիցս բան. զի ոչ յերկնէ ինչ խնդրէ և ոչ յերկրէ. այլ զի միայն նորա փառաբանութեանն հրեշտակական վարուք արժանաւորեսցուք։

Քանզի որպէս ասացի՝ այս պատիւ քան զամ պատիւ գերազանց է, և քան զերկնից ևս արքայութին։ Որում պատուի մեծն Դաւիթ անձկացեալ, կաթոգին բաղձանօք ասէր ցԱծ, * Զինչ կայ իմ բնաւ յերկինս, կամ ՚ի քէն զինչ ևս խնդրեցից յերկրի։

Այլ արդ՝ ասա՛ ով երանելի մարգարէ․ զի թէ չունիս ինչ պէտք իրաց յերկրէ, ապա զինչ է որ քեզ փափագելին է։ * Նուաղեաց ասէ սիրտ իմ և մարմին իմ։ Աստանօր սիրտ զոգին ասէ․ և զոգւոյ և զմարմնոյ ջերմին փափագն առ ա՟ծ յայտ առնէ․ որպէս թէ նուաղել ի սաստիկ ցանկութենէն։

Մանզի կարօտութի՟ հացի և ջրոյ նուաղէ զմարմինն, այսպէս և իմ կարօտութիւնս առ քեզ՝ նուաղէ զիմ հոգի և զմարմին։ Զոր և յայլում սաղմոսի ծարաւ խսկ կոչէ։ * Ծարաւեա՛ ասէ առ քեզ հոգի իմ․ քանիմպատիկ եւս և մարմին իմ։ Այլ դարձեալ, * Որպէս փափագէ եղջերու յաղբիւրս ջուրց, այնպէս փափագէ անձն իմ առ քեզ ա՟ծ։ Այլ որպ՟ անդ ասաց՝ նուաղեաց սիրտ իմ, զնոյն օրինակ ասէ և յայլում սաղմոսի, * Անձն իմ որպ՟ երկիր ծարաւի է առ քեզ․ վաղվաղակի լուր ինձ, զի նուաղեաց յինէն հոգի իմ։

Զի որպ՟ ծարաւին արտաքսեցուցանէ զմերձակայսն թէ արտաքեցէ՛ք ջուր տալ․ ապա թէ ոչ, նուաղեալ ոգիս չհանդարտէ, այլ վաղվաղակի լքանի։ Այսպէս և մարգարէս պապակեալ յա՟ծ այսին ծարաւոյն՝ զա՟ծ աղաչէ, և զոգին նուաղեալ ասէ․ և պաղատի, * Մի դարձուցաներ զերեսս քո յինէն, նմանեցայ այնոցիկ որ իջանեն ի գուբ։ Այսինքն, թէ ծարաւոյս զովացումն չտանես՝ և զերեսս դարձուցանես, մեռելոց նմանիմ որ իջանեն ի գուբ։

Վասն այնորիկ որպ՟ ասա վաղվաղակի լսել հայցէ նուաղեցելումս․ Նոյնպէս և անդ յասելն, * Նուաղեաց սիրտ իմ և մարմին իմ ա՟ծ սրտի իմոյ։ Դու ես ասէ կեանք հոգւոյս իմոյ և առանց քո ոչ ունիմ կեանս․ յաղագս որոյ խանդաղատելով փարի զաստուծով․ * Բաժին իմ ասէ՝ ա՟ծ յաւիտեան։ Ո՛չ սակաւ ժամանակս, այլ մշտնջենաւոր բաժին իմ ես։

Այլ ասացեալ ըզհեռացելոցն յա՟յ զկորուստ, ասէ և զոր ինչ իւր բարին է։ Այլ զայն ոչ զարքայութիւն, և ոչ զոր անդ բարիքն ընտրէ, այլ զառ ա՟ծ մերձիլն և զյուսալն ի նա և զօրհնելն զնա․ այսպէս ասելով, * Ինձ մերձենալ առ ա՟ծ բարի է, և դնել առ Տէր զյոյս իմ․ և պատմել զա՟մ օրհնութիւնս նորա։

Նախ՝ ասաց թէ չկայ ինձ խնդիր և ցանկութի՟ արոց, ոչ յերկինս և ոչ յերկրի․ վասն զի առ քեզ ցանկութիւնս իմ նուաղէ զիմ սիրտս․ և դու ես իմ սրտիս բաղձանս։ Այլ աստ ասէ, ինձ առ քեզ լինիլն բարի է․ ապա ուսարտ զոյն դնէ՝ զօրհնելն զնա ա՟ծ։ Այլ յայլում սաղմոսի ասէ, * Շուրջ եկեց և մատուցից ի խորանի նր՟ պատարագ օրհնութեան․ օրհնեցից և սաղմոս ասացից տն՟։ * Լուր տր՟ ձայնի իմում զի կարդացի առ քեզ․ ողորմեա՛ ինձ և լուր ինձ զի զքեզ ասաց սիրտ իմ․ և խնդրեցին երեսք իմ զերեսս քո տէր խնդրեցից։

Եւ զի՞նչ է զոր կարդացերն․ կեանս յաւիտենից, կամ որ անդ բարիքն խնդրեցեր։ Ա՛չ ասէ․ այլ զի՞նչ։ *Զմի ասէ խնդրեցի և զայն աղաչեմ։ Եւ ո՞ր է այն․ բնակել ինձ 'ի տան տեառն, և շուրջ զուեղանով նորա երգել զերգս օրհնութե։ Եւ որպէս սովոր եմք զախորժակս մտացն յայտնել այսպիսի բանիւք, եթէ չասէ ինձ ինչ մնացս՝ բայց յայսմ իրէ․ սոյնպէս և մարգարէս յամէ հրաժարեալ զմին և եթ խնդրէ, զամ աւուրս կենացն 'ի տան այ բնակել․ և զնա տեսանել և օրհնել հանդերձ հրեշտակաց։

Վասն որոյ և զտենչանս յայտ բերէ թէ, *Զքեզ ասաց սիրտ իմ․ և խնդրեցին երեսք իմ զերեսս քո տր խնդրեցից։ Եւ ո՛չ շատացեալ ասել մի՛ անգամ թէ *խնդրեցին երեսք իմ զերեսս քո տէր․ Կրկնէ թէ խնդրեցից․ որպէս թէ ասել, իմ մնացս դու ես միայն․ և զքեզ խնդրեմ, և ո՛չ դադարիմ 'ի խնդրելոյ։

Ո․ յաղթի ոգի և միտս և մեք սասասցուք․ և մի՛ ինչ նախամեծար քան զնա և զնորա օրհնութիւն համարեսցուք։ Եւ սրտի մտօք խնդրեսցուք յառօթից հայցուածն ասել զամ, մեծաւ պաղատանօք զայս, Հրեշտակային երգակցութե զքեզ օրհնել, զքեզ գովել, և քեզ փառս մատուցանել հօր և որդւոյ և հոգւոյդ սրբոյ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Զկնի մաղթանք։

Սաղմոսիւք և օրհնութբ և երգօք հոգևորօք անդադար փառաւորեմք զհայր և զորդի և զսուրբ հոգի․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ՝ Երկինքպատմէն և Տէրապաւէն կանոնացն։

Վասն 'ի գիշերի և 'ի տունջեան յամ ժամու խօսիլ մեզ ընդ տեառն զմեր աղաչեսցուք։ Վասնզի քաղցրացեալ սաղմոսերգողին՝ երանութեանցն բաժանորդ լինել, խրատէ քարոզն խնդրել զի տացեն յայ այս շնորհք․ յօրէնս տեառն խորհել զտիւ և զգիշեր, և զնոյն խօսել։ Զի որպէս ասաց երանելին յովհան, թէ *Ի հոգևորսն միշտ զբերանն բանալով՝ սրբի բերանն յամ բանից որ 'ի սատանայէ առդին։

Իսկ զի սատանայի խոկ բերան լինի՝ բերանն որ խօսի զսատանայինսն։ Իսկ քո բանիցն խօսօղ լինելով և ՚ի նոյն ցանկ կրթելով, ըստանուոյ բերան նմանօղ բերանոյն քո. մանաւանդ՝ թէ յարդիւնս զբանն ածիցէ։

Վասն չանկանելոյ մեզ ՚ի փորձութիւն, որում ոչ կարեմք համբերել զոր աղաչեսցուք։ Զի յոյժ աղօթելի է այս՝ չլալ փորձութեանց որ մեզ չէ տանելի. զի բազումք կորեան ՚ի փորձութեց ՚ի վր եկելոց առաւել քան զհուրեանց կարն։ Իսկ մանանեցան պատահութեանց և ազգի ազգի պղծութեց. և անկան յուրացութիս և ՚ի հայհոյութիս, չհամբերելով ցաւոց կամ նեղութեց կամ սգոյ կամ աղքատութե, կամ այլ ազգ վտանգից, կամ չար խորհրդոց արկածից։

Իսկ լինի այս վասն ամբարտաւան և յանձնապաստան լինելոյ ուրուք. վասն որոյ ցանկ պարտիմք յաղագս խոնարհութե աղաչել. զի ապրեսցուք յանտանելի վշտաց. և զի որ գտանեն զմեր կարն, այնքան ածցէ մեզ փորձութի որքան օգտիմք և ոչ վնասիմք։ Զայն զայս գրէ կորնթացւոցն երանելին պօղոս։ * Հաւատարիմ է այն որ ոչ ածցէ զձեզ ՚ի փորձութի առաւել քան զկարն ձեր. այլ արասցէ ընդ փորձութեան և զելսն զի համբերել կարասջիք։ Իսկ տէրն յաղօթսն զոր մեզ ուսոյց՝ զայս եդ աւարտ, թէ * Մի տանիր զմեզ ՚ի փորձութիւն. այլ փրկեա՛ ՚ի չարէն։ Որով յայտ է ՚ի կարի կարեւորայն զնա գոլ։

Վասն անբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենին քո զոր աղաչեսցուք։ Բիծ կոչի արատ մեղաց. և անբիծ է, այսինքն անարատ. զի որում ՚ի մարմնում տեղի որ արատի, անպիտանանայ. և չկարէ զիւրն առ բոլոր մարմինն զպարտս վճարել. այլ և նախատանաց անուն անձինն բերէ խեղութեանն։

Յաչացն վնասեալ կոյր կոչի, և յականջացն խուլ. յոտիցն կաղ, ՚ի ձեռացն վեցի։ Իսկ թէ այլ տեղի վիրաւորեալ կամ բորոտեալ, անդ ուստ առնու զդարմանացն զկոչումն։ Իսկ միանգամայն միոյ տեղւոյ ապականումն՝ ծածկէ զայլոցն ողջութեան անուն, և յինքն զկոչումն հայեցուցանէ, զթշնամանացն միշտ ձայնել անուն, և անտի յիւրեանց ուշի պահել և այլոց ծանօթս տալ։

Նմանապէս և յարատեալ ոգիսն հանդիպի ըստ մեղացն զանուն առնուլ. սպանօղ, շուն, գող. և կամ թէ այլ ինչ յանցաւոր գտցի, այնու արատեալ, զանբծութի ՚ի բաց դնէ. և բոլոր ոգւոյն զյանցանացն դնէ զբիծ. և այնու դատի ՚ի մարդկանէ, և անկեալ յերեսացն աստուծոյ գտանի։

Թէպէտ և ՚ի մի յանցանս գտեալ և յայլսն ուղիղ իցէ, ըստ

առաքելոյ՝ *Ամենայն օրինացն պարտական է։ Սա որոյ հրամայէ քարոզն՝ խնդրել յոյ զի անբիծ պահեսցէ զմեզ. և զարատաւորն ՚ի դարձ և յապաշխարութիւն ածել՝ քաւիչ լիցի։ Ս՛ի լիցի մեզ արատեալս երևիլ յորժամ գայցէ քս և ահագին ատենին դնիցի զոր ահեղ կոչեաց քարոզն։

Քանզի ա͞մ ուսաք ահից յաւիտենութիւն լինել, ՚ի քն անձառ փառացն և անստանելի լուսոյն։ Քանզի հայրական գոյ փառօք. որում և հրեշտակք ՚ի սպասու կալով յիսկզբանց մինչև ցայս օր, և ոչ մի ժամ առանց երկիւղի և դողման ՚ի փառանկայն հայիլ կարասցեն. զորս ըստ հանդուրժելոյ նոցա նոցին ցուցանէր։

Դարձեալ՝ և ՚ի հրեշտակաց անհուն զօրացն՝ է սարսափելի օրն. քանզի ա͞մ հրեշտակք ասէ գայցեն ընդ նմա։ Իսկ թէ, մի հրեշտակի երևումն այնքան տագնապ հրեշտակացելոյն եթէ դնիցէ, մինչև հալիւ զոգւոյ ելումն արգելուլ ՚ի մարմնոյն նոյն հրեշտակի։ Ապա քանի՞ պակուցումն մեղաւորացն լիցէ յերևմանէ ա͞մ հրեշտակացն. որք ահագինս հայեսցին ՚ի նոսա վասն տապաստմբելոյն յերկրեանց տեառնէն։

Նաև կոծն այն սաստիկ ախեղերական, քանի՞օն անըմբերելի լինիցի. և կամ հուրն որ առաջի տեառն գայցէ՝ մեծաւ նախանձու այրել շուրջ զթշնամիս նորա՝ ո՞րպիսի ինչ տագնապաբեր լինիցի։ Նաև չար գործոցն երևումն ո՞րքան երկիւղ և ամօթս և վտանգ ածիցէ. քանզի իւրաքանչիւրոք յանդամոցն, զիւրոյ սխալմանն ըղ կերպ աշխարհատես ցուցանէ։

Այն՝ զպայծառութե և զչարակնութե, զանողորմութեան, զանակնարկման ՚ի կարիս եղբօրն։ Զխայտալն՝ ՚ի զգեստս և յինչս և յարարս և ՚ի սնոտացուածոց յաւախնումն. և զոչն տեսութե արարչածոցս՝ զարարիչն օրհնել. և զոչն առաջնորդել նոքօք յընկերացն օգուտ, գործով կամ օգնականութե, կամ մխիթարական տեսութե և վշտակցութե։ Զոչն արտասուելոյն վս իւրոցն և այլոց մեղաց, կամ վս մարմնոյ վտանգին. զայս և զայցէն նմանս կերպարանաւ աչքն։

Նոյնպէս և ունկն՝ զանլուրն լինել հրամանացն այ, և զհլուն՝ անառակ խօսից և երգոց և անիրաւ խրատուց, և զըմպարտութեց և նենգութեց և բանբասանաց և այլոց պիղծ ասիցն։ Իսկ զչընդունելոյն զձայն կարեաց և վշտաց եղբօրն և զրկանաց զրկելոց, և զդատաստանաց և զատապարտեալոց, և որ այլ այսոցիկ նման ականջացն արարք։

Բերանն՝ զդատարկաբանութե, զատութե, զերգման, զպղծաբանութե. զբամբասանացն, զանիծից, զարտնջմանն, զթշնամանաց,

զանարկութեան զլկտութէ, զչարախօսութեան, զարգելլոյն զբարի խրատն, զոչ ուսուցանելոյն զօգուտն զհոգւոյ և զմարմնոյ, և ըզ չխօսելոյն յար ընդ Այ, և կամ զխօսն ընդ մարդկան։ Եւ զուրացմանն, և զխաբէութեան, և զկեղծաւորութեանն, և զանփառութեանն, և զարհամարհանացն, և այլ ևս անիրաւութիւնք բերանոյն՝
կերպաձևի յայնժամ։

Չեռք՝ զդատարկութեան, և զոչ վաստակելոյն, և զոչ կերակրելոյն զաղքատս և զակարս և զկիրաւորս, և զոչ սպասաւորելն հիւրոց և հիւանդաց և բանտարկանաց։ Եւ զոչ աղաչելն զԱծ հանապազ, և զոչ համբառնալն առ Նա սրբութեամբ, և զոչ փրկելն զզրկեալս, և զոչ թափելն և խաղաղել զկռուեալս։ Զգողանալն, ըզզրկելն, զարբանեկելն պոռնկութեանց և ազգի ազգի պղծութեց, դձգելն 'ի կաշառս և յանիրաւ հարուածս։ Կամ չինել կամ ժողովել ոչ ուղղապէս զինչսն կամ զստացս, կամ վառնել և ցրուել անպատրաստաբար կամ ագահութեամբ։ Եւ որ այլ գունակ ձեռաց մեղաց՝ ազգի ազգի որոշմամբք երևելեան Այ և Քմ աշխարհախումբ հրապարակին։

Ոտք՝ առնուն զհանգամանս ոչ աշխատելոյ 'ի ճանապարհս բարեաց՝ յաղօթից՝ յողորմութեանց՝ 'ի տան Այ, 'ի սպասաւորութի հիւրոց, 'ի տես հիւանդաց և արգելականաց։ Այլ և պղերգանալն առ 'ի գործ և յուստմն բարութեան, և յօգնել և 'ի կարեկցել եղբարց ըստ Քմ ախտալից և վշտաց։ Եւ զընթանալն 'ի չարիս՝ 'ի գողութիւն յազգի ազգի մեղս, և 'ի պէս պէս պոռնկութիւնս և 'ի պղծութիւնս, և 'ի խարդախութիւնս և 'ի կռիւս, 'ի խաղս և 'ի թատերս և 'ի ժողովս այլանդակս և 'ի տես անառակ և պիղծ երևմանց, և հանդամանակաց և արբեցութեց. և որ այլ ազգ ևս անառակ շաւղօք գնացեալ իցէ։

Յայտնէ և որովայնն զորովայնամոլութեան տեսակս, զգունակ գունակ շուայտութիւնսն և զանզգօրինակ փափկութիւնսն. և ըզյանդգնեալ պարծանօք արբեցութիւնն և զզեղխութիւնսն. և մանաւանդ որ յայլոց աշխատութեանց և 'ի բազմաց կարօտ և անտեր լինելն, և կամ սովամահ ևս։ Եւ որ վասն որդէծնութե է մարմին, զպէսպէս պղծալից ախտիցն և զգիջութեցն բացայայտէ զօրինակն։

Եւ ոչ այսչափ միայն, այլ և սիրտն զբազմութիւն պղծալից խորհրդոցն և զյորդութի զանազան չարեացն զոր ծովացեալ յինքն 'ի ներքս և վերաբերեաց արտաքս զԱմ, որպ զանազանութի աղէտից ազգխազգեալ, 'ի յայտ երևութի Այ և հրեշտակաց և մարդկան բերէ։

Եւ 'ի կշտամբութիւն խորհելեացն և գործելեացն որպ̃ ասացն առաքեալ, * Յանդիմանել զմեղաւորս 'ի խորհրդոց իւրեանց. կամ թէ պատասխանի իսկ տալ յաւուր յորում դատէ ած̃ զգաղտնիս մարդկան ըստ աւետարանիս իմում։

Վասնզի խորհուրդ խորհրդոց յանդիմանիչ լինի. և երևմանց գաղտնեացն որպ̃ թէ պատասխանատու լինի. թէ այսպիսի վատթարութիւն էր՝ յոր ժպրհեցարն, և ինձ ոչ լուար և խափանեցեր։ Զի համառօտ ասացից, ամ̃ ըստ մեղացն նկարագրին իւրաքանչիւր անդամք. որպ̃ ասաց առաքեալն Թադէոս, թէ * Որպ̃ 'ի մագաղաթի կերպարանիլ անձնիւր գործոց։

Կամ որպ̃ սուրբ լուսաւորիչն զգարունն 'ի գալուստ քի̃ օրինակեալ, ցուցանէ զբարի ցուցումն բարեաց՝ բուսովք տնկովք ծաղկովք հոտովք, համով մրգոցն և երևմանց բիւրազգի ծաղկաց և որ 'ի նոցանէն հեշտութիւնք աչաց և քմաց և ճաշակելեաց։

Իսկ զմեղացն յայտաբերումն՝ զանազան փշովք և փտատակեր բուսովք. յորս ասէ, * Ընդ քեզ բուսանիցին զորս ընդ քեզ թաղեցեր, արդարութիւնքն կամ մեղքն։ Նա և առաքեալն պօղոս զայն իսկ վկայեաց յաւելն վասն մեղաց թէ՝ * Եւ որ այլ ազգ ինչ իցեն, թաքչել ոչ կարեն։ Եւ գործեալ վասն բոլոր չարեաց կերպարանալով 'ի մեղաւորս՝ ասէ, * Մի կերպարանիք կերպարանօք յոր ինչ աշխարհս այս. այլ որ նորոգմամբն է։

Եւ զմեղս կերպարանիւն՝ հին մարդ կոչէ. զոր մերկանալ հրամայէ և զնորն զգենուլ որ ըստ այ̃ն հաստատեալ է արդարութբ̃ և սրբութբ̃ և ճշմարտութբ̃։ Եւ այս զիւրաքանչիւր անդամն զհին մարդոյն զոր մերկանալ հրամայէ՝ համառօտ բանիւք յայս բերէ։

Զայն և յայլում թղթի գրէ, * Թլփատեցարուք զանձեռագործ թլփատութիւն 'ի մերկանալ զանդամս մարմնոյ ձերոյ թլփատութեամբն քի̃։ Եւ ասացեալ նշ̃ զհին մարդն մերկանալ գործովք իւրովք, յաւելու 'ի նոյն. * Եւ զգեցարուք զնորն նորոգեալ 'ի գիտութի̃ ըստ պատկերի արարչին իւրոյ։ Զի ոչ միայն զհնացեալ մեղօք անդամն չմերկանալն դատապարտէ, այլ դատապարտին և այնոքիկ որք զնորն ոչ զգենուցուն. և ոչ 'ի կերպարանս արարչին նկարագրին։

Վասնզի և յիմար կուսանքն ոչ զի պոռնկութեան ունէին ըզ՝ կերպ՝ արտաքսեցան յառագաստէն և զրկեցան 'ի փեսայէն, այլ զի զողորմածութեանն զարդ ոչ ունէին յանձինս որով ընդ առաջ ելանէին փեսային։ Եւ ձախակողմեանքն ոչ զայծից թխութեան ունէին սևութի̃ վասն այնր, զի զգողութեան և զայլոց չարաց կրէին զարատ յանձինս, այլ զի ողորմութեան պատկերաւն՝ իւրեանց արարչին ոչ էին նմանեալ։

Արդ որ մեղացն կերպարանաւ անդր փոխին, և որք զարդարութեան ոչ զգենուն զմարդկան առաջին դատապարտն լինել կրեն. որպէս և ասէն առաքեալ, * Զի ամ բերան խցցի և դատապարտ լիցի ամենայն աշխարհ աստուծոյ։

Աշխարհ զմեղաւորսն և զոչ արդարացեալսն սովոր են կոչել գիրք. զորոց խնուլ ասէ զբերանս և դատապարտ այ լինել։ Որպէս 'ի ձախուն կայն, որ վն անողորմութեն խցան բերանքն. կամ ծառային որ զտաղանդն թաքոյց։ Եւ ոչ այնորիկ որ աղտեղի հանդերձ զգեցեալ էր 'ի հարսանիսն, այսինքն՝ 'ի մեղս կերպացեալ մարմնովն։

Այլ զի մի՛ ինչ մեզ այնպիսի դիպեսցի՝ հրամայէ քարոզն աղաչել զած զի շնորհեսցէ զամ բիծ բնաւ անդամոց մերկանել, և բոլորովին 'ի պատկերին քի կերպանալ։ Եւ անբիծ և անդատապարտ կալ մեզ առաջի ահեղ ատենի նորա։

Որպէս զի՝ ոչ մեղացն բիծ արատաւորս զմեզ ցուցցէ կամ արդարութեան պակասութն դատապարտեսցէ։ Այլ զի անբիծ 'ի մեղաց լեալ և անանուաղ յարդարութեն վաստակոց առանց կշտամբանաց և անդատապարտելիք լեալ, յերկիւղէն մեծէ և յամօթոյն անբաւէ և յանմխիթարելի տանջանացն զերծեալ, զանեզրական կեանս անպատում պարգևօքն շահեսցուք յահեղ ատենին որ այնպէս է որպէս ասացաք։

Վասն առաջնորդելոյ մեզ 'ի նաւահանգիստ կենացն ան, զսէր աղաչեսցուք։ Բազում անգամ խնդրեցի 'ի միտս իմ էր աղագաւ ոչ զայս տուն եդեալ նախ որ յաշխարհէս էր կամարար լինել այ, և ապա զանբիծ և անդատապարտն կալ 'ի հանդերձեալ ատենին։

Իսկ այժմ թերևս հասի պատճառին շնորհօք այ. զի որպէս 'ի սաղմոսելն օգնականութի և պաշտպանութեան խնդրելով՝ յարէ 'ի նոյն, * Մի տար 'ի սասանումն զոտն քո. և մի՛ ննջեսցէ պահապանն քո։

Այլ որպէս և սա զանբիծն և զանդատապարտն լինել հայցելով՝ ցուցանէ թէ որով օրինակաւ այն լինիցի. եթէ աղօթիւք խնդրելի է 'ի տեառնէ առաջնորդել մեզ յայն ճանապարհն որ 'ի կամս նր հանգուցանէ զմեզ։ Եւ մեք ևս ճանապարհորդեսցուք 'ի նոյն. զի առաջնորդել՝ ոչ որոց արձանացեալ կան, այլ որ գնան 'ի փափագելեան երթալ, նոցա են պէտք։

Եւ զի որք գնան 'ի շաւիղս արդարութե և 'ի նաւահանգիստ կամացն տեառն հասանեն՝ նոյ է անբիծս և անդատապարտս երևել յահեղ ատենին։ Վասն այնորիկ զփափագելիս անբծութե 'ի դէմս ածեալ, զճանապարհն և զառաջնորդօղն որ այսմ հասանել տանէ, հայցել հրամայէ։

... Եւ եթէ զինչ օրինակաւ զկատարելութիւնն այ՝ նաւահանգիստ կոչէ։ Զի որչափ արտաքոյ կամացն այ լինին մեր ոգիքս, ոչ 'ի ծովու ալեկոծիմք ազգի ազգի մեղօք և պէս պէս ցանկութեմբք, անթիւ հողմով և զանազան տրամութեանց ալեկոծիւք։

Իսկ շնորհիւն այ առաջնորդեալ և 'ի կամս նորա, դադարումն լինի մեզ հոգոցն հողմոց որ զոգիսն փլասեն։ Քանզի չկարէ ցանկութիւն մարմնոյ շարժել զհաստատեալն 'ի կամս այ։ Չազդէ և ոչ կարիք մեղացն յոյնպիսին. այլ խափանեալ լինին շարժմունք նր. և իբրև ընդ վիմի հարեալ՝ խորտակեալ լինի կրունկն դաւանոյ։

Եւ ոչ հոգք որ վասն աշխարհիս, և կամ վասն մեծանալոյ, և կամ վասն բնաւ իսկ հարկաւորացն տղագաւ զնա հեղձուցանէ. զի այ հաստատեալ լինի զպէտս հոգւոյ և մարմնոյ. և օգուտ զայն գիտէ զոր նայն առնէ. և անտրտում և խնդամիտ լինի միշտ.

Եւ ոչ երկիւղ զնա սասանէ ուստեք. այլ նման լերին անխախտելի է սիրովն այ՝ ըստ գրեցելումն, *'Ի բաց լեր յանիրաւէ անտի. և դողումն 'ի քեզ ոչ մերձեսցի։ և՝ *Ոչ երկեայց 'ի չարէ, զի դու ընդ իս ես։ և եթէ՝ *Տէր լոյս իմ և կեանք իմ, ես յումմէ՞ երկեայց. տէր ապաւէն կենաց իմոց ես յումմէ դողացայց։

Զի թէ որք մարդկան ըստ կամաց հաճոյանան ծառայք, անհոգ և անվրդով իւրեանց ստանան կեանս. ապա քանի՞ աներկիւղ և անհոգ և ազատ կեանս նոցա խնամոյցեն՝ որ մարդասիրին այ ըստ ամենայն կամաց հաճոյ լինին, վասն որոյ ասաց մարգարէիւն ած. *Ահաւասիկ որք ծառայենն ինձ, ցնծասցեն ուրախութեմբ սրտից։

Արդարև մեծ և անպատում ուրախութիւն է յայն, յորժամ սրտիւ կամարար այ գիտէ զանձն. և վստահացեալ 'ի նա լինի իւր. ամ օգնոյ և պահողից։ Արդիս՝ և հանդերձելոցն, վասն այնր նաւահանգիստ կոչէ քարոզն, և յորդորէ խնդրել 'ի տեառնէ զի առաջնորդ առ այն լինիցի։

Վասն արժանի լինելոյ մեզ վերին կոչմանն և երկնից արքայութեանն զոր աղաչեսցուք։ Այն է վերին կոչումն, *Եկա՛յք օրհնեալք հօր իմոյ, ժառանգեցէ՛ք զպատրաստեալ ձեզ զարքայութիւն իսկզբանէ աշխարհի։ Վասն զի 'ի վեր յերկինս կոչէ և տանի. և անդ ժառանգս առնէ իւր ամենապատրաստ թագաւորութեանն, զոր արքայութիւն կոչէ, զոր և յսկզբանն պատրաստեաց։

Բայց ա՛ղէ տեսցուք զպարգևս մեծութիւն, ոչ որքան էն. զի այն հրեշտակաց անիմա՛ց է, թո՛ղ թէ մարդկան. բայց որքան փոքրկութիւն մտաց մերոց կարէ ձգել յիմացումն։

Յորժամ կոչող՝ այ միածին որդին իցէ, և առ իւր հայրն կոչիցէ, և օրհնեալս 'ի նմանէն անուանեսցէ, և զիւր թագաւորութիւն

նոցա խոստանայ, ոչ տալ միայն, այլ և ժառանգեցուցանել. այսինքն սեպհական նոցա առնել որպէս և իւրն է սեպհական։

Արդ եթէ որդին Այ զայն ունելով թագաւորութիւն մծ է, յայտ է թէ և սոքա որ զնոյն ժառանգեն թագաւորութի՝ մծանան. յաղագս այսորիկ շնորհացս է զոր աղաչել քարոզն միաբանէ։

Արդ զի երկոքեան այս պարգևք, անբիծ և անդատապարտ 'ի մեծի աւուրն երևելն, և արժանի լինել վերին կոչմանն, յայնժամ է լինի՝ եթէ 'ի նաւահանգիստ կամացն Այ առաջնորդեսցիմք։ Զայն սակս զայս 'ի մէջ երկոցունցն դնէ. որոց արժանի արասցէ զմեզ ողորմութեանն քի շնորհքն, ամէն։

---

Աղօթք՝ Երկմնքպաշտամեն և Տէրապաշտեն կանոնացն։

Ի գիշերի և 'ի տուընջեան և յամ ժամու առ քեզ կարդամք մարդասէր տէր։ Որպէս որ զկարդալն առ մծ՝ ցուցանէ պատճառ լսելոյն՝ և զայս մարդասիրութի. ոչ զուղէղ վարս և ոչ ըղ բարեաց գործոց յոլովումն, այլ զի զտիւ և զգիշեր յամ ժամու առ քեզ կարդամք, և զամ պէտս քեզ ծանուցանեմք. և խնդրեմք պարգևել մեզ, յուսացեալք յայն՝ զի մարդասէր ես։

Արդ զի՝ որչափ դեգերիմք առ քեզ 'ի կարդալ՝ ախորժես. չէք ժամ գիշերի կամ տուընջեան որ անպատշաճ լինի աղաչելոյն զքեզ։ Զի ոչ ես մարմնաւոր տէրանց նման, որք ժամանակ պատշաճ խնդրեն, կամ յամենայն ձեղակիր լինին։ Այլ յամ ժամու կարդալն առ քեզ՝ հաճելի է քեզ, և յաճախել զօգտակար խնդիրն գովելի, և յամենն յաղօթս առաւել բաղձանս. քանզի մարդասէր տր ես։

Արդ սատկութիւն գթոց քոց, առաւել պատրաստ առ 'ի լսել առնէ զքեզ յորժամ և կարդասցեմք։ Արդ զօգտակարն մեր առաւել ցանկաս տալ՝ քան մեք առնուլ. և յամենայն առ քեզ յայտ կարօտիս անկարօտ քո բնութեամբ. Արդ զայս մեր գիտացեալ, երբ կամիմք՝ կարդամք առ քեզ 'ի գիշերի և 'ի տուընջեան։

Տէր մեզ Այ փրկիչ մեր։ Պարզեալ այլ պատճառս դնէ լսելութեան, Այ մեր ես ասէ, և դու ստեղծեր զմեզ. և արարչի առ արարածս բազում է խնամակալութիւն։

Այլ և փրկիչ մեր ես՝ որ մարմնանալովդ քո և մեռանելովդ փրկեցեր զմեզ 'ի չարէն որ վաճառեաց զմեզ մեղաց, և դատապարտեաց զմեզ տխրոց և մահու և ապականութեն։ Արդ զի որինչ վասն մեր եղեր 'ի վերայ մեր կրեցեր՝ ողորմեա մեզ 'ի քեն առնէ։

Խոնարհեցո՛ զունկն քո ՚ի խնդրուածս մեր ։ Մի՞ թէ ուրոյն ուրոյն զգայութիւնք իցեն այ, և մին լսէ՞ և միւսն տեսանէ՞ և այլ ոմն խօսի՞, քա՛ւ լիցի ։ Եւ կամ թէ ո՛չ ՚ի վայր խոնարհի ՚ի լսելութիւն, չորդո՞ նմա զոր ասեմքն ։ Ո՛ն անդր, իբա՛ց թողցես որ ինչ մարմնոյ է ․ զի ած՝ ամիւ լուր է ․ ամիւ տես է ․ ամենայնիւ բան է ։

Որպէս ասաց մեր տէր լուսաւորիչն, և յամ տեղիս մօտ է ․ և ամ գիտելի՛ է նմա ․ խորհուրդք, և բանք, և գործք ։ Իսկ մեք ՚ի մերոց ասաի խօսիմք ընդ նմա ․ ասեմք՝ զարթի՛ր ընդէ՞ր ննջես՝ անքունականն ։ Արի՛ ասեմք այնմ, որ ո՛չ ունի բնաւ պէտս նստելոյ ․ ա՛ռ զզէն և զասպար քո ասեմք նմա, որ ո՛չ է կարօտ զինու ։ Ըստ այնմ օրինակի ասեմք և խոնարհեցուցանել զունկն, և բանալ զաչս, և առաքել զձեռն ՚ի փրկութի, և զնետսն ձգել ՚ի ցրումն թշնամեաց ․ և այսու ամենայնիւ զկամսն մաղթեմք ։

Նա և ՚ի մարդկան սովորութի այսպիսի իրս գտանեմք ․ խնդրեմք ինչ, և չկամին տալ, չլուաւ ասեմք ․ թէպէտ և լուեալ իցէ ․ և ՚ի տալն զխնդիրն, ասեմք լուաւ ։ Ո՛չ զայն ցուցանեմք թէ յականջսն աղդեցաւ ձայնն, այլ թէ կամացն ընդունակ եղև ։ Այնպէս և աստ զկամին ընդունիլ՝ կոչեմք ունկն այ ․ ՚ի խոնարհումն ՚ի մեր խնդրուածս, և զայն մաղթեմք ։

Բազում անգամ առաջի աչաց ուրուք աղաչանս մատուցեալ ասեմք՝ տե՛ս զաղաչանս ։ Եւ ՚ի լուր ականջաց խօսիմք, ասեմք՝ մի՛ անլուր լինիր, այլ մատո՛ առ իս զականջդ ․ զայս խնդրելով, զի կամք նորա դարձցին ՚ի մեզ ։ Եւ թէ լինիցի այն, և խոստանայ զխնդիրն ․ դառնալ ասեմք կամացն ։

Բայց իմացիր և զոր ինչ մարմնապէս բանն աստուածային ․ ո՛չ զի զքոյդ ՚ի նմա նկարեսցես, այլ զի քոյովդ զնորայոցն գիտութիւն առնուցուս ։

Զի մի՛ ընդունայն լիցին վաստակք ծառայից քոց ։ Զի՞ է տաժանելի է՞ քնութիւն և վաստակի յողդողելն ․ և զի ծառայք քո եմք՝ մի՛ ընդունայն առներ, այլ ի՞նչն անօգուտ ։

Իսկ համարեա՛ զաշխատութիւն մեր գործս արդարութեան ։ Զայս ասէ, զոր աշխատիմք ՚ի կալն առաջի քո յօրհնել և յաղաչել, համարեսցիս արդարութիւն գործել, և պտուղ ածպաշտութե բերել ․ և թէ և այլ ինչ արդարութիւնս չունիմք ։

Քանզի թէև բարի ինչ ՚ի վարս մեր գտանիցեմք, պա՛րտիմք հանել ՚ի մտաց, և մեզ ողորմութեան վս՝ զպարգևսն այ համարեսցուք ։ Զի որ յաջողէն մեզ զկամին և զառնելն զբարին՝ ած է ․ և մեր նորա զամ համարել, խոնարհ հոգւով առ նա կարդասցուք ․ որպ և

աղօթիցս վարէն մտաց ամ̃ խոնարհութե̃․ զոր և ցուցաք մի ըստ միոջէ, և ցուցցուք յառաջիկայիցս։

Ընկալ տէր զաղօթս և զերկրպագութիւս մեր, և հաստ մեզ զողորմութի քո առատապէս։ Ողորմիլն ոչ է պարտուց որպ̃ ատացաքն․ այլ ՚ի կարեկցութէ և ՚ի վշտակցութէ։ Եւ արդ զի լի եմք ամէ կարեօքն վշտաց՝ ընկալեալ զոր աղաչեմքս երկրպագութեամբ, Հաստ առատապէս զողորմութիւն քո։ Քանզի գիտես զպէտս մեր զհոգւոյ և զմարմնոյ, ողորմելով առատացն զամենայն։

Ծածկեա զմեզ ընդ հովանեաւ աջով քով։ Զի թէ և առատասցիս առ մեզ ողորմութե պարգևօքդ, չէ ինչ մեզ օգուտ, եթէ ոչ քո խնամակալութեդ ամրացուսցես զմեզ, զոր աջ կոչէն գիրք։ Քանզի և ադամ պատուակից, այլ անխնամ եղեալ՝ հաւասար անասնոց և նման նոցա գտաւ։ Իսկ և սողոմոն ամ̃ իմաստութե̃ և շնորհօք լցեալ, այլ կանանցն կողոպտեալ եղև ՚ի շնորհացն։ Կոչեցաւ յառաքելութի և յուդաս, և յառաջին դունդ աշակերտացն թուեցաւ․ և զքանչելագործելն ունէր, և մի յերկոտասան աթոռոցն նորա էր․ այլ անկեալ յերանութեանցն եղկելի ամենեցուն եղև, չարին տուեալ տեղի։

Վասն այնորիկ և աղօթիցն բան՝ ոչ միայն զի ողորմելովդ առատապարգև լիցի ՚ի մեզ մաղթէ յոյ, այլ և զի նովին պարգևօքն ամուրս և անըմբռնելիս զմեզ արասցէ․ վասն որոյ և յարէ ՚ի նոյն,

Արա առ մեզ նշան բարութեան։ Զոր և դաւիթ հայցէր զօրաւոր առնել նշանաւն բարութե․ զի տեսցեն ատելիքն և ամօթով լիցին դարձցին․ և ս̃բ երրորդութիւնն փառաւոր լիցի մերով փրկութե̃բն։ Քանզի զայս յայտ առնէ յարելն ՚ի նոյն,

Ի փառաբանութիւն և ՚ի պատիւ սուրբ երրորդութեանդ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Հովիւ քաջ, հովիւ բարի և յաւիտենական, նոյնպէս և այց արա բանաւոր խաշին արօտի քո զոր ժողովեցեր առ քեզ գթութեամբ քով։

Քաջ հովիւ է որպ̃ ինքն ասաց․ զի զանձն իւր եդ ՚ի վե̃ր հօտի իւրոյ, ոչ խնայել զանձն և ոչ զանգիտել ՚ի մահուանէ։ Եւ յաւի-

տենական է, ոչ սպառումն ունելով. զի առանց անցանելոյ ունի ըզ հովուութիւն և զքահանայութիւնն։ Որում մաղթէ աղօթիցն բան, չդարձուցանել զերեսս վասն մեղաց. այլ նայիլ և խնամ տանիլ բեկելոյն, վիրաւորելոյն, մոլորելոյն, ակարացելոյն։

Զի այցելութի, խնամակալութի կոչի. և զի նոյն գութ որ 'ի ցրմանէն և յօտարանալոյն 'ի քէն, ժողովել զմեզ սախալեաց, նոյն և այժմ 'ի խնամակալութի զմեօք զքեզ ածցէ։ Որանզի յամ տիեզերաց 'ի մի միաբանութի հաւատոյ ժողովեաց ըստ գրեցելումն, *Յամ գաւառաց ժողովեաց զնոսա, յարեւելից և յարևմտից, 'ի հիւսիսոյ և 'ի ծովէ։ Ըստ ասէ,

Որ առաջի կամք տէր, և առ 'ի քէն ողորմութեանցդ ակն ունիմք։ Չունիմք ասէ 'ի վերուստ համարձակութիւն. այլ առաջի կամք՝ ցուցանել զմեր աղքատութիւնս, և ողորմիլ ակն ունիմք։ Որպէս ասաց մարգարէն, *Նայեա առ իս և ողորմեա ինձ, զի միամօր և աղքատ եմ ես։ Նոյն խնդրեմք օրհնել զմեզ, իմաստուն տանել հոգևոր իմաստութեան, լուսաւորել լուսով գիտութե քո, և տալ մեզ զերկնից արքայութիւն քո. այսպէս ասելով,

Զամենեսեան օրհնեա, զամենեսեան իմաստնացո, զամենեսեան լուսաւորեա. և ամենեցուն պարգեւեա զերկնից արքայութիւն. զի դու ես տէր կենաց և ամ ողորմութեանց. և քեզ վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ուսանիմք զայս այսու թէ, խոնարհութե պարտիմք խնդրել յոյս, և յողորմութի միայն յուսալ։ Զի դու ես կեցուցիչ, վասն այնր խնդրեմք. զի այսպէս ունի բանն. Զի դու ես տէր կենաց և ամ ողորմութեանց. և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Մաղթանք։

Ի գիշերի և 'ի տուընջեան և յամ ժամու անդադար փառաւորեմք զհայր և զորդի և զսուրբ հոգի. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## Քարոզ՝ Մինախանձիր և Խոստովան կանանց :

Վասն ուղղելոյ զգնացս մեր 'ի ճանապարհս խաղաղութեան զանէր աղաչեսցուք : Զի՞նչ է ուղղել զգնացս . անձուկ զճանապարհն առաջ տեսին . և պատուիրեն օրէնքն , մի՛ յաջ խոտորիլ և մի՛ յահեակ : Նա և սողոմոն ասէ , *Է՛ ճանապարհ որ թուի մարդկան ուղիղ . բայց կատարածն հայի յատակս դժոխոց : Իսկ սաղմոսանուագն և 'ի ճանապարհին իսկ որոգայթ եդեալ ասէ , *'ի ճանապարհս յոր և գնայի՝ եդաւ ինձ որոգայթ :

Ո՛ն առեալ , եթէ ասացէ՞ր՝ ըստ խորաքննչաւորացն պատմեսցուք : Անձուկ է ճանապարհն այն աշխարհաւորաց . նախ՝ զի ոչ ախորժեն զառաքինութիւն , այլ զլայն և զմեղկ կեանս սիրեն : Անձուկ ասի դարձեալ , վասն զի նուրբ է . և աստի և անտի ոչ ուղիղ գնացելումն ունի զանկումն 'ի կործանման վիհն . այս իսկ է զոր ասեմք .

Խոտորումն է պոռնկութիւն յուղիղ ճանապարհէն . խոտորումն է և պարծիլ 'ի կուսութիւն և խոտել զամուսնութիւն : Այս է զոր տէրն պատուիրեաց՝ չխոտորիլ յաջ կամ յահեակ :

Դարձեալ՝ խոտորումն է որովայնամոլութիւն յահեակ . խոտորումն է և պարկեշտին յաջակողմն , եթէ պիղծ զկերակուրսն համարիցի . խոտորումն է բարկանալն : Խոտորումն է և չխնդրել զվրէժ զրկելոցն , հեզ առ զրկիչսն լինելով . խոտորումն է անհնարին լինել . և յոյժ խոտորումն է 'ի զրկանաց և 'ի յափշտակութենէ ընծայել Աստուծոյ , կամ զխոստանն , կամ աղաչաւանօք :

Նա զինչ այլն . չարօթելն չար է : Իսկ վասն չարի ուրուք , և վասն անձին փառաց և մեծութեան , և բնաւ իսկ վասն երկրային իրաց , կամ ոխս ումեք պահելով , և կամ թէ 'ի ցոյցս մարդկան աղօթեսցէ ոք , կարի վնասակարք են այսպիսիք :

Չհաղորդիլ 'ի տէր խորհրդոյն , զյաւիտենականն բերէ զմահ . և խղճիւ հաղորդիլն , քան արեանն առնէ պարտական : Նա և այլ այնպիսիք որք վնասեն երկոցունց կողմանցն . որով և նեղ է ճանապարհն և դժուարագնայթ :

Իսկ ըստ սողոմոնի որ ասէ , *Են ճանապարհք թուին մարդկան ուղիղք , և կատարածն հայի յատակս դժոխոց : Որպէս սաւուղին , որ պատարագօքն կարծէր հաճոյ լինել տեառն , և այնու անարգիչ բանին տեառն եղև . ողորմիլ կարծելով չապան զագագ , և զրկեցաւ 'ի թագաւորութենէ : Նա և յեփթայէ բարեգործել կամելով , պատարագ դստերն արեան գտանէր . և որ զմարգարէն ոչ կառափեաց , վրիժապարտ գտաւ : Համարեցաւ Հերովդէս ուղղութեան զանսուտ մնալ

յերդմանն, և մարգարէասպան եղև․ այսպիսիք բազում ինչ եղեն և լինին մինչև ցայսօր։

Վնասիք են որ երդնուն վասն չարիս գործելոյ․ և պահելով զերդումն, անհնարին չարեաց պարտաւորք գտանին։ Որչափ մարդիկ զատանին յամուսնացն առանց նոցա կամաց․ և ինքեանց և նոցա պատճառս չարեաց լինին։

Բազումք են, քահանայ կամ կրօնաւոր լինիլ լաւ համարին․ և յառաջս դժոխոց զինքեանս և զայլս առաքեն։ Յոլովք և զկեանցաւորս բանբասել լաւ համարին․ և որով դատեն՝ դատելոց են ըստ բանի տեառն։

Եւ զի կարի բազմանայ բանս՝ զայսոսիկ զա՟մ ասելով զպատճառսն յայտնել, ՚ի միւսն եկեսցուք զոր դաւիթն ասաց որոգայթս եդեալ ՚ի ճանապարհին։ Այս է՝ յաղօթս ՚ի պահս և յողորմութի և յայլ բարեգործութիւն ամբարտաւանիլ կամ սնապարծիլ, կամ այլոց գեր ՚ի վերոյ ելանել․ որով և փարիսեցին սնավաստակ եղև։

Արդ՝ քանզի այսքան և առաւել քան զայսոսիկ սխալանք են ճանապարհաց մերոց, հրամայէ քարոզն միաբան աղաչել զա՟ծ, ուղղել ՚ի ճանապարհս արդարութեան զգնացս մեր․ այսինքն՝ ստուգութիւն որ անթիւրն է անխոտորն և անգայթակղն, որ երանելի առնէ զանբիծն ՚ի ճանապարհի։

Եւ այս ուղղի աղօթիւք և երկնչելով յա՟յ․ քանզի գրեալ է, * Ով է մարդ որ երկնչի ՚ի տեառնէ, օրէնսդէտ առնէ զնա ՚ի ճանապարհի յոր և հաճեցաւ։ Զի զօրութիւն է տէր երկիւղածաց իւրոց․ և զկտակարանս իւր ուսուցանէ ն՟ց։ Ցուցանէ ընդ որ պարտ է գնալ, և զօրացուցանելով ՚ի գնալն։ * Եւ երանին որ երկնչին ՚ի տեառնէ և գնան ՚ի ճանապարհս ն՟ր։ Զի հրեշտակաց իւրոց պատուիրեալ է պահել զերկիւղածս ա՟ն յա՟մ ճանապարհս ն՟ր։ Որք ՚ի բազուկս իւրեանց բարձցեն և չտայցեն զքարի հարկանիլ ոտից։ Այլ աստի և անտի բանակք հրեշտակաց շուրջ լեալ պահեն մինչև յանքոյթ նաւահանգիստն հասուցանեն․ ըստ գրելումն թէ՝ երկիւղածն անցցէ ընդ ա՟մ, այսինքն՝ ընդ ա՟մ որոգայթս սատանայի անցցէ, և ոչ միով իւիք վնասեսցի։

Վասն ցրելոյ զա՟մ չար խորհուրդս ՚ի սրտից մերոց զտէր աղաչեսցուք։ Բիւր ազգ են խորհրդոցն անմաքրից, որ խռովեցուցանեն զոգիս մեր․ զոր գտակն չարեաց հակառակ մեզ խմեցաւ։ Զոր եթէ կամի ոք՝ հաւաստեաւ ուսցի ՚ի գրոցն եւագրեայ, որ աղօթիւք յազգս ազգս զբաժինսն ցուցանէ․ որովք զօրանայ խարդախութիւն չարին ՚ի պղերգսն։

Իսկ փոյթքն յառաքինութիւն՝ արմատախիլ առնեն զմտ յանձանց իւրեանց. և գնայ ամօթալից այն, որ ծուլանայ ՚ի բարիս առնել. և զմեղացն տխրածախն ընտրել այլ ազգի ազգի պատճառաւ։ Սրով և զհայհոյութի խօսելով ՚ի խորհուրդն, և զանգիտել և լքանել ՚ի հոգևոր պատերազմէն այս։ Արտնութեն խաւարեցուցանէ և ձանձրութեն մեղկէ. որ յորովայնին բանութիւն գերէ, և ՚ի փառացն ցանկութի զրկէ. և ամբարտաւանութբ և ամբարհաւաճութբ յերկիր կործանէ։

Զայսոսիկ և զսոցին նմանսն՝ առաքինացեալքն ՚ի բաց մերժեցին յոգւոյն. զորոց զբո յինքեանս բնակեցուցին։ Մանաւանդ որ խոնարհքն հաստատի իցեն. զի նոքա դիւրաւ յաղթեն այնմ, որ ամբարտաւանութեն կործանեցաւ, և կործանեաց սովիմբ զմարդն։ Զի ած որ հակառակն կայ ամբարտաւանից, նա այս շնորհս խոնարհաց, առ ՚ի յաղթութիւն չարին խորհրդոց։ Այս և քարոզն յորդորէ յասելն,

Վասն ցրելոյ զմտ չար խորհուրդ ՚ի սրտից մերոց զոր աղաչեսցուք։ Մի՛ ասէ՝ յանձինս ապաստան լիցուք. այլ խոնարհութբ զած աղաչեսցուք օգնել տկարութես մերում, ընդ դէմ հնարիցն սատանայի. ցրեսցէ ՚ի սրտից մերոց զարկածս առ ՚ի նմանէ։ Եւ ոչ տացէ թոյլ՝ որդիւնս առնուլ սերմանցն զոր նա ՚ի մեզ սերմանէ. այլ անդէն հեղձուցանիցէ։ Եւ եթէ արմատ ինչ առեալ իցէ, արմատաքի խլեսցէ, և զբարին ՚ի ներքս սերմանեսցէ և անկեսցէ. զոր և յաջորդան ցուցանէ։

Վասն պարգևելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս զոր աղաչեսցուք։ Եւ ո՞ր են առողջ խորհուրդքն. որ ընդ դէմ մեղացն վարին։ Զի չար խորհուրդքն հիւանդարար ոգւոցն են. և բարիքն՝ առողջացուցիչք։ Եւ զոր օրինակ մարմնոցն ըստ իւրաքանչիւր ախտից հակառակօքն լինի դիւրելն, ջերմն ՚ի ցրտեն՝ և հովն ՚ի տապացուցչէն։ Մաղձքն որ այրդեն զընութեն, ՚ի լուծականացն և ՚ի վեր և ՚ի վայր հանողացն զնոսա բունահարին ՚ի դեղոցն։ Այնպէս և մաղասքն կծուագոյն՝ զընդդիմակն առնլով, այնպէս վայրագայիլ սախպէ։

Միոյն նմանութբ յոգիսն է տեսանել. ախտ բարկութեն՝ հեզութեամբն առողջանայ. և ամբարտաւանութիւն՝ խոնարհութեամբ. որկրամոլութիւն՝ պարկեշտութբ. պոռնկութիւն և յայրատութի՝ անխայութբ մարմնոյ։ Ընչասիրութի և ագահութի՝ սակաւապիտութբ մարմնոյ, և զարհամարհելովն ընչից և զաղքատութն սիրելով։

Ատելութիւն՝ սիրով. անողորմութիւն՝ ողորմելով. անագորոյնութիւն՝ գթով. ծուլութիւն՝ աշխատութեամբ.

Եւ բոլոր ախտքն՝ բոլոր առաքինութեամբք. որք ընդ իւրաքանչիւր ախտից հակառակ մաքառել առն զառաքինութիւն, խորհրդով ըզխորհուրդ, և գործով զգործ բժշկելով. Որ և քարոզն հրամայէ խնդրել զառողջ խորհուրդն՝ ընդ դիմակաց հիւանդ խորհրդոց, և զառաքինի վարս՝ ընդ ծոյլ և մեղկ խորհրդոց.

Վասն պահելոյ զմեզ ընդ հզօր աջոյ ամենակալին Այ՝ զՏէր աղաչեսցուք. Մինչ դեռ գեղեցիկ կարգի տացելոյս. Նախ՝ ճանապարհի նմանեցոյց զարդարութիւն, և հրամայէ խնդրել զի անխոտոր ընդ նոյն գնասցուք. Պարզեալ զսիրտն որպէս անդաստանի իրիք օրինակեալ, ՚ի չար խորհրդոց մաքրել հրամայէ, և առողջիւքն ծաղկազարդել. կամ իբր ՚ի կենդանւոյ իրէ զախտն մաքրել, և զառողջութիւն ՚ի տեղւոջն հաստատել։

Եւ զի՞ անօգուտ է ճանապարհորդին ուղղորդ գնացքն, և անդաստանին քաջաբերութիւնք, և կենդանւոյն առողջութիւն՝ եթէ ոչ յիւրաքանչիւրսն պահապանն մերձ լինիցի. Ո՛վ է զճանապարհորդըն աւազակք, և թերևս գազանք կամ սողունք վնասեն յարթունս կամ ՚ի հանգչելն յաշխատութենէ. Եւ զանդաստանս՝ արօտականք և անցաւորք ապականեն. իսկ զկենդանին՝ կերակուրք և ըմպելիք վնասեն, կամ օդոյ փոփոխմունք, կամ աշխատութիւնք անպատրաստք, և առաւել քան զկարն.

Վն այնորիկ ամենեքեան սոքա հմուտ և զօրաւոր պահապանի կարօտանան. յաղագս այնորիկ զհզօր աջն Այ պահապան խնդրէ յամենեսեան. զի ճանապարհորդն աներկիւղ գնասցէ, և անհոգ հանգչիցի. Եւ անդաստանն ամենապահ ձեռամբն պարսպեալ, ծաղկալից և արդիւնաւորապտուղ լինիցի. և կենդանին ՚ի վնասակարաց արգելեալ և օգտակարօքն սնեալ, առաւել յաջողութիւն գտցէ. Եւ զի պահապանին է ո՛չ միայն պահել զիւրսն, այլ և զնենգիչսն ընկճել. յաղագս այնորիկ յաւելու և զայն ևս խնդրել ասելով,

Վասն խորտակելոյ զհակառակորդն վաղվաղակի ընդ ոտիւք մերովք զՏէր աղաչեսցուք. Եւ ո՞վ է հակառակորդ բարւոյն, եթէ ոչ սատանայ. վասն որոյ ասէ առաքեալ, * ԱԾ խաղաղութեան խորտակեսցէ զսատանայ ընդ ոտիւք ձերովք մերձ ը մերձ. Այսինքն՝ վաղվաղակի արագ արագ կորեան ոտից լեալ, և գլուխ նորա ընդ ոտիւք մերովք խորտակեալ, անզօր լիցի աւազակել և կապտել զճանապարհորդսն, և կամ զառաքինութեան անդաստանն վնասել, և կամ կենդանութեան մերում գալել։

Աղօթք՝ Մինախանձիր և Խոստովան կանանցն.

Տէր երկնի և երկրի, արարիչ ամ՟ արարածոց երևելեաց և աներևութից. առ քեզ կարդամք յամ՟ ժամ. զի ընդ ամ՟ տեղիս է տէրութիւն քո, և արքայութիւն քո ամենեցուն տիրէ:

Նայեա՛ ՚ի սկիզբն աղօթիցս թէ զիա՛րդ բարերարութե՟ն պատճառս յուզէ: Չիք այլ տէր յերկինս և յերկրի աստ. ոչ այլ արարիչ արարածոց որ երևին և որ ոչն երևին: Նա զի այս այսպէս է, և մեր չգոյ այլ արարիչ և տէր թէ ոչ նա կարդասցուք և ՚ի նմանէ զպէտս ոգւոց կամ մարմնոց հայցեսցուք. յաղագս այսորիկ յամենայն ժամ առ քեզ կարդամք:

Ո՛վ թէպէտ և կամակոր եմք, սակայն ՚ի քո ծառայից եմք որ երկնի և երկրի տէրդ ես. զի յերկրէ և մեք եմք: Նա թէ և բարկացուցաք զքեզ, սակայն քո արարածք եմք որ զամ՟ ստեղծեր. և մեք յամենեցունց եմք: Ծառայի աչք ՚ի ձեռս տեառն է, և արարածս արարչին սպասէ և ՚ի նմանէ կերակրի և խնամի. և տէրն և արարիչն ողորմել և գթալ հարկի:

Նա՝ զի ընդ ամ՟ տեղիս է տէրութե՟ քո, և արքայութիւն քո ամենեցուն տիրէ: Թէպէտ և իցեն թագաւորք բազումք և տեարք բազումք, այլ այնոքիկ առ ժամանակ մի ըստ քոյ կարգածոյ տիրեն նմանեաց իւրեանց. և փոփոխականք և եղծանելիք են: Նա անուն լոկ է նոցա տէրութե՟ և թագաւորութե՟. և իւրեանց անձանց կենաց և մահու ոչ ունին իշխանութե՟, թող թէ որոց իշխել համարին. և իւրեանց նմանիս բազումս ունին. և է՛ զօրս և տիրացեալս՝ ինքեանց և հակառակորդս գիտեն:

Իսկ դու յաւիտենական ես ինքնիշխան, և ոչ յումեքէ կարգեալ, և ամենեցուն կենաց և մահու տէր. որ՟ ասաց սաղմոսն, *Ո՛չ ոք զանկն ՚ի վեր՟ կարէ համբառնալ զօրաւոր կամ բռնաւոր տիրել հակառակ քեզ: Որչափ առաւելութեամբ գերակայեալ ես քան զամ՟ գոյս, զի ստեղծիչ ես ամ՟ի. և չգտանի քո տէրութե՟դ ըստ տեղեաց որոշ մարդկան, այլ ընդ ամ՟ տեղիս տէրութե՟ քո: Նշանակէ թէ՝ տիրելդ քո և արքայութե՟դ քո որ է թագաւորութիւն՝ ամենեցուն տիրէ վերնոց և ներքնոց, հրեշտակաց և մարդկան և ամ՟ արարածոց ըստ առակողին բանի. *Տիրելդ քո ասէ ամենեցուն խնայել տայ քեզ յամենեսեան: Նա ըստ սաղմոսին, բանալ հարկիս զամենաբարական ձեռսդ, և լցուցանել զամենեսեան ՚ի կամացդ քաղցրութե՟:

Վասն զի արարչական կամքդ քաղցր է ՚ի վերայ չարաց և ապաշնորհաց որ անշնորհակալութե՟ն լինին. և յոյն սակս բարեգործես առ-

չարիս և առ բարիս. և մեք զայս գիտելով կարդալ առ քեզ յամենայն ժամ վտանգիւք։

Եւ արդ և զայս եւս պաղատիմք, զի տացես մեզ խնամել զանձեղ և զանբաւ տէրութիւնդ քո. և որչափ 'ի կարի մերումս՝ երկիւղիւ կեալ 'ի ծառայութեան քում։ Ճանաչել զանոխակալ գթութիւն քո և զանչափ մարդասիրութիւն և զանբաւ խնամակալութիւն, և փոխադարձել զմերն առ քեզ զսէրն որքան է կարողութիւն մեր։ Սա այսօրինակ յետ զամենակալութիւն նորա և զառ ամենեսեան զխնամակալութիւն ասելը, անդէն դնէ զայս։

Շնորհեա մեզ երկիւղիւ 'ի պաշտօնս քո կանխել զօրհանապազ. սիրել զքեզ յամենայն սրտէ և 'ի բովանդակ մտաց և 'ի զօրութենէ մերմէ։

Եւ զի ասաց տէր և թագաւոր և արարիչ ամի, և զի թագաւորաց և տերանց պաշտիլ 'ի ծառայից օրէն է, և արարչի սիրել 'ի ստեղծուածոց։ Աւասիկ զկեալ և զխնամս և զդարմանս գտանեն 'ի նորայն սիրոյ անքակ մնալ. վասն այնորիկ զասա հայցեն, առաջին և մեծ պարգև գիտացեալ զերկիւղիւ ծառայելն այ։ Չասէ թէ տուր, այլ թէ՝ շնորհեա մեզ, այսինքն՝ թէ պարգևեա։

Իսկ կանխելն, թէ անխափան և անյապաղ յերկրաւոր պատաղմանց 'ի պաշտօն քո ժամանել։ Եւ պաշտօն՝ ոչ միայն փառաբանութիւնն այ է, այլ և բովանդակ նորա ծառայութիւն. զի և մարդկան ծառայութիւն պաշտօն կոչի։ Որպէս զաւուրբ լուսաւորչեն ասէ պատմութիւն յերթալն առ տրդատ, թէ զանձն 'ի ծառայութիւն տուեալ՝ պաշտէր առաջի նորա։

Եւ 'ի տեառնէ լսեմք զայսպիսի ծառայէն որ յագարակէ գայցէ. ասել տեառն իւրոյ, * Գօտի ածեալ պաշտեա զիս մինչև կերայց և արբից ես։ Եւ զինքենէ ասէ տրն, *Որդի մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ, այլ՝ պաշտել. Որպէս թէ ասիցէ ոչ եկն ծառայութիւն առնուլ, այլ՝ ծառայել։

Զոր մարգարէն 'ի վաղուց գուշակէր, արդարացուցանել զարդարն որ մտադիւրն ծառայեաց բազմաց։ Այն 'ի հասարակաց սովորութենէ ասի. երբեմն այս անուն 'ի ծառայութեան է և երբեմն 'ի պաշտելութեան։ Եւ արդ՝ աղօթիցն բան զայս հայցէ, երկիւղիւ 'ի ծառայութեան կանխել. ըստ դաւթայ՝ *Ծառայել տն երկիւղիւ։

Իսկ զօրհանապազ, թէ յամ օր. զի և ծառայն վուլթայ զամ աւուր ծառայութիւն 'ի կանգուն ունել։ Ապա եթէ պղերգի երբէք, բարկացուցանէ զտէրն և հալիւ ապրի 'ի պատուհասէ յորում աւուր ծուլայ. թէ և յանցեալ աւուրսն առանց հեղգութեան ծա-

ռայեալ իցէ։ Նաև ՚ի տեառնէ մերմէ սուրբ և հանապազ արթնութեան պատուէր առաք և գոհէպինա ծառայութեն. վասն այսորիկ ցանկ զնոյն աղօթեմք։ Եւ երկիւղիւ յարմարեալ ՚ի ծառայութեան, ՚ի բարձրութիւն սիրոյն ամբառնալ զոր յետ այսր խնդրէ յաղօթսն։

Սիրել զքեզ յամ սրտէ։ Եւ ո՞ր է յամ սրտից. այն է. յորժամ զսէր աշխարհի և զանձին և որ ինչ յաշխարհին է՝ ՚ի բաց հանցէ ՚ի սրտէն. և զբովանդակ սիրտն՝ այլ տացէ զնա միայն սիրել։ Զի ոչ մի ինչ կարասցէ հանել զնա ՚ի սրտէն, յայնցանէ զորս պօղոս թուեաց։

Ի բովանդակ մտաց։ Եւ ո՞ր է այն. որչափ իմանայն՝ զայն գործեսցէ, որ զսիրելւոյն սէրն հաստատէ և անխզելի պահէ։

Իսկ՝ ՚ի զօրութենէ։ Որքան ունի զօրութի և կարէ պատուել զսիրեցեալն. եթէ բանիւք եթէ ընչիւք եթէ վաստակով եթէ այլ ինչ հաճոյական ծառայութեամբ։ Եւ յարէ ՚ի նոյն.

Պահել զպատուիրանս քո։ Որով յայտ լինի սէրն որպէս ասաց յովհաննէս առաքեալ. * Այս է սէրն զի գնասցուք ըստ պատուիրանաց նր։ Եւ ինքն իսկ տէրն, * Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք։ Եւ դարձեալ՝ * Եթէ պահիցէք զպատուիրանս իմ, կացջիք ՚ի սէր իմ. որպէս ես զպատուիրանս հօր իմոյ պահեցի, և կամ ՚ի սէր նր։ Եւ է պատուիրանն պատուիրեալքն յոյ մարգարէիւքն և առաքելովքն և սրբովք աւետարանովքն։

Համբառնալ առ քեզ զձեռս մեր ՚ի սրբութի առանց բարկութե և երկմտութե։ Որ ասն զի պատուիրագ ընդունելի է այ այնպիսի ձեռացն տարածումն, որ սրբեալն է ՚ի մեղաց և ոչ ունի ՚ի միտին բարկութի առ մարդիկ կամ երկմտութիւն առ ած։ Զի թէ այսպէս համբառնայցեմք զձեռս, գտանեմք մեծ բարեաց փոխադարձութիւն. զոր և յաջորդն իսկ յայտ առնէ։

Եւ գտանել ՚ի քէն զողորմութիւն՝ և զառաքինասէր գործոց յաջողութի։ Զի ողորմին այ բաւական է առ ամ բարիս. որպէս ասէ դաւիթ, * Ողորմութբ տեառն լի եղև երկիր։ Եւ առաջին բարի է՝ նորա ողորմութե յաջողելն յառաքինութեան որ ըստ այ. որ ամ շնորհօք լի է, և ամ շահիւք երկնաւորօք և երկրաւորօք, և օգտաբեր յարդիս և յապառնիսն։ Որպ և ասէ առաքեալն պօղոս, * Աստուածպաշտութի առ ամ ինչ օգտակար է և զաւետիս կենաց ունի զարդիս և զհանդերձելոցն։ Այլ ասէ,

հետևիք և մարմնական հոգւոց պարապիք․ և անբան կենդանեաց տա-
ծօղք լինիք, և զգալի երկիր կակղէք։ Եւ զոր ներումն թողութե-
անիցէք․ կամ որում պատասխանւոյ արժանի զանձինս համարիք,
միշտ զփառաց և զհեշտութեանց հոգալով։ Երկուս դաշնկանս ա-
ւանդեաց ձեզ տէրն մեր քս՟ զհին և զնոր կտակարանս․ զի նոքօք
զանաւոր ոչխարին դարմանէք զանկեալն ՚ի ձեռս աւազակաց և
եղեալ կիսամահ։

Եւ ձեր թողեալ զայս ա̄ծային առաջարկութիւս, զկնի ոչընչի
ընթանայք, զկաթն ուտելով և զասրն զգենլով․ և զբեկեալն ոչ հա-
մարէք արժանի բժշկութե, այլ կեղեքէք կրկին ևս կսկծեցուցա-
նելով։ Եւ որոյ օրինակ բարեաց լինել պարտ էր, գայթակղութե
լինելով պատճառ, զանձինս և զընդ ձեռամբ անկեալսն կորուսա-
նէք․ և որ զանձին կորուստ անփոյթ առնիցէ, վասն այլոց զխնդ-
հոգք փրկութեան վարիցէ։

Ով հովիւք և հոգաբարձուք քս՟ հօտին․ ոչ լուայք ՚ի սողո-
մոնէ զի ասէ, * Հզօրք զօրաւոր դատաստան ընկալցին․ այլ խառ-
նիճաղանճն ներելի ողորմութե է ասէ։ Զի առաջնորդք և վերա-
կացուք ոչ միայն զանձանց, այլ և զհնազանդելոցն հատուսցեն պա-
տիժս պատուհասից ըստ սխալանաց։ Նաև՝ որ մեծն է քան զմ՟մ
սխալանս, և առաւել ունիցի զդատապարտութի յերկուց կողմանց։

Զի ձեռս փափկաղակի դնէք ՚ի վերայ տգիտաց․ և զորոց ոչ
գիտէք զկեանս վարուց, հակառակ առաքելոյ լինելով, և կցորդ-
լինիք մեղաց օտարաց։ Թողում ասել զսիմոնեանն ախտ ախտանա-
լոյն․ զի թէ տեղեակ գոլով վարուց և թէ ոչ, երկոքումբք տան-
ջիք․ և երկոքին կողմամբք դատապարտիք։ Խոստեացին ընտրեալքն
տալ արծաթով․ և որք վասն ագահութե կամ փառաց՝ գործ վճա-
ռեցին․ և դատեսցին տուօղքն և առօղքն։

Թէ առեր մամոնայ և ձեռնադրեցեր զոք՝ զյուդայեան և ըզ-
սիմոնեանն ախտացայք զախտ, ՚ի դատապարտութիւն անձանց, զի
զպարգևսն այ ընդ վաճառուք փակեալ, զարժանիսն զրկելով ՚ի շնոր-
հացն, և զոչ արժանիսն պատուելով։ Եւ դարձեալ թէ ոչ առեր
ինչ և զանարժանն ոք ձեռնադրեցեր, կրկին պատիժք պատուհասի
եղիցին․ զի գոնէ ոչ վասն ագահութե պատրեցար, այլ անմտութե
շուտափոյթ եղեր, յոչ արժանիսն զշնորհսն տալով։

Վ՟ որոյ զգուշացարուք հովիւք․ և զգաստացարուք․ և լերուք
զուարթունք ՚ի գործ, պաշտպանելով միշտ ա̄ծասէրք անարծաթա-
սէրք։ Զի ոչ օգնեսցեն ինչք ՚ի մեծի աւուրն ասէ իմաստունն․
այլ միայն արդարակշիռ լինիլ զփրկանս շնորհէ ՚ի մահուն յաւիտենից։

Զարթիք զարթիք եւ առաւել ես զգաստացիք · զի Տր՛ լուիցէ ՚ի տնէ զառակացի բանն զայն եթէ, * Ահաւասիկ ես ՚ի վր. ձեր հովուացդ · եւ դատեցայց զձեզ դատաստանաւ ։ Եւ թէ՝ * Փայտ որթուն այլ ինչ. ոչ է պիտանացու · բայց զի ՚ի հուր. այրեսցի ։ Եւ թէ՝ * Աղն յորժամ անհամի, արտաքս ընկեսցի եւ կոխեսցի յամենեցունց ։ Եւ թէ՝ * Ել անօրէնութիւն ՚ի ծերոց, թիւրութի ՚ի քահանայից ։ Եւ թէ՝ * Առաջնորդք միաբանեցին ՚ի չարիս հակառակ տեառն եւ օծելոյ նորա · եւ բարկացի տէր վասն այսորիկ · եւ կորնչէք յուսոյն յաւիտենից ։ Զի թէ ՚ի կեանս յայս միայն յոյս ունիմք լեալ, ողորմելի եւ անյոյս կորնչի որք առ առաքելոյն · եւ լաւ ՚ի տեառնէ թէ, * Ընկալցիք զգործս անցաւոր կենօքս ՚ի կամաց ձերոց լրումն ։ Առ որդւոց, վայլ են որժանի ըստ տեառն. բանի ։

Աւաղ վա՜յ է ինձ եւ եղուկ եմ ես · զի անձամբ զանձն դատապարտեցի, զայս խորհելով եւ զիս ոչ ես ։ Զայս ձաղելով, ես ՚ի նոյն յանցեալ դատնիմ · զայլոց շիղական տեսի, եւ զմեծագոյն գերանն իմ ոչ նշմարեցի · զայս դատեցի, եւ զանձն իմ ոչ երբեք ՚ի բարիս կրթեցի ։

Բայց թէպէտ եւ այս այսպէս եւ առաւել եղկելի եմք քան զամ՞ որք, այլ որչափ և է կարողութի, զարծաթ բանին արկանել պարտ է ՚ի տրապիզիտն · զի մի՛ իբր զքանքարաթաքոյց դատիցիմք · զի ժամանակս մերձեալ է · եւ սկիզբն լինելոց է դատաստանի ՚ի տանէ տեառն ։ Յայտ է թէ ՚ի սրբութեանցն սկիզբն լինիցի · այսինքն՝ յառաջնորդաց, ՚ի վերակացուաց, ՚ի գիտնոց եւ յիմաստնոց, ՚ի թագաւորաց, ՚ի դատաւորաց եւ ՚ի մեծամեծաց բանիւք եւ գործովք ։

Վասն որոյ աղաչեմ զամենեսեան եւ փոխան աղաղակիմ, դարձցուք առ տէր սրտի մտօք, սիրով հեզութե եւ խոնարհութեան · զի դարձցի առ մեզ տէր գթութբ եւ ողորմութբ ։ Կանխեսցուք առ նա հանապազ երկարաձիգ աղօթիւք · եւ աղաչեսցուք միշտ զերեսս նորա ՚ի դէպ ժամանակի ։ Վասն զի մեծ են մաղթանք հոգեւորք առ ած · եւ կանխութիւք յարաժամ աղօթից · եւ մեծի շնորհի արժանացուցանեն զմարդ յորժամ ՚ի սբ սրտէ լինիցին եւ խոնարհ ոգւով ։

Եւ զի տէրունական է հրաման յարաժամ կանխութեան աղօթից, միշտ եւ անդադար կարդալ առ նա ։ Զի թէպէտ եւ այլոց առաքինութեանց ունիմք չափ եւ սահման, այսինքն պահոց պնդութեան եւ ծնրելոյ զմարմին ըստ կարին՝ եւ զողորմութի առնել ըստ գոյին եւ ըստ ժամանակին ։ Իսկ զպտուղ աղօթից յամ ժամու պահանջեմք յաստուածոյ, եւ յամ հասակի եւ ՚ի դիպուածս ։

Ողջոյն բարւոք սննդականց է աղօթք ; և պաշտպան յեղս և 'ի մնուս • երիտասարդաց գործակից • ծերոց յոյս հաստատութեան • քահանայից պսակ պարծանաց • ժողովրդոց պարիսպ ամրութեան : Զինուորաց վահան փրկութեան • Թագաւորաց ցնծութիւն • իշխանաց ուղղութիւն • դատաւորաց զգաստութիւն : Ճգնաւորաց մարտակից • կուսանաց կատարելութիւն • սգաւորաց սփոփանք • բերկրելոց հրճուանք • նեղելոց անդորրութիւն • խաղաղացելոց զգուշութիւն : Արանց գործակից • կանանց տնակից • ճանապարհորդաց ուղեկից • նաւորդաց յառաջարկութիւն • առողջաց խնդութիւն • հիւանդաց մխիթարութիւն • մեղուցելոց քաւութիւն • արդարոց խնդութիւն • ննջեցելոց թոշակ կենաց և յոյս բարեաց :

Այս ինչ և ներբողեցից զարդիւնաւորութիւն աղօթից • զի հրեշտակաց դասակից առնէ • սրբոց քաղաքակից • սերովբէից կաճառակից : Տաճար գործէ զմարդն այ և օթեվանս երրորդութեան կազմէ : * Ուր երկու կամ երեք ժողովին յանուն իմ ասաց տէրն , անդ եմ ես 'ի մէջ նոցա : Եւ դարձեալ , * Որ զբանն իմ պահէ , ես և հայր առ նա եկեսցուք հանդերձ հոգւովն սրբով • և օթեվանս առ նմին արասցուք :

Աղէ հարց զարդարուն զառաջինս • և աղօթիւք գտանես հաճոյացեալ այ : Եթէ զաբէլ առես զառաջինն արդարն , աղօթիւք նախ արդարացեալ և ապա զպատարագն ընդունելի մատուցանէր այ : Սէթ , Ենովս , Ենօք , Նոյ • Աբրահամ , Իսահակ , Յակոբ , Մելքիսեդեկ , Մովսէս , և Ահարոն • ամենեքեան առքա ընդ այլ բարի գործոցն՝ և աղօթիւքն յաւէտ հաճոյ գտան աստուծոյ :

Դաւիթ ոչ միայն 'ի մեղացն սրբիլ աղաչէր , այլ և զմարգարէական շնորհն աղօթիւք յինքեան պահէր : * Վաստակեցայ ասէ 'ի հեծութեան իմում , լուացի զամ գիշեր զմահճս իմ և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի : Պետրոս զրուխ առաքելոցն՝ երեք ուրացութեանցն դեղ և սպեղանի արտասուս զաղօթսն գտանէր • Եւ լաց ասէ դառնապէս , և այնչափ աստանիկ մինչ զի արիւն ասի կաթեալ ընդ արտասուացն :

Մաքսաւորն աղօթիւքն արդարանայր և վեր 'ի վերոյ գտանէր փարիսեցւոյն : Այնն պոռնիկ յոլովից մեղաց թողութիւն աղօթիւք ընդունէր և կեայր հոգւով • հաւատք քո կեցուցին զքեզ ասաց տէրն՝ 'ի ձեռն աղօթից : Աւազակն միով բանիւ զմեղանսն յանձն առնէր և 'ի քրիստոսէ յիշել հայցէր , և դրախտին ժառանգ լինէր : Դա և յուդաս եղկելին եթէ ճշմարտիւ յաղօթս էր ապաւինեալ , թերևս ոչ էր այնպէս 'ի կորուստ մատնեալ :

Զարթիք զարթիք և առաւել ևս զգաստացիք. զի մի՛ լիցիք 'ի թիւ զօրականի բանին զայն եթէ, *Ահաւասիկ ես 'ի վր. ձեր հովուացդ. և դատեցայց զձեզ դատաստանաւ: և թէ՝ *Փայտ որթուն այսինքն. ոչ է պիտանացու. բայց զի 'ի հուր այրեսցի: և թէ՝ *Աղն յորժամ անհամի, արտաքս ընկեցի և կոխեսցի յամենեցունց: և թէ՝ *Եւ անօրէնութիւն 'ի ծերոց, թիւրութի 'ի քահանայից: և թէ՝ *Առաջնորդք մաքանեցին 'ի չարիս հակառակ տեառն և օծելոյ նորա. և բարկացաւ տէր վասն այսորիկ. և կորնչէք յուսոյն յաւիտենից: Զի եթէ 'ի կեանս յայս միայն յոյս ունիք լիցի, ողորմելի և անյոյս կորնչի որոյ աստ առաքեալն. և լսէ 'ի տեառնէ թէ, *Ընկալայք զբարիս անցաւոր կենօքս 'ի կամաց ձերոց լռութե: Առ որ արդարև վայ են արժանի ըստ տեառն բանի:

Վայ վայ է ինձ և եղուկ եմ ես. զի անձամբ զանձն դատապարտեցի, զայլս խրատելով և զիս ոչ ևս: Զայլս ձաղելով ես 'ի նոյն յանցեա գտանիմ. զայլոց շիղական տեսի, և զմեծագոյն գերանն իմ ոչ նշմարեցի. զայլս դատեցի, և զանձն իմ ոչ երբէք 'ի բարիս կրթեցի:

Բայց թէպէտ և այս այսպէս և առաւել եղկելի եմք քան զամ ոք, այլ որչափ և է կարողութի, զարծաթ բանին արկանել պարտ է 'ի տրապիզիտն. զի մի՛ իբր զքանքարաթաքոյց դատիցիմք. զի ժամանակս մերձեալ է. և սկիզբն լինելոց է դատաստանի 'ի տանէ տեառն: Յայտ է թէ 'ի սրբութեանցն սկիզբն լինիցի. այսինքն՝ յառաջնորդաց, 'ի վերակացուաց, 'ի գիտնոց և յիմաստնոց, 'ի թագաւորաց, 'ի դատաւորաց և 'ի մեծամեծաց բանիւք և գործովք:

Վասն որոյ աղաչեմ զամենեսեան և փոխան աղաղակեմ, դարձցուք առ տէր սրտի մտօք, սիրով հեզութե և խոնարհութեան. զի դարձցի առ մեզ տէր գթութբ և ողորմութբ: Կանխեսցուք առ նա հանապազ երկարաձիգ աղօթիւք. և աղաչեսցուք միշտ զերեսս նորա 'ի դէպ ժամանակի: Վասն զի մեծ են մաղթանք հոգևորք առ ած. և կանխութիւք յարաժամ աղօթից. և մեծի շնորհի արժանացուցանեն զմարդ յորժամ 'ի մք սրտէ լինիցին և խոնարհ ոգւով: Եւ զի տէրունական է հրաման յարաժամ կանխութեան աղօթից, միշտ և անդադար կարդալ առ նա: Զի թէպէտ և այլոց առաքինութեց ունիմք չափ և սահման, այսինքն պահոց պնդութեան և ձնչելոյ զմարմին ըստ կարին՝ և զողորմութի առնել ըստ գոյին և ըստ ժամանակին. Իսկ զպտուղ աղօթից յամ ժամու պահանջիմք յաստուծոյ, և յամ հասակի և 'ի դիպուածի:

Տղայոց բարուոք ընդակից է աղօթք ․ և պահապան յելս և ՚ի մուտս ․ երիտասարդաց գործակից ․ ծերոց յոյս հաստատութեան ․ քահանայից պսակ պարծանաց ․ ժողովրդոց պարիսպ ամրութեան ։ Զինուորաց վահան փրկութեան ․ թագաւորաց ցնծութիւն ․ իշխանաց ուղղութիւն ․ դատաւորաց զգաստութիւն ։ Ճգնաւորաց մարտակից ․ կուսանաց կատարելութիւն ․ սգաւորաց մխիթարանք ․ բերկրելոց հրճուանք ․ նեղելոց անդորրութիւն ․ խաղաղացելոց զգուշութիւն ։ Արանց գործակից ․ կանանց տնակից ․ ճանապարհորդաց ուղեկից ․ նաւորդաց յառաջնորդութիւն ․ առողջաց խնդութիւն ․ հիւանդաց մխիթարութիւն ․ մեղուցելոց քաւութիւն ․ արդարոց խնդութիւն ․ ննջեցելոց թոշակ կենաց և յոյս բարեաց ։

Այլ ոչինչ ես ներբողեցից զարդիւնաւորութիւն աղօթից ․ զի հրեշտակաց դասակից առնէ ․ սրբոց քաղաքակից ․ սերովբէից կաճառակից ։ Տաճար գործէ զմարդն և օթևանս երրորդութեան կազմէ ։ * Ուր երկու կամ երեք ժողովին յանուն իմ ասաց տէրն , անդ եմ ես ՚ի մէջ նոցա ։ Այլ դարձեալ , * Որ զբանն իմ պահէ , ես և հայր առ նա եկեսցուք հանդերձ հոգւովն սրբով ․ և օթևանս առ նովաւ արասցուք ։

Ուղէ հօրց զարդարան զառաջինսն ․ և աղօթիւք գտանես հաճոյացեալ էր ։ Եթէ զբերել սահս զառաջինն արդարն , աղօթիւք նախ արդարացեալ և ապա զպատարագն ընդունելի մատուցանէր էր ։ Աբէլ , Ենովս , Ենոք , Նոյ ․ աբրահամ , սահակ , յակոբ , մելքիսեդեկ , մովսէս , և ահարոն ․ ամենեքեան սոքա ընդ այլ բարի գործոցն՝ և աղօթիւքն յաւէտ հաճոյ գտան աստուծոյ ։

Դաւիթ ոչ միայն ՚ի մեղացն ուրիշոց ազատէր , այլ և զմարգարէական շնորհն աղօթիւք յինքեան պահէր ։ * Վաստակեցայ ասէ ՚ի հեծութեան իմում , լուացի զամ գիշեր զմահիճս իմ և արտասուօք իմովք զանկողինս իմ թացի ։ Պետրոս գլուխ առաքելոցն՝ երից ուրացութեանցն դեղ և սպեղանի ախտաղէս զաղօթսն գտանէր ․ ելաց ասէ դառնապէս , և այնչափ աստուածիկ մինչ զի արիւն ասի կաթեալ ընդ արտասուացն ։

Մաքսաւորն աղօթիւքն արդարանայր և ջեր ՚ի վերոյ գտանէր փարիսեցւոյն ։ Կինն պոռնիկ յոլովից մեղաց թողութիւն աղօթիւք ընդունէր և կեայր հոգւով ․ հաւատք քո կեցուցին զքեզ , ասաց տէրն՝ ՚ի ձեռն աղօթից ։ Աւազակն միով բանիւ զմեղանսն յանձն առնէր և ՚ի քրիստոսէ յիշել հայցէր , և դրախտին ժառանգ լինէր ։ Նա և յուդաս եղկելին եթէ ճշմարիտ յաղօթս էր ապաշխարեալ , թերևս ոչ էր այնպէս ՚ի կորուստ մատնեալ ։

Առաքեալքն աղօթիւք հանդիսացան · մարգարէքն հրաշալիք ցուցան · մարտիրոսքն պսակաց արժանացան · հայրապետքն ահարկուք ցուցան ։ Պօղոս և Շիղայ զհիմունս բանտին շարժեցին աղօթիւք ։ Պետրոս զանօթն կտաւի լի հրաշիւք իջեալ տեսանէր ։ Եղիա հուր յերկնից իջուցանէր · և զմեռեալն յարուցանէր ։ Եղիսէոս հանգոյն վարդապետին գործէր, և առաւել ևս գտանէր · զջուրսն Երիքովի բժշկէր, զիշխանն Ասորի մաքրէր, զգեհեզի գող՝ տանջէր · փայտիւ զերկաթ ՚ի ջրոյ վեր ածէր և յօրինակ խաչին ներգործէր · և զգունդըն ասորւոց կուրութեամբ կապէր հանգոյն բելիարայ և դիւաց նր ։

Աստեփաննոս նախասարկաւագ և առաջին վկայ՝ ոչ միայն նշանս և արուեստս գործէր աղօթիւք, այլ և զերկինս փեռեկէր · և զորդի ընդ աջմէ հօր տեսանէր · և զոգի իւր յաւէտ ՚ի նոյն յանձնէր ։ Աղօթիւք և յս հանդիսանայր անկարօտն աղօթից և ընդունիչն մաղթանաց համայնից · զի զմեզ յորդորեսցէ ՚ի սէր սրբութեան աղօթից անձանձիր կալ միշտ և յարաժամ ։

Աղօթք՝ պարիսպ ամրութեան · սիւն հաստատութեան · հիմն հաւատոյ · խարիսխ յուսոյ · սանդուղք առ այծ ելից ։ Աղօթք՝ պսակ պարծանաց · պատճառք փրկութեան · առիթ բարեաց · մարզիչ համբերութեան · ծանօթութիւն այծպաշտութեան · հոգւոյն սրբոյ հրաւիրօղ · և վկայէ կոռնելիոս աղօթիւք զայս գտեալ և պայծառացեալ ։ Աղօթք՝ սանդարամետականաց դիւաց հալածիչ · բեկումն բելիարայ · կործանիչ բանսարկուին, և ամ արկածից նորա լուծիչ, և ամօթ կորստեան ։ Եւ քանզի գիտէ սատանայ եթէ շնորհ առնու մարդ յայ ՚ի ժամ աղօթիցն, վն այնորիկ ջանայ ցնդել զմիտս մարդկան ՚ի ժամ աղօթիցն զի զրկեսցէ ՚ի շնորհացն զոր առնելոց է մարդն մաքուր մտօք աղօթելն ։

Վասն որոյ և մեք զայս գիտելով, հանդիսասցուք հանապազ հակառակ նմին անզգաստ կալ յաղօթս ։ Եւ մաքրեսցուք զմիտս մեր յամ արկածից չարին ՚ի ժամուն յայնմիկ · և առանց բարկութեան և երկմտութեան միշտ աղօթեսցուք ։ Եւ մանաւանդ ՚ի վերայ թշնամեաց աղօթեսցուք սրտի մտօք · զի ընդունելի լիցի և մերն աղաչանք առ այծ ։ Նաև ՚ի ժամ աղօթիցն զհուր սիրոյն քն սատասցուք առ-բայեկս յանձինս մեր, կանխելով միշտ առ նա պաղատանօք, թէ և համարելով ղառօրեայ աշխատութիւնս առ մշտնջենաւոր բարեացն փոխելս ։

Զարթուցիւք զմիտս մեր ՚ի հանճարս կամացն այյ յամ ժամ · և առաքինասէր վարուք դաստիարակեսցուք զանձինս մեր ։ Մի՛ յառօրեայս և եթ նայեսցուք · այլ յաւիտենականսն միշտ ցանկա-

ջուք · և անմահ կենացն յաւէտ պատրաստեսցուք ։ Մ՛անաւանդ է կենցաղս այս · և զոր ինչ վաճառէ ոք աստ երկամբք անձին զգործս վաստակոց , զնոյն գտանէ 'ի հանդերձեալսն պատրաստական անձին եթէ բարի և եթէ չար ։ Եկաք յաշխարհ և գնամք յաշխարհէս · և գործքն զկնի մեր լիցին , և 'ի մնացօնս տաւի կենացս լիցուք · և հոգւք հանդերձելոյն միայն նորոգի ։

Սերմանեաց ոք 'ի մարմին , և հեշտացաւ 'ի վայելս մարմնականս · փառաց հեշտեցաւ , ընչից և ստացուածոց ծառայեաց · հեղգութիւ և դատարկութիւ զկեանս անցոյց , որովայնիւ ջուսայտեալ , և միօք միշտ զբօսեալ ։ Անց ժամ , ապականեցաւ և յոչինչ դարձաւ · և պատիժք պատուհասին կան և մնան յաւիտեան ։ Հուր բորբոքեալ , և որդն եռացեալ , և տարտարոս և խաւարն յոյժ սարսափելի ։ Իսկ եթէ ոք զրկեաց կամ գողացաւ , հարեաց կամ յափշտակեաց , բազմապատիկ տոկոսօք հատուսցէ · մինչ զի սպառեալ գործոցն՝ 'ի հաւատոյն եւս վրիպեսցի ։

Ո՛չ ինչ ասեմ զմախացողաց , զնախանձողաց և զատեցողաց , զգրգռողաց և զվրէժառուացն · որք անբերելի աղէտից հանդիպին ։ Ողբամ և իւրաքանչիւր գործքն բռնասցին 'ի համաշխարհական յարութեանն եթէ բարի և եթէ չար ։ Նա գործունեայքն՝ ըստ արժանեացն ընկալցին , ոմն պատիժ և ոմն պսակ ։

Նա յայնժամ մեծ վիշտ անդ սեռանի և աղաղակի վաանդ դիպեսցի ։ Ոչ հայրք և որդիք 'ի միմեանց բաժանին · և հարազատ եղբարք որոշին · և մտերիմք յոյժ հեռասցին , և համանուանքն 'ի բաց քեցեսցին ։ Ո՛չ ի՛նչ փրկէ եղբայր զեղբայր · և ոչ հայր զորդի իւր զոր ծնաւ · և ո՛չ կարէ գթալ ոք յընտանի անձին իւրոյ · զի անաչառ է դատաւորն և խրատուցի է դատաստանն ։

Ընդ ստահակաւքն ողբք երևեսցի , և աղաղակ անբաւ ասիսեսցէ · և ողորմագին ձայնք յոյժ լսիցին 'ի դատապարտելոցն անձանց ։ Ոմն ոմն 'ի հուր գեհեննին մատնեսցի , ոմն 'ի տարտարոսն դատապարտեցի · այլ ոմն որդանց հրեղինաց կեր լինիցի , միւսն հրեղէն սրով միշտ տանջեսցի ։ Նա՛ ամենեցուն ըստ իւրաքանչիւր չափու հատուսցի ըստ արժանոյն · զի ահագին է ատեանն այն · ահեղ և զարհուրելի է հրապարակն · և անպատկառ քննութիւն խրատանցն ։

'Ի թագաւորաց անդ ոչ առնու · 'ի քահանայից ոչ հարկէ · մեծամեծաց պատիւ ոչ դնէ · յանիս ծերոց ոչ գթայ ։ Որք ոչ արարին ողորմութիւն , և ոչ գտանեն անդ ողորմութիւն ։ Որք զարծաթն աւաւել սիրեցին քան զքս , և զձիս և զջորիս և զշունս եւս զարդարեցին , և զաղքատն անտես արարին , անդ դատեսցին 'ի քնէ և 'ի հուր գեհեննին մաշեսցին · բայց միայն աղքատքն պսակին յարքայութեանն նր ։

Որով լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօքն քո, որ է օրհնեալ ընդ հօր և հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։



Կարգաւորութիւն հասարակաց աղօթից առաւօտեան ժամուն, որ կատարի ի դէմս որդւոյն Այ։ Եւ ասի Լոյս առաւօտու. և այն որ ի ցուցակին. և ապա Երգ երից մանկանցն։

—

Մովսէսի քերթողահօր՝ ի յերգս Երից մանկանցն.

Երեք մանկունքն օրինակ էին մարդկային բնութեանս, և հնոց հրոյն՝ հանդերձեալ հրոյն. Իսկ զերգս երից մանկանցն հանապազ յառաւօտուն երգել յեկեղեցւոջ. զի որպէս նոքա գերեալք ՚ի բաբիլոնական բռնաւորէն ՚ի հնոցն անկանէին, նոյնպէս և մեք ՚ի հնոցի կենցաղոյս գերեալք յաներևոյթ բռնաւորէն, և ըմբռնեալք պէսպէս ախտիւք, և լուցեալք եղեալ յաւիտենական հրոյն, սատանօր զոգցես ինձ հրեշտակական աղօթիւք ՚ի թշնամեցուցանող բնոյն զարթուցեալք, աւուր աւուր ընդ առաւօտն զերգս երից մանկանցն ՚ի բերան առեալ ասեմք. Օրհնեալ ես տէր Այ հարցն մերոց. օրհնեալ փառաւորեալ անուն քո յաւիտեան։

Եւ որպէս նոքա ՚ի փրկութիւն անձանց խնդրեանց առ խնդրեանց փրկիչն մատուցեալ, և որպէս առ երկինս ՚ի հնոցէն ՚ի վեր գոչէին, յորդորելով զամ արարածս ՚ի փառաբանութիւն Այ. Ըստ նմին օրինակի և մեք իբրև անդստին ՚ի մարմնոյ նոցա և յոսկերաց նր, ՚ի վեր մեր և ՚ի մեզ բերելով զպլունին, վերագոչեալ աղաղակեմք առ ընդհանուր անսախ արարածոց թէ, Օրհնեցէք ամ գործք տն զտէր. Իբր զի աղաղակեալք ՚ի մեղացն՝ և աղտեղութենէ մերոյ հաղորդ լեալք ամ բնութիւնք արարածոց, հարկաւորին ամ իրաք և նոքա ընդ մեզ օրհնել և փառաւորել զած. զայն՝ որ աղտեղն զամենեսեան։

Բայց պարտ է նախ ապաշխարութբ ՚ի մեղացն արդարանալ, և ապա հրաման առնել արարածոց գալ ՚ի փառաբանութիւնն Այ։

Եւ ապա Քարոզ՝ զնծի երից մանկանցն՝ և մաղթանացն։

Նկեալքս ամենքեան միաբանութեամբ ՚ի սուրբ կաթողիկէ և առաքելական եկեղեցի, աղաչեսցուք զմիածին որդին աստուծոյ զտէրն մեր և զփրկիչն յս քս։

Մեծին Խոսրովու։

Հիմ ոչ զայն խակ դնէ հրամ. զաղաչեսցուքն, այլ՝ զգալն միաբան յեկեղեցին։ Թուի ինձ յորդորել այսորիւք զժողովն, զի առանց վհատելոյ՝ ՚ի խնդրելոյն զտուրսն յուսասցին։ Զի եթէ երկու որք միաբանք զինչ և խնդրեսցեն յայ՝ տացէ նոցա. որչափ բազմաց միաբանութեն ունկնդիր և առաւել հայցուածոցն լինի։ Կարծեմ և զմիաբանութեն յայս սակս եդ, զի առաւելութի բազմաց միաբանելոյն՝ քան զերկուցն ցուցցէ. իսկ զեկեղեցին յիշելով, զնա լսելութեան պատճառն ցուցցէ։

Զի եթէ ՚ի հնումն սողոմոն ՚ի տաճարին այ զհուրաքանչիւրոցն հայցուածսն լնուլ և առնուլ յուսայր։ Եւ դաւիթ ինքն գլխովին ՚ի տաճարին զլսել խնդրուածոցն իւրոց հայցէ. * Լուր ասէ տէր ձայնի խնդրուածոց իմոց յաղաչել ինձ առ քեզ, ՚ի համբառնալ ձեռաց իմոց ՚ի տաճար սուրբ քո։ Եւ եսայի ասէ, * Տե՛ս ՚ի տաճարէ սրբոյ քումմէ և ՚ի փառաց քոց։ Եւ այն, զի անդ սեղանն զանասնոցն մատուցանէր պատարագ. ապա որչափ գերակայ է օգտութի որ ՚ի նորումս՝ ՚ի տան այ զաղօթսն մատուցանել առաջի նր. յորոյ վերայ արիւն անարատ գառինն դնի պատարագ։

Վասն այսորիկ և սուրբ կոչէ. զի սրբոյն այ է բնակարան, և հրեշտակաց սրբոց բանակեալ, և արդարոց կատարելոց տեղի իջավանի յերկնուստ յերկիր երթևեկութե։ Քանզի ՚ի սմա ամ ՚ի բաց բարձեալ լինի կռիւն. և երկիրս ընդունի զերկնայինսն, և երկնայինքն միանան ընդ երկրայինքս։ Եւ ննջեցեալ սուրբք՝ ընդ հաւատացեալ կենդանիս. զի եթէ հաւատամք եթէ տուն այ և բնակարան է եկեղեցի որպէս ինքն ասաց։

Եւ զինչ է կաթուղիկէն. տիեզերական։ Զի ամ եկեղեցիք ուղղափառաց որ ընդ տիեզերս են՝ մի են. մի քս յամ եկեղեցիս է որ ըստ առաքելոյն հաւատոյ լինի. զոր և առաքելական կոչեմք։ Որ զի թէ և բաժանին՝ ըստ տեղեաց, այլ ոչ եթէ ըստ ժողովրդոց։ Զի ՚ի ծագաց մինչ ՚ի ծագս երկրի ուր և հաւանիցէ ճշմարիտ հաւատացեալն յեկեղեցիս ուղղափառաց՝ իւր եկեղեցի է. և ոչ որոշէ

դմնդամին․ զի ոչ ած, այլ մարդոյ զնորայն անմեծն պաշտօն․ զի աւանդս գերեցին ՚ի պաշտօնն ժողովիւն․ ոչ ած, այլ նոցա պաշտօն պատիւ․ որպէս թէ գերագոյն նորա քան զած իցեն, զոր առաքելն զանց արարեալ, զնոյնս նախանձաւոր առնեն։ Որոց ՚ի դէպ էր առել բանաստեղծական բանին, *Երթայք տուք զկայսերն կայսեր, և զածոյն այ։

Մեք որ ենք աւագացն անկէ պատուով, զայն աւրէնք յաւագացն առնել․ և դուք զպաշտօնն այ յաստուածոյ պաշտեսջիք առն։ Մարգարէին համաձայն թէ, *Ահա օրհնեցէք զտր ծառայք տեառն զտէր։ Մինչդեռ և թագաւոր է, գիշերին եղեթեալ ՚ի տուն տեառն՝ և այլոց ձայնատու լինել հրամայէ․ թէ ծառայք էք տեառն, առ որս ձեր եկայք և ՚ի տուն տեառն ձերոյ․ և մի պատճառեք գիշերաւ․ այլ *՚ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ՚ի սրբութի, և օրհնեցէք զտէր։ Եթէ ծառայ էք տեառն, մի ընդ գիմանոյք կոչման տեառն ձերոյ․ ապա թէ կոչէ և ոչ գայք, չէք նորա ծառայք։

Մարգարէիւն կոչէ ած, և դու չառնես․ ապա ուրեմն և պաշտօն կոչողին առ ՚ի քէն չէ հաճելի․ եթէ *Անկենդրութի բա է քան զպատարագ։ ՚Ի վերայ ած պատճառացս զոր ասացաք մի քաջողկս բանի, խնանալի է և այս․ զի ՚ի բանս հայեցեալ որ ասէս զգայն ՚ի սուրբ եկեղեցի, իմացուք թէ չէր հնար առաջնորդացն յայլ տեղիս համարձակել ՚ի պաշտօնն միաբանութեամբ, բայց միայն ՚ի սուրբ եկեղեցիս։

Աղաչեսցուք զմիածին որդին այ զտէրն մեր և զփրկիչն յս քս․ որ էջ փառօք հօր ՚ի մէջ հնոցին և փրկեաց զերիս մանկունսն ՚ի քաղդէացւոց անտի։

Քանզի չորս ետես նաբուքոդոնոսոր․ և ասէ, *Ո՞չ երիս արս արկաք ՚ի հնոցն, և ես չորս տեսանեմ․ և տեսիլ չորրորդին նման է որդւոյն այ։ Այսուիկ յորդորէ քարոզիս բան թէ՝ նոյն ինքն որդին այ միածին տէրն մեր որ փրկեաց ՚ի մոլորութէ զմեզ, նա էր որ յայնժամ ը աղաւնեանն իջեալ եկաց ՚ի հնոցին․ և այժմ առ մեզ է։

Զի թէ ուր երկուք կամ երեք ժողովեալ յանուն իմ, անդ լինի և նա ՚ի մէջ նոցա․ ապա ո՞րչափ ևս առաւել ուր միաբանութի ժողովուրդքս իցեն ՚ի տուն այ՝ լինիցի ՚ի սմա։ Աղաչեսցուք ասէ զնա այնպէս խոստովանութեամբ և պաղատանօք որպէս մանկունքն ՚ի հնոցին․ զի որ յայնժամ պահեաց զնոսա ՚ի հրոյն, պահեսցէ զմեզ ՚ի մեղաց և ՚ի ցանկութենէ աշխարհիս․ վասն որոյ և ասէ,

Լուսաւոր և սուրբ պահեսցէ զկեանս մեր․ զի մի երբէք խաբեսցուք մեք ՚ի մեղաց և ՚ի ցանկութէ աշխարհիս։ Մանաւանդ նեղք հրեղէնք սատանայի՝ խաւարեալցն տղայն․ իսկ լուսաւորեալցն մօտ՝

անզօրք են ըստ սաղմոսողին, *Ո՛չ երկիցես դու յերկիւղէ գիշերի, և ոչ 'ի նետէ որ թռչի 'ի տուէ։ Քանզի թէ արեգակն արդարութե(ան) ծագեալ տիւ առնէ քոյ մտացդ աներկիւղ մնասցես յամ՟ նետից. զի այն իր 'ի խաւարի շրջի. յորժամ խաւարաւ դիւին ծածկին, և ուր հասարակի լոյս զխաւարն զնա կործեն, զխափանութիւն աշխարհիս, և զցանկութիւն մեղաց։

Այր աղագաւ խրատէ խնդրել զլոյսն ածային, և զբարութի(ւն) և զյստակութիւն մտաց. զի մի՛ երբէք լուսով խաբեսցուք մեղօք և ցանկութե՟ աշխարհիս։ *Լարեցին ասէ զաղեղունս իւրեանց յիրս դառնութեան, ձգել ընդ խաւար յայնոսիկ որ ուղիղ են սրտիւք, յանկարծակի ձգեսցեն 'ի նոսա։ Զի զիրս խաւարի և զդառնութե(ան) երբեք զլուսոյ ինչ գան ձգել, և երբեք զքաղցր ինչ արկանել 'ի սիրտ. այլ ուղիղքն սրտիւք ոչ երկիցեն թէ յանկարծ և յանգէտս ձգի. քանզի լոյսն որ յուղիղ սրտին է, չտայ խաբել. այլ ծանուցանէ զդառն դառն՝ և զխաւարն խաւար, և անպատիր մնացեալ լինի։

Արժանի եղիցուք պահել զպատուիրանս նր՟։ Այս է ճշմարիտ և անխաբ լոյսն։ *Պատուիրանք տեառն լոյս են ասէ և լոյս տան աչաց, առ 'ի տեսանել զնետս բանսարկուին և խոյս տալ 'ի չարէն։ Եւ փոխարէն զոր գտանեմք պահելով զպատուիրանն, տայ զանպատիր և զանմոլար կեանս, և տայ զպսակն անանց լուսոյն և անվախճան կենացն. որպէս և յարէ 'ի նոյն։

Առնուլ զպսակն լուսոյ և կենաց 'ի յանձինս մեր զոր խոստացաւ սիրելեաց իւրոց։ Քանզի՞ն է երանութիւնս այս. տալ լոյս՝ անմահ պսակն. և որ մեծն է քան զամ՟՝ սիրելի նմա լինիլ. որ և 'ի տանջանս քաղցր է և անզուգական փառք սիրելին 'ի նմանէ, թող թէ 'ի լուսոյ և 'ի կենաց պսակն։ Եւ զի մի՛ թերահաւատ այսուիկ լինիցիս՝ դնէ առաջի զմեծագոյն յայտն զճշմարտութի(ւն) նր՟. որոյ՝ ստութիւն 'ի խոստմանն ոչ գոյ զի սուրբ և ճշմարիտ է. վասն այսորիկ ասէ, Զոր խոստացաւ սիրելեաց իւրոց ճշմարիտն ած՟։ Եւ աստ յաղօթս փակէ զբանն։

Տ՟ր Ք՟ս տէր մեր կեցո և ողորմեա։ Զնոյն ասեն և ժողովուրդքն՝ կեցո տէր։

Ապա ասէ գլխաւոր եկեղեցւոյն։

Ցօղեա տէր զցօղ ողորմութեան քոյ 'ի մեղուցեալ անձինս մեր. և շիջո զբոց հնոցի յանցանաց մերոց։ Վասնզի խրատեաց քարոզն առաքել փախչել 'ի մեղաց և 'ի ցանկութէ աշխարհիս։ Բայց այնմ մի անձն և մի սիրտ ժողովրդեանս լեալ, միով լեզուաւ իբրև ամենեքումբք ընդ ո̃յ խօսեցեալ լինին։ Հնոց՝ զաշխարհիս ցանկութիւն իմացեալ, և բոց՝ զմեղաց շրջակայութիւն, մաղթեն որպէս 'ի հնոցն՝ և մեզ ցօղել զողորմութեանն ցօղ. քանզի ասէին նոքա, Արա առ մեզ ըստ ողորմութեան քում. փրկեա զմեզ վ̃ն սքանչելեաց քոց։

Երկու իրօք փրկութիւն խնդրեն. ողորմութեամբ՝ և վասն ո̃յ սքանչելեացն։ Մեկպէս և վասն ո̃յ 'ի հուր ընկեցեալ լինէին, ոչ ըստ արժանեաց՝ այլ ըստ ողորմութեան արարիլ մաղթէին։ Եւ զայն ոչ զհուրեանց կամելով կեանս, այլ վասն սքանչելեաց քոց ասէին. այսինքն՝ զի սքանչելիքն զոր ցուցեր 'ի սկզբանէ, և զոր յեգիպտոս և 'ի կարմիր ծովուն և զոր յերկրին պարգևաց արարեր զօրութիւս, այսու փրկութեամբս այնք ա̃մ հաւատարիմք լիցին։ Զի աչօք զայս տեսեալ իցեն և ականջօք 'ի գրոց լուեալ իցեն՝ հաւատասցեն։

Եւ 'ի վերայ այսոցիկ երրորդ ևս յաւելու պատճառ, և փառաւորեսցի ասէ ա̃ք անուն քո յաւիտեան։ Զի և որ այժմ ասէ և որ զկնի գալոց են յաւիտեան, զքո փրկելս զմեզ լուեալ, փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։ Եւ փրկելոյն՝ զա̃մ արարածս յօրհնութիւն կոչել և ասացեալ թէ՝ օրհնեցէք և բարձր արարէք զնա. ոչ միայն այժմ, այլ և յաւիտեան։

Եւ յիր սակս։ Զի փրկեաց զմեզ 'ի հնոցէս և 'ի միջոյ բորբոքեալ բոցոյս և 'ի հրոյ։ Եւ ասացեալ բանիս գոհութեան, ա̃մ պաշտօնէիցն ձայնատու լեալ՝ յօրհնութիւնն յայն զբանն գլխաւորեն։ Զի քաղցր է զի յաւիտեան է ողորմութիւն նորա։ Ոչ ասէ զի արժանի էաք մեք, այլ զի քաղցր է և ողորմած յաւիտեան։ Եւ եկեղեցի ք̃ի զայսպիսի խոնարհութիւն ուսեալ՝ վասն ողորմութեան խնդրեն շիջուցանել զհուր մեղաց որ տոչորէ զբնութիւն մարդկան. յասելն,

Ցօղեա տէր զցօղ ողորմութեան քոյ 'ի մեղուցեալ անձինս մեր. և շիջո զբոց հնոցի յանցանաց մերոց. և փրկեա զմեզ յաւիտենական հրոյն։ Ոչ միայն աստ ասէ, այլ և 'ի հանդերձելումն՝ յայնմ 'ի յաւիտենական հրոյն փրկեա. այսինքն՝ 'ի մշտնջենաւորէն։ Մեծ աստ 'ի մեղաց բոցոյն արարիմք, և անդ յանշէջ և յանսպառ հրոյն։

Դու որ արժանի ընդ երիս ո՛ք մանկունսն օրհնել զամենասուրբ զերրորդութիւնդ. Որպ̃ նոքա ՚ի հնոցէն ապրեալք՝ օրհներգուք քեզ եղեն, նոյնպէս և մեք որ աստ ՚ի մեղացն հրոյ, և անդ ՚ի գեհենէն զերծեալ, օրհնութիւն և գոհութիւն և փառս մատուսցուք. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Իսկ ՚ի կիւրակէին այսպէս աստանօր ասէ.

Հզօր ամենակարօղ և սուրբ. Հզօր և ամենակարօղ է, վն̃ զի յաղթեաց մահուամբ մահու. և խորտակեաց զդրունս դժոխոց, և եհան զարգելեալսն ՚ի նմանէ. Որպ̃ իջանելովն ՚ի հնոցն՝ զմանկունսն ապրեցոյց. նոյնպէս և ՚ի դժոխս իջանելովն զմարդկային բնութիւս ՚ի մահուանէ ՚ի կեանս վերածեաց. և վասն այսորիկ՝ նմա փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Յովհաննու Օձնեցւոյ վասն միաշաբաթին.

Իսկ միաշաբաթի աւուր առաւօտու աղօթքն՝ ոչ ըստ այլոց խորհրդեանն կարգեալ են. քանզի զկնի հարցինն՝ մեծացուսցէ ասեն. Վասն զի հարկաւոր համարիմ այնմ որ զյարութիւն քո պատմէ, ընդ նմին և զծնունդն յիշել և զգերեզմանն. Զի թէ չէր ծնեալ, և թաղեալ իսկ ոչ. և եթէ չէր թաղեալ, և յառնել իսկ անհնար էր.

Որ՝ զկոյսն յիշելով, զթաղումն հաստատեաց. և զգերեզմանն յիշելով, զյարութիւն հաւատարմացուցանէ. քանզի մինչ չև էր զաւետարանն կարդացեալ, զեռևս ՚ի թաղմանն վարկանելով զտէրն՝ արտասուաց ՚ի ներքս ՚ի գերեզմանն աղաղակեն ողբերգականին ձայնիւ եթէ, *Արի՛ տէր օգնեա՛ մեզ և փրկեա՛ զմեզ վասն անուանդ քոյ. *Զի խոնարհ եղեն մինչև ՚ի հող անձինք մեր, և յերկիր կցեցան մեջք մեր.

Դու լսեն պատասխանի աւետեաց ՚ի մարգարէէն եթէ, *Թագաւորեսցէ՛ տէր յաւիտեան ա̃ծ քո սիոն յազգէ մինչև յազգ. և եթէ. *Պահէ զճշմարտութիւն յաւիտեան. և առնէ իրաւունս զրկելոց.

*Բանայ զաչս կուրաց, և կանգնէ զգլորեալս ամր։ Եւ յաւետարանին յարուցեալ 'ի մեռելոց՝ կատարէ զխոստմունս աւետեաց մարգարէին։

Եւ անդէն աւետարանական բանիցն ընդ գեմ բերեն թէ, *'Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր 'ի սրբութիւն և օրհնեցէք զՏէր։ Որ լուաւ աղօթից մերոց, և յարուցեալ 'ի մեռելոց փրկեաց զմեզ, թագաւորելով համաշխարհական 'ի վերայ ամ ազգաց։ Իսկ գիշեր՝ ոչ եթէ զժամանակն ասաց, այլ զհրեական զանհաւատութիւն առակէ ըստ եսայեայ պանծալի մարգարէութեանն եթէ, *'Ի գիշերաց կանխէ հոգի իմ առ առաւօտ առնել առ քեզ աստուած։

Եւ այս յայլ աւուրց կարգն ելանեն։ Եւ յետ Տէր յերկնեցին՝ փառք 'ի բարձունս, և զկնի՝ Եղեցի ասեն. որ նկարագրէ զխորհուրդ իմաստից աշակերտաց սեանն։ Որ յետ յարութեան տեսին յարուցեալ 'ի մեռելոց. և ուրախութեան համբերելին 'ի նաւարկութեանն իւրեանց 'ի ծովեզերական ծովուն։ Որք և գրեալ է 'ի պատմութեան աւետարանին, և 'ի պրակս առաքելոցն։

Քարոզ՝ զկնի Մեծացուսցէին. Սուրբ զԾնածինն. և աղօթք՝ Ընկալ Տէր։ Իսկ 'ի կիրակէի զկնի Մեծացուսցէին զայս ասեն։

Աստանօր սուրբ եկեղեցւոյս շինութեան, և բարեկարգութեան ուխտաւոր զՏէր աղաչեսցուք։ Սուրբ տեղի ասէ եկեղեցւոյն. շինութիւն է յաջողութիւն ժողովրդոց, և որ 'ի ժողովրդոցն ուղղութիւնք ըստ խրատու գրոց սրբոց։ Զոր և 'ի պօղոսէ ուսանիմք յառաջադասեալս և զմարգարէս և զաւետարանիչս, զհովիւս և զվարդապետս. 'ի հաստատութիւն սրբոց, 'ի գործ պաշտաման, 'ի շինած մարմնոյն Քի։ Եւ սուրբս կոչեաց զհաւատացեալսն. նոյնպէս և մարմին Քի, որ շինի պաշտօնէիւքն այն որ խրատեն զնոսա յուղիղ վարս։ Պարզեալ ասէ, *Իւրաքանչիւր ոք ընկերին հաճոյ լիցի 'ի բարիս վասն շինութեան։ Եւ երբ զընդունութիւնս վասն լեզուաց օտարոտ խօսելոյ արար, ոչ ինչ օգուտ կայ ասէ թէ եկեղեցին շինութիւն առնուցու։

Նա և յայտ կարեւոր շինութիւն է որ 'ի խրատուց գրոց սրբոց լինի եկեղեցւոյն այ։ Եւ աղօթելի է նախ վասն սորա, և ապա վն յաջողութեան ժողովրդոց։ Իսկ ուխտաւոր ասէ՝ որ ըստ քահանայապետին վիճակեալ են. վասն որոյ կարի առաւել աղօթելի է բարէկարգաց քաղաքավարելոյ։ Որք եթէ 'ի բարեկարգութեանն սխա-

լսելին, զբոլոր ժողովուրդն կորուսանեն. որոյ ակն որ չար է, նա մարմինն խաւարին է։ Որդ խրատէ քարոզն՝ վասն եկեղեցւոյ շինութեան և վասն ժառանգաւորաց եկեղեցւոյ բարեկարգութեան։ Նոյնպէս գլխաւորելով զաւ՝ և զառաւնան որ զենի՝ թէ զանէր աղաչեցուք։

Վասն ժողովրդականացս որք մնանեն ընդ դրունս սորա՝ զանէր աղաչեցուք։ Զի ով որ կորիցէ 'ի հօտէս, և արտաքս քան զփարախս զայս ելեալ գազանակուր լիցի։ Նմա զի և ուր և երթիցէ, բարի և քաջ հովիւն քս ակն 'ի վերայ կալցի. մինչեւ պահեսցէ և ածցէ 'ի փարախս հաւաքեսցէ։

Յաղագս վայրի հարցից զայլնապէս որ յաւելուած առնցս ասենեն. ո՞ր են այն պաշտօնեայքն՝ մր որոց աղօթիցս խնդիրն են։ Հրամայեաց խնդրել եկեղեցւոյն 'ի խաղաղութե և 'ի հաստատութե շինել, և եկեղեցականացն բարեկրօն լինել, և ժողովրդեանն փրկել։ Որդ ո՞ր է որ ուխտն է յայսցանէ և պաշտօնեայ կոչի. բայց զի զուխտն ոչ է կարացեալ գիտել եթէ ոյք են, և բնաւ զի մեր խակ բանին չէ եղեալ, համարեցաւ որ զայն յաւել՝ 'ի զօրական զվիճակաւորն. և զայն՝ պաշտօնէից անուանք կարգեաց։

Ա̄ զի ընդունելով զխնդրուածս սրտից միաբանելոց։ Զի միաբանեալ ենք աստ 'ի խնդրուածս, աղաչեսցուք տալ զոր խնդրեմքս։ Դարձեալ ասէ, պաշտօնէիցն այն զոր նոքայն ասեն, չեն միաբանեալ սրտից հայցուածքն ընդ այլսն. զի ուրոյն նոցայն յիշէն խնդրուածքն։ Յայտ է թէ յոյժ օգտակար է յաւելուածն. 'ի վերայ այսր բերէ թէ, գթասցի և ողորմեսցի։ Տեսանեմ զչափ սրտից միաբանելոց. 'ի գութ և յողորմութի ածէ աստ զմեզ ընդունել ըզ հայցուածսն։ Եւ ասարանեն և զայս ևս 'ի գոհութե տեառն մյ և փրկչին մերոյ յի քի։

Քարոզ՝ զկնի Իւղաբերից աւետարանին։

Զուարճացեալքս աւետարանաւ աւետեօք յարութեան տեառն մերոյ և փրկչին յիսուսի քրիստոսի։ Յաւետարանէ անտի զաւետիս յարութեան քրիստոսի լսելով որ տէրն է և փրկիչն մեր՝ զուարճացեալք եղաք։ Զո՞ր ասէս. նախ՝ զի տէր մեր է և փրկիչ որ յարեաւ. Երկրորդ՝ զի այն ծննդեանն որ 'ի յարութենէն մարմնոյ մերոյ լինելոց է պտուղ՝ նաև անդրանիկ

եղև։ Այսր աղագաւ ասէ ոչ զուարճանամք միայն, այլ և մեծաւ ուրախութեամբ։

Զի եթէ ամուլ արգանդ երկրի որ զսերմանեալ մարմինս մարդկան ընկալաւ և անծնունդ էր առ 'ի յարութեան պտուղ, ծննդական եղև։ Արդ զտէրունական մարմինն զանապականն ծնանելով որ անապականութեան մերոյ եղև ծնունդ անդրանիկ. ապա յայտ է թէ ամլոյ արգանդին բանալով՝ չէր արգել ամ՟ մարդկան առ վերստին ծնունդ յարութեան։ Եւ զի՞նչ օրինակ եղև այսմ շնորհի որ յարեաւն ասէ 'ի մեռելոց։

Խորտակեաց ասէ զդրունս դժոխոց և եղծ զբռնութիւն մահու։ Յանցեաւ ադամ և զմահ տիրեցոյց իւրեան և որոց յիւրմէն. և բնակեցաւ մահ 'ի մարդիկ։ Եւ որպէս դրամբք և նշանօք արգել 'ի կենդանութենէ, և բարձեալ էր յոյս մարմնոյ նորոգման՝ և հոգւոյ 'ի նոյն դարձ։ Զի թէ եղեն արդարք և սուրբք, այլ ոչ բնաւին անմեղք. վասն այսորիկ ոչ զիւրեանց և ոչ զայլ մարդկան զօրեցին բառնալ զմահ։

Յաղագս որոյ պէտք եղեն անբիծ արեանն առ 'ի քաւութիւն ադամայ և ծննդոց նորա, և մեռանելոյ անարատ մարմնոյն քո որով մեռաւ մահ։ Եւ զարգելումն մարդկային հոգւոց 'ի մարմնոց՝ խափանեաց մեռելութիւն քո՝ և ոգւոյ նորա առ ոգիս մարդկան գնացումն։ Որ և վերածեաց զնոսա ընդ իւր, և անխափան գործեաց զմուտ անդրէն իւրաքանչիւր ոգւոցն յանցնիւր մարմինս։

Քանզի որպէս յանցանքն ադամայ եմուծ զմահ, այսպէս արդարութիւն քո զկեանս շնորհեաց. որպէս ասէն առաքեալ եթէ, * Որպէս միոյն յանցանօք յամ՟ մարդիկ դատապարտութիւն, նոյնպէս և միոյն արդարութեամբն յամ՟ մարդիկ արդարութիւն կենաց։ Եւ դարձեալ թէ, * Որպէս թագաւորեցին մեղք 'ի մահու անդ, նոյնպէս և թագաւորեսցեն շնորհօք 'ի կեանսն յաւիտենից 'ի ձեռն տեառն մերոյ յի՟ քի՟։ Եւ զի կեանս յաւիտենականս շնորհեցաւ մեզ քո յարութեամբն, յայն սակս ասէ քարոզն։

Եւ ետ յոյս հաստատուն վերստին նորոգումն կենդանութե՟ ամ՟ մարդկան։ Հաստատուն ասէ, որ է անսուտ. և տես՝ զի ոչ վասն աստի ինչ իրաց ասէ տուեալ զյոյսն, այլ վասն հանդերձելոցն. զի 'ի նորոգումն յաւիտենից կենացն է տուեալ յոյսն։ Եւ ասէ յոյս հաստատուն. որպիսի ինչ, վերստին նորոգումն կենդանութե՟ ամ՟ մարդկան։ Վերստին՝ թէ միւսանգամ. իսկ նորոգելն՝ զհնացեալն՝ և զապականեալ մարմնոց նորանալն անապականութեամբ ցուցանէ։ Եւ զի՝ վասն այնպիսի պարգևի գոչանալ խրատեաց։

Խնդրեսցուք 'ի փրկչէն մերմէ յսէ քսէ որ փրկեաց զմեզ 'ի մահուանէ։ Եւ զինչ է զոր խնդրելն հրամայէ։ Ոչ է արժանաւոր արասցէ յարութեանն իւրում կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոյ։ Տես զորպիսի պարգև խնդրել վստահացուցանէ. այնպէս զմեր խոնարհ մարմինս փառաւորել, ոչ զտէրունական մարմինն։ Քանզի 'ի յայս յոյս առաքեալն վստահացոյց ասելով թէ՝ *Նորոգեսցէ զմարմին խոնարհութեան մերոյ կերպարանակից լինել մարմնոյ փառաց իւրոյ։ Այնպէս և պետրոս, *Հաղորդերձեալ փառացն որ յայտնելոցն է՝ հաղորդս զմեզ ասաց։ Եւ յովհաննէս ասէ թէ, *Յորժամ նա յայտնեսցի այսինքն քս, նման նմա լինելոց եմք։ Ո՛վ մեծի պարգևիս. եթէ ոք ունիցի իմացումն, խնայել յինչս կամ յանձն մա՛րթիցէ՝ այսպիսի ունելով յոյս։ Եւ յարէ 'ի նոյն աղաչանս։

Ամենակալ տէր ած մեր կեցո և ողորմեա մեզ։ Զայն զայս հայցելով յամենակալ տեառնէն և յամենակարօղ, զայն տայ և միաբան հայցեն՝ զկեցո տէրն ասելով։

Մաղթանք։

Ամենապայծառ և ճշմարիտ յարութե քի այ մերոյ։ Ոչ է ոչ եթէ առաքելոցն միայն, այլ և որ այլ ևս ընտրեալք էին յետ յարութեան տեառն, համայն շնորհօքն որ տուաւ առաքելոցն՝ և նոքօք աշխարհի, ամենեցուն պայծառ և ճշմարիտ քի յարութին երևեցաւ։ Զյարութեան ասէ քի այ մերոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ՝ զկնի Ողորմեայն։

Եւ նախ առաջին զայս կարևոր համարիմ ուսանիլ եթէ զինչ ազգաւ այլ քարոզքն ընդ ժողովրդեանն խօսին, իսկ սա ըստ աղօթից կերպի ընդ այ խօսս ունի։ Եւ ոչ սա միայն, այլ և 'ի պատարագին յետ յիշատակացն քարոզն է, և որ յերեկոյին ժամուն յետ օրհնութե ճրագացն. երեքին սոքա ընդ ած խօսին. զորս այսպէս իմանալի է։ Ոչ գոհութիւնք շնորհակալութե՝ այ

մտածութեանն։ Ա՛յն՝ վս՟ ՚ի գիշերին խաղաղութե՟ մնալ և հասանել յառաւօտին պաշտօն. և միւսն՝ վասն ՚ի տուընջեանն և յերեկոյին փառաբանութիւն խաղաղութեամբ գալոյ։

Իսկ որ ՚ի պատարագին է՝ զայնմանէ գոհանալ և շնորհակալել, զի այնպիսի մեզ պարգևեցաւ պատարագ և զենումն։ Վասն այնորիկ բարձր ձայնիւ սարկաւագն ասէ. որպէ զի մեր ժողովուրդքն հաղորդեսցին գոհութեանցն և մաղթանացն։ Նաև յոլովք որ առ ծուլութեան շուլթափեալք թողուն զքարոզս զայս, և յարեն յիրեարս զողորմեացն և զտէր յերկնիցն՝ երկուս մեծամեծս առնելով մեղս։ Մի՛ զայն, զի զողորմեացն փառս տալով չաւարտեն որպէ կարգաւորութիւն է. և միւսն՝ զի փառատրութիւն որ ՚ի բոլոր ժողովրդենէն առ սուրբ երրորդութիւնն՝ ՚ի բաց հատանեն. որպէ թէ ա՟փ ՚ի վերայ բերանոյ եդեալ մեր ժողովրդեանն, զի մի՛ փառաւորեսցի սուրբ երրորդութիւնն ՚ի ժողովրդոցն։

Պարձեալ՝ որ վասն գիշերոյն պահպանութեան է շնորհակալութիւն փառատրութեամբ, զի զայն մի՛ մոռասցեն ա՟յ։ Եւ վասն էր՞ր զայս չոր դնեն խմացաւ։ Գիտէ թէ՝ որ վասն անցելոցն խաղաղութեանցն շնորհակալ լինի, և յառաջիկայն պահպանութե՟ գտանէ. վասն այսր՝ գիշերոյ պահպանութեան անշնորհակալս առնէ, զի տուընջեանն դիւրամուտ առ ՚ի յիւրմէ փորձութիւնքն լինիցին։ Զի չէ՛ ընդ վայր ասացեալն, *Բերան գոհացօղ՝ պարգևս ունի զա՟ծ։ Յաղագս որոյ առաքեալն ասէ, *Գոհացարուք յա՟մ ժամ ՚ի վերայ ամենայնի յանուն տեառն մերոյ յի՟ ք՟ի։

Եւ մեր զայն ա՟մ խմացեալ, մի՛ պղերգասջուք գոհանալ զա՟նէ. այլ յուտել և յըմպել, և ՚ի գործել և ՚ի հանգչել, և ՚ի ննջել և ՚ի յառնել, և ՚ի կատարման տուընջեան և ՚ի սկսանել գիշերոյ, գոհութե՟ ա՟յ մատուսցուք։ Որպէս վարդապետեալ յառաքելոյ, *Թէ ուտիցէք, թէ ըմպիցէք, թէ զինչ և գործիցէք, ՚ի փառս ա՟յ արասջիք։ Նախինքն թէ՝ ընդ ա՟մի փառս տասջիք ա՟յ. զի այսպէս ա՟յ խնամքն և պահպանութիւնն մեզ շնորհեսցի, և ա՟մ պէտս մեր հոգասցի։ Բանզի և մարդկան այսպիսի սովորութե՟ է. շնորհակալացն յօժարամիտ տան զպարգևսն, և քանդաղկոտ առ նոսա են որք ոչն գոհանան։

Նաև յաւետարանին տեսանեմք այսմիկ վկայութիւն մեծ։ Իննն բորոտ կիւրացեալ և մի այլազգի, զի սրբեցան ՚ի տ՟նէ՝ իննունքն ոչ դարձան առ տէր փառս տալ նմա ա՟յ. և այլազգին ՚ի ձայն մեծ փառաւոր առնէր զա՟ծ։ Վասն որոյ ապերախտացն մեղադրութիւն մինչև ցայսօր քարոզի յաւետարանին յեկեղեցի ընդ ա՟մ տիեզերս. և միոյն գովութիւն յամենեսեան հռչակեալ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ և ՚ի կեանսն յաւիտենականս եւս զխաղաղութիւն առցաւ։

Իսկ նոքա զրկեալ յայնցանէ եղեն. նմա ասաց տէրն՝ *Հաւատք քո կեցուցին զքեզ։ Ոչ ասաց թէ ողջացուցին յախտէն. որ հասարակաց նորա և այլոց էր. այլ եթէ՝ կեցուցին զքեզ։ Զքեզն ասել՝ զառանձինն՝ նմա միայնոյ զպարգևեալն յայտնէ որ է յաւիտենից կեանքն. այպէս ասէ, *Ե՛րթ ՚ի խաղաղութիւն. Իսկ այս յաւելուածին. զի ե՛րթ, և ոչ երթայք ասաց։

Տեսէ՛ք արդեամբք զոր բանիւքն ասացի, թէ վասն այնր սատանայ խափանէ զգոհանալն, զի մի՛ այլ ևս պարգևս առցուք։ Տե՛ս և զայն թէ ո՛րչափ սամարացւոյ բերանն գոհացօղ, պատրաստական նմա զանձ կացոյց կենաց և խաղաղութեան։ Վասն որոյ և ես ասացից առ այս զոր սուրբն այն ասաց գրիգոր կոչեցեալն ածաբան, թէ՝ *Լե՛ր մի՛ յիննուցն ապերախտից, այլ ամենաերախտաւորին նմանեաց և ասա։

Երկրպագեմք քեզ տէր ած մեր՝ անցեալքս ընդ երկարութիւն գիշերիս և հանգուցեալքս ՚ի տեղի խոստովանութեն. մատուցանեմք քեզ զառաւօտու աղօթս մեր.

Երեք են վասն որոյ երկրպագել ասէ. զի պահեաց յերկարութեան գիշերին. և զի կանուխ գալ ՚ի սուրբ եկեղեցի աղօթանոցս. և զի յառաւօտին պաշտօն ժամանեցոյց։ Տեսանե՞ս դարձեալ յեկեղեցւոջ զքարոզս լեալ, զոր սուրբ տեղի խոստովանութեան կոչէ, այսինքն գոհութեան. քանզի գոհանալ կամելով զտեղին ասէ թէ՝ վասն զքեն գոհանալոյ սա շինեալ է։

Զոր առիս և մարգարէն ասէ, *Մտէ՛ք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ ընդ յարկս նորա։ Իսկ վն հնոյ տաճարին ասէ, *Ա՛նդ ելանէին ցեղք ցեղք տեառն վկայութիւնք իսրայէլի՝ խոստովան լինել անուան տեառն։ Իսկ դարձեալ թէ, *Երկիր պագից ՚ի տաճար սուրբ քո. և խոստովան եղէց յանուան քո. և գոհութիւն ասաց անուան քում վասն ողորմութեան և ճշմարտութեան քոյ։ Իսկ թէ վասն զմեղս խոստովանելոյ յեկեղեցւոջ տյ և թողութիւն հայցելոյ կոչէ զնա խոստովանութեն տեղի՝ ոչ սխալէ։

Զքեզ տէր օրհնեմք և փառաւորեմք և զքեն տէր գոհանամք ՚ի վերայ այսր ամենայնի։ Զորոյ վերայ օրհնեալք և փառաւորեալք և գոհանալ. ասէ առաջիկայ բանն։

Որ արժանի արարեր զգիշերս խաղաղութեամբ անցուցանել և հասանել մեզ ՚ի ժամ առաւօտուս։ Ոչ եթէ մեք այսպիսի շնորհի արժանի էաք ասէ. այլ դու արարեր արժանի գթալով։ Այժմ զի՞նչ է զոր խնդրեն կամի.

Արժանիս արա զմեզ տէր երկնային խոստմանց քոց • զոր խոստացար տալ սիրելեաց քոց ։ Բոլոր զաստի կենցաղս գիշեր կոչեաց առաքեալն յասելն , *Գիշերն մերժեցաւ և տիւն մերձեցաւ ։ Այինքն՝ եկեալ է ՚ի սպառումն աստի կեանք • զոր մարգարէն ասէ , *խոնարհ արար յերկրի զկեանս իմ ՚ի խաւարի ։ Այլ զի մերձ է արեգակն արդարութեան երեւիլ , լուսաւորել զարժանաւորս ։

Արդ՝ զոր խնդրեմ՝ է այս • որպէս ՚ի գիշերային խաւարէ առաւօտիւս լուսաւորեցեր , նոյնպէս յայս խաւարես կենաց այսուց լուսով լուսաւորեա որ ՚ի յերկինս է ։ Վասն այնորիկ երկնային խոստումն կոչէ , զոր խոստացար տալ սիրելեաց քոց Ճշմարիտդ աստուած ։ Խոստացար ասէ և անսուտ ես յս քս տէր մեր կեցո և ողորմեա ։

## Աղօթք •

Ողորմած մարդասէր և քաղցր տէր՝ քաւեա և թող զմեղս մեր ։ Ըստ սաղմոսին զաղօթսն առնէ • զի անդ ասէ , ողորմեա ինձ ած ըստ մեծի ողորմութե քում ։ Եւ աստ սոյնպէս զողորմութիւն և զքաղցրութի և զմարդասիրութի առաջի արկեալ , այնու զքաւութի մեղաց հայցէ ։ Եւ ապա՝ զի որ առաջիկայ սաղմոսն փառաբանութեան , աղաչէ արժանապէս զփառաբանութիւն զայն , և զոր այլ ևս մատուցանի առաքելոյ , և զհանապազորդն ՚ի նոյն յաւելու ։ Արա արժանի ասէ փառաւորել զհայր և զորդի և զսուրբ հոգին • այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

## Վասն օրհնութեանն՝ զնի Տէր յերկնիցն •

Եւ յորժամ խէթ աչօք պղուցեալ նայիցի ոք ընդ վճիտ ճառագայթս արեգականն առ ՚ի զննել զհանգամանս և գեղոյ վայելչութե նորա , առաւել մթասի իսկ , քան թէ օգտեսցի ։ Սոյնպէս ո՞րչափ ևս առաւել՝ յորժամ զիմանալի ակն ոգւոյ ոք նսեմացեալ ունիցի , և զանհետազօտելի լոյս արեգականն արդարութեան խիզախեսցի որոնել , զորինակն ոչ կարասցէ մտանել ։ Եւ թէ այլում ումեք այս մատակար է , ապա յոյժ մանաւանդ խնամս տկարութե . որ առաւել զառածեալս եմ մեղօք , և ոչ ճանաչելով զչափ անձին՝

կամ. ունկն դնելով մարգարէին որ ասէ, *Մեղաւորին զիմ՞րդ լեցէ պատմել բնաւ զմեծութիւն փառացն իմոյ:

Բայց մեղսակամարդ մօք և սեաւթորմի ոգւով յայս յանդգնեցայ, 'ի վեր քան զկար և զարժան անձին իմոյ համարձակել: Այլ անուանս զի և 'ի կարգ որբոցն բանից՝ իմոյս հօծել բերանոյ բանիցս յեռևալ, որ է յոյժ մանուանդ լրբութիւն և եղկելի անձին իմոյ դատապարտութիւն: Բայց քանզի գրաւեցեր եղբայր սիրելի թեոդորէ ընդ կապով բանի զանձն իմ եղկելի, և անձնողորմելի զիս յայսմ աշխարհի փախստեան յուսոյ: Ով է սաստ սպառնալեաց անհնազանդութեան՝ ոչ տայ մեզ թոյլ այլ ազգ ինչ խորհիլ, այլ միայն հաւանիլ:

Արդ և աներուանական բանիցն հրամանս 'ի սոյն յորդորէ, ամենայնի տալ խնդրողաց և մի հեղգանալ: Այլ և սէր՝ յաղթող ամենայնի գտանի. և ոչ տայ թոյլ ունեք զհրաժարել անցանել: Այս որ մոռանամք այժմ զտկարութի անձին. մանուանդ թէ և վստահանալով յողորմութին իմ, և օգնականութեամբ աղօթից ձերոց բուռն հարցուք զիրէս, յուսով և հաւատով ձեռնամուխ լինիլ 'ի սոյն: Այլ աղաչեմք տաւել՝ ձեռն կարկառել մեզ առ 'ի յօգնականութի. զի թերևս արժանի գտցուք տեսութեան բանիս:

Օրհնութիւն՝ զկնի Տէր յերկնիցին:

Մերնագրութի բանիցս յայտնի ցուցանէ զանուն աղօթիցս. զի օրհնութի ասէ: Այլ օրհնութի՝ ըստ մեծին դիոնեսիոսի՝ յայտնութիւն լոյսի. որ է պատմաբանել, կամ գովաբանել: Այլ օրհնութի՝ յատուկ իմոյ վայելէ. զի նա միայն է օրհնութեան արժանի որ արարիչն է ամենայնի, ըստ առաքելոյ: *Օրհնեալ է ած և հայր տն մերոյ յի քի: Այլ մարգարէն ասէ, *Օրհնեալ է ած որ ուսոյց զձեռս իմ 'ի պատերազմ: և թէ՝ *Օրհնեա անձն իմ զտէր, և ամ ոսկերք իմ զանուն սուրբ նր: *Օրհնեա և մի մոռանար զամ տուրս նորա. և թէ. *Օրհնեցից զտէր յամ ժամ, յամ ժամ օրհնութիւն նորա 'ի բերան իմ:

'Ի սոյն յորդորէ և զամենեսեան ասելով, *Օրհնեցէ՛ք զտր ամ ազինք, գովեցէք զնա ամ ժողովուրդք: Այլ ամենայնն ասելով, ոչ զոք եթող արտաքոյ բանիս. այլ զամենեսեան հրաւիրեաց յօրհնաբանութի արարչին, զհրեշտակս և զհեթանոսս, զազգազգս և զբարբառս. նաև զգազանս ամ զանբանս և զանշունչս ևս:

Բայց և մանկանցն եկեղեցւոյ աստուածնականի այդ հրաման՝ միշտ պարապել յօրհնաբանութիւնն Այ (Աստուծոյ) ասելով, *Օրհնեցէք մանկունք զտէր, և օրհնեցէք զանուն տեառն: Սոյնպէս և զպաշտօնեայս 'ի պատերազմի կոչէ մանկունս. որք հանդիսացան ընդդէմ բանսութեան չարին: Զի թէ զմարտիրոսն ասես՝ և թէ զճգնաւորսն, ամենեքեան անուանքն Այ (Աստուծոյ) յաղթեցին չարին խորհրդոց և զօրացան 'ի պատերազմի որում մանկունք կոչեցան:

Նա և մարդկան սովորութիւն է զմեծիշխս և զքաջ պատերազմօղս մանուկ կոչել. և հոգևոր մանկունք միշտ օրհնաբանք կոչին Այ (Աստուծոյ): Բայց և առաքելական բան՝ օրհնութիւն միշտ պատրաստ ցուցանէ զառաքինիսն և զսուրբսն: Իսկ որ ասէ թէ՝ զկնի Տր (Տեառն) յերկնիցին, ցուցանէ թէ և այն օրհնութիւն է Այ (Աստուծոյ). Քս (Քրիստոս) որում և 'ի բանիցն յայտնի:

Իսկ այս իբր գլուխ և զարդ 'ի վերայ ամենայնին եդաւ և կնիք ճշմարտութեան. զի բազմօրհնեան կոչի, և բարձրագոյն տեսութիւնս յինքեան ամբարեալ ունի. զի հրեշտակական է այս օրհնութիւն, և փրկութեան մարդկան աւետիք. որ եղև 'ի ձեռն միածնի որդւոյն Այ (Աստուծոյ): Որպէս ուսանիմք 'ի սրբում աւետարանին, երևել հովուացն լուսաւորել հրեշտակին և աւետարանել եթէ *ծնաւ ձեզ այսօր փրկիչ որ է օծեալ տէր 'ի քաղաքի դաւթի: *Եւ որ եղև ասէ յանկարծակի ընդ հրեշտակին ընդ այնմիկ բազմութիւն զօրաց երկնաւորաց. որք օրհնէին զԱծ (զԱստուած) և ասէին, փառք 'ի բարձունս Այ (Աստուծոյ) և յերկիր խաղաղութիւն 'ի մարդիկ հաճութիւն:

Արդ որոյ ամ (ամենայն) օրհնութեամբքն որ յառաջ քան զսա զոր օրհնեն մարդիկ ընդ երկրաւորաց, 'ի յերկրի են և 'ի յերկրէ օրհնեն: Իսկ այս օրհնութեամբ բարձրանամք յերկրայնոցս յերկինս. և ընդ երկնայինսն ձայնակցելով օրհնեմք զամենասուրբ զերրորդութիւնն: Եւ ասոր ճանաչել պարտ է զմեծութիւն աղօթիցս, և զի խմաստիւք բարձրագոյն փառաբանութիւնս: Եւ առաւել խոհեմ միտք և երկիւղածութբ (երկիւղածութեամբ) յօրհնելն մերում, ամենեքին զմիտս յերկրայնոցս ամբառնալ, և ընդ երգաբանել բանիս՝ 'ի բարձունս բարձրանալ միտք, և ընդ բարձրագոյն զուարթնոցն օրհնել զամենեցուցն Ած (Աստուած):

Բայց են ոմանք որ առ տարապարտութեան միտաց՝ շուտափեալք խուրամանչիւրոք աստուածինն 'ի միւս երգեն զօրհնութիւնս զանխուլաբար. և յոյժ մեղանչեն անմտութեամբ: Զի թէ ինքեանք չիմանան զոր ասենն, Այ (Աստուած) որպէս ականջ ունիցին ունկնդիր լինիլ: Եւ մանաւանդ զի հրեշտակական ունիմք զայս աւանդութի (աւանդութիւն), միաբանութբ (միաբանութեամբ) և բարձրագոյն եղանակաւ երգել որպէս նոքա 'ի ժամուն յայնմիկ:

Զի յօժարական կամօք և ջերմ սիրով լցեալ փառաբանութի

մեր, և մի՛ ՚ի հարկէ, և մի՛ երկմտութեամբ և սնոտիապաշտից սրտիւ․ այլ սիրայորդոր ջերմութեամբ և միամտութեամբ փառաւորող զե-ղապարելով։ Զի յայտնի լիցի ամենեցուն հաւատս մեր և դաւա-նութիւն և խոստովանութիւն ՚ի սուրբ երրորդութիւնն։ Զի որք տեսցեն՝ փառս մատուցանիցեն ամենակալին այ, ճշմարտապէս զա̃ծ ՚ի մեզ հաւատալ։

Իսկ զի՝ կարգեալ եղև սա յամենայն աւուր երգել յեկեղեց-ւոջ միաբան հաւատացելոց անխափան սովորութեամբ, ունիմք զայս հաստատագոյն յաւանդութենէ սրբոց հարցն։ Որք երբեմն ՚ի մի ժողովեցան հրամանաւ հոգւոյն սրբոյ, զօրացեալ ՚ի քաջութեան ա-ղանդոյ անվաւեր չարափառութեն․ որ զինեցան ստութեամբ հա-կառակելով ընդդէմ ճշմարտութեան։ Որք երգեցին զփառաբա-նութիւնս զայս առ ՚ի հաստատութիւն հաւատոյ ուղիղ եկեղեց․ որոց զհաւատամքն ՚ի ժողովին Նիկիական ընդդէմ մոլորութեանն արիոսի․

Նման որոյ ՚ի վերայ հրեշտակական փառաբանութեանցն հիմ-նարկելով զօրհնութիւնս զայս, իբր զի հաստատագոյն յաւէտ լիցի շինուած հաւատոյ դաւանութեանս որոց և եղև իսկ․ զոր յաւէտ ընկալեալ կաթողիկէ և առաքելական եկեղեցի սուրբ՝ երգէ միշտ օր ըստ օրէ հաւատով և յուսով իբր զմեծ աւուր պարգև և գանձ անկողոպտելի, և իբր զթագ արքայական և մատանի դրոշմեալ աջոյն հայրական։

Զի սա մեզ կենաց աւիթ և պատճառ փրկութեան․ սա հա-ւատոյ խոստովանութիւն և ճշմարիտ դաւանութիւն առ սուրբ եր-րորդութիւնն։ Սա դուռն կենաց մտից առ ա̃ծ, և ճանապարհ ան-սայթաք առաջնորդելով յարքայութիւնն․ սա սարսափելի օդային այսոցն, և երկիւղ սանդարամետականացն։ Սա պարծանք յուսոյ առ ա̃ծ, և նշան քրիստոնէութեան․ սա ժառանգ անմահ կենացն, և թո-շակ ելից մերոց յերկինս․ սա ցանկալի հրեշտակաց, և քաղցրալի վեր-նոցն դասուց։ Սովաւ օրհնեմք զեռանձնեայ ա̃ծութիւն, և սովաւ փառաւորեմք զհամագոյ տէրութիւն հօր և որդւոյ և հոգւոյն ս̃րբոյ զփառաւորեալն յամենայնի։

Որով և յն վկայեալ լինէր 'ի հօրէ ճշմարտապէս որդի սիրելի 'ի թաբօր և 'ի յորդանան. և վարիւր յանապատ 'ի հոգւոյն և յաղթեր փորձողին։ Որոյ զօրութեն գանձայր 'ի գալիլեա և զմեծամեծ նշանսն և զզարմանչելիսն հրաշագործէր. և համբաւն տարածիւր յամենեցունց լսելիս։ Եւ ամենեքեան գային և լսէին և բժշկեալ լինէին յիւրաքանչիւր ախտից, և փառաւոր առնէին զած։ Զորոյ զհայհոյութին անթողլի ասէր տէրն աստ և 'ի հանդերձեալ աշխարհին։ Եւ վճռու՝ հաստատելով ասէր առ հրէայսն, * Եթէ հոգւովն այ հանեմ ես զդևս, ուրեմն հասեալ է 'ի վր ձեր արքայութիւնն այ։

Տէր և հոգին սուրբ որ 'ի փառս ած ընդ հօր։ Այլ և սա յամենց հակառակութիւն կրի թէ՝ ընդէ՞ր համառօտ և սուղ է եղեալ զբանս որ յաղագս հոգւոյն. և ոչ երկայնագոյն որպէս վասն հօր և որդւոյ աերճաբանեաց. Զոր ոչ է խրատեցի զայս քննել, այլ միայն հաւատով ընդունել. զի յերկուսին մի է ածութիւն. և երեքին մի՝ յորս ածութիւնն ըստ սրբոյ ածաբանին գրիգորի։

Զի հօր փառաբանութիւն և որդւոյ՝ և հոգւոյն համարեալ է. և հոգւոյն պատիւն՝ որդւոյ և հօր։ Եւ զհօր այ բարերարութին պատմեաց բանիւս, և զորդւոյ զանօրէնութիւնն. Իսկ հոգւոյն զի մարմին ոչ զգեցաւ, այլ միայն ներգործեաց 'ի անօրէնութե որդւոյն։ Վասն որոյ երկայնապատում ոչ արար. այլ կարճ և համառօտ բանիւ էանց, բաւական համարելով առ 'ի հաւատարմութիւն ած ընդ հօր դաւանեալ զհոգին ճշմարիտ։

Զի թերևս վասն ձանձրութեան ոչ երկայնեաց զբանս, այլ խնայելով յաղօթականսն կարճեաց. զի հանապազօրեայ է բանք աղօթիցս. և յետ բազում աշխատութեանց օրհնաբանելի յաւարտին ժամուն։ Զի թէ կամեցեալ էր երկարել զբանս, դիւր տեղի ընդարձակութեան, յիշելով զիջումն հոգւոյն 'ի յորդանան և 'ի դաս առաքելոցն 'ի վերնատունն, և զերևումն 'ի թաբօրական լերինն լուսաւոր ամպով։ Նաև զշրջելն 'ի վերայ ջուրց և արարչագործել 'ի սկզբանն. և զիջանելն միշտ 'ի ջուրս աւազանին, և զշնորհս և զպարգևս ամենեցուն տիրապէս բաշխել ըստ արժանւոյն։ Այլ զի ոչ արար, վայելուչ է զոր պատշաճ համարեցաւ եղեալ համառօտ և լիապէս. որպէս ասէ,

Տէր և հոգին սուրբ որ 'ի փառս ած ընդ հօր, ամէն։ Ամէն ասելն 'ի վերայ եղեալ հաստատութիւն է և կնիք. զի յեբրայականնէն 'ի մեր ամէնն՝ եղիցի թարգմանի. այս և՝ է, և ստոյգ, և ճշմարիտ։ Նաև համաձայնութի է ժողովրդականացն մանկանց եկեղեցւոյ. զի ամէն ասելովն կցորդ լինին ժողովուրդքն քահանայիցն. որպէս առաքեալն յայտ առնէ ասելով վասն այլալեզուացն թէ, * Զիարդ

տեսիցէ զամենն 'ի քում գոյութեանն որ կայցէ 'ի տեղի ազնուին • յորժամ համաձայնութիւն ոչ իցէ միով բարբառով և լեզուաւ ։

Վասն այսորիկ և մերն Թարգմանիչք աշխատեցան վն գրեալ գրիս մերոյ և տողթիւք խնդրեցին յոյժ մինչև աւուրն • զի ժողովուրդքն 'ի խաւարի մի՛ մնասցէ • որոց քրիստոնէին օրհնութեամբ եղիցի ։ Եւ այս մինչև ցայս վայր որք յառաջին ասացաւ՝ որոց որանց խօկ է տողթք և դաւանութի 'ի սուրբ երրորդութիւնն կարճ և համառօտ բանիւ , առ 'ի համառատութի ուղղափառ դաւանողաց , և զկնի եկեղեց վարդապետութի և հաւատարմութի ։ Վասն որոյ և զամենն 'ի վերայ եղեալ կիրքէ զբանս • որով առաւել բանիւ յայտ ամենեցուն լիցի ։ Որպէս թէ ասիցէ , փառք հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ • այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Եւ աստ հանգիստ պարտ է առնուլ ։ և երկար միջոցաւ դադարիլ • որպէս 'ի մէջ գուբաղայից սաղմոսացն յորժամ զօրհնութիւն և զփառս մատուցանեն ։ Զի մի՛ որք յանդգնեսցի ազխաղաբար խիղախելով • որպէս տեսանեմք յանուսումն և յանարդոյ մարդիկ , որ զվերջին բան տողթիցս 'ի հետակայ բանիցդ սկիզբն խառնեն ։ Եւ զայն • որ ոչ է յայսմ տողթից , այլ անջրպետաւ որոշեալ և զատեալ , 'ի նմին յարելով շփոթեն զճշմարտութիւն ։

• Զի լաւ է կոյր աչօք , քան թէ կոյր մտօք • զի կոյր մտօք՝ զմարմինն ոչ վնասէ • այլ զհոգին 'ի խաւարի և 'ի սատանայս մահու միշտ ընկղմէ • և որք թէ 'ի լոյս իցէ՝ զբօսնուլ յորդորէ • որք և լսեմք այժմ 'ի ազխաղաբարոյ և յանձնահաճ մարդկանէ զի ասեն , Տէր և հոգիդ սուրբ որ 'ի փառս տծ որ ընդ հօր և ընդ որդւոյ օրհնեալ այսօր և յամենայն ժամ ։

Եւ կամ որ այլ իմաստունքն ձևանան , երբ քերելով խմ ասեն , Տէր և հոգիդ սուրբ 'ի փառս տծ ընդ հօր ամէն և յամենայն ժամ ։ Եւ ամենեքեան անարժանին կէտ և հանգիստ զայս առնեն անմտութեամբ • զհետակայ տողթիցն սկիզբն , յառաջնոյ օրհնութեանցս վերջ և ատարա դնեն ազխաղաբար և ոչ ամաչեն ։ Եւ որս ասել պարտ է • աւա՜ղ ազխատութեանդ , եղկելի կարութեանդ , վա՜յ անուսումնութեանդ ։

Զի այնչափ հող ոչ առնեք զի 'ի գիրս նայիք և գտնեալ մարմնական աչօք զգրեալն տեսանէք • զի երբ զսովորական ընդ մարք կալով , զճշմարտութիւնն ճանաչիցէք • այլ երբ պարզ կարգաց զմեծոյ ծանուցեալ , սովորաբար զնոյն պատապանէք ։ Զի բաց յայնմ օրէ յորում 'ի աստանակոչ ընթերցեալ էն զգիրս տողթից կամ սաղմոսաց , բնաւ այլ ոչ է փոյթ լեալ 'ի գիրս նայելոյ զի զճշմարտութի ուսցին ։

Իսկ թէ ու ուրեք զոք տեսանեն զի սաղմոսարան կամ տողթամատոյց ընթեռնու , զարմանալով ասեն , զոր 'ի բերան ունիս՝ վն

Եթէ դիւրաւ վարժիս · ընթերցիր զայն զոր ոչ գիտես 'ի բերանոյ ։ Այլ ոչ խմանան թէ առաւել այնք է. պարտ հոգալ վարել, յաճախ ընթեռնուլ և սորվել զոր 'ի բերան մտաւորացանեմք այս երգելով 'ի տուէ և 'ի գիշերի առանձին և հասարակ ։ Ոչ է զոր 'ի գիր ընթեռնու ոք, թէրևս զխալէալն կրկնեալ անչափ սորվեցէ · իսկ առանց գրոց ասացեալն ընդ տարակուսանօք մնայ սխալանքն, եթէ միշտ առանձինն 'ի վերայ գրոց ոչ սորվեցէ ։

Սան որոյ առանձինն 'ի գիրսն պարտ է նայել և զճշմարիտն սորվել · զի կարող լիցի 'ի ժամ աղօթիցն զուղիղն երգել բերանով առանց գրոց ։ Այլ զայս վասն այնորիկ սաստ երկարեցաք զբանս, զի զբազմաց սխալանս յաղօթիցս բանն՝ ծանուսցուք · զի մի՛ ոք անգիտաբար զերկուսեան աղօթս առանց միջոցի 'ի միմեանս յարելով շփոթեսցէ զճշմարտութիւնն ։ Ըստ որպէս ասացաք՝ 'ի վերջ առաջնոյ աղօթիցս յորժամ ասէք զհոգւոյն սուրբ և 'ի փառս ամէն ընդ հօր դաւանէ և զամէնն ասէ՝ միջոց և հանգիստ արարեալ փոքր ինչ լռութեամբ դադարեսցէ ։

Ոչ է բաժանեսցի առաջին աղօթքս միջոցաւն, և յամենեցուն յայտ լիցի թէ որ յառաջն իսկ էր ասացեալ օրհնութիւնս՝ աւարտեցաւ աստ ։ Այլ այս երկրորդումն աղօթիցդ որ զկնի է՝ սկիզբն արարեալ իբրև նոր իմն երգոյ և նոր սկզբան ։ Ոչ է այդ որ զկնի է, յետոյ է ասացած յեփեսոսի ժողովոյն՝ իբր վկայութիւն և ձեռնարկ առաջնոյ օրհնութեանցդ որ 'ի սրբոցն էր ։ Որպէս այն որ 'ի հաւատամքն են յաւելեալ 'ի վերայ նիկիական ժողովոյն որ ասէ, իսկ որք ասեն՝ էր երբեմն յորժամ ոչ էր որդի ։ և զիսկ մեք փառաւորեսցուքն ։

Ոչ է և այն յետոյ է անդ եդած · որպէս ասա 'ի յայսմ օրհնութեանս այս երկրորդ բանքս յետոյ աղօթական ձևով 'ի վերայ է յօդած ։ Այլ այս բաւական է որ միտս ունի և կամիցի լսել և հաւանել կամ 'ի միտ առնուլ ։ Ոչ է յանիրաւ ակամբս ոչ է օգուտ ինչ երկայնաբանել, այլ զուր աշխատանք ։ Իսկ իմաստնոյն պատճառս սուղ ինչ ասէ առուր, և իմաստնասցի առաւելեւս ամենայնիւ ։

## Յորդորակ ։

Եւ արդ՝ եկա՛յք այժմ և մեք միաբան հաւատացեալքս ուղղափառ դաւանութեամբ ճշմարիտ խոստովանողքս սրբոյ երրորդութեանն՝ փառաւորեսցուք զհայր և զորդի և զհոգին սուրբ,

ոչ միայն բանիւք, այլ և գործովք և խորհրդովք։ Զի իմանալի բնութիւն է ա̃ծ, և զգաղտնիս մարդկան տեսանէ․ և ոչ եղեալքն և ոչ գործեցեալքն առ 'ի մէնջ, թաքուցեալ են առաջի նորա։

Այլ կարգեաց օր, յորում դատէ զգաղտնիս մարդկան․ և ոչ առնու ակն ամենեցուն ումեքն, և ոչ խորշի յումեքէ․ զի անաչառ է դատաւոր, և իրաւացի առնէ զդատաստանն։ Ողորմածացն է խոստացեալ զողորմութիւն․ իսկ անողորմիցն տանջանք և դատապարտութիւն որպ̃ մեծատանն։ Այլ զաղքատացեալսն հոգւով մխիթարէ յարքայութեանն որպէս զՂազարոս։

Այլ որք 'ի սուգ ապաշխարութեան ունիցին, սփոփանս խոստացաւ և անվախճան խնդութիւն։ Որք սրբեն զխիղճս յախտից մեղաց, տեսեալ զքս̃ հայրական փառօք բերկրեալ ցնծան 'ի յաւիտենական ուրախութիւնսն։ Ոչ սիրողաց զերկրաւորս՝ մարդասպանութեան սատանայ պատիժս․ իսկ սիրողացն և զպատուիրանն պահողացն՝ զհայրական սէրն խոստանայ և զիւրն երեւումն հանդերձ քաղցրագոյն սիրովն որ ոչ սպառի։

Այլ դու ով մարդ, զայս ամ̃ գիտելով պատրաստեա՛ զքեզ 'ի պատերազմ 'ի կենցաղումս․ զի 'ի կեանս յայս՝ 'ի ջանս մուծաւ մարդ և յաշխատանս։ Այլ թէ կամիս 'ի կեանս յաւիտենից հանգչել, աստ հանգիստ մի՛ խնդրեր․ այլ մարտիր զբարւոք մարտն զի պսակեսցիս։ *Ո՛չ ոք պսակի ասէ առաքեալն, եթէ ոչ ըստ օրինին մարտիցէ։ և թէ՝ *Ո՛չ է մեզ պատերազմ ընդ մարմնոյ և ընդ արեան․ այլ ընդ իշխանութիւնս և ընդ պետութիւնս չարագոյն դիւացն և օդային այսոցն պղծոց։

Վասն որոյ նախ ուղղափառ հաւատով զքեզ զօրացո՛ ով սիրելի որպ̃ ուսար 'ի սրբոց հարցն և 'ի հոգեկիր արանցն։ Այլ թէ 'ի վերայ յառնէ պատերազմ ինչ՝ մի՛ երկիցես․ այլ մարտիր հաւատով և յուսով 'ի վերայ ճշմարտութեանն որպ̃ և հարքն առաջին․ զի տ̃ր ընդ քեզ է որպ̃ և էր ընդ նոսա։ Նա և թէ արքունական սպառնալեաց պատուհաս և թագաւորական սաստից և իշխանական ատենի, մի՛ զարհուրիր և մի՛ թիւրեր զճշմարտութիւն։ Մի՛ ակն առնուր երեսաց, մի՛ ամաչեր, մի՛ պատկառիր և մի՛ զանգիտեր․ այլ համարձակութեամբ ընդ դաւթայ խօսեա՛ց զվկայութիւնս ճշմարտին ա̃յ առաջի թագաւորի առանց ամօթոյ։

Ատեա՛ զփառս մարդկայինս, զի յա̃յ ընկալցիս զյաւիտենական փառացն վայելս։ Եթէ հալածանաց հանդիպիս յաղագս ճշմարտութեան, յօժարութե̃ հալածեցի՛ր ընդ քի̃, զի ընդ նմին հանգիցես։ Եթէ նախատիցիս կամ յընչից զրկիցիս, նոյնպէս սիրով յանձն առ-

ցես. զի զանազան բարիսն ՚ի քէն ընկալցիս։ Նոյն եթէ մահ հասանէ գլխովին վն հաւատոց, մեռի՛ր սիրով քո. զի ընդ նմին յաւիտենական Թագաւորեսցես։ *Զի ոչ են արժանի չարչարանք ժամանակիս առ հանդերձեալ փառսն որ յայտնելոց են ՚ի մեզ ասէ առաքեալն։ և Թէ՝ *Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ. և ոչ ել ՚ի սիրտ մարդկան, պատրաստեաց ած այնոցիկ, որ սիրեն զնա ՚ի բոլոր սրտէ։

Ի վերայ ամենայնի և նախ քան զամ մի յանձնապաստան լինիր. այլ ՚ի տէր պարծեցիր և սերտամբ գործեսցես զամ և ամն շնորհ ունիցիս. զի առանց այ եղև և ոչ ինչ և ոչ այլ լիցի։ Վասն որոյ միշտ զխոնարհութիւն սիրեսցես և զհեզութիւն և զողջախոհութիւն և զանստացուածութիւն և զկարեկցութիւն և զողորմածութիւն և զսէր և զգութ առ աղքատս և առ անանկս։ Նա թէ ՚ի հալածանս իցես և ՚ի տանջանս և ՚ի նահատակութեան, զպահս և զաղօթս և զճգնութիւնս մի մոռանար։

Նա և թէ մերձ ես ՚ի մարտիրոսութիւն մեռանիլ, և կամ նշանս և սքանչելիս գործիցես և մեռեալս յարուցանիցես, այնմ ամենայնի առաւել պէտք են հանդերձ խոնարհութեամբ և սիրով վճարել։ Զի առանց սիրոյ և խոնարհութեան ՚ի զուր է ամ բարեգործութիւն զինչ և գործեն ազգք մարդկան։ *Թէ ունիցիմ մարգարէութիւն ասէ առաքեալ և գիտիցեմ զամ գիտութիւն, և նշանս և սքանչելիս գործիցեմ, և զամ ինչս իմ աղքատաց բաշխիցեմ. և այրիցիմ ես հրով վասն այ, և զեղբայրն ոչ սիրիցեմ ըստ պատուիրանին տեառն, ոչինչ օգտիմ յայնմ ամենայնէ։ Նոյն սողոմոն ասէ, *Տէր ամբարտաւանից հակառակ կայ. և խոնարհաց շնորհս պարգևէ։ Նոյն հայր սորին, *Պատարագ այ ասէ հոգի խոնարհ, զսիրտ սուրբ, և զհոգի խոնարհ ած ոչ անարգանէ։ Նոյն տէրն մեր հրամայէ. *Որ խոնարհեցուցանէ զանձն վասն իմ, ես բարձրացուցից զնա փառօք յերկինս և յերկրի։ և *Ես յո՞ բնակեցայց. եթէ ոչ ՚ի հեզս և ՚ի խոնարհս և ոյք դողան ՚ի բանից իմոց։

Նոյն այլ ինչ բարձրագոյն փառս՝ քան այ ընդունակ և տաճար հանգստեան լինիլ և տեղի և բնակարան. ո՞ր փառք այնմ հաւասարի, կամ ո՞ր մեծութիւն այնմ հանգունակ լիցի։ Զի եթէ զաւուրս մանթուասողայի ոք լցցէ ՚ի վերայ երկրի, և զամ ՚ի բարութեան վայելիցէ, և ՚ի մեծապայծառ ճոխութեան զուարճասցի, և գլխովին զթագաւորական ունիցի պատիւ, և ՚ի փառացն այ զրկեսցի յետ աստեացս վճարելոյ, ողորմելի՛ է այնպիսին և քան զանբանսն ես՝ և քան զանշունչս։ Զի նոքա թէ և յարութեան յոյս ոչ ունիցին, և ոչ տանջանաց երկիւղ. իսկ սա՝ որ զաւուրս ՚ի բարութեան վայելեաց, և

Ի մարդկանէ փառաւորեցաւ ըստ մարմնականն պատուոյ · կամ հեզ-ծաւորութեամբ ձևացաւ բարի և իբրև զասուփք պատուեցաւ, և ոյք ոչ պարզաբերեալք ճշմարտապէս բարի ինչ որ զծածուկն տեսանէ · որ-դարև մեծաց տանջանաց ակնկալցի այնպիսին և դատապարտութե ։

Այլ մի՛ ոք խաբեսցի որպէս ասեն ոմանք անմիտք, թէ գոյ տեղիք որ միջոց է արքայութե և դժոխոցն · որ թէ ոք ոչ յարքայութեանն ոչ է, նա և ոչ ՚ի դժոխսն է, այլ ՚ի միջոցի անդ լիցի ։ Այլ սուտ է այս կարծիքս, մի՛ ոք հաւատասցէ · որպէս ընդ մահն և ընդ կեանս մէջ ոչ գոյ, այսպէս և ընդ դժոխսն և ընդ արքայութիւնն մէջ ոչ կայ ։ Որ ՚ի ցամաքի հանգիստ ոչ գտցէ, ՚ի ծով ընկղմեսցի · և որ յարքայութեանն չէ, ՚ի տանջանսն է ։ Զիմար կուսանքն որ արգելան յարքայութենէն, այլ տեղի ոչ գտին կալոյ · այլ լուան ՚ի տեառնէ թէ՝ *Երթայք յինէն անիծեալք ՚ի հուրն յաւիտենից ։ Յորոց փրկեսցէ քս̃ ա̃ծ զհաւատացեալս անուանն իւրոյ · և արժանի արասցէ ողորմութեան իւրոյ ։ Այլ ինքն եղիցի օրհնեալ ընդ հօր և ընդ հոգ-ւոյն սրբոյ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ այս ՚ի ժողովոյն Եփեսոսի ասացաւ ։

Այլ յամ ժամ օրհնեսցուք զքեզ տէր · և գովեսցուք զանուն քո յաւիտեան և յաւիտեանս յաւիտենից ։

Եթէ որքան մեծ են բանքս ասացեալ, որք մօտ նայեցին՝ նոյն է յայտնի · այլ զի աղօթական բանիւ յօդեալ է յօրհնութիւն հարցն առ ՚ի վկայութի հաստատութեան ։ Նայց պարտ է ամենեցուն հոգ-յանձին ունել և ուսուցանել զանձրպետութիւն և զորոշումն աղօ-թիցս, զի մի՛ ոք ագահաբար մի աղօթք կարծիցէ զերկոսին · որպէս տեսանեմք ՚ի յոլովս որ յառէլն զփառաբանական և զբաղմօրհնեան աղօթս, զվերջնոյս սկիզբն յառաջնոյն վերջն միաւորեն · և զերկոսին չփոթեն · զի ոչ առաջնոյն վերջն ճանաչի և ոչ վերջնոյս առաջքն ։ Այլ միաւորելով յիրեարս առանց հանգիստ առնլոյ զանխառնել անցանեն ։

Զի ոմանք ոչ գիտեն բնաւ թէ երկու են աղօթք և ոչ մի · և յայլ և յայլ ժամանակս ասացած յայլոց և յայլոց արանց ։ Այլ ոմանք ոչ զառաջինն ճանաչեն թէ որոց է, և ոչ զվերջինս թէ այլոց են և ոչ ՚ի նոյն կարգէ ։ Վասն որոյ աղաչեմ զամենեսեան, զի յաղօ-թելն միջոց և հանգիստ առնիցէք ՚ի մէջ երկուց աղօթիցս, որպէս ասացեալ եմք յառաջագոյն զի յայտ լիցի ամենեցուն ։

Եւ յամ ժամ ասէ օրհնեմք զքեզ։ Զմարգարէին առնու բա-ն որ ասէ, *Օրհնեցից զտէր յամ ժամ. յամ ժամ օրհնութիւն նր ՚ի բերան իմ։ Այսինքն՝ ՚ի տուէ եւ ՚ի գիշերի մէջ գոհացայց զքեն.

Եւ գովեմք զանուն սուրբ քո յաւիտեան եւ յաւիտեանս յաւիտենից։ Թէ զի՛նչ է օրհնել կամ գովել՝ ասացեալ եմք յառաջին աղօթիցն տեսութեան։ Իսկ զյաւիտեանն՝ մեծին խոսրովու-յայս արարեալ է երկայնապատում բանիւ։ Այլ աստ համառօտիւ զայս ծանուցանեմք թէ՝ յաւիտեան է ներկայս. եւ յաւիտեանս՝ սկիզբն հանդերձելոյ աշխարհին. եւ յաւիտենից՝ անսպառ եւ անծերանալի յաւիտեանն։

Արժանի արա տէր զօրս զայս խաղաղութբ, եւ առանց մեղաց պահեա՛ զմեզ. օրհնեալ ես տէր այծ հարցն մերոց. գովեալ եւ փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս, ամէն։

Արարածապատմութեամբ մովսէս զտիւ եւ զգիշեր ՚ի մի համար առնու եւ օր մի կոչէ. որպ ասէ, *Եղեւ երեկոյ եւ եղեւ վաղորդեան օր մի։ Այլ զի սովորութիւն է մարդկան համառօտիւ բաժանել, եւ որչափ արեգակն ՚ի վերին կիսագունդս կայցէ, օր կոչել զերկոտասան ժամն միայն։ ՚Նա եւ տէրն պնդէր զմիտս աշակերտացն ՚ի հրաժարեցուցանելն գնալ ՚ի հրէաստան. ասէ՝ *Ոչ երկոտասան ժամ է յաւուր։ Այդպէս եւ աղօթիցս բան ասէ,

Արժանի արա տէր զօրս զայս խաղաղութբ, եւ առանց մեղաց պահեա՛ զմեզ։ Զի ՚ի տուընջեան առաւել ախտալի դիւրագայթ բնութիւնս մեր, ՚ի անարգել լինի ՚ի մեղանչելն։ Վասն որոյ մաղթէ ըզ խաղաղութբ անցուցանելն. զի ՚ի գիշերի է զոր քնով անցուցանեմք եւ նահանջիմք ՚ի մեղաց։ Եւ է զոր նսեմութիւն խաւարին առագաստէ զբնութիւնս մեր եւ կաշկանդեալ կապէ իբրեւ շղթայիւք ոմամբք։ Զի ոչ զօրեն ներգործել զգայարանքն. այլ խափանին վասն լուսոյն պակասութեան։ Իսկ ՚ի տուընջեան զամենեսեան պատրաստ ունին ՚ի գործ. եւ յոլով մեղանչեն մարդիկ յորժամ զերկիւղն այ պահապան ոչ ունիցին. սակս այսորիկ ասէ,

Արժանի արա տէր զօրս զայս խաղաղութբ, եւ առանց մեղաց պահեա՛ զմեզ։ Այլ եւ օր կոչի կենցաղոյս ընթացք որ արեգական բերմամբ չափի ըստ հասարակաց մինչ ՚ի կատարած, իսկ առանձին իւրաքանչիւր ումեք չափ կենաց։ Զի յառաջ քան զմարմնով երեւիլն քի, գիշեր կոչէր կենցաղս, որպէս ցուցանէ եսայի. *Ի գիշերաց կանխէ հոգի իմ ասէ առաւօտ առնել առ քեզ այծ։

Իսկ յորժամ ծագեաց արեգակն արդարութե քս ՚ի խաւարեալ բնութիւս մեր եւ լուսով գիտութե ելից զաշխարհս; տիւ կոչէ-

ցու կենցաղոյս այս ըստ իւրում տեառն բանի ։ *Ինձ պարտ է ասէ գործել զգործս այնորիկ որ առաքեացն զիս մինչդեռ օր կայ ։ Եւ թէ *Մինչ յաշխարհի եմ, լոյս եմ աշխարհի ։ Վկայէ և առաքեալ. *Որ խորհի ասէ՝ զօրն տեառն խորհի · և որ ոչն խորհի՝ զօրն տն չխորհի ըստ անձնիշխան կամացն ։

Եւ յայսմ աւուր կենցաղոյս միշտ որոգայթադիր ունիմք զսատանայ, որ հանապազ ջանայ որսալ զմեզ ՚ի կորուստ · որպէս գրէ գլուխ առաքելոցն պետրոս ։ *Արթուն կացէք հսկեցէք, զի ոսոխն ձեր սատանայ իբրև զառիւծ գոչէ · շրջի և խնդրէ թէ զո՞ կլանիցէ ։ Ա՟ն որոյ խնդրէ աղօթիցս բան՝ խաղաղութբ և առանց մեղաց անցուցանել խնամոցն այ ։ Ոչ միայն զառաւօտեայ հասեալ օրս յորում եմք, այլ և զամ ժամանակս պանդխտութեն մերոյ ՚ի վերայ երկրի ։ Եւ ընդ մեծագոյն պահպանութեն խնամոցն այ փոխարէնս մատուցանել զշնորհակալ բանս գոհութեան ։

Օրհնեալ ես տէր ած հարցն մերոց · գովեալ և փառաւորեալ է անուն քո յաւիտեանս, ամէն ։ Զերից մանկանցն առնու զօրհնաբանութիւն · որ յիշատակս նախնեացն ՚ի գութ ածէին զած ։

Օրհնեալ ես ասէ տր ած հարցն մերոց ։ Այսինքն նահապետացն աբրահամու իսահակայ և յակոբայ · որոց հաւատոցն և մեք որդիք և ժառանգք կոչեցաք ։ Եւ նոցին միջնորդութբն աղաչեմք զի թէպէտ և ոչ վասն մեր բարի ինչ գործոց, այլ գոնեայ վասն նոցին ողորմեա մեզ տէր · որոյ անուանդ քո սուրբ գովեալ է և փառաւորեալ, ոչ այժմ միայն, այլ և յաւիտեանս եւս ։

Օրհնեալ տէր՝ ուսո ինձ զարդարութիւնս քո ։ Երիցս կրկնեմք զբան օրհնութեան ըստ սրովբէիցն սրբասացութեն որ միշտ օրհնաբանեն ։ Եւ ՚ի դէմս որդւոյ ասէ զերիս օրհնեալսն, որպէս զերիս սրբասացութիւնսն սրովբէքն · զոր վկայէ յովհաննէս եթէ եսայի ետես զփառս որդւոյ՝ և խօսեցաւ վասն նր ։ Այլ և կիւրեղ աղեքսանդրացի և դաւիթ անյաղթն ՚ի դէմս որդւոյ ասացեալ ։ Որպէս և սա աղաչէ զնոյն զորդի՝ լուսաւորել զաչս մտաց՝ կարող լինել նայիլ ՚ի լոյս գիտութեն օրինացն այ ։

Այլ և ՚ի խորհուրդ տնօրէնութեն քի որ արդարութիւն մեզ եղև, և արդարացոյց զանօրէնս ձրի շնորհօք ողորմութեան իւրոյ ՚ի ձեռն խաչին իւրոյ ։ Եւ ճանաչէ զմեծագոյն երախտիսն և գոհանայ զառատ ողորմութէ նորա · քանզի շնորհօքն քի եղաք արդարացեալք և ոչ անձին քաջութեամբ · զոր և մարգարէն ասէ, *Արդարութիւն քո որպէս լերինք տէր ած մեր · և իրաւունք քո որպէս խորք բազում ։ Քանզի ոչ բռնութբ, այլ արդարութեամբ յաղթեաց թշնամւոյն մերոյ և արդարացոյց զմեզ ։

Տէր ապաւէն եղեր մեր յազգէ յազգ։ Նախամարգարէն Մով-սէս կարդայ զանուն աստուծոյ մերոյ՝ Տէր ապաւէն. և ամենայն Դաւիթ առեալ զնոյն յերգս սաղմոսին իւրոյ։ Խորհրդաբար զայնս պաղատեալ և ասա աղօթիցս բան, ապաւէն կարդաց հաւատացելոց զտէրութիւն անմահականին այ. Զի ապաւէն եղև բնութեանս, և ՚ի խաւարէ անգիտութեան սատանայորդեաց ՚ի լոյս ճշմարիտ ամենգիտութեան. յազգացն սատանայոց որ ՚ի սկզբանէ՝ մինչև ՚ի վախճան որ քեւ լուսա-ւորեցաք. ապաւէն եղեալ մարգարէութեամբ առաքելական խնամոցն տէրն ՚ի վերայ արարածոց իւրոց. և միշտ լինի մինչ ՚ի կատարած։

Ես ասացի՝ Տէր ողորմեա ինձ. բժշկեա զանձն իմ ես մեղայ քեզ։ Զսաղմոսին առնու զբան. և հայցէ զողորմութիւն յողորմածէն, և զբժշկութիւն ոչ մարմնոյ խնդրելով, այլ զհոգւոյ։ Եւ ու-սուցանէ ամենեցուն, զանձն օրինակ բարեաց առնլով այսպէս աղօ-թել միշտ։

Ցոյց մեզ Տէր զողորմութիւնս քո, և զփրկութիւնս քո տուր մեզ։ Արժանի արա ասէ մեզ սոցա նայել ՚ի սքանչելապար ողորմութիւնս քո. որպէս աբրահամ իսահակ և յակոբ և մարգարէքն և առաքեալքն ամենայն։ Եւ մեծաւ գոհութեամբ ՚ի քէն միշտ զփրկութիւն ընդունել հոգւոյ և մարմնոյ, որոյ սովոր ես պարգևել որոց խնդրեն ՚ի քէն։

Տէր ողորմութիւն քո յաւիտեան, զգործս ձեռաց քոց մի անտես առներ։ Յաւիտեան է ողորմութիւնն քո ասէ. և ես զի ստեղծուած ձեռաց քոց եմ, արարածս արարչիդ միշտ կարօտ գոլով ողորմու-թեան, վասն որոյ խնդրեմ, ոչ առնել անտես՝ այլ կեցուցանել միշտ զկարօտեալս։

Տէր իմ զքեզ ապաւէն ինձ արարի. ուսո ինձ առնել զկամս քո զի դու ես այ իմ։ Զոր յառաջն ասաց և աստ երկրորդէ, յիշատակելով զապաւէն առնելն յօգնականութիւն, շարժէ ակնար-կել բնութեանս զամենաողորմն այ։ Զքեզ ասէ արարի ապաւէն և ոչ զայլ ոք. վասն որոյ պարտիս խնամարկել միշտ։ Եւ ապաւէն կո-չէ՝ որ տեղի ապաստանի է սրտառուցելոցն և կարող է ՚ի թշնամեացն փրկել. վասն որոյ ամենեքեան դիմեն առ նա։ Այսպէս և ես զքեզ միայն ինձ ապաւէն արարի ասէ. և խնդրեմ զի ուսուսցես ինձ զեր-ծանիլ ՚ի հնարից բանսարկուին, և հեռանալ միշտ կամաց անձին իմոյ էոյ։ Զայս և աւետարանիչն յովհաննէս ասէ, *Ո՛ որ գիտես զամ իւրեք զշարախօսին մերոյ զմեքենայսն. դու ծածկեա զամենեսեան ընդ հովանեաւ խնամոց քոց։

Ասա ինձ ասէ. Միշտ զուսանիլն խնդրէ. զի անյագ է բնութիւն մարդկան ըստ Սողոմոնի. *Ո՛չ յագեսցի ասէ ակն տեսանելով և ոչ ունկն լսելով։ Իսկ թէ 'ի զգալիս այսպէս, որչափ ևս առաւել յիմանալին։

Ի քէն է տէր աղբիւր կենդանութեան և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։ Զայս մարգարէն յառաջագոյն ասաց 'ի սաղմոսի անդ հոգւովն սրբով, և զանճառ ծնունդն որդւոյ 'ի հայրական ծոցոյ՝ և զանհաս բղխումն ամենասուրբ հոգւոյն յայս արար, այսպէս ունելով բանին. Ի քէն է տէր աղբիւր կենաց և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։

Հաւատացեալքս 'ի քո ընդունիմք զլոյս գիտութեան ամենայն շնորհացն, պայծառանամք 'ի շնորհացն մկրտութեան աւազանին, և երեւք մնացս պայծառանան 'ի շնորհաց երեսացն քոց. ըստ որում ասէ Երեմիա, *Հոգի երեսաց մերոց տէր քս։ Նաև կենդանական զօրութիւն հոգւոյն սրբոյ միշտ ներգործէ յարժանաւորս և զանարժանս շնորհօք լնու։

Ծագեա զողորմութիւնս քո որք ճանաչեն զքեզ տէր։ Ընդ լուսոյ առաւօտու և զգութ ողորմութեան քո և զլոյս իմանալի մարդասէր կամաց քոց 'ի հաւատացեալքս ծագեա, տարածելով յամենեսեան որք ճանաչեն զքեզ տէր մեր և թագաւոր։

Ծագեա ասէ զողորմութիւնս քո։ Այսինքն՝ զոր օրինակ 'ի ժամ առաւօտուն նշոյլք ճառագայթից արեգականն ծագեալ՝ ըզնսեմութիւն խաւարին հալածական առնէ. այսպէս ողորմութեան քո լոյս ճառագայթեալ 'ի բնութեան մերում, 'ի բաց մերժէ զխաւար մեղաց և զանգիտութեան։ Եւ մեք ծանուցեալ զբարի տէրդ մեր և զարարիչ, գոհացուցք զառատ ողորմութեանդ քումդ։ Որ ես օրհնեալ գովեալ և փառաւորեալ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Զկնի աւետարանին զՓառք 'ի բարձունս.

Փառք պատիւ և գոհութիւն 'ի բարձունս հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։



Խնդրուածք.

Փառաւորեալ իւր անձամբ փառօքն, և պատուեալ ՚ի Հրեշտակաց, և գովեցեալ ՚ի մարդկանէ մշտնջենաւորապէս. վասն որոյ և մեք զնոյն նմա վերառաքեմք։

Յովհաննու իմաստասիրի՝ վասն Առաւօտին երգոյն.

Երկուշաբթին՝ ըստ առաւօտին պաշտաման խորհրդեանն կարգեալ է. յորում ժամու մեռանելոյ գալուստ փրկչին պատմի։ Վասն այնորիկ յառաւօտին աւուրն աղաղակեն ողբերգական ձայնիւ եթէ, *Լոյս տուր տէր աչաց իմոց, զի մի երբէք ննջեցից ՚ի մահ ըստ յիմար հինգ կուսանացն։ *Մի՛ ասասցէ թշնամին կենաց թէ յաղթեցի նմա. կամ նեղիչք իմ ցնծասցեն թէ ես սասանեցայց ՚ի հուրն յաւիտենից՝ որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա։

Իսկ Երեքշաբթին՝ ըստ երրորդ ժամու խորհրդեանն կարգեալ է. յորում ժամու գալուստ Հոգւոյն Հեղաւ յառաքեալսն։ Որոյ զկենարար գալստեանն զփորձ առեալ մանկունք եկեղեցւոյ՝ առաջի անկանելով աղաղակեն եթէ, Ի քէն է տէր աղբիւր կենաց. և լուսով երեսաց քո գալստեանդ տեսանեմք զլոյս։ Եւ թէ՝ Ծագեա՛ տէր զողորմութիւնս քո ՚ի պաշտօնեայս և յերկրպագուս ամենասուրբ Երրորդութեանդ։

Իսկ Չորեքշաբթին՝ ըստ վեցերորդ ժամու պաշտամանն խորհրդոյն կարգեալ է. յորում ժամու հիւանդութիւն նախահօրն պատմի։ Եւ ՚ի նմին ժամու բժշկութի իւրոցն չարչարանօք խաչին տեառն մերոյ յի քի ըստ պիտառութե յովհաննու աւետարանագրի յայտնեն եթէ՝ *Էր ժամ վեցերորդ և ուրբաթ զատկին, և հանին զնա ՚ի խաչ։ Եւ զայսպիսի զփրկական տնօրէնութեան խորհուրդ ծանուցեալ մանկանց եկեղեցւոյ, աղաղակեն գոհանալով եթէ, Ես աղաչեմ տէր ողորմեա՛ ինձ. և բժշկեա՛ զանձն իմ ես մեղայ քեզ։

Իսկ Հինգշաբթին՝ ըստ իններորդ ժամու խորհրդեանն կարգեալ է. յորում ժամու ՚ի խաչին աղաղակէր զէլի էլին ասելով միածին որդին այ։ Եւ ՚ի նմին ժամու ընդ երեկս աւուրն զլուսաւորսն ՚ի խաւարէն փարատէր, ըստ մարգարէական ձայնին նոր առաւօտ ծագելով նստելոցն ՚ի խաւարի և ՚ի ստուերս մահու։ Վասն լու-

սաւորեալ մանկանց եկեղեցւոյ՝ աղաղակեն յառաւօտին յասելն թէ՝ Ես առ քեզ տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։ Նոյն որ ’ի կարգին։

Իսկ Ուրբաթին՝ ըստ առանձնորդ ժամու պաշտամանն կարգեալ է. յորում ժամու ’ի գերեզման իջեալ տէրն արարածոց. և իւրով անապական մահուամբն զանապականութիւն մեզ շնորհելով, ազատեաց ’ի դժոխոց և ’ի գերութենէն սատանայի։ Յորմէ փրկեալ մանկանց եկեղեցւոյ՝ աղաղակեն գոհանալով յասելն թէ՝ *Տէր տր փրկութեան իմոյ ’ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։ և թէ՝ *Մտցեն աղօթք իմ առաջի քո տր։ Նոյն որ ’ի կարգին յարմարի պաշտամանաց բանս։

Իսկ Շաբաթին՝ ըստ հանգստեան աղօթից խորհրդոյն կարգեալ է. վասն զի շաբաթն հանգիստ ըստ եբրայեցւոց ձայնին է և կատարումն յաւիտենից։ Յորում և մերձաւորաց հանգուցելոց յիշատակն պատուի. *Որք զմարմինս իւրեանց ’ի խաչ հանին կարեօք և ցանկութեամբք հանդերձ ըստ առաքելոյ։ Խաչակից լինելով առաջին վկային ’ի խաչ ելելոյն և զիս ժողովողին. յոր ապաւինեալ մանկանց եկեղեցւոյ ’ի նոցա կարօղ բարեխօսութիւնն՝ աղաղակեն ողբերգակին ձայնիւ եթէ՝ Առաքեա տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո. զի նոքին առաջնորդեսցեն ինձ մտելոյս ’ի գիտութիւն ճշմարտութեանն. և հանցեն զիս ’ի լեառն սուրբ և ’ի յարկս քո. զանապատասացեալս ’ի գերակայ բնակութենէն ’ի սորին նուաստութիւնս։

Եւ ապա տօն Աստուածոյն, կամ այլն ըստ պատշաճի աւուր։ Խոստովա՛ն վասն փառրոցին՝ նախ քան զՍուրբ աստուածն։

Փառաւորեսցուք զամենակալն տր զհայր անուն մեր յէ քի, գոհանալով զնմանէ որ պահեաց զմեզ խաղաղութեամբ ’ի գիշերիս։

Տես զի գոհացաւ նախկին, և դարձեալ այլ և գոհանալ հրաման տայ, ուսուցանելով թէ վասն այսորիկ դիմացաք, զի հանապազ ողջ գոհութե՛ մատուսցուք. և մի՛ երբէք մոռասցին ’ի մէնջ երախտիք նորա։ Զայն զայս և մարգարէն ասէ, *Օրհնեա՛ անձն իմ զտէր և մի՛ մոռանար զամ տուրս նորա։

Փառաւորեսցուք զամենակալն տր։ Ամենակալ ասի. զի զամ արարածս ունի ընդ իշխանութեամբ իւրով. և չիք ոք որ կարէ ապստամբել ’ի նմանէ։ Թէպէտ թուի եւ հրեշտակաց և մարդկան անձ-

նեշխան լինել, այլ ոչ թէ յորժամ կամիցի արգելուլ զնոսա ՚ի կամակարութենէ իւրեանց՝ զօրասցին առնել զոր կամին։ Որ և հայր է առաւել մերոյ քան զքո. այն որ բնութեամբ որդին եր նորա, կամեցաւ վ͞ս ողորմութեան որդի լինել մարդոյ. այսուհետեւ եղբայր է մեր։ Եւ որ նորա բնութեամբ հայրն է, շնորհօք և մեր հայր է։

Եւ արդ՝ ոչ միայն արարչական գթութեամբն խնամէ զմեզ, այլ և հայրականաւն. վասն այսորիկ ասէ փառաւորեսցուք զնա։ Զի որպէս զիւր ծնունդս ընդ հովանեաւ իւր ապրեցոյց զմեզ և խաղաղութեամբ պահեաց ՚ի գիշերիս։ Եւ ոչ միայն վասն յառաւօտ լոյսս հասանելոյ գոհասցուք, այլ զի յայս մեծագոյն լոյսն զմեզ եհան։

Ի մահուանէ ՚ի կեանս. յապականութենէ յանապականութի͞. յանգիտութենէ ՚ի գիտութիւն ճշմարտութեան իւրոյ։

Այս է լոյս ճշմարիտ՝ իւր սուրբ գիտութեամբ. յորմէ զրկեալ եղաք անգիտութեան խաւարաւ։ Այլ ողորմեալ ա͞յ հօր, առաքեաց զմ͞ծ զորդին իւր սիրելի, զի հանցէ զմեզ ՚ի խաւարէ ՚ի լոյս և ՚ի մահուանէն յաւիտենական կեանս. զոր և ասէ մարգարէին, * Ետու զքեզ ՚ի լոյս հեթանոսաց, հանել զկապեալս ՚ի բանտէ և ՚ի տանէ կապանաց որ նստէին ՚ի խաւարի։ Եւ ինքն տէրն վասն իւր ասէ, * Ես եմ ճանապարհ և ճշմարտութի͞ և կեանք։ Ճանապարհ, որով ՚ի խաւարէն ՚ի լոյսն եկաք. ճշմարտութի͞, որով յանգիտութե͞ ՚ի գիտութի͞ ճշմարտութեան հասաք. կեանք, որով ՚ի մահուանէ ՚ի կեանս փոխեցաք։

Իսկ յապականութենէ յանապականութի͞։ Նորոգումն զոր աւազանաւն առաք. վասն որոյ ասէ պօղոս, թէ * Ըստ իւրում ողորմութեանն ապրեցոյց զմեզ ՚ի ձեռն աւազանին վերստին ծննդեան, և նորոգութե͞ հոգւոյն սրբոյ զոր եհեղ ՚ի մեզ առատապէս։ Զի արդարացեալք շնորհօք եղիցուք ժառանգորդք յուսով կենացն յաւիտենից։ Զայն վերստին ծնունդ յիշէ և պետրոս թէ, * Ծնեալք վերստին ոչ յապականութեան սերմանէն, այլ յանապականացուէն, կենդանի և մշտնջենաւոր բանիւն ա͞յ։ և զի՝ * Ամենայն մարմին խոտ է։ և զի՝ * Ծնեալն ՚ի մարմնոյ մարմին է, որպէս տէրն ասաց։ Զոր և երկրորդեաց առաքեալ։ * Եւ խոտ ապականացու է։

Վասն այնորիկ ասէ առաքեալ վերստին ծնանիլ. ոչ յապականութեան սերմանէն զոր յադամայ ունիմք, որ մեղօքն ապականեալ՝ զանապականութեան սերմն. այլ է յազգ ծննդոց իւրոց սերմանեաց. այլ յանապականացուէն։ Այս ծննդեան սերմն՝ է կենդանի և մշտնջենական բանիւն ա͞յ։ Եւ ո՛վ է բանն կենդանի, ք͞ս. որ մշտնջենաւոր է, և մշտնջենաւորն անապական է։ Արդ՝ ո͞պ

սաւորեալ մանկանց եկեղեցւոյ՝ աղաղակեն յառաւօտին յասելն թէ՝ Եւ առ քեզ տէր աղաղակեցի. առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։ Նոյն որ 'ի կարգին։

Իսկ Ուրբաթին՝ ըստ տասներորդ ժամու պաշտամանն կարգեալ է. յորում ժամու 'ի գերեզման իջեալ տրն արարածոց. և խորով անապական մահուամբն զանապականութիւն մեզ շնորհելով, ազատեաց 'ի դժոխոց և 'ի գերութենէն սատանայի։ Յորմէ փրկեալ մանկանց եկեղեցւոյ՝ աղաղակեն գոհանալով յասելն թէ՝ *Տէր տծ փրկութեան իմոյ 'ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։ և թէ՝ *Մտցեն աղօթք իմ առաջի քո տր։ Նոյն որ 'ի կարգին յարմարի պաղատանաց բանս։

Իսկ Շաբաթին՝ ըստ հանգստեան աղօթից խորհրդոյն կարգեալ է. վասն զի շաբաթն հանգիստ ըստ եբրայեցւոց ձայնին է և կատարումն յաւիտենից։ Յորում և մարտիրոսացն հանգիստից յիշատակն պատմի. *Որք զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին կարեօք և ցանկութեամբք հանդերձ ըստ առաքելոյ։ Խաչակից լինելով առաջին վկային 'ի խաչ ելելոյն և զիս ժողովողին. յոր ապաւինեալ մանկանց եկեղեցւոյ 'ի նոցա կարօղ բարեխօսութիւնն՝ աղաղակեն ողբերգակին ձայնիւ եթէ՝ Առաքեա՛ տէր զլոյս քո և զճշմարտութիւն քո, զի նոքին առաջնորդեսցեն ինձ մոլելոյս 'ի գիտութիւն ճշմարտութեանն. և հանցեն զիս 'ի լեառն սուրբ և 'ի յարկս քո. զանապատացեալս 'ի գերակայ բնակութենէն 'ի սուրբն նուաստութիւնս։

---

Եւ աստ ասի Աստուածուքն, կամ այն ըստ պատշաճի աւուրս։ Խորհուրդ վասն Քարոզին՝ նախ քան զՍուրբ աստուածն։

Փառաւորեսցուք զամենակալն տծ զհայր տեառն մերոյ յի քի, գոհանալով զնմանէ որ պահեաց զմեզ խաղաղութբ 'ի գիշերիս։

Տես զի գոհացաւ նախկին, և դարձեալ այլ ևս գոհանալ հրաման տայ, ուսուցանելով թէ վասն այսորիկ գոյացաք, զի հանապազ ամ գոհութբ մատուսցուք. և մի՛ երբեք մոռասցին 'ի մէնջ երախտիք նորա։ Զայն զայս և մարգարէն ասէ, *Օրհնեա՛ անձն իմ զտէր և մի՛ մոռանար զամ տուրս նորա։

Փառաւորեսցուք զամենակալն տծ։ Ամենակալ ասի. զի զամ արարածս ունի ընդ իշխանութբ իւրով. և չիք ոք որ կարէ ապստամբել 'ի նմանէ։ Թէպէտ թոյլ ետ հրեշտակաց և մարդկան անձ-

նեղչեան լինել, այլ ոչ. թէ յորժամ կամիցի արգելուլ զնոսա 'ի կամակարութենէ իւրեանց՝ զօրացեալն առնել զոր կամի։ Որ և հայր է աստուած մերոյ յի̃ քի̃. այն որ բնութբ̃ որդին էր նր̃, կամեցաւ վս̃ ողորմութեան որդի լինել մարդոյ. այսուհետև եղբայր է մեր։ Իսկ որ նորա բնութեամբ հայրն է, շնորհօք և մեր հայր է։

Իսկ արդ՝ ոչ միայն արարչական գթութեամբն խնամէ զմեզ, այլ և հայրականաւն. վասն այսորիկ ասէ փառաւորեսցուք զնա։ Զի որպէս զիւր ծնունդս ընդ հովանեաւ իւր պարեցոյց զմեզ և խաղաղութբ̃ պահեաց 'ի գիշերիս։ Իսկ ոչ միայն վասն յառաւօտի լոյս հասանելոյ գոհասցուք, այլ զի յի՛ս մեծագոյն լոյսն զմեզ եհան։

Ի մահուանէ 'ի կեանս. յապականութենէ յանապականութի̃. յանգիտութենէ 'ի գիտութիւն ճշմարտութեան իւրոյ։

Այս է լոյս ճշմարիտ՝ իւր սուրբ գիտութիւն. յորմէ զրկեալ եղաք անգիտութեան խաւարաւ։ Այլ ողորմեալ նյ̃ հօր, առաքեաց ած̃ զորդին իւր սիրելի, զի հանցէ զմեզ 'ի խաւարէ 'ի լոյս և 'ի մահուանէն յաւիտենական կեանս. ցոր և ասէ մարգարէիւն, * Եսու զքեզ 'ի լոյս հեթանոսաց, հանել զկապեալս 'ի բանտէ և 'ի տանէ կապանաց որ նստէին 'ի խաւարի։ Իսկ ինքն տէրն վասն իւր ասէ, * Ես եմ ճանապարհ և ճշմարտութի̃ և կեանք։ Ճանապարհ, որով 'ի խաւարէն 'ի լոյսն եկաք. ճշմարտութի̃, որով յանգիտութէ̃ 'ի գիտութի̃ ճշմարտութեան հասաք. կեանք, որով 'ի մահուանէ 'ի կեանս փոխեցաք։

Իսկ յապականութենէ յանապականութի̃։ Նորոգումն զոր աւազանաւն առաք. վասն որոյ ասէ պօղոս, թէ * Ըստ իւրում ողորմութեանն ապրեցոյց զմեզ 'ի ձեռն աւազանին վերստին ծննդեան, և նորոգութե̃ հոգւոյն սրբոյ զոր եհեղ 'ի մեզ առատապէս։ Զի արդարացեալք շնորհօք եղիցուք ժառանգորդք յուսով կենացն յաւիտենից։ Զայն վերստին ծնունդ յիշէ և պետրոս թէ, * Ծնեալք վերստին ոչ յապականութեան սերմանէն, այլ յանապականացուէն, կենդանի և մշտնջենական բանիւն այ̃։ և զի՝ * Ամենայն մարմին խոտ է։ և զի՝ * Ծնեալն 'ի մարմնոյ մարմին է, որպէս տէրն ասաց։ Զոր և երկրորդեաց առաքեալ։ * Եւ խոտ ապականացու է։

Վասն այնորիկ ասէ առաքեալ վերստին ծնանիլ. ո՛չ յապականութեան սերմանէն զոր յադամայ ունիմք, որ մեղօքն ապականեալ՝ զանապականութեան սերմն. ապա է յայգ ծննդոց իւրոց սերմանեաց. այլ յանապականացուէն։ Այս ծննդեան սերմն՝ է կենդանի և մշտնջենական բանիւն այ̃։ Իսկ ո՞վ է բանն կենդանի, քս̃. որ մշտնջենաւոր է, և մշտնջենաւորն անապական է։ Արդ՝ այ̃

յապականացուէն ապականացու ծնաք, այսպէս և յանապականէն ծնանիմք անապականք։ Զնորին որդի հայրն երկնաւոր լոյս և կեանք անապական՝ և ճշմարիտ որդւովն առաջնորդեաց մեզ 'ի խաւարէ 'ի լոյս՝ 'ի մահուանէ 'ի կեանս՝ յապականութենէ յանապականութիւն՝ յանգիտութենէ՝ 'ի գիտութիւն ճշմարտութեան իւրոյ։

Արդ՝ գոհասցուք զնմանէ. և փառաւորեսցուք զնա. աղաչեսցուք և խնդրեսցուք, զի զերկարութիւն տունջեանս խաղաղութեամբ և մտադիւր զուարթութեամբ արասցէ անցուցանել 'ի մեզ։ Վասն երկուց զբանս ասաց. զի կարի կարևոր է խնդիրս՝ խաղաղութեամբ, ըստ մտաց դիւրի զուարթութեամբ զերկարութիւն աւուրն անցուցանել։ Վասն որոյ ոչ միայն խնդրել աստ, այլ և սրտի մտօք աղաչել յաղագս այսորիկ։ Եւ լինի այս որպէս։

Եւ պարապեալ պահեսցէ զժողովուրդս իւր Աստուածային զօրութեամբն որ 'ի վերայ ամենայնի բարերարութեամբ իշխանութիւն ունի։ Աստուածային աստ զօրութիւն որ 'ի վերայ ամենայնի բարերարութեամբ իշխանութիւն ունի, եթէ պարապէ զմեզ, խաղաղութիւն յոգիս մեր մտանէ և ամ խռովութիւն հալածի 'ի մտաց մերոց. և դիւրութիւն նմա շնորհի որ զուարթ առնէ ըստ գրեցելումն, եթէ՝ *Սրտի բերկրեցելոյ երեսք զուարթք։ Արդ եթէ և շատ է երկայնութիւն տունջեան և բազմորոգայթ, համայն զպարապոյ օգնութիւն խնդրել և գտանել 'ի տեառնէ՝ խնդամիտ զօրն կատարեսցուք։ Վասն որոյ քարոզն թողեալ որ ընդ ժողովուրդսն՝ զխօսն յԱստուած զբանն առաքէ։

Մենակեալ տէր Աստուած մեր կեցո և ողորմեա՛ց մեզ։ Եւ ժողովուրդն առ հասարակ ասեն՝ կեցո տէր։ Զի և յամ խոկ բարեաց սովոր եմք ասել թէ՝ կեցայք բարեաւն զուարճացեալք։ Զայն զայս աղաչեմք զի ընկալեալ զբարիսն զոր խնդրեցաք՝ կեցցուք։

Մեծին Խոսրովու՝ սակս Աղօթիցն, որ ասի նախ քան զՍուրբ Աստուածն։

Բան խրատու քարոզին՝ սկիզբն առնէ գոհանալ զերկուց լուսոյ՝ զզգալւոյս, և զիմանալւոյն։ Զգալին է արեգական լոյս որ երևի ամենեցուն հասարակապէս. իսկ իմանալին լոյս է որ յոգիս մաքրեցելոցն ծագէ և զիմանալին լուսաւորէ։ Զոր 'ի լուսանալ աւագանին զաղօթս ոգւոցն՝ 'ի սրբելն զներքին մարդն՝ 'ի

քանզի զաներեւոյթ տեսանելիսն, ծագեն փառքն այ անշիջանելի լուսովն 'ի սմա, և լուսաւորի անճառ լուսովն։ Զորմէ ասէ պօղոս։ *Աստուած որ ասաց 'ի խաւարի լոյս ծագել։

Զի 'ի սկզբանն որ մինչ խաւարն էր 'ի վերայ անդնդոց և ասաց ած եղիցի լոյս, և եղև լոյս. զայն դարձեալ մեզ խաւարելոցս ասէ յիւրմէ լուսոյն առաքէ։ Զքանզի յառաջ բերէ առաքեալ այսպէս, *Աստուած որ ասաց 'ի խաւարի լոյս ծագել, որ և ծագեաց 'ի սիրտս մեր զլուսաւորութիւն փառացն այ 'ի դէմս քի։ Նոյնպէս ինչ է զոր ասէս եթէ, ծագեաց 'ի սիրտս մեր լոյս, որով տեսանեմք զփառս նր զոր ունի առերն մեր քս 'ի վերայ դիմաց իւրոց. քանզի տեսանի սուրբ երրորդութիւն մաքրելոցն մտօք։ Որպէս և յառաջ կայ առաքելականն բանս ևս յայտնապէս ասէ, *Այլ մեր ամենեցուն բացաւ երեսօք զփառս տեառն իբրև ընդ հայելի օրինակաւ տեսեալ, 'ի նոյն պատկեր նորոգիմք փառաց 'ի փառս որպէս 'ի տեառն հոգւոյ։

Քանզի որպէս մարդկայինն հոգի՝ մարմնոյ աչաց զանտեսանելին ասայ որքան իցէ 'ի մարմնի, այսպիսի օրինակաւ և աստուածայինն հոգին՝ ցուցանէ յոգիս մեր բնակէ, զաստուածոյսն մեզ երևեցուցանէ։ Նա տայ տեսանել մեզ զած և զհրեշտակս և զսրբոցն ժողովսն, և զայն բարիսն զոր խոստացաւ ած սիրելեաց իւրոց։ Իսկ որք վասն մեղաց անմասնեան 'ի սուրբ հոգւոյն, շնչաւոր մարդք կոչին՝ զմարդկայինս միայն ունելով զհոգի. և զայս որպէս զանասնոյ։

Վասն որոյ շունչ և ոչ հոգի կոչի. վասն զի հաւասարեալ է անասնոց անբանից և նմանեաց նոցին, զմարմնաւորս և եթ խնդրելով, զկերակուրս և զըմպելիս և զխառնութիւնս և որ այլ ևս մարմնաւոր հեշտութիւնք, զրկեալք 'ի հոգևորացն։ *Քանզի շնչաւոր մարդ՝ ոչ ընդունի զհոգւոյն այ, զի յիմարութիւն է նմա ասաց առաքեալ։ Յիմարեալ ասաց և անգէտ հոգևորացն. այլ մեզ ասէ յայտնեաց ած հոգւովն սրբով։

Զի որպէս հոգի մարդոյ զմարդոյն գիտէ, նոյնպէս և այ հոգին զաստուածոյսն գիտէ, և գիտել տայ յորում բնակէ. այնպիսեացն ասէ առաքեալ, *Այլ մատուցեալ էք 'ի սիոն լեառն և 'ի քաղաք այ կենդանւոյ յերուսաղէմ յերկինս և 'ի բիւրաւոր բանակս հրեշտակաց. և յեկեղեցիս անդրանկաց գրելոց յերկինս և առ դատաւորն ամենեցուն ած. և յոգիս արդարոց կատարելոց. և 'ի նորոց կտակարանաց միջնորդն յս և 'ի հեղումն արեան նորա։

Նոյն ամ մտաւոր տեսանի սրբոցն սրտից. որոց երանի տայ տէրն վասն տեսլեանն։ Նոքա արդարև երանելիք. զի ասաէն յարքայութեանն են անդր մատուցեալքն որպէս ասաց առաքելականն բանս. ըստ այսմ և մարգարէն ընդ այ խօսեալ ասէր, *Երանի որոց օգ-

նութիւնն իւր 'ի քէն է . Եւ ես եդ 'ի մտի 'ի հաւատս արդարութեան ։ Նա զի յայտնագոյն բանս լիցի՝ հովիտ արդարութեան երկիրս է . վասն որոյ ասացաւ Ադամայ , * Տրտմութիւն կերիցես զհաց քո զամենայն աւուրս կենաց քոց ։

Որդ՝ երանէ մարգարէն զայնս որք մտացն սաստ ելք առնեն յերկիրս . յոր տեղիս զուխտն աղօթից կարգէ ։ Այնպիսին զօրհնութիւն ստասցի , զի օրէնսդիր եղև իւր անձինն և այլոց . գնասցէ նա 'ի զօրութենէ 'ի զօրութիւն , յառաքինութենէ յառաքինութիւն , որ զօրացուցանէ զնա որպէս յաստիճանէ յաստիճան զգնացսն փոփոխելով , մինչև ելցէ 'ի վերինն սիոն . զորմէ ասաց պօղոս մայր լինիլ մեզ ։ Նա ապա զինչ . երևեսցի ած հրեշտակօք իւրովք 'ի սիոն ։

Տեսանես զհամեմատութիւն մարգարէական և առաքելական և աւետարանական բանիցս ։ Այսպիսի լոյս է նոցա . որք զաւազանին շնորհն մաքուր և նորոգս պահեն յինքեանս ։ Իսկ որ 'ի տիղմ մեղաց զանձինս ընկենուն արտաքսեալ յայնմ լուսոյ , խաւարաւ ծածկին , և աստէն յարտաքին խաւարին են ։ Որոց կուրացեալ է առաջնորդականն , և 'ի խաւարի շրջին . որպէս ասէ աւետարանիչն յովհաննէս թէ , * 'Ի խաւարի է և ընդ խաւար շրջի և ոչ գիտէ յո՞ երթայ . զի խաւարն կուրացոյց զնա ։ Զայսն և տէր ինքնին ասէ օրինակաւ մարմնոյն ։ * Ճրագ մարմնոյ ակն է . յորժամ ակն առատ է , ամ մարմինն լուսաւոր եղիցի . և երբ ակն չար է , ամ մարմինն խաւար եղիցի ։ Իսկ եթէ լոյսդ որ 'ի քեզ է՝ խաւար է , խաւարն ո՞րչափ ևս ։ Զմտացն խաւարմանէ ասէ զայս ։

Այլ վայ մեզ . զի այնչափ օտարացաք 'ի լուսոյն որ լուսաւորեաց զմեզ , մինչ զի և գիտեմք իսկ ոչ՝ եթէ 'ի լոյս ծնեալ եմք յաւազանէն . և ոչ զգալ անգամ խաւարիս ունիմք ։ Այլ որպէս 'ի ծնէ կոյրքն այսմ լուսոյ անտեղեակք են , այսպէս և մեք ճշմարիտ լուսոյն անհմուտք . և նստիմք 'ի խաւարի և 'ի ստուերս մահու . որպէս և որք անընդունակքն աւետարանին լուսոյ ։

Որդ՝ գէթ անագան երբէք՝ դիմեսցուք առ լոյսն մեր քս և աղաչեսցուք զնա . զի բացցէ զաչս սրտից մերոց և լուսաւորեսցէ զոգիս մեր . ասասցուք , * Լոյս տուր տէր աչաց մերոց զի մի՛ երբէք ննջեսցուք 'ի մահ ։ Զի որք աստէն ոչ լուսաւորին , անդ զղջանալ ունին . ասելով զայն որ յառակին իբր յերեսաց ամբարշտելոցն գրեալ է թէ , յորժամ զարդարոցն տեսանեն զփառս և անհնարին երկիւղիւ խռովին և ասեն բանս երկայնս , յորոց և է այս . Մոլորեցաք 'ի ճշմարտութեան ճանապարհէն . և լոյսն արդարութեան ոչ լուսաւորեաց զմեզ . և արեգակն արդարութեան ոչ ծագեաց 'ի սիրտս մեր ։

Այլ մեզ մի՛ լիցի անդ սգալ զատուզանս լուսոյ . այլ աստ

ծէրունեան ձայնին որ ասէ , *Ես լոյս յաշխարհ եկի . և որ գայ զկնի իմ, 'ի խաւար մի՛ գնասցէ . այլ ընկալցի զլոյսն կենաց ։ Ո՛վ որ արժանացուք և մեք ընդունել և լինել որդիս լուսոյ և որդիս տուընջեան . զի այնպիսեացն երանէ մարգարէն ասելով , *Երանի ժողովրդեան որ գիտեն զօրհնութիւն քո տէր . 'ի լոյս երեսաց քոց գնասցեն զօրհանապազ ։ Այսինքն՝ Թէ լուսով երեսաց քոց տեսցեն գնալ ուղիղ . և յանուն քո ցնծասցեն զօրհանապազ ։

Տեսանեմ՝ զի արքայութիւն բերկրանք են սաստէն . արդարոցն զամ օր յքո երեսացն լուսոյն լուսաւորեալք և 'ի գնացս իւրեանց անմոլարք և անխափ 'ի չարէն , բերկրին մեծա անուամբն քո . ընդ այն՝ զի նորա կոչեն հանապազ՝ ուրախալիցք են ։ Իսկ զի՞նչ լինիցի նմ մարգարէ . *Յարդարութեան քում ասէ բարձր եղիցին ։ Բարձրանան ասէ և սա արդարութեամբ քով . այլ տուաւել յարդար դատաստանին քում բարձրանան , յորժամ ըստ արդարութեան իրաւանց քոց զվարձս նոցա բարիս տացես ամ հրեշտակաց և մարդկան յարդանօք ցուցանես . և անեղծ պսակօք զնոսա պսակես ։ Նոյն մեզ զի չափաւորապէս վասն իմանալի լուսոյն ասացաք , սկիզբն արասցուք 'ի բանս աղօթիցս ։

Աղօթք՝ նախքան զՍուրբ աստուածն ։

Գոհանամք զքեն տէր Աստուած մեր ։ Որ երմ զԹողլէ գոհութեան նախաշաւիղ . զի զհասարակաց տէրն՝ սեպհական մեր և տուաւել մերձաւոր ցուցանէ ։

Տէր Աստուած մեր , որ երևելի լուսով քո զուարճացուցեր զամ արարածս քո ։ Քանզի ծագումն լուսոյն զուարճացուցանէ զամ կենդանեաց ազգ ։ Եւ ոչ այսչափ միայն , այլ և աճելականք և բոյսք և տունկք և սերմանք լուսովս այսու զիւրեանց պիտանութիւն ցուցանեն և զուարճալի 'ի տեսողսն լինին համդերձ երկրաւ և ծովուք ։

Իսկ իմանալի լուսով պատուիրանաց քոց՝ լուսաւորեցեր մեզ զամենեսեան զհաւատացեալքս 'ի քեզ ։ Լոյս են պատուիրանքն քո և լոյս տան աչաց պատուիրանապահացն , ըստ այնմ զոր ասացն ։ Քանզի սէրն քո պատուիրանապահութեամբքն ճանաչի . և պատուիրանապահն փոխադարձի յքո սիրել և զնա տեսանել . ըստ ասելոյն տեառն , *Եթէ ոք սիրէ զիս , զբանն իմ պահեսցէ ։ Եւ դարձեալ

թէ՝ *Ով առնէ զպատուիրանս իմ և պահէ զնոսա, նա է որ սիրէ զիս. և որ սիրեն զիս, սիրեսցի 'ի Հօրէ իմմէ։

Տեսե՞ր զկցումն ճշմարիտ որ լուսաւոր առնէ զամ̃ մարդ որ գալոց է յաշխարհս, որպէս ցուցանէ զնիշն պատուիրանապահաց իւրոց։ Այլ թէ ասիցէ ոք թէ՝ աղօթիցն բան ոչ մ̃ պատուիրանապահացն է, թէ ասաց թէ լուսաւորեսցեր. այլ մ̃ բովանդակ հաւատացելոց։

Ասացաք և մեք թէ՝ 'ի հաւատալն և 'ի մկրտելն մաքրեալ լուսաւորին ամ̃ հաւատացեալք. այլ յետոյ որք աղտեղին մեղօք, դարձեալ խաւարանան։ Վասն որոյ և տէրն ասէ, *Մինչդեռ ընդ լոյսն ունիք՝ գնացէ՛ք ընդ լոյսն. զի մի՛ խաւար ձեզ հասցէ։ Զի պատուիրանապահացն է լուսոյ տուողութիւն աստէն յաղօթիցս լուր.

զի յետ գոհանալոյն՝ զիմանալի և զերևելի լոյս ասէ։

Զօրացո զմեզ տէր 'ի պահպանութիւն պատուիրանաց քոց յա̃ծաշունչ գրոց, 'ի տունջեանս յայսմիկ և յա̃մ ժամանակի. որպէս զի լուսաւորեալ մտօք միշտ զհաճոյս քո արասցուք։

Եցոյց այսուիկ թէ՝ 'ի պահպանութէ պատուիրանաց ա̃յ լուսաւորին միտքն. վասն որոյ խնդրէ զօրանալ 'ի պատուիրանապահութիւնն և զլոյսն առնուլ։ Եւ զի յա̃յ է զօրանալն՝ լուր մովսէսի որ ասէ, *Մի՛ ասիցես եթէ զօրութի իմ և ուժգնութիւն սրտի իմոյ արար ինձ զզօրութիւնս զայս մեծ. այլ յիշեսցես զտէր ա̃ծ քո. զի նա տայ քեզ ոյժ՝ առնել զօրութիւն։ Եւ յոբ ասէ վասն ա̃յ, *Նորա է զօրութի և ուժգնութի. նորա է հանճար և իմաստութի։ Եւ տէր ինքնին՝ *Առանց իմ ոչինչ կարէք առնել։

Եւ մեք զայս իմացեալ՝ խոնարհ մտօք խնդրեսցուք զօրութիւն 'ի բարձանց։ Աստի և առաքելոցն տուաւ հնչիւն յերկնից եկեալ. յորմէ և զօրութի էր։ Եւ զոր ինչ և ուղղեսցեմք, ա̃յ շնորհացն համարեսցուք 'ի մեզ. որպէս և առաքեալ՝ *Զվաստակն որ առաւել քան զամենեսեան վաստակեցաւ ասէ՝ ոչ եթէ ես՝ այլ շնորհքն աստուծոյ որ ընդ իս։

Զօրացո զմեզ տէր 'ի պահպանութիւն պատուիրանաց քոց։ Վասն է՞ր յաւել և զայն թէ՝ յաստուածաշունչ գրոց. զի իմասցուք և զայն թէ հոգի ա̃ծային կայ 'ի գիրս. քանզի և ոգւոյ յոլովանգամ գիրք շունչ կոչեն։ Այլ կենդանիք են գիրք պատուիրանացն ա̃յ հոգւով ա̃ծայնով որ 'ի նոսա. զնոյն և 'ի նախավկայէն նամիր, զի ասէր զմովսէս թէ, *Ընկալեալ զպատգամս կենդանիս տալ մեզ։ Զի թէ չէին կենդանի, մեզ զիա՞րդ զկենդանութիւն տալ զօրէին։ Այլ զի տան կենդանութիւն՝ նախ մովսէս ասէ զօրէնսցն. *Որ արասցէ զայն՝ կեցցէ՛ նովաւ։ Նոյն և տէր ասէ, *Որ ըղ

բանս իմ պահեսցէ, զմահ մի տեսցէ յաւիտեան։ Եւ դարձեալ ասէ, *Որ առաքեացն զիս, նա՛ ետ ինձ պատուէր զինչ ասացից և կամ զինչ խօսեցայց, և գիտեմ զի պատուէրն այն կեանք են յաւիտենականք։ Եւ զի կենդանի և կենդանարար է՝ ա̄ծաշունչ կոչի. և յայն զօրա-նալ՝ ոչ վասն ասելոյ միայն խնդրէ, այլ ասէ, 'ի տունջեանս յայսմիկ և յամ ժամանակի։ Զի յաւուրս յայս և յամ ժամանակս կենաց մերոց պահեսցուք զա̄ծաշունչ գրոց պատուիրանս։

Որպէս զի լուսաւորեալ մնաք միշտ զհաճոյս քո արարցուք։ Նմանիկ իւրոց օգնեն միմեանց. հանապազորդիլ 'ի պահպանութիւն պատուիրանացն՝ անխափան զլուսաւորութիւն մտացն պահէ. և լուսա-ւորեալ միտքն միշտ զհաճոյսն ա̄յ առնել աղդեն մեզ. որով և երկ-նից ժառանգեմք զոր հանդերձեալ բարի կոչեմք։ Եւ հանդերձեալ կոչեմք, վասն զի ակնկալութեամբ սպասեմք առնուլ զառաջիկայն՝ հան-դերձեալ կոչեմք։ Եւ է այսպէս զոր կից աղօթիցն ունի բանս։

Եւ հանդերձելոց բարեացն արժանաւոր լիցուք ընդ ա̄մ ս̄րբս քո։ 'Բանին ասացից ուրախութիւն լինիլ այնմիկ, որ առաջի ա̄յ ընդ հրեշտակացն և ընդ արդարոցն բազմութեան յանպատում բա-րիսն վայելել և նոցուն հաղորդակցիլ 'ի գոհութիւն զբարեաց առա-ջին զաստուածոյ. զի այս է զոր ասէ,

Եւ ընդ նոսին փառաւորեսցուք զամենասուրբ զերրորդու-թիւնն. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ յետ աւելոյն զխաղաղութիւնն՝ ասէ։

Խաղաղութիւն մեր և կեանք որ 'ի հօրէ առաքեցար միածին որդի ա̄յ տէրդ մեր և փրկիչդ յ̄ս ք̄ս։

Զքեզ ասէ մեզ խաղաղութիւն և կեանք 'ի հօրէ առաքեալ գիտեմք, զոր յերեւելն քո յերկրի ծննդեամբդ՝ օրհնաբանէին հրեշ-տակք ասելով, փառք 'ի բարձունս ա̄յ և յերկիր խաղաղութիւն։ Եւ զքէն քո առաքեալ ասէ, *Նա՛ է խաղաղութիւն մեր որ արար զերկոսեան մի, զհրեշտակս և զմարդիկ, զհրեայս և զհեթանոսս։ Որդ՝ զի խաղաղութիւն մեզ առաքեցար և ասացեր, *Զխաղաղութիւն զիմ թողում ձեզ. զխաղաղութիւն զիմ տամ ձեզ։

Տուր մեզ զքո խաղաղութիւնդ, զոր շնորհեցեր սրբոց քոց առաքելոցն փչմամբ քո 'ի նոսա զկենդանացուցիչ և զամենազօր հո-գիդ քո սուրբ։

Զկնի ասելոյ Սիրեցի զի լուիցէ, կամ Բանից իմոց, և մաղթանքն՝ Փրկատա- տատուած, ասի Փառքաղու։

Սուրբ ճգնաւորօքն աղաչեսցուք զտէր. որք զշխարին պարտա- ցին. նեղութեանցն համբերեցին. լուսեղէն և երկնաւոր պսակացն արժանի եղեն. աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի. ամենակալ տէր ած մեր կեցո և ողորմեա։

Սուրբք կուսին որք ըստ հաճոյիցն այ քաղաքավարեցան, և կամ վկայական մահուամբ և արեամբ զմահ ընկալան. և ճգնաւորք սուրբ, զի ընդ դէմ սատանայի պատերազմեալ ճգնեցան, և յաղթեցին համ- բերելով զանազան վշտաց և նեղութեանց վասն անուանն տեառն։

Աղօթիւք նոցա սուրբ և բարեխօսութեամբն մեզ ողորմեսցի. ամենակալ տէր ած մեր կեցո և ողորմեա։ Զի թէպէտ և վասն մերոց գործոց ոչ ունիմք համարձակութիւն իբրև աղաչել զամենատուր տէրութիւնդ քո, այլ նոցին աղօթիցն միջնորդութեամբ և բարե- խօսելովն կեցո զմեզ և ողորմեա մեզ։

Աղօթք Թագաւորաց։

Պսակիչ սրբոց, որ պսակես զսուրբս քո. և առնես զկամս երկիւղածաց քոց. և հայիս սիրով և քաղցրութեամբ յա- րարածս քո։

Պսակ իմանամք ախորժելի որ եդեալ լինի 'ի գլուխս թագա- ւորաց յորժամ օծանեն և տէր 'ի վերայ երկրի և գաւառի կացու- ցանեն, որ բարձրագոյն է քան զամ պատիւ որ է յաշխարհի։ Զի թագաւոր զնմանութիւն այ բերէ յինքեան 'ի վերայ երկրի, իշխանու- թիւն ունելով կորուսանել և կեցուցանել. վասն այս աղօթիցս բանս։

Պսակիչ սրբոց որ պսակես զսուրբս քո։ Այնքն թագաւոր առնես զամենեսեան որք հաճոյ եղեն քեզ, և որք թագաւորեցին 'ի վերայ ախտից 'ի կեանս յայսոսիկ. և իշխանաբար սպանին յոգւոյս իւր- եանց զիգական և զհեշտասէր բարս և զընդունակս մեղաց. և զարուա- կան բարեզարդութիւս քաջապէս ապրեցուցին։ Արդարև զայսպի- սիսն ընդ քեզ թագազարդեալ պսակես 'ի հանդերձեալ և յանվախ- ճան կեանսդ յաւիտենական փառօք։

Եւ առնես զկամս երկիւղածաց քոց. և հայիս սիրով և քաղց- րութեամբ յարարածս քո։ Որք երկիւղիւ քեզ ծառայեն և ըզ

զխնդրուածս ըստ հաճոյից քոց առնեն ․ դու տէր ողորմից նոցա։ լսես և փառս նոցին սիրես զարարածս քո և քաղցրութիւն խնամոց։

Տէր մեր յերկնից ՚ի սրբութենէ քումմէ, բարեխօսութեամբ սուրբ Ածածնին և աղաչանօք ամ սրբոց քոց։ Տէր մեր տէր և ողորմեա․ ներեա քաւեա և թող զմեղս մեր։

Ով թէպէտ երկրաւոր գոլով մեր և յերկրի աղօթեմք, այլ դու երկնաւոր տէրդ յերկինս կարող ես լսել զաղաչանս մեր, և ՚ի բարձանց այտի ՚ի սրբութենէ քումմէ զխնդրուածս մեր կատարել։ Իբրև մանկունք յորժամ զանձն պատուական և զմիջնորդն ամ աշխարհի զորբուհի կոյսն և զամ սուրբս քո բարեխօս առ քեզ ունիմք, հաւատամք թէ լսես հայցուածոց նոցա և ներես սխալանաց մերոց և քաւես զյանցանս։

Որով արժանի անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Մեծագոյն պատիւ է ծառային, յորժամ բարեփառ տեառն գովող և փառաբանիչ լինիցի․ և մանաւանդ թէ և վարձ ես զայն ինքեան ընդ մեծագոյն աշխատանացն համարի։ Ապա ո՞րչափ ևս առաւել բարձրագոյն պատիւ որք համարեսցի գերազանց քան զամ փառս, յորժամ ամենեցուն տեառն և բոլորից արարչին լիցի օրհնաբանիչ։ Վասն որոյ բան աղօթիցս խնդրէ արժանի լինել միշտ ՚ի փառաբանութիւնն ոչ պարապիլ․ ոչ ասէ, Անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Աղօթք Առաքելոց, Մարգարէից, Հայրապետաց։

Որ ընտրեցեր և ընկալար զերանելի վկայսն քո. քս ած մեր, և հաղորդս արարեր զնոսա կամաւոր չարչարանաց քոց։ Որպէս ասէ առաքեալն թէ՝ *Ընտրեաց զմեզ ած յառաջ քան զլինելն աշխարհի, լինել մեզ սուրբս և անարատս առաջի նր սիրով։ Որ օրինակ թագաւոր որք գիտելով զծառայից իւրոց զիւրաքանչիւր զքաջութի և զուժոյ կարողութիւն, նմա և զպատշաճ պիտոյից գործառնութիւն ըստ ժամանակի և ըստ երի՝ և առեալ կարգեսցէ զնոսա ըստ արժանւոյն․ զոմն ՚ի զինուորութի ընտրելով, զմիւսն ՚ի դատաւորութի․ զայլ ոմն գաւառապետ կարգելով, և զմիւսն գլուխ զօրաց կացուցանելով․ զմին ՚ի դուռն արքունի կարգեալ, զմիւսն ՚ի

վերայ խաչիցն ․ և զայլ ամն մատուռակ և սրբատաւոր խաչից Թագա-ւորութեանն ընտրեալ։

Այսպէս իմն և ամենաթագաւորն ած՝ ըստ իւրում նախատես գիտութեան ընտրեաց զամենեսեան ըստ իւրաքանչիւր պիտոյից յիւ-րաքանչիւր դարս և ժամանակս ըստ արժանաւորութե։ Որպէս յայտ առնէ երանելին պօղոս ասելով թէ, *Նա եդ զոմանս առաքեալս ․ զոմանս մարգարէս ․ զոմանս աւետարանիչս ․ զոմանս հովիւս և վար-դապետս առ ՚ի հաստատութիւն սրբոց, ՚ի գործ պաշտաման, ՚ի շի-նուած մարմնոյն քի։ Եւ դարձեալ թէ, *Զորս եդ ած յեկեղեց-ւոջն այս է․ նախ՝ զառաքեալս ․ երկրորդ՝ զմարգարէս ․ երրորդ՝ զվարդապետս ․ ապա զօրութիւս ․ ապա շնորհս բժշկութեան ․ օգնու-թիւնս, վարիչս, ազգս լեզուաց, թարգմանութիւնս լեզուաց։

Զի այլ պէտք էին նոյեան դարուն, և այլ պէտք և ընտրու-թիւն աբրահամեան ժամանակին։ Նա և այլ կոչումն էր մծին մովսէսի, և այլ խորհրդածութիւն մարգարէիցն ․ այլ ընտրութիւն առաքելոցն, և այլ հրաւիրումն հայրապետացն։ Այլ եղանակ էր ընտրութե մարտիրոսացն, և այլ սրբոց կուսանացն և ճգնաւորացն դասուց։ Եւ յառաջախնամ գիտութին այ զամենեսեան յառաջա-գոյն սահմանեալ և կնքեալ պահէր ՚ի գանձի իւրում։ Նա և զմերն լուսաւորիչ ընտրեալ մովսիսաբար և պահեալ պատշաճեցուցանէր իւրում ժամանակին հանդերձ իւրովքն ամենայնիւ առընկալեալ ըստ յետին մշակացն հաւասարելով։ Ո՛չ միայն յօժարական կամօք, այլ և երկովք վաստակոց ՚ի վարձ առաջին ընտրելոցն։ Եւ թէ ումէք յանդգնութեամբ բանս ոչ թուեսցի, և որդեգրական անուամբ եւս առաւել գերազանցեալ քան զբազումս։ Այս է ընտրութիւն ըստ իմում բանիս զոր աղօթիցս բան ցուցանէ։

Որ ընտրեցեր աստ և ընկալար զերանելի վկայսն քո քս ած մեր, և հաղորդս արարեր զնոսա կամաւոր չարչարանաց քոց։ Վկայ անուն հասարակ է․ զի առաքեալքն վկայութե քարոզէին․ մարգա-րէքն վկայութե գուշակէին․ և նահապետք և կուսանք և ճգնա-ւորք իբր վկայ քի ճգնէին հաւատալով, թէ հատուցանող է իւրա-քանչիւր գործոց ած։ Եւ յորժամ ասէ թէ՝ որ ընտրեցեր զերա-նելի վկայսն, զամենեսեան ընդ բանիւս փակէ։ Արդարև՝ որ չար-չարանացն կցորդին սուրբն, և փառացն հաղորդ լինելոց են ըստ առաքելոյ։ Եւ ըստ տէրունական հրամանին՝ որք ըմպեն զբաժակ չարչարանաց փրկչին յօժարական սիրով որպէս որդիքն զեբեթեայ, ընդ նմին յարքայութեան պատուեսցին։

Տէր՝ բարեխօս առ քեզ ունիմք որք աստ և ընդ մեզ տօնեղելոյս սուրբք իցեն. զի աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ խաղաղացուսցես զկենցաղավարութիւնս մեր, փրկելով յերևելի և յաներևոյթ թշնամեաց.

Բարեխօս ասէ ունիմք առ քեզ զոր յամ տեղիս և որ առ մեզ սուրբք իցեն. զի միշտ յիշատակ նոցին 'ի գութ ածէ զած 'ի վերայ մեղուցելոց. որպէս այն զի ասէր, *Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ. և պաշտպան եղէց դոցա յամենայնի. Զայս ցուցանէ աղօթիցս բան թէ՝ յամ տեղիս ուր սուրբք իցեն, և մեք զյիշատակս նոցա կատարեմք յուսով և սիրով. դու տր յիշեսցես զնոցին չարչարանս և զնեղութիւնս զոր վասն քո յանձն առին, և վասն նոցին բարեխօսութեան՝ մեզ ողորմեսցիս. փրկելով զմեզ յանմարմին դիւաց որ միշտ որսան 'ի կորուստ. և 'ի մարմնակից դաւողաց որ հակառակին ընդ կեանս աշխարհիս.

Շնորհեա՛ մեզ տէր ըստ օրինակի նոցա կեալ. և զվախճանն մեր կնքեա՛ ուղղափառ խոստովանութեամբ 'ի յոյս կենացն յաւիտենից.

Թէպէտ զնոցին քաղաքավարութիւն ոչ կարեմք ասէ բերել յանձին, այլ զոր է ըստ նոցին օրինակի շնորհեա՛ սիրել զքեզ, և յուսով և հաւատով ըստ կարի մերում քեզ ծառայել. Նաև 'ի վախճանին եւս արժանի լինիլ ուղիղ խոստովանութեամբ զյետին թոշակն ըստ պատշաճի ընդունել առ հաւատացեալս յաւիտենական կենացն.

Զի և մեք արժանի լիցուք մտանել յերկնային խորանսն լուսոյ և ժառանգել զպատրաստեալն իսկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութիւնդ.

Խորան լուսոյ զվերին մայրաքաղաքն է իմանալ ըստ պօղոսի. զոր և յովհաննէս յիշէ 'ի յայտնութեանն. *Զորոյ զյօրինուածն ասէ 'ի սուրբ և 'ի սպիտակ ապակւոյ. և դրունք երկոտասանք յերկոտասան մարգարտոյ. Եւ ճրագ ասէ 'ի նմա զգառն էր զտէր մեր յս քս փոխանակ արեգական որոյ գիշեր ոչ տիրէ երբէք, այլ միշտ առլցեալ լինի լուսով ածային ճառագայթիցն. Այս է զոր ասէ խորան լուսոյ որպէս ինձ թուի.

Վասն որոյ աղաչէ բան աղօթիցս մտանել և ժառանգել զպատրաստեալն զայն լուսեղէն յարկ ընդ սրբոցն դասուց. Զի թէ աստ ըստ կարի մերում հետևիմք հետոց նոցա, ապա հաւատամք թէ և անդ ընդ նոսին յարքայութեանն առնումք զխոստացեալ բարիսն, երգակցելով միշտ ընդ նոսին յօրհնաբանութիւն, որպէս հետակայս ցուցանէ բան.

Այլ ընդ նորին փառաւորել զամենասուրբ զերրորդութիւն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Իսկ յաւուրս պահոց զկնի ասելոյ՝ Խաչ քո եղիցի մեզ ապաւէն, ասի Քարոզս։

Աղաչեսցուք զամենակալն Տէր՝ զի պահպանեսցէ զժողովուրդս իւր ընդ հովանեաւ սուրբ և պատուական ամենազօր խաչի իւրոյ ՚ի խաղաղութիւն։

Մխորժելի է յաւէտ միշտ՝ ծառայի խօսակից լինել տեառն. մանաւանդ յորժամ վասն խնդրուածոց իւրոց պաղատիցի և հայցեսցէ ծոցատակարան և ակն ունիցի առնուլ ևս զոր խնդրէն, առնուլ ևս յօժարական սիրով Թախանձիցէ։ Բայց յորժամ մանաւանդ առ ամենատէրն և արարիչ զայս պարտիմք առնել, որ Տէր պարգևեսցէ բաշխիչ և զամենեսեան միշտ խնամէ։ Զայսն խրատէ և քարոզէս բան, աղաչել միշտ ջերմեռանդն սիրով զամենակալ մեծանուն տէրն. զի կեցուսցէ զանձինս մեր որպէս և յաջորդ բանս ցուցանէ։

Ամենակալ տէր Տէր մեր կեցո և ողորմեա։ Զի մեք միշտ կարօտիւ ըղձամք ընդունել ՚ի քէն զողորմութիւն. և դու տէր միշտ և հանապազ առնուլ սիրով յօժար ես ՚ի տալն. վասն որոյ զնոյն հայցեմք հանապազ։

Աղօթք Պահոց։

Ողորմեա մեզ Տէր փրկիչ մեր վասն փառաց անուան քոյ։ Ողորմութիւն՝ ցաւակցաբար գթոյ է բացայայտիչ և կարեկից լինելոյ. զի զոր սիրէ ոք՝ նմին և ողորմի և ՚ի նեղութեան օգնական լինի։ Այլ դարձեալ զի ակարի և զրկելոյ է պէտք օգնութեան յողորմած և ՚ի բարերար ձեռանց և յոյժ խնամարկելոյ, յորժամ տեսանէ յանիրաւաց զրկեալ և յաղթահարեալ։ Զայս մեզ ուսուցէ բանս ՚ի սկիզբն աղօթիցս օգնութեան խնդրել յայս յամ իրողութիւն։

Զի որչափ եմք ՚ի մարմնի՝ և ՚ի կեանս յայս տատանիմք, միշտ հակառակամարտ ունիմք զթշնամին կենաց մերոց։ Այլ նա հին ժամանակեայ և խորամանկ և հմուտ պատերազմի է. անմարմին բնութի

և սրընթաց և թափանցիկ յամէ. վասն որոյ միշտ խոստանայ 'ի վերայ մեր, և ջանայ յաւէտ կլանել զմեզ։

Իսկ մեք տկարք և երկչոտք, ունայն և թափուր 'ի հանճարոյ, և ընդ մարմնոյ անկեալ թանձրութեան և կարօտութեան. վասն որոյ 'ի քո զօրութիւնդ միշտ ապաւինիմք մեք առ բարերար, և զօգնութիւն խնդրեմք. օգնեա՛ ասէ, այսինքն՝ ձեռն կարկառեա՛ և զօրացո՛ առ յամենայնի։ Որ փրկեցեր զմեզ յամենայն մեքենայից խարդախողին մերոյ, և ժողեր օգնական և զօրավիգ տկարացեալ բնութեանս մերոյ. և այժմ և հանապազ յաւէտ զնոյն մաղթեմք։ Ո՛չ վասն մերոյ ինչ արժանաւորութեան, այլ վասն անուան քոյ փառաւորելոյ. որպէս ասէ 'ի կարգին։

Տէր փրկեա՛ զմեզ և քաւեա՛ զմեղս մեր վասն անուան քոյ սրբոյ. պարտեալ պահեա՛ զժողովուրդս քո ընդ հովանեաւ ամենազօր խաչի քոյ։

Զի վասն մեղաց մատնեցաք 'ի ձեռս թշնամւոյն և անկաք 'ի նեղութիւնս և 'ի վիշտս և 'ի ցաւալից և 'ի բազմածուփ կենցաղս յայս։ Իսկ թէպէտ և միանգամ պատուական խաչիւ քոյ բարձեր զմեղս ամենեցուն, սակայն մեք օր ըստ օրէ հանապազ մեղանչեմք. և ընդ նոյն ծառայութեամբ մեղաց միշտ անկանիմք ըստ ա՟ծային քո անսուտ հրամանիդ, թէ * Որ առնէ զմեղս՝ ծառայ է մեղաց։ Զի որով իւիք յաղթահարեսցի մարդ՝ նովին և ծառայէ ըստ առաքելոյ։

Իսկ արդ տէր՝ մեք տկարք և դիւրասայթաք բնութիւս, 'ի ծովածուփ կենցաղոյս և 'ի պատրանաց որսողին միշտ մեղանչեմք և հանապազ մեռանիմք յանցանօք։ Վասն որոյ անդադար աղաչեմք զանոխակալ և զմարդասէր տէրութիւնդ ամենաբարի արարչիդ մերոյ, զի ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում, և քաւեսցես զյանցանս մեր։

Զի թէ արժանի արասցես զմեզ թողութեան մեղաց հասանել, հաւատամք թէ և փրկութեան շնորհացն հանդիպիմք։ Իսկ միշտ ընդ հովանեաւ ամենազօր խաչի քոյ ապաւինիմք հաւատացեալ ժողովուրդս քո, և գինք պատուական արեան քոյ սրբոյ. յա՟մ վտանգաւոր արկածից անկասկած մնալ և միշտ 'ի խաղաղութեան վայելել 'ի փառս քո ք՟ն ա՟ծ մեր։

Փրկեա՛ ասէ յերևելի և յաներևոյթ թշնամեաց։ Զի երկին գոլով մարդկային բնութիւն՝ հոգի իմանալի և մարմին անասնեղէն. վասն որոյ և երկուս ունիմք թշնամիս, իմանալի և զգալի. և յամենեցունց մաղթէ բանս փրկել և ամրացուցանել։ Իսկ յաւէտ յիրաւի. զի որ՟չ լծակցեալ մարմին ընդ հոգւոյ յարարչէն 'ի պէտս բարեգործութեան, այսպէս և փրկութեան պէտք է. զի միշտ ընդ

նմա յօրինէ զարժանն։ Զի գործնական առաքինութիւն՝ առանց մարմնոյ կցորդութեան ոչ վճարի. այլ ծանուցանէ միշտ կատարին գործիական բարեգործութիւնք ամ ըստ արարչին սահմանի։ Որով արժանի լինիցուք միշտ փառաւորել զամենասուրբ զերրորդութիւն, զոր և հետակայ բանս ցուցանէ։

Եւ արդ ասէ արժանի անդադար փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Եւ զիարդ լիցի հնար մարդոյ ընդ մարմնոյ կարեօք կապեալ՝ անդադար ՚ի փառաբանութեան այ գտանիլ։ Զի հարկն բռնադատէ և կարիքն ստիպէ. երբեմն հանգչիլ, երբեմն զբուցանել, երբեմն ճաշակել և ննջել, և այլ երբեմն յայլ պէտս զբաղել։ Եւ այս ամ և նոյնպիսիք՝ խափանումն են փառաբանութեանն այ. և յակամայ կամս լռել տան մեզ յաղօթից և ՚ի կարդալոյ առ ած. ապա զիարդ խնացուք զբանս որով ճշմարտին գրեալքն ամ։ Առաքեալ լուծանէ զդ տարակոյս ասելով այսպէս, * Եթէ ուտիցէք՝ եթէ ըմպիցէք՝ եթէ զինչ և առնիցէք, զամ ՚ի փառս այ արարջիք և մի՛ ըստ մարմնոյ։ Եւ տէրն յայտնապէս հաստատէ զմիտս բանիս իւրով ածային հրամանաւն. * Տեսցեն ասէ զգործս ձեր բարիս և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է։

Արդարև տէրական և ածական ճշմարիտ և անսուտ հրամանք, որով յաւէտ ճշգրտի բանիս տեսութիւն. զի գործով փառաւորելն զած անդադար է։ Զի յորժամ ստանայ ոք զառաքինութիւն, որով հրաշանան մարդիկ ՚ի տես և ՚ի լուր, ամ ուրեք ՚ի բերան առեալ ՚ի գուեհս և ՚ի փողոցս, ՚ի տան և յեկեղեցւոջ պատմելով միմեանց փառաւորեն զած՝ ասելով այսպէս, Օրհնեալ է ած, գոհութիւն և փառք այ, որ այնպիսի կարողութիւն և շնորհս պարգևէ սիրելեաց իւրոց։

Եւ ահա՛ յայտնի եղև ստուգապէս թէ ճշմարիտ է բանս. և է տիրապէս հնար անդադար փառաւորել զած գործովք առաքինութեան։ Զի գործօնեայ գործոյն թէ ճաշակիցէ՝ թէ զինչ և առնիցէ, սքանչելի վարք նորա ամ ուրեք պատմին, և ած փառաւորի. ըստ այնմ, * Աստուած փառաւորեալ է ՚ի խորհուրդս սրբոց իւրոց։ Եւ այս ոչ միայն ՚ի կենդանութեան, այլ և յետ մահու լինիցի զի անդադար փառաւորի ած ՚ի սուրբս իւր։ Զի ո՛վ ոք լսիցէ զվարս մեծին յովհաննու, զհանդերձն ՚ի սակեայ ուղտու՝ և զմարախս կերակրիլն՝ և զբացօթեայ լինելն, և ոչ փառաւորեսցէ զած։ Կամ ըզպօղոսի [illegible] լինելն, և ոչ սխրասցի և մեծապէս փառաւորեսցէ զԱստուած։

Երանելին Անտոն յանապատին երբեմն ճաշակէր, երբեմն ննջ-

ջէր ։ և զքանչելի վարք նորա և մենամարտութն ընդ դիւացն միշտ յաղէքսանդր և ՚ի հռօմ հռչակեալ լինէր․ և ամենեքեան իբրև զերգ ՚ի բերան առեալ փառաւորէին զԱծ ամ ուրեք։ Նա և մերն լուսաւորիչ և մեծն և գովելին ՚ի հայրապետս սուրբն գրիգորիոս՝ յետ անասանելի չարչարանացն և բնակութեան վիրապին, քառասուն ըզպահքն լուծանելոյ, որպէս վկայէ մեծ քարտուղարն ագաթանգեղոս թէ * Սուրբն գրիգոր յոլով ամս զանխլացեալ ՚ի լերինս սեպուհոյ յայրն մանեայ բնակէր․ և իւր վիրապին և համբաւ սքանչելեացն իբրև զձայն ձայնան յերկինս վերանայր և զատուած փառաւորէր։ Այլ ուրեմն նմանեցին հարքն սուրբ ճգնաւորքն առաջինք․ և հռաշալի գործք նոցա յիշատակին մինչ ՚ի կատարած աշխարհի․ և Ած փառաւորի նոքօք հանապազ․ և փոխանակ բերանոյ՝ գործք նոցին աղաղակեն անդադար ՚ի փառս աստուծոյ։

Այսպիսի իմն էին սուրբքն ամ․ այսպիսի քաղաքավարութիւն բարուց և գեղեցիկ առաջան ՚ի կեանս իւրեանց․ և այսպիսի անուն բարի թողին յաշխարհի, և օրինակ բարի զինքեանս առաւել ամենեցուն, և անդադար փառաւորելոյն Այ։ Այսպիսիսս ես կոչեմ անդադար փառաբանութիւն․ զայսպիսիս գովեմ և պատուեմ և յոյժ սիրեմ․ թէպէտ և անձամբ վերջացեալ գտանիմ։ Որ օրինակ ՚ի ծնէ կոյր՝ թէպէտ զգայութեամբքն ոչ վայելէ ՚ի լոյս արեգականն, սակայն ՚ի բնութենէ և ՚ի լոյ հաստատեալ գիտէ՝ եթէ գեղեցիկ և վայելուչ և յոյժ պիտանի են ճառագայթք լուսոյ արեգականն։ Այսպիսի իմն և ես բնութեամբ իմանամ և ՚ի գրոց լսեմ և յելից իրացն ճանաչեմ, եթէ չիք ինչ համեմատ ՚ի կենցաղումս գործոց առաքինութն։ Այլ հաւատամ՝ թէ նշոյլ է առ ճառագայթից իմանալի արեգականն արդարութեան։

Այլ վայ է ինձ և եղուկ եմ ես թէ ո՞ւր վարէ զիս բանս․ զի զայս պատմելով, ՚ի մէջ լուսոյ՝ ՚ի խաւարի մնամ։ ՚Ի մէջ աղբերաց՝ ծարաւի գտանիմ․ ՚ի մէջ ակնաց պատուականաց և անգին մարգարտաց՝ իբրև յաղքատի փշալից և արիւնռուշտ շրջիմ։ ՚Ի մէջ վայելուչ անուշահոտութեանց՝ իբր զխոզ գարշասէր ՚ի տղմի թաւալիմ․ ՚ի մէջ օրինաց և պատուիրանաց՝ իբր անկարգ և անկանոն թիւրիմ․ Նա և բնաւ երբեք յուղիղն զիս ոչ գիտեմ։

Այլ զայն զինչ ասացից, զի զայլս ուսուցանեմ, և զիս ոչ խրատեմ․ այլոց քարոզեմ, և ես ոչ լսեմ․ զայլս զարթուցանեմ, և ես ՚ի քուն ննջեմ․ զայլս յորդորեմ, և ես հեղգ մնամ։ Բայց սրբոցն երանի անձանց՝ զի ձոխացան․ երանի վարուց՝ զի պայծառացան․ երանի գործոց՝ զի բարձրացան․ երանի կենաց՝ զի կենդանացան․ երանի յիշատակին՝ զի յիշեցան ՚ի գիրս սուրբս և անջինջ գրեցան ՚ի յի-

շատակարանի առաջի նր · երանի փառաց՝ զի փառօք խուռնանց ան-դադար փառաւորեցին զփառաւորեալն աստուած ։

Զի սուրբքն և ընտրեալքն մինչ յաշխարհի էին և ՚ի մարմնի՝ միշտ փառաւորէին զԱծ, յօրէնս տեառն խոկալով ՚ի տուէ և ՚ի գի-շերի ։ Արդ և ՚ի վերս հարանցն պատմի թէ ոմն ՚ի ճգնաւորացն ՚ի ճաշակելն՝ զմի ձեռն ՚ի վեր ամբառնայր և ՚ի միւս աղօթէր առ Ած ։ Նա և յանուրջս անսլեալքն և խորհրդովք ընդ նր լինէին ։ զորոց ոչ է դանդաղելի ասել թէ և ՚ի վայելչականսն եւ ոչ կասէին ՚ի բար-ւոք խորհրդոց, այլ զմիտս միշտ շարժէին յօգուտսն ։

Նմա և անդադար ասելն փառաւորել զԱծ, զմեր հեղգութիւն զարթուցանէ յարթնութիւն ։ Զի գիտասցուք թէ անդադար պարտ է լինել փառաբանիչ նր բանիւ և գործով և խորհրդով ոպ ուրքն Ած. Այլ թէ ոչ իբրև զնոսա, գոնեայ ՚ի ծուլութեանէ և ՚ի թմրութէ և ՚ի մոռաց զգաստանալ զարթիցուք և արիասցուք ։ Զի և նոքա մար-դիկ էին իբրև զմեզ, և չարչարելի մարմնով անդադար փառաւորե-ցին զԱծ · զի որ անդադար նախախնամէ զարարածս, անդադար փառաւորութեան է արժանի յարարածոց ։

Յորդորակ ։

Մնասցուք և մեք ՚ի գործս բարիս, և զթմրութի մտաց մերոց զարթուսցուք յերկիւղ և ՚ի սէրն նր ։ Զանցեալ ժամանակն բաւական համարեսցուք ունայնութեան կենցաղոյս և խաբեբայ պատրանաց սորա · զի արդարև նման է և կամ սուտ է կենցաղս այս, և ՚ի զուր ամբոխի ամ մարդ ՚ի ցանկութի անձին իւրոյ. Զի թէ գոյր հնար համեմատել զմեծութիւն կենացն յաւիտենից ընդ սուտ վայելս կենացս այսորիկ, քան զանուրջ և զերազ զարթու-ցելոց եւս վատթարագոյն լինէր ։ Զի որ ետեսն ճշմարտապէս՝ ու-նայնութիւն ունայնութեանց ասաց, և սնոտիք սնոտեաց և ոչնչու-թիւն ոչնչի ։ Այլ որք խաբեցան՝ զղջացան և ոչ զուարճացան · և պատմեցին տխրութեամբ արտասուօք և հառաչանօք յօգուտ և ՚ի շահ զկնի եկելոց զի մի խաբեսցին ։ Արդ և ինքն սողոմոն ՚ի կարգ-արկեալ բանիւ՝ մանրամասնաբար պատմէ զամենայն ։

Զի ո՞վ այլ որ իբրև զնա որ վայելեաց և զփորձ էառ ամե-նեցուն · ոչ միայն զգալի կերիւք իմացեալ, այլ և գիտութեամբ և իմաստութեամբ տեղեկացեալ ։ Այս պատմէ մեզ ըստ միոջէ զօր արար ·

զխաչից զանազանութի · զմատուռակացն բազմութի · զբուրաստանացն վայելչութի · զկղզոս երամակացն և հօտիցն · զզանազան պատրաստութիս յարկացն · և զոսկւոյն և զարծաթոյն՝ որոց ոչ էր համար ։ Այլ ՚ի վերայ ամենայնի զունայնութի քարոզեաց · և գոչէ յամենեցունց լսելիս և իմանալ տայ որոց միտս ունին իմացական, եթէ ունայն է ամ · և ոչ օգնեսցեն ինչք յաւուր բարկութե արդար դատաւորութեանն այ · այլ արդարութի միայն է որ փրկէ յաւիտենական մահուանէն և յանշիջելի տանջանացն ։

Այլ մեք զայս ամ գիտելով եղբարք՝ փութասցուք ստանալ զառաքինութի · զի արժանաւոր վարս լցցո այ յանձինս մեր ընկալցուք · և համարձակ լիցուք ասել ընդ պօղոսի թէ՝ * Ով մեկնեսցէ զմեզ ՚ի սիրոյն քի · նեղութիւն, թէ անձկութի, թէ հալածանք, թէ սով, թէ սուր, թէ վիշտ, և այլն ։ Զի արդարև նեղ է դուռնն և անձուկ ճանապարհն որ տանի ՚ի կեանսն յաւիտենից ։ Այլ մեծագոյն հոգս պարտ է բերել յանձին, զի արժանի լիցուք այնմ ուրախութեանց ։ Զի զպատմութի անտի կենացն անճառ ասէ պօղոս · և ոչ պարտ վարկաւ յունկն մարդոյ խօսիլ · և ոչ տեսանելի և ոչ լսելի և ոչ իմանալի տայց զպատրաստութիւն այնմ բարեացն ։

Վասն որոյ նախ քան զամ՝ սիրեսցուք զած որ սիրեացն զմեզ · սիրեսցուք և զեղբարս որ է օրինակ սիրոյն այ · զողորմածութեան զհետ երթիցուք · զխոնարհութեան և զաղքատութեան ։ Պահօք պնդեսցուք, աղօթիւք ժրասցուք · զսուրբս պատուեսցուք · զվկայս փառաւորեսցուք · զսօնասիրութե միշտ զհետ երթիցուք · զնահատակաց և զճգնաւորաց զյիշատակս յուսով կատարեսցուք ։ Մի՛ օրախնդիրք լիցուք զի մի է ամ · և սէրն և յոյսն է գովելի առ ած և առ սուրբս իւր · մի՛ սիրեսցուք զաշխարհ և մի՛ որ ինչ յաշխարհի է ։ Մի՛ զփառս · մի՛ զմեծութիւն · մի՛ զարծաթ · մի՛ զստացուածս և զինչս ։ Այլ զամ փոխանակեսցուք սիրոյն քի · զի երկնից արքայութեանն արժանի լիցուք, փառաւորել զհայր և զորդի և զհոգին սուրբ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Վարդապետութիւն հասարակաց աղօթից Արեւագալի ժամուն, որ կատարի ՚ի դէմս հօրն։ Եւ ասի՝ Եղիցի անուն տեառն օրհնեալ, և այլն որ ՚ի ցուցակին։

Տեառն Յովհաննու հայոց կաթողիկոսի՝ եթէ զինչ խորհուրդ ունի Արեւագալին աղօթքն։

Այս աղօթքս զմիւսանգամ գալուստն քի նշանակէ, և ըզ յարութին մարդկան ՚ի գերեզմանացն յաւուր միաշաբաթոջ յառաջին ժամուն։ Վասն զի յայնմ ժամու լինելոց է յարութիւն մարդկային բնութեանս. Թէպէտ և գիշերի ասի ըստ աւետարանական առակին։ Այլ նա է առաւօտ և սկիզբն ծագման արեգականն արդարութեան. և լինելոց է այն յառաջին ժամուն մեծի աւուրն։ Վասն զի յայնմ ժամու վարկանիմ ստեղծեալ զմարդն առաջին, յորում ժամու միւսանգամ կենդանանան ՚ի գերեզմանէն։ Այսու խորհրդով բազումք վարին ՚ի ներկայումս, ակն ունելով աւետարանական խոստմանցն, եթէ * փող հարկանի և մեռեալքն ՚ի քս յարիցեն յառաջագոյն. և մեք նորոգեսցուք այլովքն հանդերձ։

Ըստ նմին օրինակի և իմ պսակաւորն և հայրապետն մր Գրիգոր ըստ աւետարանական առակին, զյարութիւն մեռելոցն՝ բուսոց և տնկոց օրինակէր, ՚ի գարունն բուսաբեր դալարանալ մարդկան ՚ի գերեզմանաց։ Քանզի յետ անցանելոյ ձմերայնոյն և լինելոյ գարնայնոյն և հաւուցն լինելոյ մերձ յառաւօտն, ձայնքն զյարութիւն մարդկան նշանակեն։ Վասն այսորիկ սթափեալ ՚ի ժամուն յայնմիկ աղօթեն, ակն ունելով վերստին նորոգման յարութեանն մեռելոց. Իբր զուարթաթաւիչ լուսով ճեպեալք ՚ի հանդիպումն ամպովք երեւեցելոյն և հատուցանողին զիւրաքանչիւր ումեք զարժանն։

Վասն այնորիկ կարգեցան ՚ի ժամուն յայնմիկ աղօթք, իբրև արժանի լինիլ մեծի առաւօտի լուսոյ ծագմանն, և զաչերն փառաց տեառնն տեսանել։ Որ յաւիտենին ՚ի կատարումն եօթներեկին ՚ի նախնի ութերորդ դարուն մտելոյ՝ յամեցելոյ փեսային ՚ի վերջնումն գիշերին, ՚ի որոշիլ օդեացն և այծեացն, յընտրման որոմանն և ցորենոյն։ Որ օրն մեծ և երևելի ՚ի մարգարէիցն գուշակեալ, յորում յանդիման լինիլ մեզ կայ առաջի բեմին քի. զի ընկալցի իւրաքանչիւրոք իւրով մարմնովն զոր յառաջ գործեացն եթէ բարի և եթէ չար։ Յորում աւուր փայլեն արդարքն որպէս զարե-

զանկն յարքայութեան երկնից. որոց կայ ա՜ծ ՚ի մէջ աստուածացելոց և թագաւորեցելոցն, որոշելով և բաժանելով զարժանաւորութիւն անճառ երանութեանցն։ Որոց և մեք արժանի լիցուք հասանել խառնացելոց բարեացն շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ յի քի, որում վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Մեծին Խոսրովու՝ վասն քարոզին Արևագալին։

Յարևելից մինչև ՚ի մուտս արևու ընդ ա՜մ տեղիս քրիստոնէութեան որք կարդան զանուն տեառն սրբութբ, տէր յաղօթից նոցա և ՚ի խնդրուածոց մեզ ողորմեսցի։

Հուսադրէ զժողովուրդն՝ թէ մի՛ վհատիք աղաչել զա՜ծ. զի թէ և յանձանց չունիք համարձակութի, համայն վասն սրբոցն բարեխօսութեան՝ և աղօթից ա՜մ քրիստոնէից որ յարևելից մինչև ՚ի մուտս արևու աղօթս առնեն ՚ի վերայ հաւատացելոց, ողորմի մեզ մարդասէրն ա՜ծ։ Քանզի ամենեքեան պատուիրան և կարգադրութիւն ընկալաք յառաքելոցն և՚ի սուրբ հարցն՝ վասն ա՜մ եկեղեցեաց որ ընդ ա՜մ տիեզերս վասն բոլոր հաւատացելոց աղօթս առնել. զի միոյ գլխոյ ամենեքին մարմին և անդամք եմք։ Իսկ եթէ մեք սրտի միօք ՚ի վերայ եղբարց մերոց աղաչեսցուք զա՜ծ, յա՜մ եղբարց աղօթից և մեք ողորմեալ լիցուք։

Ուխտիւք զա՜ծ աղաչեսցուք։ Վասն զի աղօթիցն օգնականք են ողորմութիւնքն և նուէրքն. որպ և կուռնելիոսին ողորմութիւն և աղօթքն ելին յիշատակս առաջի այ, և զհրեշտակս իջուցին փրկութիւն աւետարանել նմա։ Այսպէս և քարոզն աւետարանէ, զի նուիրօք յեկեղեցիս և ՚ի քահանայս և ողորմելով ՚ի կարօտեալս՝ դիւրահաշտ լինի ա՜ծ և առատապարգև յաղօթականն. որպ և ասէ իսկ քարոզին բանս։

Որ ի նա փրկեսցէ զմեզ ՚ի մեղաց և ՚ի ցանկութէ աշխարհիս. ընկալցի զուխտս և զխնդրուածս սրտից մերոց. և արժանի արասցէ զմեզ հաւատոց և պատուիրանաց իւրոց։

Փոխադարձէ զփրկութի ՚ի մեղաց և ՚ի ցանկութէ աշխարհիս, որք գեհենին առիթ լինին. և արժանացուցանէ հաստատուն կալ ՚ի հաւատս. և զօրացուցանէ ՚ի պահպանութի պատուիրանաց իւրոց։ Այս է զոր ասէն՝ Արժանի արասցէ զմեզ հաւատոց և պատուիրանաց իւրոց, ամենակալ տէր ա՜ծ մեր կեցո և ողորմեա մեզ։

Նորին խոստովանու՝ վասն աղօթից Արեւագալին։

Յարեւելից մինչեւ 'ի մուտս արեւու օրհնեալ ես տէր։ Ընդ ամ՛ տիեզերս յարեւելից մինչեւ 'ի մուտս արեւու ասէ ծանուցեալ անուն քո ըստ մարգարէիցն նախագուշակութեան, եւ օրհնի յամենայն ազգաց. քանզի քարոզեցաւ յամենեսեան աւետարան արքայութեան։

Եւ եղիցի անուն քո օրհնեալ յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Օրհնեն ասէ յարեւելից մինչեւ 'ի մուտս արեւու. եւ եղիցի օրհնեալ ոչ միայն այժմ, այլ անխափան յայսմ հետէ մինչեւ յաւիտեան։ Մինչ՝ ոչ սահման ինչ դնէ օրհնութեան սուրբ անուանն տն. այլ զանսահման եւ զանհատ յաւիտենին զմշտնջենաւորութիւն յայտ առնէ։ Այսպէս զի արժանի է միշտ օրհնութեան՝ ասէ զբարերարութիւնն որ 'ի նմանէ։

Որ բարձեր զխաւարն կուռութեան եւ ծագեցեր 'ի մեզ զլոյս ածգիտութեան 'ի յիմարեալ սիրտս եւ 'ի մահկանացու մարմինս մեր։ Արդարեւ կուրացեալ էաք անգիտութեամբ խաւարաւն եւ զրկեալք յածածանօթութենէ, ուղղեալ մեզ տն՝ քարոզութեամբ սուրբ աւետարանին՝ փարատեաց զխաւարն մոլորութեան. եւ զյիմարութիւն ագիտութեան 'ի բաց եբարձ ածային լուսովն, որով ծանեաք զքեզ զերրորդութիւնն ած եւ կեցուցիչ եւ արարիչ ամենայնի։ Նաեւ մահկանացու մարմինք մեր ընկալան զառհաւատչեայ անմահութեան՝ քի անօրէնութեամբն. զի 'ի մահ նորա մկրտեալք՝ ընդ նմա յարեաք եւ ընդ նմա կենդանի մնալոց եմք յանանց յաւիտեանս։

Եւ այժմ աղաչեմք եւ խնդրեմք 'ի բարերարութենէդ քումմէ, ամ՛ արժանի սրբութեամբ տեսանել զճառագայթս արեգականն։ Ընդէ՞ր յաւելու թէ 'ի բարերարութենէդ քումմէ խնդրեմք։ Զի բարերարութեամբ քո ասէ փրկեցեր 'ի խաւարէ մոլորութեան եւ լուսաւորեցեր զոգիս մեր, ծագես նովին բարերարութեամբդ զարեգակն՝ եւ զմարմինս լուսաւորես. նոյն բարերարութեամբ եւ զմեր զանարժանութիւս արժանացո 'ի սրբութեան մնալ եւ տեսանել զզգալի արեգակն։ Զի թէ զատ սրբութեամբ տեսանել լիցի, ոչ զերծեմք 'ի տեսանելոյ զարդարութեան արեգականն որ յիմանալիսն ծագէ եւ լուսաւորէ։ Նաեւ զի որդց յոլով անգամ տեսցուք, թէ բազումք են փորձութիւնք եւ խռովութիւնք որ հասանեն մարդկան 'ի տուէ եւ 'ի գիշերի. վասն այնորիկ աղաչէ զընդերկայնութիւն տուընջեանն անփորձ անցուցանել՝ այսպէս ասելով,

Խաղաղութեամբ անցուցանել զերկայնութիւն տունջեանս, և հասանել 'ի պաշտօն երեկոյին յերկրպագութիւն և 'ի փառաբանութիւն ամենասուրբ Երրորդութեանդ։

Զի հասեալք ասէ յերեկոյն խաղաղութիւ՝ երկիր պագցուք և փառս տացուք սուրբ Երրորդութեանդ։ Ուր, ո՜վ ուրեք ուր և երթայցեմք՝ ընդ մեզ լինելով պահապան մեր և աջողիչ գործոց մերոց և լցուցիչ պիտոյից մերոց, հասուցանես յերեկոյին պաշտօնն։ Ապա ասէ, Որում վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Առաջի քո տէր և առաջի փառաց քոց և առաջի մեծի տէրութեանդ քո խոնարհեցուցանեմք ծառայք և աղախնայք զգլուխս մեր։

Ասեմք զայս ցա̃ծ զի զարթուսցուք զմիտս մեր թէ ո՞յր առաջի երկրպագեմք, կամ ո՞ր փառաց և ո՞րպիսի մեծի տէրութեան խոնարհեցուցանեմք զգլուխս. զի լիցի առ մեծութեն Նորա յոգիս մեր։ Եւ որչափ 'ի կարի մերումն է՝ նմանեսցուք երկնաւորաց բանակացն որ մեծաւ երկիւղիւ զա̃յ մեծութիւն պաշտեն։ Եւ ըստ մարգարէին՝ *Երկիւղիւ երկիր պագցուք առաջի աչաւոր և անչափ փառացն Աստուծոյ։

Դու տէր ա̃ծ մեր ձգեա՛ զամենազօր աջ քո և օրհնեա՛ զմեզ։ Ո՛չ եթէ ձեռն և աջ գոյ ա̃յ՝ յայն սակս զայս ասեմք. և կամ պէտք ինչ են ձգել 'ի մեզ և այնպէս օրհնել զմեզ. զի այսպիսի անդամք անմարմին բնութեան չեն պէտք, ոչ ա̃յ և ոչ հրեշտակաց։ Այլ զի զա̃ծավայելուչսն զիա՞րդ են չկարեմք իմանալ և կամ ասել, ապա 'ի մերոցս ասածի առնումք օրինակս. որպէս մեք սովոր եմք առնել, զի ձեռն դնեմք և այնպէս օրհնեմք։ Այլ միտքն այս է, գթալ և խնամարկել և օրհնել. զի զոր ա̃ծ օրհնէ, երանելի է յերկինս և յերկրի. ասէ,

Օրհնեա՛ և բարեկամս արա՛ զնոսա. զի յամենեցունց յա̃մ ժամ փառաւորեսցի 'ի ծառայս և յաղախնայս ամենասուրբ անունդ քո։

Արդարև ծառայի և աղախնոյ մտերմի և տիրասիրի գործ այս է, ոչ զիւր ինչ խնդրել, այլ զտեառն. որպէս և սա աղօթիցն բան ասէ՝ ոչ յերկնից և ոչ յերկրէ խնդրել ինչ, այլ զի փառաւոր լիցի

անուանն քո մեզ ։ Այնպէս ասէ կարօղս ասա՛ զմեզ քով օրհնելովդ, զի այնպիսի ունիցիմք վարս որով սուրբ անունդ քո փառաւորեսցի ։ Եւ քեզ զօրհնութիւն և զփառս տացուք Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյդ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Զկնի ասելոյ զմաղթանսն՝ Աղաչեմք ողորմեաց, ասի Քարոզս ։

Սուրբ ճգնաւորօքն աղաչեսցուք զտէր ։ Այս քարոզիս և աղօթիցս և առաւօտուն՝ մի են բանք ․ բայց կրկին եղաւ աստ, զի միշտ զյիշատակս սրբոցն և զերախտիսն անմոռաց ՚ի մտի ունիցիմք ․ և նոցին միջնորդութեամբն զԱստուած աղաչեսցուք, զի հաշտեսցի ընդ մեղուցեալքս, և կեցուսցէ զմեզ ողորմութեամբ իւրով ․ որպէս ասէ, Ամենակալ տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛ ։

Աղօթք ։

Սուրբ ես տէր և ՚ի սուրբս հանգուցեալ ։ Զմարգարէին առնու զբան որ ասէ, *Սուրբ է տէր Աստուած մեր որ բնակեալն է ՚ի բարձունս ։ Եւ զոր ՚ի դիմաց քո բարբառի ․ *Եղերուք սուրբք ասէ զի ես սուրբ եմ տէր Աստուած ձեր ։ Եւ թէպէտ ոչ է հնար մեզ՝ նման լինել նմա սրբութեամբ որպէս և ոչ այլով իւիք, այսինքն՝ անեղ բնութեամբ կամ անսկզբնութեամբ կամ անվախճանութեամբ ․ սակայն ըստ կարի մերում որչափ և գոյ հնար՝ զգուշանալ պարտ է սրբութեամբ ։

Սուրբ ես տէր ասէ ։ Այսինքն՝ անհաս յամենեցունց անհամեմատ և անհետազօտելի և ՚ի վեր քան զամենայն իմացումն և զնմանութիւն՝ գերազանցեալ սրբութեամբ ։

Եւ ՚ի սուրբս հանգուցեալ ։ Կրկին է միտք հանգչելոյն զոր բանս ցուցանէ ․ զի առաջին հանգիստ կամացն լրումն է հաճոյից քոց ․ որպէս այն զի ասէ, *Հանգեաւ Աստուած յամենայն գործոց իւրոց զոր արար ։ Այսինքն՝ թէ զամենայն զոր արար՝ ետես զի բարի են և կամքն կատարեցաւ ՚ի նոսա ։ Եւ տէրն ՚ի խաչին ասէր, *Ամենայն ինչ կատարեալ է ։ Այսինքն՝ անօրէնութեան խորհուրդն ՚ի կամաց իւրոց լրումն և ՚ի մեր փրկութիւն ։

Իսկ երկրորդ հանգիստ այն է՝ զի ՚ի սուրբս և ՚ի բարեգործս

յորս հաճի կամօքն և հանգչի, որ 'ի տաճարի բնակէ 'ի նոսա շնոր-հօք. ըստ այնմ, *Ես յո՞ր բնակեցայց, եթէ ոչ՝ 'ի հեզս և 'ի խո-նարհս և որք դողան 'ի բանից իմոց: և թէ՝ *Դուք տաճար ա՟յ կեն-դանւոյ էք որպէս ասաց ա՟ծ թէ բնակեցայց 'ի նոսա և հանգեայց 'ի նոսա միշտ. և եղէց նոցա ա՟ծ, և նոքա ինձ սուրբ ժողովուրդ և հաճոյ և կամարար:

Եւ մեք սուրբ վկայիւքս աղաչեմք զքեզ. բարեխօսութ՟բ նց ա՟ծածնին և աղաչանօք ամ՟ սրբոց քոց, մի՛ մերժեր զմեզ յողորմու-թենէ քումմէ. այլ կացո զմեզ առ ոտս սրբոց քոց:

Անարատ կուսին աւէ բարեխօսութեամբն, և չարչարանօք և հեղմամբ արեան սրբոց քոց վկայիցն՝ մի՛ զրկեսցուք 'ի փառաց երե-սաց քոց ողորմած տէր: Այլ առ ոտս սրբոց քոց միշտ դեգերել զմեզ արա, և նոցին միջնորդութեամբն խնդրել 'ի քէն զողորմութի որպէս 'ի բազմագութ և յանյիշաչար տեառնէ. զոր և առէ,

Զի դու ես բազումողորմ ա՟ծ. և քեզ վայելէ՝ փառք իշխա-նութի և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Փոխ և Մաղթանք, և այլ Քարոզս:

Փառաւորեսցուք զամենակալն ա՟ծ որ ծագեաց զլոյս առա-ւօտու յարարածս իւր, ծագեսցէ և այժմ զառատ ողոր-մութիւն իւր 'ի վերայ փառաբանչաց անուան իւրոյ. ամենակալ տէր ա՟ծ մեր կեցո և ողորմեա:

Խրատէ զամենեսեան փառաւորել զա՟ծ 'ի վերայ գգալի լուսոյ ընդունելութեան. որպէս զի նախընծայ փառաւորութբս յորդորես-ցուք զբարերար տէրն մեր, զի ընդ առօրեայ և անցաւոր լուսոյ ծագմանն՝ ծագեսցէ և զառատ ողորմութիւն 'ի փառաբանիչս անուան իւրոյ սրբոյ և կեցուսցէ զմեզ. որպէս ասէ, Ամենակալ տէր ա՟ծ մեր կեցո և ողորմեա:

Աղօթք:

Զառաւօտու աղօթս և զբանաւոր պաշտօնս ընկալ ամենա-կալ ամենամեծդ աստուած 'ի քո անապական և յերկ-նային խորանդ:

Առաւօտ ոչ միայն զգալի այլ և իմանալի պարտ է գիտել զայժմեան ժամուն, յորում առաւել լսէ Տր. ըստ մարգարէին, *Ընդ առաւօտս լուիցես ձայնի իմում։ Իսկ բանաւոր պաշտօն առ է, վասն զի գոյ և անբան պաշտօն. որպէս և է սէրն և ողորմութիւն, հեզութիւն, պահքն, խոնարհութիւն, անոխակալութիւն, ժուժկալութիւն և համբերութիւն ի չարչարանս և ի վիշտս։ Ծառայելն հիւանդաց, հիւր ընկալելն, ընդ վշտացեալսն տխրիլն, և ընդ բերկրեալսն ցնծալն։ Այս ամ և սոյնպիսիքն անբան պաշտօն կոչին զոր կատարէ մարդ վասն այ։ Վասն որոյ աղօթիցս բանն՝ զբանաւորն յաւել ի պաշտօնն որ է երգովք փառաբանութիւն. զոր և առ է,

Ընկալ ամենակալ ամենամեծդ Տր ի քո անապական և յերկնային խորանդ։ Զվայելչութի երկնային խորանի քո անեղծ և անապական առ է խոստովանիմք, և բարձրագոյն քան զէս ամ։ Վասն որոյ աղաչեմք ընդունել զպաղատանս զոր մատուցանեմք առաջի մեծազօր տէրութեանդ քո, և յառատաձիր շնորհաց քոց հեղուլ յարարածս քո. որպէս և կարգ բանիս ցուցանէ։

Ծագեա՛ ի մեզ զխնամութի և զարդարութեան զլոյս քո։ Զմնացն լուսաւորիլն կոչէ խաւարութեան լոյս. որով զմեծագոյն երախտիս այ ճանաչել կարեմք, և նովին շնորհիւն զարդարութիւն ըստանալ. որով պայծառանայ իշխանականին առաջնորդութի առ ի յընտրութիւն ճշմարտութեանն։

Սրբա՛ զմեզ որդիս լուսոյ և որդիս տուընջեան։ Զի որպէս զգալի լուսոյս ծագումն առողջ զգայարանք յատակապէս ընդունի, այսպէս միայն մերոց տեսութիւն մաքրեալ յախտից՝ զիմանալի լոյս գիտութեանն ճանաչէ. որով ճշմարտապէս որդի լուսոյ կոչեսցի։

Որպէս զի ի գալ առաւուրց երկիւղածութբ վարեսցուք զկեանս մեր, և առանց գայթակղութեն կատարեսցուք. Մինչ առէ ի շրջագայութեան արեգականս և յօր ըստ օրէ ծագելն և ի լուսաւորելն զարարածս, արժանի առա զմեզ քեզ ունել յերկիւղ քո և ի սէր, և զլոյս գիտութեն քոյ միշտ առաջի մեր ունելով, զոր ոչ գիշեր փոխանակէ ըստ իմաստնոյն. որով առանց գայթակղութեն քաղաքավարեսցիմք ի կենցաղումս։ Իսկ այս լիցի քո օգնականութբն ողորմած Տր մեր. որպէս և հետակայ բանս ցուցանէ։

Զի դու ես բազումողորմ Տր. և քեզ վայելէ փառք իշխանութի և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Փոխ և Մաղթանք, և ապա Քարոզ։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած զի յաջողել ուղղեսցէ ըզ Ճանապարհս ծառայից իւրոց ՚ի բարի և ՚ի խաղաղութիւն. Ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա։

Յաջողել՝ զձեռն ատեն և զօգնական լինիլն ասէ. և բարի և խաղաղութիւն կոչէ զառանց սայթաքելոյ կատարելն զերկրաւորի ընթացս կենաց մերոց ըստ ներքին և արտաքին մարդոյս. որպէս ասէ առաքեալն, * Որով կեցցուք ոչ միայն այժմ, այլ և ՚ի հանդերձեալ կեանսն։

Աղօթք.

Առաջնորդ կենաց և պարգևիչ խաղաղութեան Քրիստոս Աստուած մեր. առաջնորդեա՛ մեզ գնալ ՚ի Ճանապարհս քո արդարութեան, և խաղաղութեամբ ժամանել ՚ի նաւահանգիստն փրկութեան շնորհօք ողորմութեան քո։

Առաջնորդ է կենաց, զի յոչ էից ՚ի լինելութիւն էած. և կենդանի բանաւոր և մասնաւոր աստուածագործեաց զմեզ։ Նա յորժամ մեռաք մեղօք և պատուիրանազանցութեամբ, դարձեալ վերստին նորոգեաց և կենդանացոյց չարչարանօք խաչին իւրոյ և կենդանարար արեամբն իւրով. ասելով, * Որ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, զմահ մի՛ տեսցէ. և թէ՝ * Ես եմ Ճանապարհ և Ճշմարտութիւն և կեանք։ Նա պարգևիչ է խաղաղութեան զոր խոստացաւ առաքելոցն իւրոց ասելով, * Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ. զխաղաղութիւն զիմ թողում ձեզ։ Նա զի ինքն է Ճանապարհ և Ճշմարտութիւն և կեանք, ստուգապէս զնոյն հայցէ և բան աղօթիցս։ Արդարութեամբ ընթանալ ըստ հաճոյից նորա. և խաղաղութեամբ ՚ի կեան և յաւուրս ժամանել շնորհօք և ողորմութեամբ փրկչին մերոյ և նորա. որպէս ասէ,

Որ դու ես օգնական և փրկիչ մեր. և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն. Որ զայս միշտ առնել է բնութիւն փոխարէն մատուցանել նորա զփառս և զպատիւ. զի այլ մեծագոյն արիաւոր ոչ կարէ գտանել զոր տայ մարդ նմա, քան զօրհնութիւն և զփառս. ըստ այնմ, * Տուք փառս նմա. տուք օրհնութիւն ատեան նմա մերոյ։ Որ նա է փառաց և պատուոյ արժանի փառաւորեալն յաւիտեան։

## Աղօթք։

Օրհնեալ ես տէր Աստուած փրկիչ մեր որ յամենայն ժամ ընդ մեզ ես և ոչ երբէք թողուս ՚ի ձեռանէ քումմէ զայնոսիկ, որք հաւատով և ճշմարտութեամբ կարդան առ քեզ։

Ո՛վ է տէրն հրամայեաց թէ *Զամենայն ինչ վասն որոյ հաւատով աղօթս արարեալ խնդրիցէք՝ առնուցուք։ Ո՛վ է հաւատն ընտանեկից լինի աղօթիցն և թևարկեալ յերկինս ելանէ. և առաջի Աստուծոյ մնեալ զխնդրուածսն ճշդիւ պահանջէ իբր ՚ի պարտականէ յումեմնէ։ Մատուցի ասէ բոլորով սրտիւ և հաւատով զաղօթս որպէս հրամայեցեր. առուր զոր խոստացարն, զոր անհնար է թէ ոչ առնուցու։

Աղաչեմք և խնդրեմք ՚ի քէն տէր, ճանապարհորդակից լեր ծառայից քոց քոյին վերակացութեամբդ պահելով ՚ի խաղաղութեան։ Դու առաջնորդեա մեզ խաղաղութեամբ և խնդութեամբ հասանել յիւրաքանչիւր բնակութիւնս ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի տէր մեր։ Որում վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ըստ հրամանի քում ասէ հաւատով աղաչեմք և խնդրեմք զքոյ վերակացութիւնդ և զճանապարհորդակից լինելն, և խաղաղութեամբ զիւրաքանչիւր ճանապարհ կատարել, թէ մարմնաւոր և թէ հոգևոր։

՚Ի Քրիստոս Յիսուս ՚ի տէր մեր ասէ։ Վասն զի ինքն է սկիզբն ամենայնի և կատարած. որպէս ասէ ՚ի յայտնութեանն յովհաննէս, *Ես եմ այբ և ես եմ քէ։ Եւ նմա փառք ընդ հօր և ընդ հոգւոյն սրբոյ. որ զամենայն յամենայնի լնու և նախախնամէ ըստ իւրում առատ բարերարութեանն։

---

## Յորդորակ։

Օրհնեսցուք և մեք հանապազ զամենօրհնեալ և զբարերար տէրն մեր. և գոհասցուք միշտ զառատ ողորմութեան նորա։ Խնդրեսցուք մանաւանդ զլոյս խնամոյն շնորհացն ծագել ՚ի սիրտս մեր, և ճառագայթարձակ փայլմամբ զամենայն զգայարանս մեր լուսաւորել։ Ո՛վ է յարևելից մտաց մերոց մինչև ՚ի մուտս արևու թանձրագոյն մութեայ՝ մի գտցի ինչ նսեմացեալ։ Այլ առաջնոր-

դութե՛ հոգւոյն սրբոյ ճանապարհորդեսցուք միշտ յերկիր աւետեաց։ Ո՛չ ունելով զկնի խմորեալ ինչ որ է քացախուտ վարք չարութեան, և ծանրացուցիչ պատատողումն վայրաքարշ կենցաղոյս, և ուռուցիկ փքացումն թեթևամտութեան անձեցեալ յամենայն ան-սակս չարութեան։

Ա՛յլ մոլախառնաբար զարդեալ ունելով ՚ի մախաղի մտաց մերոց զոսկերսն յովսեփայ, որ է նշխար պատուիրանաց փրկչին մերոյ քի։ Եւ մեծաւ հոգաբարձութե՛ ընթասցուք զառաջար կենցաղոյս, զի մ՛ ծարաւով տոչորման մեղացն կիզեսցուք զրկեալք ՚ի կենդանի ջրոյ ածային պատուիրանացն, լեղի և դառն ունելով ջուր՝ պէտ-ուսումն սատայօդ պատմութեանց, զոր ոչ կարիցէ ածատես միտք ըմպել։ Մ՛անաւանդ թէ խաւարելոցն մտօք և զրկելոցն ՚ի ճշմարտութե՝ դառն թուի ածային օրինադրութե և անախորժ ճաշակ։ Մ՛ինչև խաչին շնորհիւ մակարդեալ մաքրեսցին ճաշակելիք մտացն յաղտից, և իմասցէ զքաղցրութի պատուիրանացն այ։

Ա՛պա որոյ կօշկօք առաքինութե և հաւատոյ ամրութե՛ զոտս մտաց մերոց պնդեսցուք, զի մ՛ ՚ի խարամանեաց օձիցն մահացուցիչք. այլ ՚ի բարձրութե բեմի ձողակերպ խաչին սեղանոյ միշտ ակնկառոյց եղեալ յառեսցուք։ Որով զայն տեսեալ փրկիմք ապրանօք և կենդանանամք զանմահ կենդանութիւնն. և յառաջադայն արժանի լիցուք լսել եթէ՝ *Եկայք օրհնեալք հօր իմոյ՝ ժառանգեցէք պատրաստեալ ձեզ զարքայութիւնն։

Որոյ լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին յի քի։ Ընդ որում հօր և սուրբ հոգւոյն վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։



Կարգաւորութիւն հասարակաց աղօթից երրորդ ժամուն, որ կատարի ՚ի դէմս իջման հոգւոյն սրբոյ։ Եւ ասի՝ Օրհնեալ հոգիդ սուրբ եւ ճշմարիտ, նոյն որ ՚ի կարգին։

Վերծանութիւն հայոց կաթողիկոսի և իմաստասիրի՝ վասն երրորդ ժամու աղօթիցն։

Իսկ սահմանեալն որոշեալ սահմանք ժամու աղօթիցն, այդ ըստ յանցման ժամու նախահօրն հեշտասիրութե և մեղացն. և ՚ի նմին ժամու բժշկել զյանցանս չարչարանօք խաչին տեառն մերոյ յի քի։ *Զի որպէս ադամայ անձնեայն մեռան սակ, նոյնպէս և քրիստ անձնեայն կենդանասցին իւրաքանչիւրոք յիւրում կարգի։ Զի յորում ժամու յանցեաւ ադամ ադամայն՝ և յետ յանցանացն յամեաց ՚ի դրախտին, նոյնչափ և քս եկաց ՚ի չարչարանս խաչին ՚ի բժշկութիւն մերոց նորին։

Իսկ յերրորդ ժամու աւուրն կարգել զժամ աղօթիցն, քանզի յերրորդ ժամու ասաց մարկոս ՚ի խաչ ելանել միածնի որդւոյն այ։ որով յայտնի է թէ՝ և ՚ի նմին ժամու ընդունել եղև եւայի զհրամանս բանսարկուին և ցանկանալ պտղոյն ճաշակմանն։ Իսկ յորժամ կենդանութեան մերոյ բնութե զծանրութի մեղաց մերոց բառնայր, երթայր ՚ի դրախտին՝ զի զանկեալն վերացուսցէ։ Բեւեռեալ զոտսն և զձեռսն յաղագս յանդուգն գնացիցն ՚ի ծառն. և զի՝ ըզ ձեռագիր յանցանացն խափանեսցէ։ Եւ զառաքելոցն աշակերտութի որ յայնժամ օձաջամբ պտղոյն դղրդեաց՝ խաղաղացուսցէ իւրով մաքրողական չարչարանօքն։

Իսկ յովհաննէս ժամ վեցերորդ ասէ. ոչ զժամ խաչելութեն, այլ զժամ ձաղանացն որ ՚ի հրէիցն եղև։ Իսկ ՚ի խաչն յերրորդ ժամուն բարձրացաւ. բազկն տարածեալ զթեւսն ըստ յորում անշարժ գիտէր ընդ հարաւ, յափշտակելով զմեզ ՚ի մահուանէ ՚ի կեանս։ Զոր առաջ տեսեալ մարգարէական ականբ երանելոյն դանիէլի, յերրորդ ժամու աւուրն զպատուհան տանն իւրոյ բանալով ընդ արեւելս ընդ դէմ երուսաղէմի աղօթէր վասն դարձի գերութեանն, տեսանելով զմիածին որդին այ բազկատարած ՚ի խաչին, որ յերրորդ ժամու աւուրն ճշմարիտ ազատութիւն գերելոցն արար։

Եւ ապա յետ այսր յորելինի՝ տեսանեմք յերրորդ ժամու ըզ շնորհս Հոգւոյն սրբոյ հեղեալ յառաքեալսն, զհեռացեալն յադա-մային բնութենէս յաղագս ոչ 'ի դէպ ժամու ճաշակմանն։ Վասն այսր ամենայնի ասեմք յերրորդ ժամու գլորեալ զմարդն առաջին. յորում ժամու զբժշկութին վիրացն և զարբեգործութին ընկալաւ։ Այս յիրաւի յայսմ ժամու աղօթից՝ աղաչեմք զՔդ՝ առաքել զՀոգ-ւոյն օգնականութիւնն առաջնորդ լինիլ մեզ յերկիր բարի ուսանի զրկեցոյց մանկանօք չարին։ Այս է պատճառ երրորդ ժամու աղօթիցն։

Մեծին Խոսրովու՝ վասն Վեցերորդին։

Սիրելեան ամենեքեան գոհացարուք զմարդասիրեն Այ և ըզ փրկչէն յսէ քսէ, որ ազատեաց զազգս մարդկան 'ի դառ-նապարտութենէ անիծիցն. և եբարձ զմեղս աշխարհի 'ի ժամուս յայսմիկ խաչիւն իւրով սրբով։

Հրամայեն ապա՝ վարդապետութեամբ գոհանալ զՔնէ. զի յերրորդ ժամուս աստ յայսմ՝ ազատութի շնորհեաց ազգի մարդկան 'ի դառ-նապարտութենէ անիծիցն։ Վասն զի յերրորդ ժամուն ստեղծա-աւ ադամ որպէս յայս աւուր նորհանջին երեք ժամս յաւելին յաւելոր-եալ։ Եւ զի ոչ զպատուիրանն 'ի պատրոյ փայտին ճաշակեալ, անիծիւք մահու դատապարտեցաւ։ Յայս սակս ըստ ժամու ստեղծ-մանն մարդոյն և տէրն մեր 'ի խաչափայտին բևեռեալ եբարձ զմեղս և զանէծս ինքն անէծք եղեալ. քանզի յօրինացն անիծեալ էր ըզ փայտէ կախեալն։

Նա և զմեղս՝ ադամային մարմնովն ընդ խաչափայտին բևեռ-եալ ազատեաց զմեզ. փայտիւ, փայտիւ զփայտ սրբեալ, և մարմնով զմարդկան մարմինս յանիծից և 'ի կապանաց արձակեալ։ Այլ և 'ի նոյն ժամու յորում յադամ զհոգին սուրբ փչեաց զի եղիցի մարդն յոգի կենդանի, Հոգւոյն սրբոյ ստեղծագործեալ զմարդկային հո-գի, անդանօր զհոգին սուրբ եհեղ յերանելի առաքեալսն զի կեն-դանասցին ըստ Այ հոգւով, և կենդանացուսցեն վերստին ծննդեամբ զազգս մարդկան. քանզի և վասն այսր եւս քարոզն խրատէ գոհա-նալ՝ ասելով։

Եւ շնորհեաց առատապէս զպարգևս 'ի Հոգւոյն սրբոյ երա-նելի առաքելոցն։ Որպէս ասէ, զի ոչ որպէս 'ի մարգարէսն. այլ առաւելագոյնս ևս և բնականաբար և առանց մեկնելոյ. ըստ տէրու-նական անսուտ խոստմանն թէ՝ *Ընդ ձեզ բնակեսցէ յաւիտեան։

Խնդրեսցուք հաւատով, զի զմեզ զամենեսեան արասցէ հաղորդս մեծամեծացն, և ամենայնի բարեացն այնոցիկ։

Որո՞ց մեծամեծաց բարեաց։ Որ խաչիւն և չարչարանօքն քո շնորհեցաւ մաքրումն 'ի մեղաց և զերծումն յանիծից։ Նա զի հոգի սուրբ ընկալցուք 'ի սմին ժամու ընդ առաքելսն. և զի մի՛ ոք զրկեսցի յայսմ շնորհաց, վասն այնորիկ ասէ, Խնդրեսցուք հաւատով, այսինքն առանց երկմտութե. զի զամենեսեան զմեզ արասցէ հաղորդս այնպիսի բարեաց։

Քանզի և այսու իսկ պատճառաւ զայն ժամն աղօթիցն սահման եդեալ է. և չտայ 'ի միաբանելոցն հայցուածս միայն պատուինիլ, այլ և զաղօթս կենդանեաց սրբոց և զբարեխօսութի վախճանելոց սիրողաց տ՟ն յօգնականութի կարդալ. վասն որոյ և ասէ իսկ,

Աղօթիւք և բարեխօսութբ ա՟մ սրբոց, որք աստ և ընդ ա՟մ տիեզերս։ Որք առ մեզ ասէ և որք յա՟մ երկրի. թէ 'ի մարմնի և թէ 'ի բաց գնացեալ 'ի մարմնոյ։ Նաև ապա և զոր ինչ օգտիցիմքն. խաչին և հոգւոյն շնորհաց հաղորդեալք։

Որ՟պ զի անարատ վարուք և ճշմարիտ առաքինութբ կացեալք ըստ կամաց նորա յայսմ աշխարհիս, մասն և վիճակ ժառանգութե ընկալցուք ընդ ա՟մ սուրբս նորա զընակութի յաւիտենական երկնային խորանացն։

Նա ասէ 'ի մեղացն արատոյ զերծանիցիս մեր վարք՝ խաչին պարսպելով. և առաքինութիւնքն ճշմարտիցին՝ հոգւոյն սրբոյ գիտութիւն և զօրութիւն տալով մասն և վիճակ ժառանգութե ընդ սուրբս ևս ընկալցուք զընակիլն յերկնից խորանսն, որ յաւիտենականքն են. զոր և խոստացեալ իսկ է ք՟սի այնոցիկ, որ սիրենն զնա։ Նա զի անսուտ են խոստմունք նորա, վասն այնորիկ յաւելու զայն թէ, Զոր խոստացաւ տալ սիրելեաց իւրոց ճշմարիտն ա՟ծ յ՟ս ք՟ս տէր մեր. կեցո՛ և ողորմեա՛։

Աղօթք։

Որ 'ի քրովբէական և յանպատում հանգուցեալ ես աթոռ, և այցելու ես միշտ յարարածս քո։

Անպատում աթոռ ա՟ծութեն ասէ զքերովբէսն. վ՟ս զի հուպ են առ ա՟ծ քան զամենայն զօրս երկնայնոցն որ՟պ ասէ մեծն դիոնէսիոս. և անընդմիջաբար առնուն յ՟այ զհեղումն շնորհաց գիտութե

և իմաստից . և ինքեամբք յայլսն անցուցանեն ։ Դու զի յաւէտ կամա-բարք գտանիս քան զամենեսեան՝ մեծի աէրութեն առեալ . վասն որոյ և հանգչիլ 'ի նոսա բանս ցուցանէ առաւել քան յամենեսեան ։

Որ 'ի քրովբէական աւէ և յանպատում հանգուցեալ ես աթոռ . Ո՛չ եթէ յօդաւոր անդամք գոն քո, որովք յենուլ կարօտանայ և հանգչել յաշխատութեանց . զի անմարմին զիա՞րդ յենու, կամ ո՞րպէս կրէ աշխատութի անաշխատ բնութի՛ն ։ Այլ միայն մարդկօրէն ձևա ցուցանէ զբանն, որով հասու կարասցուք լինել . և զկամաց լրումն առէ հանգիստ որպ՛ ասացաք ։ Վասնզի այս և մարդկան է սովորու-թիւն, զկատարումն ախորժակացն հանգիստ կոչել, զոր և բազում անգամ ասացեալ եմք ։

Դու այցելու ես առէ մեզ յարարածս քո ։ Նախինքն խնամես, և ըստ իւրաքանչիւր պիտոյից գարմանես զամենեսեան զբանաւորս և զանբանս, զկենդանիս և զանկենդանս ։

Որ և 'ի ժամուս յայսմիկ հեղեր յերանելի առաքեալսն զշնորհս հոգւոյն սրբոյ ։ Յորմէ վրիպեցաւ բնութիս պատուիրանազանցու-թեամբքն, վերստին ընկալաք առէ անօրէնութեն ք՛ն մերոյ առա-տապէս զամենասուրբ հոգւոյն պարգևս և զշնորհս . և հրաւիրեցաք յորդեգրութի հօրն երկնաւորի վերստին ծննդեամբ աւազանին ։ Որոյ նախ ընդունակ եղեն յետ քո երանելի առաքեալքն 'ի վերնա-տունն, և նոքօք յընդհանուր հաւատացեալս տարածեցաւ մկրտու-թեամբ սուրբ աւազանին ։

Դու տէր յառաջինկայ ժամէս և ես յաւէտ մինչև 'ի կենցա-ղոյս աւարտումն պատուորեալ միացո զմեզ ընդ ք՛մ բարեգործու-թեան յորդորմունս ։

Զի յետ ընդունելութե հոգւոյդ շնորհացդ՝ այլ մի՛ լիցի մեզ ըմբռնել 'ի յաղբս բանսարկուին և 'ի ցանկութի պատրանաց կեն-ցաղոյս . այլ միշտ յորդորեալ լիցուք յք՛մ բարեգործութիւնս և 'ի հանդէս առաքինութեան, որոց փոխարէնս հայցէ զոր հետակայս ցուցանէ բան ։

Դու խոստացեալդ բարեացդ հաղորդս լինել զմեզ արժանի արա՛ տէր մեր և փրկիչդ յ՛ս ք՛ս . որ ես օրհնեալ ընդ հօր և ընդ հոգւոյդ սրբոյ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Զի թէ առա բարեյորդոր կենօք քաղաքավարիմք ըստ հոգւոյդ սրբոյ առատաձիր պարգևացն, հաւատամք տիրապէս թէ և յերանաւէտ և յանվախճան կեանսդ ժառանգեմք զխոստացեալ բարիսդ, փառաւո-րելով զհայր և զորդի և զսուրբ հոգիդ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Որ էիր յառաջ քան զյաւիտեանս Բանդ ած · էակից Հօր և աթոռակից սուրբ Հոգւոյն ։

Յառաջ տուէ քան զյաւիտեանս զանուն Հօր զմիածին որդին · ոչ միայն քան զլինելն աշխարհի և զներկայ յաւիտեանս, այլ և քան զանբաւ և զանսահման և զանհաս յաւիտեանս որ լինելոց միայն են գիտելի ։ Որ զէութի ընդ Հօր միշտ ունիս · և աթոռակցութի Հոգւոյն սրբոյ առաւ զարարածս ամ յոչէից · և զարդարեալ նորոգեաց և միշտ նախախնամէ տիրապէս ։ Որ զնախասահմանեալ պատուիրանազանցութիւն պարզին Ադամայ՝ նշանաւ ամենայաղթ խաչի քո 'ի ժամուս յայտնիկ ենթադրեալ 'ի կենդանութի փոխեցեր · և զանօրէնութիս մեր 'ի նմա բեւեռեալ, կեանք անապական և նորոգում կենաց յուսացելոցս 'ի քեզ խոստացար ։

Ընդ փայտին գիտութե զկեանս քո տուր շնորհեցեր · և ընդ նախասահմանեցին հեշտալի պտղոյն Ադամական, որով և դառնութիւն տարածեցաւ 'ի վերայ մարդկայինս բնութե, քաղցրաբար տէրդ մեր փոխանակ ամենեցուն զլեղին դառնութե 'ի վերայ խաչին ճաշակեալ, զքաղցրութե մեզ շնորհեցեր, կենագործելով 'ի մեռելութե մեղաց ։ Եւ նորոգութե և անապական կեանս յետ ատեանցս վճարելոյ խոստացար · որք հաւատով և բարի գործովք 'ի քեզ յուսան և ակն ունին մխիթարութեան 'ի հանդերձեալ կեանսդ ։ Որոց հայցէ կցորդ լինիլ 'ի բարիսն որպէս և տուէ,

Որոց մասնաւորիլ և զմեզ արժանի արա տէր մեր և փրկիչ յս քս · որ ես օրհնեալ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

'Ի սկզբանն էակից Հօր դաւանեաց և աթոռակից Հոգւոյն · և 'ի կատարածիս ընդ Հօր և ընդ Հոգւոյն սրբոյ օրհնաբանէ յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

---

Առ Սաղմոս և Մաղթանք, և զկնի Քարոզ ։

Խնդրեսցուք հաւատով 'ի տեառնէ վասն ճանապարհորդաց հարց և եղբարց մերոց · որք ընդ ծով և ընդ ցամաք գնասցեն · որպէս զի առաջնորդեսցէ նոցա խաղաղութե · և տարեալ

հաստատեսցէ յիւրաքանչիւր անձինս տէր ած մեր:

Ամենայն հաւատացելոց հրամայէ աղօթել, որք յիւրաքանչիւր ազգաց 'ի մի եկին հաւատ և 'ի գիտութիւն ճշմարտութեան. զի որք 'ի քն մկրտեցան, միոյ աւազանի ծնունդ և միոյ մօր եկեղեցւոյ որդիք' և հօրն երկնաւորի ժառանգք' եղբարք կոչին ամենեքեան:

Նա վասն ամենեցուն հրամայէ բան քարոզին' աղօթս մատուցանել հաւատով և յուսով. և հարս կոչէ ոչ միայն զզգալի հասակաւ ծերացեալսն, այլ որք գիտութեամբ և իմաստիւք ուսուցիչք և դաստիարակք եղեն. և ծնեան բազում որդիս, ոչ միայն մկրտութեան աւազանին, այլ և բանիւ վարդապետութեան և խրատով պատուիրանի տեառն վարժելով և ուսուցանելով: Որոց վասն աղօթել պարտիմք սիրով և յօժարութեամբ, զի 'ի նոյն զօրասցին և յառաջադէմ լիցին: Զի և պօղոս գրէր և պատուիրէր աշակերտելոցն եթէ' * Աղօթս արարէք և վասն իմ. զի և ինձ տացի բան 'ի բանալ բերանոյ: *Զի պարտին զմիմեանց հոգալ անդամքն ըստ նորին դարձեալ բանի: Նա ոչ միայն այս, այլ և զի 'ի սոյն կարգեցան դասք քահանայից' զի հասարակ 'ի վր ամ հաւատացելոց աղօթեսցեն: Նա յաւելու յիրաւի. զի հայր է քահանայն հոգևոր' և մաքրող կոչի հասարակաց:

Խնդրեսցուք առ է վասն ամ Ճանապարհորդաց. Ասէ զի Ճանապարհ կոչի ոչ միայն որ ըստ մարմնոյն են ընթացք, այլ և որ ըստ հոգւոյն բազմադիմի և զանազան Ճանապարհիւք ընթանան 'ի կենցաղումս: Քանզի Ճանապարհ կոչի և օրինաւոր ամուսնութիւն, և կուսութիւն. միայնութիւն, և առանձնական կեանք, և օտար ընկալութիւն, և բարւոք վերակացութիւնք. այսորիկ ամենեքեան և սոցին նմանքս Ճանապարհք ասին: Նա պէտս ունին ամենեքեան աղօթից օգնականութեան, զի խաղաղութեամբ հասցեն 'ի կէտ կատարման իւրաքանչիւր ընթացից. սա և 'ի հակառակէն Ճանապարհ որք չարաւ ընթանան: Որպէս վասն որդւոցն հեղեայ ասէ գիր, * Երթալով երթային և չար էր Ճանապարհ նոցա:

Նա թէ ոք ծովագնաց Ճանապարհորդ զմեղաւորս ասէ որք 'ի ծով կենցաղոյս թաթաւին 'ի մեղս, և ցամաքընթաց զարդարսն, ոչ ինչ մեղանչէ: Նա վասն ամենեցուն պարտ է աղօթել և խնդրել հաւատով 'ի տեառնէ. զի մեղաւորք 'ի զղջումն եկեալ զգաստասցին. և արդարք 'ի նոյն զօրացեալք յառաջադէմ լիցին:

Վասն զի նա ինքն է առաջնորդ կենաց և յոյս փրկութեան, որ յաջողէ ծառայից իւրոց խաղաղութեամբ հասանել 'ի նաւահանգիստն փրկութեան:

Կենաց առաջնորդ ասէ վասն կենարար գոլոյն, և յոյս փրկու-

թեան՝ վասն յաւիտենից յուսոյն։ Ո՞չ է տր̅ [illegible]արեաց յօրինից ած̅ է. և նորա վերակացութիւն միշտ նախախնամեալ անօրինին յուսացեալքն 'ի նա. և ողորմութեամբ և շնորհօք նորին տր̅ որ զընթացս առաջարկութե՞ ըստ բարւոյ մտածին աւարտէ, թէ ըստ հոգւոյ և թէ ըստ մարմնոյ որ ընթացցի 'ի կենցաղոյս ընթացս. որոց վասն խնդրել աւելով, Ամենակալ տէր ած̅ մեր կեցո և ողորմեա։

Աղօթք։

Առաջնորդեա մեզ տէր ած̅ մեր, և ուսո մեզ գնալ 'ի ճանապարհս քո արդարութեամբ։ Բարոզին համաձայնի և աղօթիցս բան. և ըստ հրամանի նորին խնդրէ զայս առաջնորդութիւն յամ̅ իրս, և զարդարութիւն գնալ 'ի ճանապարհսն նր̅. և արդարութիւն կոչի՝ ոչ յաջ խոտորիլ և ոչ յահեակ։ Ոչ է թէ փառասիրութիւն որ զբարիս գործէ կամ առ մարդկան ակնէ կեղծաւորութեամբ, կամ զօշաքաղութիւն, ամբարտաւանութիւն, կամ հպարտութիւն մեծամեծալով 'ի վերայ ումեք, չէ՛ այնպիսին արդարութեամբ ընթացեալ զճանապարհս օրինացն տեառն։

Բայց զինչ է որ ասէ թէ՝ զքո ճանապարհս ուսո մեզ գնալ արդարութիւն։ *Զի տր̅ ճանապարհք տեառն ողորմութիւն և ճշմարտութեամբ են ասէ դաւիթ։ Եւ ո՞վ է որ 'ի ճանապարհի տն̅ իցէ և արդար ոչ լինի. այլ թուի թէ զարարչութիւն է բանս, զի արարչագործութիւն նր̅ ածեալ յաշխարհս յայս, և յոչ էից 'ի լինելութիւն եկաք։ Եւ տր̅ ճանապարհք զոր ըստ հոգւոյ և զոր ըստ մարմնոյ անճանաչելեան կամօք ընթանան մարդիկ, այն են պարգևք. զոր պարտ է տր̅ որ յիւրաքանչիւրսն արդարութիւն ընթանալ որպէս ասէ։

Ուսո մեզ գնալ 'ի ճանապարհս քո արդարութիւն։ Որպէս թէ ուսուցեր, զաստիճանս և զմիճակս ճանապարհի քո զոր 'ի քէն ընկալաք, թէ առաջնորդութիւն, թէ վերակացութիւն, թէ քահանայութիւն, թէ թագաւորութիւն, թէ զօրավարութիւն, թէ դատաւորութիւն, թէ կուսութիւն, թէ ամուսնութիւն, թէ զինչ և իցէ, քո խնամակալութեամբ առաջնորդեա և ուսո գնալ արդարութիւն ըստ քո կամացդ։ Ամ̅ և զուղիղ հաւատոյ տն̅ ճանապարհս նր̅, զոր խնդրել շնորհիւն նր̅ անսայթաք գնալ և արդարապէս միշտ։

Պահեա 'ի խաղաղութիւն զկեանս մեր և զզանցս։ Յերևելի և յաներևոյթ թշնամւոյն զընթացս կենաց մերոց ասէ ամբոխ և խաղաղութիւն յաջորդեա, զի անսայթաք վարեսցուք զընթացս կենաց մերոց։

Ի հաճոյս քո ժամանեցո՛ զհոգւոր և զմարմնաւոր ընթացս ծառայից քոց անարատ ճանապարհաւ յաւիտենական 'ի կեանս։ Անարատ ճանապարհ զՔս ասէ բան իւրում աւետարան բանին . *Ես եմ ասէ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք։ Իսկ քոյ հաճոյիցն ով խնդրէ հասանել յաւարտ և 'ի կէտ հոգւոր և մարմնաւոր ընթացիցն . և այս լինի շնորհիւ և ողորմութեամբ փրկչին մերոյ յի քի . որպէս ասէ ,

Շնորհօք միածնի քո , առաւել մերոյ և փրկչին յի քի . որ եղև մեզ առաջնորդ կենաց և լոյս փրկութեան։ Առաջնորդ կենաց եղև՝ զի զմեռեալս մեզ կենդանացոյց , և հրաւիրեաց յերկնից արքայութիւնն ասելով , *Օ՛ն արի՛ք գնասցու՛ք աստի։ Այսինքն՝ յանկմանէ մեղաց և 'ի մեռելոտի գործոց յառնել հրամայէ , և կենդանական և լուսաշաւիղ վարուք յերկինս վերանալ։

Իսկ լոյս փրկութեան ասէ։ Զի որք 'ի խաւարի և 'ի ստուերս մահու անգիտութեամբ նստէաք , լոյս ծագեաց ճառագայթարձակ մարմնովն . և լոյս և փրկիչ եղև գերելոցս 'ի բանսարկուէն , ասելով՝ *Քաջալերեցարուք զի ես յաղթեցի աշխարհասէր թշնամւոյն։ Վասն որոյ ասէ յաւարտ բանիս ,

Ընդ որում օրհնեալ ես հայր ամենակալ՝ հանդերձ կենդանարար և ազատիչ սուրբ հոգւովդ . այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն։

---

Քարոզ։

Գոհաբանելով աղաչեսցուք զբարերար հոգին ած , և խնդրեսցուք զողորմութիւն 'ի նմանէ . զի անցուսցէ 'ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց բարերարութեամբն իւրով . ամենակալ տէր ած մեր։

Զի զբարերարէն ով զհոգւոյն սրբոյ միշտ գոհանալն է վայելուչ , որով առաւել վայելեսցուք 'ի պարգեւս։ Վասն որոյ և խնդրել հրամայէ զողորմութիւն 'ի նմանէ . զի նա միշտ զերծուսցէ զմեզ 'ի պատուհասէ սխալանաց մերոց , որ բարերարն է . յորմէ և կեցուցանել մարթէ։ Ամենակալ տէր ած մեր կեցո՛ և ողորմեա՛։

## Աղօթք։

Խաղաղութիւն քո Հոգւոյդ սրբոյ ած որ ՚ի վեր է քան զա̃մ միտս և զխորհուրդս, մխիթարեա՛ զանձինս ծառայից քոց ընդունելով զաղաչանս մեր։

Սրբոյ առաքելոյն ասէ, *Խաղաղութիւն ա̃յ որ ՚ի վեր է քան զա̃մ միտս, պահեսցէ զձեզ ամբողջս և անարատս։ Զայն հայցէ և աղօթիցս բան. զի միշտ ՚ի խաղաղութեան քաղցրութիւն վայելեսցուք և մխիթարեսցուք հոգւովս. վասն զի մխիթարիչ է Հոգին սուրբ որպէս վկայէ։ *Իսկ մխիթարիչ Հոգին սուրբ ասէ զոր առաքեսցէ Հայր յանուն իմ, նա ուսուսցէ ձեզ զա̃մ։ Վասն որոյ ասէ,

Մխիթարեա՛ զանձինս ծառայից քոց։ Նախինքն՝ որք սուգ ունէին ՚ի վերայ մեղաց. թէ անձանց և թէ օտարաց, և արտմութեամբ և հեծութեամբ և յողւոց հանելով միշտ ՚ի վշտի մաշէին զանձինս իւրեանց, որպէս այն զոր եզեկիէլ պատմէ։ *Դիր նշան ասէ ՚ի ճակատ արանցդ, որ հեծեն և ՚ի յողւոց հանեն վերայ անօրէնութեանց գործելոց ՚ի դմա։ Նոյ դաւիթ՝ *Տրտմութիւն կալաւ զիս ՚ի մեղաւորաց ասէ։ Նորա և այսպիսիքս ոչ միայն մխիթարին ՚ի շնորհաց սուրբ հոգւոյն, այլ և երանելի ևս լինին ըստ հրամանի փրկչին մերոյ։ *Երանի ասէ սգաւորաց զի նոքա մխիթարեսցին։ Զայսպիսիս մաղթէ աղօթիցս բան մխիթարել և զաղաչանս ընդունել։

Դարձո՛ ՚ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց. Ներեա՛ քաւեա՛ և թող զմեղս մեր։

Զի մեք մեղաք ասէ և դու բարկացար, և պատուհասի արժանի գտանեմք զանձինս. այլ ներեա՛ տէր, քաւեա՛ տէր, ջնջեա՛ զյանցանս մեր քոյով մարդասիրութեամբդ. զի բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք մարդասէր տէր ողորմած և քաղցր։ Վասն որոյ աղաչեմք՝ ներեա՛ քաւեա՛ և թող զմեղս մեր. արժանի արա՛ գոհանալով փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

## Ցարդորակ աղօթորէն։

Եւ մեք մատուսցուք յա̃մ ժամ գոհաբանութիւն ամենայնք երրորդութեանն բոլորով սրտիւ և ուղիղ հաւատով. պատմեսցուք զա̃մ սքանչելիս նր, և ուրախութեամբ սաղմոսեսցուք առաջի նր։

Աղաչեսցուք զմարդասէր Հոգին այ և խնդրեսցուք զմխիթարութիւն միշտ 'ի նմանէ. պաղատեսցուք առ նա յամ ժամ ասելով, Հոգիդ սբ այ. Հոգի հեզութեան. Հոգի ուղղութեան. Հոգի խնամութեան և հանճարոյ. որ զամ յամենայնի լնուս և նորոգես ըստ հաճոյից կամաց քոց: Հոգի խորհրդոյ և զօրութեան. որ զանգիտութիւնս մեր բազում գիտութեամբ լնուս, և զտկարութիւնս մեր զօրացուցանես: Հոգի գիտութեան և ածպաշտութեան, որ զածութիւնդ քո միշտ վարդապետես խնդրողաց քոց օրհնել սիրով և պաշտել զտէրութիւնդ քո յարաժամ աներկբայելի հաւատով. որոց և զանմահութեան շնորհես և զանվախճան խնդութիւն: Հոգի սուրբ՝ բարուոք երկիւղի. զոր շնորհես սիրողաց քոց յանձին կրել իբր զթագ արքայական և զկնիք ածային, ամ բարեաց սկիզբն և առաջնորդութիւն զնոյն ունելով: Հոգի արարչական, որ միշտ արարչագործես զեղեալքս ամ ըստ կրկնակի ծննդեան յարգանդի մօրց, և 'ի ջուրս հոգևոր սուրբ աւազանին: Հոգի անեղ և համագոյ Հօր և Որդւոյ փառակից և պատուակից, արարչակից և նորոգող. որ 'ի սկզբան լինելութեանն 'ի համաշխարհական գոյացութեանն 'ի վերայ ջուրցն շրջելով արարչագործէիր և կենդանածնէիր զգոյակս ամ: Եւ այժմ միշտ նախախնամես և առաւել հրաշալարդեալ յօրէնս, և զհողանիւթեայ բնութիւնս մեր տաճար ածութեանդ քում յարդարես: Առաքեալս ձեռնադրես. աւետարանիչս կազմես. մարգարէս յօրինես. քահանայս և թագաւորս օծանես. երգեցողաց բանս շնորհես: Զամենեսեան քրիստոնեայս քոյին շնորհիւ առնես. ճգնաւորաց և կուսանաց ժուժկալութիւն պարգևես: Վասն որոյ օրհնեմք զքեզ Հոգի սբ այ, որ զամ յամենայնի ես առաւել բարեգործես որոց ոչ գոյ թիւ. Մխիթարեա զանձինս ծառայից քոց ածային շնորհիւ քոյ: Եւ արժանաւորեա զնշխարս կենաց մերոց 'ի հաճոյս քո միշտ կատարել և ոչ երբէք խոտորիլ 'ի պատուիրանաց քոց. այլ ցնծալ և բերկրել 'ի փառս քո հանապազ, ատել զաշխարհ և որ ինչ յաշխարհի է, և զկամս աշխարհասիրին կոխել միշտ՝ և ընդոտնել զամ պատրանս նորա և զդաւաճանութիւնս, զնախանձ, զատելութիւն, զոխակալութիւն, զհպարտութիւն և զամենայն չարիս: Եւ 'ի ձեռն բարի գործոց և առաքինի վարուց փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:



Կարգաւորութիւն հասարակաց աղօթից վեցերորդ ժամուն, որ կատարի 'ի գեմս հօր ա̅յ։ Եւ ասի, Օրհնեալ հայր սուրբ մեծ ճշմարիտ, և այլն որ 'ի կարգին։

Տեառն Յովհաննու հայոց կաթողիկոսի՝ վասն վեցերորդ ժամու աղօթիցն։

Իսկ վեցերորդ ժամու կարգեալ աղօթքն յայտնի է. զի ադամն առաջին որ 'ի վայելս դրախտին փափկանայր, 'ի նմին ժամու անցանէր ընդ սահման պատուիրանին և ճաշակէր 'ի պտղոյն. և 'ի դրախտէն և 'ի պատուիրանէ օրինադրին ունայնանայր 'ի վեցերորդ ժամուն։ Վասն որոյ զեօթնանասնեկին եօթն ժառանգէր ըզ տրտմութիւն. և ընդ բազում ցաւոց անկանէր այժմ։ Կայր իբրև 'ի ջերման հիւանդութեան, և քաղէին ոգիք նր̅, լուծեալ յօդք ոտից և ձեռաց 'ի բարեացն շարժմանէ. կայր լեզուն անշարժ 'ի խոստովանութիւն ապաշխարութեան։

Նա զորօրինակ մեռեալ ոք անզգայ յամ շարժմանէ, սոյն օրինակ և մարդն առաջին պարփակեալ 'ի մէջօրէին իբրև 'ի մէջ գիշերի կայր 'ի տարակուսի և քաղէին ոգիք նորա։ Քանզի 'ի կարճմտութենէն ըմբռնեալ յանօրէնութեան խորխորատն անկանէր. սիրէր զմահ քան զկենդանութիւն ա̅յ։ Նա յիշատակ տէրունական պատուիրանին ևս առաւել խոցոտէր. և մահուն երկիւղն որ սպառնայր թէ մեռանիս, և ոչ գիտէր թէ զինչ գործէր։ Վասն որոյ փրկութեան միածինն հօր 'ի վեցերորդ աւուր 'ի վեցերորդ դարուն կայր 'ի ջանս ցաւոցն. և տրտմութեամբն զտրտմութիւն հալածէր. և ցաւովքն զցաւսն բառնայր։ Նա համախմբելով ընդ փայտին անշնչացեալս, զառ 'ի փայտէն բառնայր զպատուհաս մեղացն ադամայ։

Նա փոխանակ քաղցր ճաշակման մեղացն, ճաշակեաց զքացախն ընդ լեղի խառնեալ՝ 'ի բժշկութիւն պտղոյն ճաշակման դառնութեան։ Նա միանգամայն կարեօք և կամօք յանձնառնլովն լուծանէր զպատիժս պատուհասից նախնի մարդոյն. և մեծազան խոնարհութեամբն իւրով պայծառութիւն առնէր արարածոց իւրոց, և զխաւարն առնելով 'ի միջօրէի որ գրեալն է յաւետարանին թէ, *'ի վեցերորդ ժամէ անտի խաւար կալաւ 'ի վր̅ երկրի մինչև ցինն ժամն։ Այսու խաւարաւ յանդիմանէր զկարծեալ ճաճանչ լուսաւորացն որ 'ի պարզամիտ արարածոցն մեծք յօրինէին։ Նա զայս մեծգիտութեան 'ի սիրաս

ա՟մ մարդկան տնկէր ճանաչել զճշմարիտն ա՟ծ և զողորմածն , որ բժշկեաց զախտս հոգւոց և մարմնոց ։

Վասն որոյ յիրաւի յայսմ ժամու աղօթից՝ պատուիրէ արթուն լինիլ և զգուշանալ ՚ի ձանձրութեանց դիւին միջօրէի . որ դժնդակագոյն է քան զա՟մ դևս , որ յոլով մեղկութ՟բ ՚ի վերայ հասանէ և գողանայ զմիտս մեր յիւրն մտելով կամս . և անդիւտ կորստեանն ուղևորս կացուցանէ ։ Վասն այսորիկ կարգեցան վեցերորդ ժամուն աղօթքն՝ իբրև օգնականութ՟ի մարդկային բնութ՟եա ընդդէմ հակառակամարտ զօրութ՟եցն , և յիշատակ տնօրինաբար բժշկութեանն չարչարանօք տեառն մերոյ յի՟ քի՟ ։ Այս է պատճառ վեցերորդ ժամու աղօթիցն ։

---

Խոսրովու՝ սակս Քարոզին ։

Արթուն մտօք և անզգօս խորհրդով , ահիւ և դողութեամբ կացցուք յաղօթս առաջի տեառն մերոյ և փրկչին յի՟ քի՟ ։

Զի՞նչ է մտացն արթնութիւն և անզգօսութիւն խորհրդոց . չզբաղնուլ ՚ի հոգս և ՚ի ցանկութ՟իս երկրաւորս , այլ յերկինս ընթանալ և զվերինն խորհիլ զոր ինչ ա՟յ և ա՟ծայնոցն ։ Զի որպ՟ որք ննջեն՝ չկարեն լուսոյ տեսօղք լինիլ և ոչ այլ իրիք թէ և մերձաւոր իրքն կայցեն ։ Այնպէս և միտք մարմնաւորօք ցնորիւք թմբրեալք՝ ոչ կարեն տեսանել զլոյսն անշիջանելի փառացն ա՟յ որ զոգիս լուսաւորէ . և ոչ որ ինչ այնու լուսովն յերկնայնոցն տեսանի մաքուր ոգեացն . այլ խաւարանայ ոգին և սիրտն , և օտարանայ ՚ի կենաց անտի աստուծոյ ։

Արդ զգուշացուցանէ քարոզն զարթնուլ և զահ և զերկիւղն ա՟յ յոգիսն ընդունել և ամենեւին զգաստանալ յորժամ աղօթեն ։ Զի թէ հողեղէն և մահկանացու թագաւորի ահիւ և դողութ՟բ կան առաջի ծառայքն , և մանաւանդ եթէ յանցաւորք ևս իցեն . ո՞րչափ ևս առաւել անմահին ա՟յ արարչին երկնաւոր զօրացն և ամենեցուն արքայի ահիւ կալ առաջի պարտ իցէ և դողալ առաւելապէս ։ Մանաւանդ զի հանապազ յանցաւոր ա՟յ գտանիմք , և այն յայտնի լինի ամենատես աչացն ա՟յ . զիա՞րդ ապա ոչ բազում երկիւղիւ պարտիցիմք կալ առաջի նորա ։

Հաւատով խնդրեսցուք ՚ի նմանէ զհրեշտակ խաղաղութ՟ե պահապան անձանց մերոց ։ Հանապազ քարոզութ՟իքդ պատուիրեն հաւատով խնդրել . քանզի այսպէս ուսուցին առաքեալքն և տ՟րն ինքնին

գլխովին · քանզի պօղոս ասէ, *Համբառնալ զձեռս 'ի վեր առանց բարկութե և երկմտութե։ Եւ յակոբոս թէ՝ *Խնդրեցէք հաւատով և մի՛ երկմտիցիք · քանզի որ երկմտեան է՝ ասէ վասն նորա, մի ակն կալցի մարդն այն առնուլ ինչ յայ։ Իսկ տէրն ասէ, *Զամ ինչ վասն որոյ աղօթս արարեալ և հաւատայցէք թէ առնուցուք, տացի ձեզ։ Վասն որոյ 'ի գութ ողորմութեանն այ վստահացեալ զօգտակարն մեր խնդրեսցուք · և յուսացեալ թէ առնուցումք 'ի պատշաճ ժամու։

Զհրեշտակ խաղաղութեան հրամայէ խնդրել պահապան · և յարէ 'ի նոյն թէ, Որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք և աներկիւղ պահեսցէ զմեզ յամ հրեղէն նետից սատանայի։ Բանակելով ասէ շուրջ զմեօք յոր կողմ և ձգիցէ սատանայ զնետսն, նա ոչ թողցէ հասանել 'ի մեզ · այլ անդէն յինքն դարձուսցէ և աներկիւղս արասցէ զմեզ։ Հրեղէն կոչեաց զնետսն սատանայի · զի երբև բորբոքեն զմեզ 'ի ցանկութիս աղտեղի ազգիս և 'ի ցասումն և յայլ ևս ախտս։

Եւ զի՞նչ է ասելն թէ որ թռչի 'ի տուէ, *Յիրէ որ շրջի 'ի խաւարի 'ի գայթակղութե դիւին 'ի հասարակ աւուրն։ Ճշմարտապէս խաւար է որպէս ասաց սուրբն այն և լոյս կեղծաւորի · չար է, և բարի կարծեցուցանէ · դառն է, և քաղցր թուեցուցանէ · զի յորժամ տեղի գտանիցեն 'ի մեզ նետք նորա, յայլ ազգ զախորժակսն շրջեն։ Քանզի այսպէս և մարմին որ յախտէ ինչ վտանգի, զվնասակարսն բաղձայ և ոչ զօգտակարսն։ Լինէ զայն զայս և 'ի խոցմանէ նետին սատանայի յոգին, թուանին՝ զանկարծն և զարագն յայտնէ · և զի՝ աներևոյթաբար հասանի և չերևի թէ ուրէ։ Բայց թէ ոք զհոգին ունի լուսաւոր, նա տեսանէ և զգայ զնետս չարին։

Յորժամ զգուշութե պահելով աղօթիւք և բարեխօսութեամբ ամ սրբոց որք աստ և ընդ ամ տիեզերս։

'Ի հրեշտակէ ասէ զգուշութե պահել վասն աղօթից և բարեխօսութեան ամ սրբոց · զի թէ և մեք անարժանք եմք հրեշտակացն պահպանութե, սակայն 'ի սրբոցն աղօթս ապաւինեալ և 'ի բարեխօսութիս հաւանեցուցանեմք նոքօք զած՝ շնորհել մեզ 'ի վերին զօրութեցն պահապանս։ Որովք ամրացեալք 'ի նետից բանսարկուին, կարասցուք կեալ առաքինութե ըստ կամաց նորա յայսմ աշխարհիս · զի խորհուրդքն անմերձենալի լեալ խաբէութե չարին, կարողանամք յամ առաքինութիւնս ըստ կամացն այ յայսմ աշխարհիս։

Այս ուրեմն են առաքինութիւք որ չեն ըստ այ կամացն, այլ ըստ մարդկան հաճոյից · և կամ 'ի մտացն հաճութե որովք ամբարտա-

ւանութիւնք յոգւոյն զօրանան 'ի չարին ազդմանց։ Իսկ յորժամ 'ի նորա խաբէից փրծանիմք և առաքինութիւ կատարեմք, ըստ հաճոյից նորա առնեմք, որովք մեք օգտիմք, և զանունն նորա փառաւոր առնեմք. քանզի և զայն իսկ յաղթողն յայտ առնէ։

Ի փրկութիւն անձանց մերոց, 'ի պատիւ և 'ի փառս կենդանացուցիչ անուան նորա։ *Արդար ասէ յորսողաց փրծանի. արդարութիւն փրկէ 'ի մահուանէ։ Ամենայնիւ յամ վտանգէ փրկին առաքինացեալքն։ *Փրկէ տէր զանձինս ծառայից իւրոց։ Իսկ 'ի մեղաւորացն հայհոյի անուանն նորա վասն չար գործոց նոցա, նոյնպէս և յառաքինեացն գործոց որպէս ասէն ասէ՝ փառաւորի պատուել և պատուի կենդանացուցիչ անուանն նորա. որ կենաց մարմնոյ և կենացն հոգևորաց և կենաց հանդերձելոցն է կենդանացուցիչ։

Յայս հաղորդութիւն ընկալցուք 'ի յայտնութեան մեծի որդւոյն նորա, կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոյ։ Վասն զի զայս խոստացեալ է, մեծ և անճառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած։

Իսկ զառաքինութիւն գործիցեմք, հաղորդիմք յուսոյ հանդերձելոցն. քանզի զԱստուած անսուտ գիտելով՝ հաւատամք առնուլ զոր խոստացաւ առաքինեացն զմեծն զայն և զանճառելի խոստումն զոր ձշ բանէ որք ասել։ Զի զթագաւորի ուրուք զփառս անկարանայ պատմել լեզու, ապա զայսն զինչ կարասցէ պատմել զկերպարանակից լինելն մարմնոյ փառաց որդւոյն նորա։ Իսկ յայսպիսի յոյս խնդացեալ՝ համարձակ ասէն իսկ հաղորդիմք անոր խնդութեանցն։

Զի թէ ոք հաւատոյ գիտէր եթէ թագաւորելոց է երբ և իցէ, ո՞չ ապաքէն և նախ քան զթագաւորելն վստահութեամբ հաղորդէր յուրախութիւն ապագայիցն։ Իսկ թէ երկրաւորքս և ապականացուքս որ ընդ մահու են մերձակեալք և ոչ են 'ի ցաւոց և 'ի տրտմութենէ և 'ի հոգոց ազատք՝ մեծ խնդութիւն յուսացեալքն գործեն, ապա որքան յոյս հանդերձելոցն որ յերկինս է առանց հոգոց և ցաւոց և տրտմութեանց կերպարանակից փառացն Քրիստոսի լինել՝ բերկրէ զհաւատացեալսն։ Նաև մերն նորա և սա խնդալիս առնէ՝ ուրախացուցանէ և անսութեան մասին զմարդկեալսն. զի ըստ մարդկանն՝ անձանցն անսող լինի, այլ նորն՝ նորա և հրեշտակաց և սրբոց և նոցունն փառաց։ Իսկ այսպիսի առ հաւատչէիւ թեթևանայ և քաղցրանայ լուծն և բեռն որ վասն Քրիստոսի. ապա յաղօթս զբանն փակէ, զի արժանացուսցէ այսպիսի յուսոյ հասանել. Քրիստոս Յիսուս տէր մեր կեցո և ողորմեա մեզ։

Իսկ ժողովուրդն՝ տէր ողորմեա։

գլխովին · քանզի Պօղոս ասէ , *Համբառնալ զձեռս 'ի վեր առանց բարկութեան եւ երկմտութեան : Նաեւ յակոբոս թէ՝ *Խնդրեցէք հաւատով եւ մի՛ երկմտիցէք · քանզի որ երկմտեան է՝ ասէ վասն նորա , մի՛ ակն կալցի մարդն այն առնուլ ինչ յՏէ : Իսկ տէրն ասէ , *Զամ ինչ վասն որոյ աղօթս արարեալ եւ հաւատայցէք թէ առնուցուք , տացի ձեզ : Վասն որոյ 'ի գութ ողորմութեանն Այ վստահացեալ զօգտակարն մեր խնդրեսցուք · եւ յուսացեալ թէ առնուցումք 'ի պատշաճ ժամու :

Զհրեշտակ խաղաղութեան հրամայէ խնդրել պահապան · եւ յարէ 'ի նոյն թէ , Որ եկեալ բանակեսցէ շուրջ զմեօք եւ աներկիւղ պահեսցէ զմեզ յամ հրեղէն նետից սատանայի : Բանակելով ասէ շուրջ զմեօք յոր կողմ եւ ձգիցէ սատանայ զնետսն , նա ոչ թողցէ հասանել 'ի մեզ · այլ անդէն յինքն դարձուսցէ եւ աներկիւղս արասցէ զմեզ : Հրեղէն կոչեաց զնետսն սատանայի · զի իբրեւ բորբոքեն զմեզ 'ի ցանկութիւս ազգի ազգիս եւ 'ի ցասումն եւ յայլ ևս ախտս :

Այլ զինչ է ասելն թէ որ թռչի 'ի տուէ , *Յիրէ որ շրջի 'ի խաւարի 'ի գայթակղութենէ դիւին 'ի հասարակ աւուրն : Ճշմարտապէս խաւար է որպէս ասաց սուրբն այն եւ լոյս կեղծաւորի · չար է , եւ բարի կարծեցուցանէ · դառն է , եւ քաղցր թուեցուցանէ · զի յորժամ տեղի գտանիցեն 'ի մեզ նետք նորա , յայլ ազգ զխորժակսն շրջէն : Քանզի այսպէս եւ մարմին որ յախտէ ինչ վտանգի , զվնասակարսն բաղձայ եւ ոչ զօգտակարսն : Ունէ զայն զայս եւ 'ի խոցմանէ նետին սատանայի յոգիսն , թռանիլն՝ զանկարծն եւ զարագն յայտնէ · եւ զի՝ աներեւոյթաբար հասանի եւ չերեւի թէ ուստի : Բայց թէ որք զհոգին ունին լուսաւոր , նա տեսանէ եւ զգայ զնետս չարին :

Յորմէ զգուշութե՛ պահելով աղօթիւք եւ բարեխօսութեամբ ամ սրբոց որք աստ եւ ընդ ամ տիեզերս :

'Ի հրեշտակէ ասէ զգուշութե՛ պահել վասն աղօթից եւ բարեխօսութեան ամ սրբոց · զի թէ եւ մեք անարժանք եմք հրեշտակացն պահպանութեան , սակայն 'ի սրբոցն աղօթս ապաւինեալ եւ 'ի բարեխօսութիւս հաւանեցուցանեմք նոքօք զած՝ շնորհել մեզ 'ի վերին զօրութենցն պահապանս : Որովք ամրացեալք 'ի նետից բանսարկուին , կարասցուք կեալ առաքինութե՛ ըստ կամաց նորա յայսմ աշխարհիս · զի խորհուրդքն անմերձենալի լեալ խաբէութե՛ չարին , կարողանամք յամ առաքինութիւնս ըստ կամացն Այ յայսմ աշխարհիս :

Այս ուրեմն են առաքինութիք որ չեն ըստ Այ կամացն , այլ ըստ մարդկան հաճոյից · եւ կամ 'ի մտացն հանճարութե՛ որովք ամբարտա-

ւանութիւնք յոգիսն զօրանան 'ի չարին ազդմանց։ Իսկ յորժամ 'ի Նորա խաչիցն փրծանիմք և առաքինութիւս կատարեմք, ըստ հաճոյիցն մր̄ առնեմք, որովք մեք օգտիմք, և զանունն մր̄ փառաւոր առնեմք. քանզի և զայն իսկ յաջորդն յայտ առնէ։

'Ի փրկութե անձանց մերոց, 'ի պատիւ և 'ի փառս կենդանացուցչին անուան Նր̄։ *Արդար ասէ յորսողաց փրծանէ. Արդարութիւն փրկէ 'ի մահուանէ։ Ի մենայնիւ յա̄մ վտանգէ փրկին առաքինացեալքն։ *Փրկէ տէր զանձինս ծառայից իւրոց։ Եւ որպէս մեղաւորացն հայհոյի անուանն մր̄ վասն չար գործոց նոցա, նոյնպէս և յառաքինեացն գործոց որպէս ասէրն ասէ՝ փառաւորի պատուել և պատուի կենդանացուցչին անուանն մր̄. որ կենաց մարմնոյ և կենացն հոգևորաց և կենաց հանդերձելոցն է կենդանացուցիչ։

Զայս հաղորդութե ընկալցուք 'ի յայտնութե միածնի որդւոյն մր̄, կերպարանակից առնել զմարմին խոնարհութե մերոյ ըստ նմանութե մարմնոյ փառաց իւրոց։ Վասն զի զայս խոստացեալ է, մեծ և անճառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց Ճշմարիտն ա̄ծ։
Երբ զառաքինութե գործիցեմք, հաղորդիմք յուսոյ հանդերձելոցն. քանզի զա̄ծ անսուտ գիտելով՝ հաւատամք առնուլ զոր խոստացաւ առաքինեացն զմեծն զայն և զանճառելի խոստումն զոր ոչ բաւէ ոք ասել։ Զի զթագաւորի ուրուք զփառս անկարանայ պատմել լեզու, ապա զայն զփառսդ ո՞ կարասցէ պատմել զկերպարանակից լինելն մարմնոյ փառաց որդւոյն մր̄։ Եւ յայսպիսի յոյս խնդացեալ՝ հանապազ աստէն իսկ հաղորդիմք անմահ խնդութեանցն։
Զի թէ ոք հաւաստի գիտէր եթէ թագաւորելոց է երբ և իցէ, ո՞չ ապաքէն և նախքան զթագաւորելն վստահութե հաղորդէր յուրախութե ապագայիցն։ Եւ թէ երկրաւորքս և ապականացուքս որ ընդ մահու են մեծարեալք և ոչ են 'ի ցաւոց և 'ի տրտմութենէ և 'ի հոգոց ազատ՝ մեծ խնդութիւն յուսացեալքն գործեն, ապա որքան յոյս հանդերձելոցն որ յերկինս է առանց հոգոց և ցաւոց և տրտմութեանց կերպարանակից փառացն քի̄ լինել՝ բերկրէ զհաւատացեալսն։ Նա և տէրն մր̄ ևս խնդամիտ առնէ. ուրախացուցանէ և տեսութե միայն զմաքրեալսն. զի ըստ մաքրութեան անձանցն տեսող լինի, այսինքն՝ մր̄ և հրեշտակաց և սրբոց և նոցունց փառաց։ Եւ այսպիսի առ հաւատչէիւ թեթևանայ և քաղցրանայ լուծն և բեռն որ վասն քի̄. ապա յաղօթս զանձն փակէ, զի արժանացուք այսպիսի յուսոյ հասանել. քս̄ յս̄ տէր մեր կեցո և ողորմեա մեզ։
Եւ ժողովուրդն՝ տէր ողորմեա։

Նորին խրատական՝ առ Աղօթիցն:

Զգեցո՛ մեզ տէր Աստուած մեր զէն արդարութեան, զօրաւոր և յաղթօղ լինել ընդդէմ սատանայական պատերազմաց:

Խրատեաց քարոզն աղօթս առնել զի պահպանիցիմք հրեշտակաւ նորա 'ի նետից սատանայի. և ամրացեալք՝ զօրաւորք յառաքինութիւն լիցուք: Որդ յառաջ կացեալ քահանայն զնոյն ամրութիւն հայցէ յԱյ. և առաւել զի և զինուքն արդարութեան վառել հայցէ ասելովն թէ՝ Զգեցո մեզ տէր Աստուած մեր զէն արդարութեան:

Զի որպէս 'ի մարմնական մարտս մարմնականքն ամրացուցանեն սպառազինութիւնք, սաղաւարտ, զրահք, և վահանքն, և այլն.. Այնպէս և 'ի հոգեւորսն՝ առաքինութեան վառեն զէնք. որովք և սպառազինել հրամայէ զզօրավարսն հաւատացելոց՝ պօղոս այսպէս ասելով, *Զօրացարո՛ւք տերամբ և կարողութբ զօրութեն նորա. և զգեցարո՛ւք զսպառազինութի այ. զի կարօղ լինիջիք կալ ընդդէմ հնարից սատանայի: Զի ո՛չ է մեզ մարտ ընդ մարմնոյ և ընդ արեան, այլ ընդ իշխանութիս և ընդ պետութիս և ընդ աշխարհակալս խաւարիս այսորիկ ընդ այսս չարութեան որ 'ի ներքոյ երկնից: Թուէ ապա մի ըստ միոջէ որովք վառելն պարտ է: *Պնդեալ ամէ զմէջս ճշմարտութբ զճշմարտութեան հաւատոյն գօտի ածել և զգեցեալ զզրահն արդարութեան. և ագուցեալ զոտս պատրաստութբ աւետարանին խաղաղութեան: Եւ 'ի վերայ ամենայնի՝ *Առէ՛ք զվահանն հաւատոյ որով կարօղ լինիջիք զամ նետս մուխս չարին շիջուցանել: Եւ առէ՛ք զսաղաւարտն փրկութեան և զսուսեր հոգւոյն որ է բանն այ: Եւ 'ի վերայ բերէ թէ՝ *Զօրաւոր և յաղթօղ լինելով ընդդէմ սատանայական պատերազմաց:

Եւ զամ հրեղէն նետս նորա շիջուցանելով անկասկածք լիցուք յիրաց 'ի խաւարային գայթակղութեանց դիւին հասարակ աւուր:

Զօրաւոր լինել ընդդէմ բանսարկուին՝ և յաղթօղ նր պատերազմացն՝ զէնք արդարութեան առնեն. որովք և շիջանին զամ հրեղէն նետք սատանայի: Եւ 'ի շիջանել նոցա՝ ո՛չ երբէք կասկած լիցի ումեք յիրաց խաւարային գնացից. զի լուսովն այ պայծառացեալ ոգիքն՝ գիտեն գնալ ընդ արդարութեան շաւիղս և ո՛չ գայթակղին որոգայթիւք դիւացն, որք զխաւարեալսն ոգւով և 'ի հասարակ աւուր գայթակղեցուցանեն: Զի ո՛չ ազդէ այս լոյս առ 'ի գիտել զնոցա որոգայթսն. բայց արդարոցն լոյս անշէջ է յոգիս նոցա. և 'ի տուէ և 'ի գիշերի անսայթաք գնան 'ի ճանապարհս առաքինութեան. քանզի զայս և յառաջիկայսն մաղթէ աղօթիցն բան:

Զի զգաստացեալք վայելչական տունջենիւս։ Ո՞ր է վայելչական տիւ. որ ՚ի քէն յարդարութե՛ արեգականէն ծագեցաւ մեզ լոյս, և զգիշեր մեղացն մերժեաց և տիւ արար։ Կոչէ պօղոս, * Գիշերն մերժեցաւ և տիւն մերձեցաւ. ՚ի բաց արասցուք այսուհետև զգործս խաւարին և զգեցցուք զզէնն լուսոյ. իբրև ՚ի տունջեան զգաստացեալ շրջեսցուք։ Զայս խնդրէ աղօթիցն բան զգաստանալ վայելչական տունջեամբս. քանզի երկրպագեմք կարգի սուրբութե՛, և ոչ տալովս և մեր ջանալովս. վասն այսորիկ զոր քարոզն տայ՝ զնոյն յաստուծոյ խնդրէ։

Առաքինութե՛ կացցուք յայսմ աշխարհիս ՚ի փրկութե՛ անձանց մերոց։ Նա սուրբ երրորդութիւնդ փառաւորեսցի. զի և վայելէ իսկ քեզ փառաւորութի՛. վասն որոյ ՚ի նոյն յարէ,

Որում վայելէ փառք իշխանութի՛ և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Երկնաւոր խաղաղութե՛ քո պարգևեալ պահեա՛ զանձինս մեր տէր զօրութեանց։ Վասն զի անխռովք են երկնաւորքն, և չեք անդ մուտ սատանայական վրդովմանց, և ոչ մարդկային խարդախութեանց. այլ ա՛մ ուստեք անխռով խաղաղութիւն, և հոգևոր ուրախութիւն։ Զնոյն մաղթէ լինել և յերկրի աղօթից բան. զի որպէս յերկինս յա՛մ վրդովմանց պարսպեալ պահեսցուք։

Զի դու ես ա՛ծ խաղաղութե՛. և բաց ՚ի քէն զայլ ոք ոչ գիտեմք. և զանուն քո անուանեմք զօրհանապազ։

Զի ՚ի քէն է տալ երկնայնոցն խաղաղութի՛. և մեք քո՛ եմք որպ՟ և նոքայն։ Վասն այսորիկ տալ, զայլ ոք ոչ գիտեմք. և զանուն քո անուանեմք զօրհանապազ։ Հանապազ տալ զքեզ կարդամք յօգնութի՛, և քո ժողովուրդ անուանիմք, և ՚ի քո անուն քրիստոնեայք կոչիմք։

Նայեա՛ց տէր յերկրպագութիւն մեր ամենեցուն, և շնորհեա՛ մեզ առնել զճշմարտութիւն արդարութեան առաջի քո յա՛մ ժամ։
Վասն զի ոչ ամենեցուն է առնել զճշմարիտ արդարութի՛. բայց որոց ա՛ծ վարդապետէն։ Զի պահեն և աղօթեն և ողորմին քաղցելոց, բայց ոչ ըստ ա՛յ. այլ ըստ իւրեանց մտաց և ըստ մարդկան հաճոյից. վասն այնորիկ սուտ է արդարութի՛ նոյն և ոչ ճշմարիտ։ Յաղագս որոյ և սողոմոն ասէ, * ՚ի միտ առնուլ զարդարութի՛

ճշմարիտ։ Նոյն պօղոս ասէ, * Որ յոյս արդարութեան է։ Մարդ երկիրպագանելով խնդրէ զայս և ասէ։

Նայեաց յերկրպագութիւնս մեր ամենեցուն, և շնորհեա մեզ տանել զարդարութիւն ճշմարտութեան առաջի քո յամ ժամ։ Որոյ առաջի լինիլ արդարութեանց և ոչ ՚ի ցոյց մարդկան. և մի՛ դատարկել երբէք յոյնմ արդարութեանց, այլ յամ ժամ յարդարութեան վաստակել. զի ծառայքն ՚ի ծառայութեան տէրանց անդուլ խոնջին։ Նա եթէ հողեղէն տէրութեան միշտ զկատակս պահանջէ յանդիման տէրանց, ապա որչափ երկնային և անմահ արքային պատիւն հարկ առնէ առանց լքանելոյ գործել զարդարութեան ծառայութիւն։ Որոյ փոխարէնն է ոչ յերկրէ միայն որպէս յերկրէքս շնորհեն, այլ առաւ բազմապատիկ՝ և ՚ի հանդերձելումն անպատմելաբար։ Հանդերձեալ ասէ որ լինելոցն է չև ևս լեալն. զոր և ասէ,

Նա հանդերձելոց բարեացն արժանի լիցուք ընդ ամ սուրբս, և ընդ նոսին գոհութեամբ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ.

Վասն հիւանդաց և ամ վշտացելոց աղաչեսցուք զփրկիչն մեր Քն, զի ողորմեսցի ըստ մեծի ողորմութեան իւրում և բժշկեսցէ զախտս և զհիւանդութիւնս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց։

Աղօթք սրբոց յոյժ զօրաւոր են յօգնականութիւն. ոչ միայն զմարմնոյ բառնալ զցաւս, այլ և զհոգւոյ. որ հաւատով և յուսով հայցեն, ըստ մեծին յակոբայ որ ասէ, * Հիւանդանայցէ ոք ՚ի ձէնջ, կոչեսցէ զերիցունս եկեղեցւոյն և արասցեն ՚ի վերայ նորա աղօթս. և աղօթքն հաւատով փրկեն զաշխատեալն. և թէ մեղս ինչ իցէ գործեալ՝ թողցի նմա։ Նա՝ զի ասէ՝ * Օծցեն իւղով յանուն Տն։ Այս ՚ի վերայ նորադունիցն ՚ի հաւատս զի առաւել հաստատեսցին ՚ի սէրն Այ. և զի զգալի մարմին զգալապէս և զնիւթ բժշկութեան սիրէ ըստ թանձրութեան մարմնոյն։

Մանաւանդ ՚ի միասին՝ իւղն յօրինակ շնորհաց հոգւոյն Սբյ առաւ. որ անարատութեամբ զներքին մարդն մաքրէ, և յայտնապէս արտաքին մարմնոյն առողջութիւն պարգևէ որք հաւատով յուսան։ Նայց և զայն ուսանել պարտ է, զի և զիւղն աղօթքն զօրաւոր առնէ և

դեղ բժշկութեան կատարէ։ Այսմ որոյ թէ երկրորդին լինիցին՝ բա-րի է. և թէ վասն ծուլութեան կամ այլ պատճառի իրիք օծութիւն իւղոյն խափանի, առօթիւցն լինիլ պարտ է առանց մի պատճառի. զի կարևոր է և յոյժ իրս պիտանի, և յոյժ ժամու խնդրել պատրաստ լինիլ ըստ եկեղեցականն հրամանին։ Զայն և քարոզիւ բան հրա-մայէ առաջել զփրկիչն մեր քս, ոչ միայն վասն մարմնոյ հիւանդու-թեանց, այլ և վասն հոգւոյ ևս որ մեծագոյնն է և կարևորն։

Զի ողորմեցի ասէ ըստ մեծի ողորմութեան իւրում և բժշ-կեաց զախտս և զհիւանդութիւս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց։

Արդարև մեծ է ողորմութիւն այ և ՚ի վեր քան զամ հասողու-թիւն և իմացումն մտաց. որ ըստ առատ քաղցրութեան իւրոյ միշտ նախախնամէ զեղեալս մեր, և ըստ կրկնակի պիտոյից մերոց զամենայն ինչ պատրաստէ յամ ժամ։ Այլ ՚ի ձեռն արժանաւոր առօթից և անքին հաւատոց բժշկէ հանապազ զախտս հոգւոց և մարմնոց ծառայից իւրոց՝ որպէս ճշմարտապէս տէր և արարիչ և մարդասէր։

Այս կատարեալ առողջութե հաստուսցէ զամենեսեան ՚ի մշտըն-ջենաւոր և յանախտ կեանս։ Կատարեալ առողջութի զայն երկո-սին ասէ, զհոգւոյ և զմարմնոյ, այլ և զամենեւին մարմնոյն յախտից և զանդամբունիւն դարձեալ ՚ի նոյն տեսակս վշտաց. որով արժանի լի-ցուք յետ աստեացս զմշտնջենաւոր և զանախտ կեանսն ժառանգել։ Այս այս լինի որպէս շնորհօք և ողորմութե մարդասէր փրկչին մերոյ յի քի, որ հայրն երկնաւոր առաքեաց մեզ ՚ի փրկութի. զոր և յաջորդ բանս ցուցանէ։

Որ առաքեցաւ ասէ ՚ի հօրէ ՚ի բժշկութիւն ազգի մարդկան միածին որդին այ տէր մեր և փրկիչ. յս քս կեցո և ողորմեա։

Զի յայն սակս առաքեցաւ՝ զի կեցուսցէ զկորուսեալսս ա-ռատապարգև ողորմութե իւրով. զոր միշտ հայցեմք կեցուցանել յամենայն ժամ։

Աղօթք։

Փարատեցո զցաւս և բժշկեա զհիւանդութիւնս ՚ի ժողովրդե-նէ քումմէ տէր այ մեր. և շնորհեա ամենեցուն զկատար-եալ առողջութիւն նշանաւ ամենայաղթ խաչի քո. որով բարձեր

զտկարութիւն ազգի մարդկան և դատապարտեցեր զԹշնամին կենաց և փրկութեան մերոյ.

Փառաւորեցի ասէ զդուս. այսինքն՝ ապաքինեալ և 'ի բաց մերժեալ. որոց զզօրքանչելին պետրոսի, և զհարիւրապետին մանկանն, և զկնոջն արեանհոսի, և զբորոտեցն և զայլոցն ամենեցունց. զորս կենդանարար բանիւ քով բժշկեցեր 'ի ճշմարիտ մարդեղութեն քումս: Նոյն այժմ զնոյն հայցեմք բարերար տէր. զի տուող ես ըստ իւրաքանչիւր հաւատոց առ զառողջութիւն. ոչ միայն մարմնոյ, այլ և հոգւոյ: Զորոց նախ պահանջէիր 'ի սկզբան զհաւատարմութիւն հաւատոց առ 'ի յընդունելութիւն շնորհաց. և այսպէս իբր ճշմարտապէս բժիշկ՝ զզօրութիւն ամենազօր ածութեանդ առ 'ի բժշկութիւն 'ի կիր արկանէիր ասելով, *Ըստ հաւատոց քոց եղիցի քեզ: և Թէ՝ *Հաւատք քո կեցուցին զքեզ երթ 'ի խաղաղութիւն: Որդարև մեծ խաղաղութիւն. զի ուր հոգւոյ և մարմնոյ վիշտ ոչ իցէ, անդ է ճշմարիտ խաղաղութիւն: Զի ուր խաղաղարարն քո բնակէ, ամ արկածք խռովութեանց 'ի բաց մերժին որպ 'ի տանց սիմոնեցն ձկնորսին և բորոտին: Նոյն վայրն մաղԹէ աղօԹիցս բանս ասելով,

Շնորհեա ամենեցուն զկատարեալ առողջութիւն նշանաւ ամենայաղԹ խաչի քո. որով բարձեր զտկարութիւն ազգի մարդկան և դատապարտեցեր զԹշնամին կենաց և փրկութեան մերոյ: 'Ի ձեռն պատուականն և ամենազօր խաչի քո ասէ, որով զյանցանս մեր բարձեր և զմեռեալքս մեղօք կենդանագործեցեր, և փոխանակ մեր՝ զմեր Թշնամին և զհակառակորդն կենաց մերոց 'ի մահ դատապարտեցեր: Նոյն այժմ տէր բարերար զվէրս հոգւոց և մարմնոց մերոց բժշկեա. և շնորհեա կատարեալ և մշտնջենաւոր առողջութեամբ յանախտ կեանս ժամանել:

Դու ես կեանք մեր և փրկութիւն բազմողորմ ած. որ միայն կարող ես Թողուլ զմեղս և մերժել զախտս և զհիւանդութիւնս 'ի մէնջ. որում յայտնի են պէտք կարեաց մերոց, պարգեւեա զառատ ողորմութիւն քո 'ի վերայ արարածոց քոց ըստ իւրաքանչիւր պիտոյից:

Բաց 'ի քէն զայլ ոք ոչ գիտեմք ասէ փրկիչ և կեցուցիչ. և կամիլդ քո գործ է կատարեալ. որում և յայտնի են պէտք կարեաց մերոց. որ ոչ կամիս զմահ մեղաւորին ըստ մարգարէին, այլ զխրապէս կեալն և զճշմարիտ առողջութիւն: Զոր և աղաչեմք պարգեւել արարածոց քոց ըստ իւրաքանչիւր պիտոյից ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ 'ի փառս և 'ի գովութիւն ամենասուրբ երրորդութեանդ: Որ և ասէ իսկ,

Յորոց հանապազ փառաւորեալ գովի ՚ի բարձունս ամենա-սուրբ երրորդութիւն։ Յամենայն արարածոց քոց աստ յերկնաւո-րաց և յերկրաւորացս զորոց զպէտս տնտեսպէս լինիս, բարձրա-ցեալ տէրութիւն քո փառաւորի․ այժմ և միշտ և յաւիտեանս յա-ւիտենից, ամէն։

---

Քարոզ։

Խնդրեսցուք հաւատով ՚ի տեառնէ վասն քաւութեան մե-ղաց և թողութեան յանցանաց, փրկելով զմեզ ՚ի վշտաց և ՚ի նեղութեանց, իջանելով ՚ի վերայ մեր ողորմութիւն և գթութիւն տեառն այ. ամենակալն տէր կեցո և ողորմեա։

Զի ամ տուրք բարիք և պարգևք կատարեալք ՚ի վերուստ են իջեալ և միշտ իջանեն ՚ի հօրէն լուսոյ, որ աղբիւրն է առատաբաշխող ամ բարութեանց։ Որ հայրական սիրովն միշտ նախախնամէ զարա-րածս իւր և զարմանէ ըստ պատշաճի. որ գթայ հայրաբար յարա-րածս իւր և ոչ առնէ անտես զգործս ձեռաց իւրոց որպէս տէր և արարիչ։ Սմա որոյ և քարոզիս ըստ յորդորէ զամենեսեան հա-ւատով միշտ խնդրել զքաւութիւն մեղաց և զթողութիւն յանցանաց. զի առանց հաւատոց ունայն և զուր է աղաչանք, և ոչ է հնար առ-նուլ զխնդրուածսն։ Իսկ որ կատարեալ հաւատով խնդրիցէ, ան-հնար է թէ ոչ առնուցու, թէ և բարձրագոյն իցէ խնդիրն. Զի անհնարինքն հնարաւորք լինին առ մեծութիւն հաւատոյն ըստ տէրունական հրամանին, որ կեցուցիչն է ամենեցուն և զօրացուցիչ։
Ամենակալ տէր այ մեր կեցո և ողորմեա։

---

Աղօթք։

Հայր գթութեանց և այ ամ մխիթարութեանց, որ մխի-թարես զմեզ յամենայն նեղութիւնս մեր։ Հայր առա-քեա՛ մեզ վստահութիւն առ և յորդորէ ուղղախոհար և մտերմու-թեամբ միշտ աղօթել, և հաւատալ թէ յորժամ ջերմեռանդ սի-րով խնդրել որդի առ հայր մաղթեմք, և աղերսեմք գողարիկ և խան-դաղատական բանիւք, ճշմարտապէս առնումք զխնդիրն իւր. ՚ի գո-

բովանդակութ հօրէ. իսկ ած ասելովն, զարարչական փառացն զճո-խութի յայտ առնէ։ Զի մի՛ միայն ՚ի հայրական գութն վստահա-ցեալ յանհոգս լիցուք, այլ և զտէրութեն պատիւն գիտելով՝ ահիւ և դողութբ միշտ կացցուք առաջի նր։ Նա զի հայր է գթութեց. և ած ամ մխիթարութեց, գիտէ զամ պէտս մեր յառաջ քան ըզ խնդրելն մեր ՚ի նմանէ և պարգևէ միշտ առատապէս։ Բայց կամի զի մեք միշտ սիրով զնովիմբ գայցեմք և աղերսելով ժտիցեմք ՚ի նմանէ, ոչ զերկրաւոր և զդիւրանցանելի փառս, այլ զանանցն և զմշտնջենաւոր։

Լուր և այժմ ձայնի պաղատանաց ծառայից քոց, ընդունե-լով զաղօթս մեր. անցո՛ ՚ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց. փրկեա՛ յերևելի և յաներևոյթ թշնամւոյն։

Լուր և այժմ առ ձայնի պաղատանաց ծառայից քոց, այ-սինքն՝ կատարեա՛ ՚ի բարի զաղաչանս մեր. մի՛ անտես առներ զորս խնդրեմքս։ Նա ած զգալի ձայնի զեմբր լսէ, որոյ յօդաւոր մա-սունք անդամոց ոչ են. նա և միջոցս երկնի և երկրի կարի երկայն իմն և հեռաւորոյն է, և ձայն բարբառոյ մերոյ ոչ զօրեն յերկինս ելանել։ Բայց կերպարանք բանիս զայն յայտ առնէ թէ՝ ընդ զգալի ձայնիս՝ և զմտացն յօժարութի պարտ է կալել, որոյ ած առաւել լսէ և զաղաչանան կատարէ. որպէս Մովսէսի առնէր, * Զի՞ գոչես առ իս։ Միթէ և շշնջիւն ձայնի ոչ էր, այլ լռութեամբ աղօթէր։ Նա և Եղիայի ոչ էին բանք բարբառոյ և ոչ արտաբերութիւն խօսից. այլ միայն զգլուխն յերկիր խոնարհեցուցեալ ՚ի վերայ երկուց ծնգացն, զբազմօրեայ ամլութի երկնի և երկրի ՚ի ծննդականութի փոխարկէր։ Բայց մեք զի յոգնայլի մաքուր մտաց զրկեցաք, հարկիմք զգալի ձայ-նիւս աղօթել. թերևս ընդոստուսցուք զթմրութի մտաց մերոց զկնի ձայնիցն, որով խոնարհեսցի ած յաղաչանս մեր. զոր և աղօթիցս բան մաղթէ։

Ընդունել առ զաղաչանս, և անցուցանել զցասումն պատու-հասի յանցանաց մերոց, և փրկել յերևելի և յաներևոյթ թշնամ-ւոյն։ Զի թէպէտ մեք միշտ մեղանչեմք առ բարերար և գթած բնութեն մերում և այ պատուիրանաց բանաւորութեն, և զանբարկանալի բնութիւնդ ՚ի ցասումն շարժեմք ՚ի վերայ մեր։ Բայց դու բարերար և ողորմած ած մեր՝ ըստ հայրական գթութեց քոց լուր ձայնի աղա-չանաց մերոց. անտես առնելով զանցանս մեր. և անցո՛ զցասումն բարկութեն քո ՚ի մէնջ. և փրկեա՛ զմեզ ՚ի յայտնի և ՚ի յանյայտ թշ-նամեաց։ Զի միշտ ՚ի փառաբանութեն քում կացցուք, գոհանալով զմեծամեծս և զպատուականագոյն աւետանեաց. զոր և յաջորդս ցուցանէ։

Արժանաւորեա անդադար փառաւորել զքեզ ընդ որդւոյ և ընդ հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

### Յորդորակ:

Զարթիցուք և մեք 'ի թմրութենէ մտաց. և զիմանալի աչս ոգւոց մերոց յառեսցուք առ տէր ա̃ծ մեր: Արասցուք օրինակ մեզ ա̃յ բարեաց զսուրբս ա̃յ և զառաջին ընտրեալսն, մանաւանդ աղօթից և մաքրութե̃ մտաց: Որք հաճոյական խնդրուածովք զերկինս բացին. զծով բաժանեցին. հաց անձրևեցին. զչար դևս հալածեցին. զախտս փարատեցին. զմեռեալս յարուցին. և զայլս բազումս հրաշագործեցին, որոց ո՛չ գոյ թիւ: Աղաչեսցուք զհայրն երկնաւոր ասելով հանապազ, *Հա՛յր մեղաք յերկինս և առաջի քո. և ո՛չ ես եմք արժանի կոչել որդի քո. վասն զի մեղօք մերովք բարկացուցաք զքեզ: *Դա՛րձ առ մեզ ա̃ծ փրկիչ մեր և դարձո՛ զսրտմտութիւնս քո 'ի մէնջ:

Եւ այս ո՞րպէս լիցի: Եթէ 'ի չարեաց դադարեսցուք. եթէ զմեղս խոստովանեսցուք. եթէ արտասուօք անկցուք առաջի նորա. և աղաչեսցուք զերեսս նորա հանապազ հաճոյական աղօթիւք. և խնդրեսցուք միշտ զողորմութի̃ 'ի նմանէ: Թողցուք միմեանց զյանցանս. զի և մեք արժանի լիցուք թողութե̃ 'ի հօրէն գթութեանց և ողորմութեանց. որով և հանդերձելոց բարեացն արժանի լիցուք հասանել, փառաւորելով զհայրն երկնաւոր և զորդին միածին և զհոգին ճշմարիտ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:



Պարզաբանութիւն հասարակաց աղօթից իններորդ ժամուն, որ կատարի 'ի դէմս արդուոյն Քի: Եւ ասի՝ Օրհնեալ որդիդ Տր ԱԾ ճշմարիտ, եւ այլն որ 'ի կարգին:

Տեառն Յովհաննու հայոց կաթողիկոսի՝ վասն իններորդ ժամու աղօթիցն:

Իսկ յիններորդ ժամուն կարգեալ զաղօթսն, այս վասն անդարձ խոստովանութե մեղանացն ադամայ. յորում ժամու դատապարտեալ ելաւ 'ի դրախտէն: Եւ 'ի նմին ժամու աղաղակելով աւանդեաց զհոգին փրկիչն աշխարհաց, եւ զադամ եհան 'ի դժոխոց: Եւ զիններորդ ժամու զխորհուրդն տեսանեմք բարձրագոյն աւանդութե քան զայլոն պատուեալ յառաքելական դասուցն. քանզի *Պետրոս եւ յովհաննէս ասէ ելանէին 'ի տաճարն յիններորդ ժամու աղօթիցն. եւ 'ի նմին ժամու բժշկէին զկաղն որ նստէր առ դրան տաճարին: Եւ արդ՝ քանզի մեծ է խորհուրդ ածպաշտութե ըստ առաքելոյ որ 'ի քս կարգեալ է. զի ընկալցի ճշմարտութին 'ի հնոյն եւ 'ի առաւելականացն: Ի քահանայութեանցն ասեմ եւ զպատարագացն զզանազան կենդանեացն արեանցն հեղմանց, 'ի մտանել ազնուագունի յուսոյն որով մերձենամք առ ած, որով փարատեցաւ խաւարն անգիտութեան 'ի կատարել ժամանակիս:

Որ յառաջին միջօրէայն եղեւ նսեմն նախնի մարդոյն յանցանօք. իսկ երկրորդ առաւօտ յերկնից գոլով՝ բարձր բարբառով 'ի վր խաչին աւանդեալ զհոգին յինն ժամուն: Արձակեաց զանեզերս 'ի բանտէ եւ 'ի տանէ կապանաց զազգս մարդկան որք նստէին 'ի խաւարի եւ 'ի ստուերս մահու. եւ 'ի նմին ժամուն զլուսաւորսն 'ի խաւարէն փարատէր ըստ մարգարէական ձայնին *Ընդ երեկս աւուրն լոյս առնելով աշխարհի: Եւ ինքն էր ԱԾ մերով բնութեամբս 'ի խաչին աղաղակէր զէլի էլի լամա, այսինքն՝ *Աստուած ԱԾ իմ նայեաց առ իս ընդէր թողեր զիս: եւ թէ՝ *Հեռի եղէ 'ի փրկութե իմմէ վասն բանից յանցանաց իմոց:

Այս է որ եկն 'ի խնդիր աշխարհի կորուսելոյ 'ի հօտէ իւրմէ, թէ ո՞ւր ես ադամ. եւ լուաւ զապիրատ պատասխանին զկինն բերելով պատճառ: Վասն որոյ բանից արտաքս ընկեցաւ 'ի կենաց տեղւոյն ինքնակամ ընտրութեն. ուրանօր լուաւն թէ՝ *Հող էիր եւ 'ի հող

դարձցի ։ Սոյնպէս և 'ի նմին տեղւոջ լուաւ 'ի ձեռն առաքելին Թէ՝ *Ընդ իս եղիջիր այսօր 'ի դրախտին ։ Նա եւս 'ի նմին ժամու իններորդի արձակումն 'ի մահուանէ 'ի կեանս, և մուտք կենաց ճանապարհին 'ի ծառն կենաց ։ Յորում ժամու ընդ երեկս աւուրն արտաքս ընկեցաւ 'ի կենաց տեղւոյն, 'ի նմին ժամուն կանգնեցաւ 'ի գլորմանէն ։ Իսկ մարգարէական յառաջագոյն աւետաւոր գուշակութեանցն էթէ՝ *Յաւուրն յայնմիկ ոչ եղիցի լոյս, այլ ցուրտ և սառն եղիցի օր մի. և օրն այն յայտնի տեառն ոչ տիւ լիցի և ոչ գիշեր. և ընդ երեկս եղիցի լոյս յիններորդ ժամուն ։

Զոր և յաջորդն յայտ առնէ յասելն էթէ, *Յաւուր յայնմիկ բղխեսցէ ջուր կենդանի յերուսաղէմէ՝ 'ի խաչելոյ մարմնոյն արեան և ջուր. մին՝ իբրև զմարդոյ, և միւսն՝ առաւել քան զմարդոյ ։ Կէս նորա 'ի ծովն որ առաջին, 'ի հին ժողովուրդն որ անուանէին մխիթարութիւն եղեւ մի օրինադիրք և հայրապետք և մարգարէք. և կէս նորա որ 'ի ծովն որ յետոյ 'ի նոր ժողովուրդս, որք առաքելական քարոզութիւն ժողովեցան 'ի մեղաց թախանձմանէն. և լուսաւորեցան ջրովն կենդանութեան բղխելոյն յերուսաղէմէ խաղացեալ 'ի կեանսն յաւիտենից. և եղեն նոր ժողովուրդք և նոր եկեղեցի ։

Այսր խորհրդոյ յիշատակք յայս ժամու կատարին. վասն զի առ է փրկութեան մերոյ աւարտումն. և 'ի նմին ժամու կատարեցան ամ գրեալքն յօրէնս և 'ի մարգարէսն ։ Այսու խորհրդով հալածեցաւ 'ի մերս տապանէ ագռաւն մահացան. և ընկալաք զաղաւնին ձիթենւոյ տաւանաբեր ընդ երեկս աւուրն բանիւն կենաց ։ Որով կարասցուք յայս ժամ պաղատաբեր մտօք կալ առաջի նորա, և հանապազ յիշել զերախտիս մարդասիրութեան նորա, և զկամաւոր չարչարանսն զոր կատարեաց յայսմ ժամու վասն մերոյ փրկութեան ։ Այս է պատճառ իններորդ ժամու աղօթիցն որ կատարին ։

---

### Խորհուրդ՝ տօնի Վարագին ։

Սուրբ սրտիւ և հաստատուն հաւատով, աչիւ և դողութե կացցուք յաղօթս առաջի տեառն մերոյ և փրկչին յի քի ։ Հանապազ զայս զգուշացուցանէ քարոզքն. երբեմն ասէն արթուն մտօք և անզբօս խորհրդով կացցուք յաղօթս, երբեմն սուրբ սրտիւ ։ Վասն զի սրբութիւն սրտին լեալ՝ բարի է խօսս առնել ընդ աստուծոյ. իսկ սրտին զբաղեալ 'ի ցնորս աշխարհականս՝ ընդունայն կարդացումն բերանոյն լինին ։ Են և այլ անմաքրու-

տուէ խակ, մի՛ յապաղեսցուք խոստովանիլ նմա զմեղս մեր, և խնդրել զԹողութիւն մեղաց մերոց. զի մի՛ կորիցուք անապաշխար զյաւիտենական կորուստն։

Բանսարկուն սովոր է հեղգ առնել և յապաղեցուցանել զխոստովանութիւն և զապաշխարութիւն. այլ մի՛ յապաղեսցուք մեք, և առաւօտ առաւօտ յապաղմամբն 'ի չարեն դողացեալ լիցուք ըստ ասացելումն. այլ որպէս խրատ տայ իմաստունն՝ * Մի՛ օր 'ի յօր տանել դառնալ առ տէր։ Եւ երանելին Գրիգոր Ա͞ծաբան ասէ, * Հեղգ լեր առ 'ի չարութիւննն ով մարդ, և արագ առ 'ի բարեգործութիւն։ Զայս զայս քարոզն խրատէ փութալ խոստովանութեամբ յապաշխարութիւն, զի մի՛ մահն արագեալ անապաշխար հանցէ յաշխարհէ աստի, և յաւիտենականաւն կորնչիցիմք կորստեամբ, այսինքն անսպառաւն։

Նաև մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է, գործեսցուք զբարիս 'ի կեանս յայսմիկ։ Տէրն ասէ, * Գայ գիշեր յորժամ ոչ ոք կարէ բարիս գործել։ Նյն յաւիտենական խաւարն մեղաւորացն գիշեր է. յորժամ ոչ ոք կարէ բարիս գործել, և ոչ ապաշխարութեամբ քաւութիւն առնել։ * Զի ոչ ոք է որ 'ի մահու յիշէ զքեզ ասէ. կամ 'ի դժոխս խոստովան առնի առ քեզ։ Զի անօգուտ է անդ խոստովանութիւն և զղջումն. և ոչ կաշառաւ կամ բարեխօսիւ փրկութիւն է գտանել՝ ըստ գրեցելումն։ * Եղբայր ոչ փրկէ և ոչ փրկէ մարդ, և ոչ տայ Ա͞յ զփրկանս իւր և ոչ զգինս փրկանաց անձին իւրոյ։ Այլ վաստակեաց յաւիտեան և կեցցէ 'ի սպառ և ոչ տեսցէ զապականութիւն։

Եւ ո՞ր իցեն յաւիտենական վաստակքն. մի՞թէ երկրիս հարստութիւնք և համբաւք, քաւ լիցի. այլ առ ա͞ծ սէրն և պատուիրանացն պահպանութիւնք, որոց փոխարէն կեցցես 'ի սպառ և ոչ տեսցես զապականութիւն։ Ապականութիւն է տանջանքն անհատ. որ անշէջ հրովն այրեն և անմահ որդամբքն գէշատեն զմեղաւորացն զմարմինս. և անմահ ապականութեամբ ապականեն և ոչ սպառեն։ Իսկ որ վաստակին առ յարդարութիւն, անհատս և անսպառումն մնասցեն և հանապազորդս. այս է 'ի սպառ։

Օրինակ վարուց մերոց ունելով զՏէր սուրբս և զսիրելիս և կայաղթող նահատակս։ Զի թէ արդեւ կամի ոք, ապա ի ազգի օրինակս գտանէ 'ի սրբոց ըստ իւրաքանչիւր կարգի. աղքատաց և մեծաց. իշխանաց և ռամկաց. գիտնոց և տգիտաց. արուեստաւորաց և անարուեստից. զօրաւորաց և տկարաց. հիւանդաց և առողջից. տերանց և ծառայից. արանց և կանանց և ա͞մ չափոյ հասակի։ Նաև մեղաւորաց գտանին յաճախ օրինակք քաւութեան այնց. և մարթիմք ըստ իւրաքանչիւր վարուց 'ի նոցանէ օրինակս գտանել. որք յաղթողքն եղեն սատանայի, նահատակեալ ընդ դէմ նորա։ Մեծ յանա-

պատճառ միայն, այլ և յաշխարհէ. ոչ կուսութեամբ յատուկ, այլ և ամուսնութե. ոչ 'ի բեմբականաց և եթ, այլ և 'ի ժողովրդականաց։ Որք ոչ օրինակք միայն և քաղցրերիչք մեր են, այլ և օգնականք աղօթիւք և բարեխօսութեամբ են մեզ։

Ով Թեկղեա և նմանեանք զարմից պատերազմ պատերազմեցան և զյաղթացն կատարեցին, տուկայն մեզ որ դեռ ևս պատերազմիմք` խրին եղեալս հայցեն ձեռնկալութի յոյ. և մարտակից լինին Ճգնութեն իւրեանց։ Մանաւանդ թէ մեք զգաստացեալ և զգուշացեալ իցեմք և զնոսա 'ի Թիկունս գալ հայցիցեմք։ Որոց անուանն մինչև ցայսօր պակուցանէ թշնամեաց. քանզի ահագին վէրս դի նոցանէ առեալ են։ Որոց մինչև ցայսօր յիշումն դողացուցանէ ըզնոսա, և անզօրս առնէ 'ի պատերազմ որ ընդ դէմ. քանզի և մծ իսկ նոցա բարեխօսութեն պարգևեսցին 'ի նոսա զօրաւոր առնէ առ դիւացն մարտս, և քաջայոյս առ բարեացն հանդէս. վասն որոյ և քարոզն ասէ,

Որոց աղօթիւք և բարեխօսութեն շնորհեսցէ մեզ մարդասէրն մծ` զհաճոյսն իւր և զօգուտն մեր խորհել միշտ և առնել։

Քանզի որք ըստ մարմնոյ խորհին կամ առնեն, թշնամութիւն այ խորհին և առնեն և մեռս անձանց. իսկ մեք աղօթիւք սրբոցն արժանացուք զհոգևորսն խորհել միշտ և առնել որ է հաճոյ այ և օգուտ մեր. մանաւանդ թէ օգուտն մեր է հաճոյ այ։ Որ ոչ առ միայն օգուտ է մեր յաղօթս և քաջանունս առնելով, այլ և անպատում պսակօք անդ զմեզ պսակէն։ Ով որչ առ քաջ նահատակացն յերկրաւոր Թագաւորացս եղծանելին պարգևին պսակքն, նոյնպէս առ հանդերձելոցն` անեղծ և անթառամ և անպատում պսակքն պատրաստեալ են ըստ անսուտ խոստմանցն այ Ճշմարտի առ իւր սիրելիսն որք սիրեցինն զնա և սիրեցանն 'ի նմանէ։ Քանզի զայս յայտ առնէ քարոզն յասելն, Եւ անպատում պսակացն հաղորդս գտանիլ զոր խոստացաւ սիրելեաց իւրոց Ճշմարիտն մծ յն քս. որ մեր կեցն և ողորմեա։

Նորին խրատուն՝ սակս Աղօթից։

Տէր զօրութեանց, այսինքն` վերին զօրացն. որ կամաւոր մահուամբդ քով 'ի ժամուս յայսմիկ, վասն զի յիններորդ ժամուն աւանդեաց զհոգին տէրն 'ի խաչին կամաւ եղեալ զանձն։ * Իշխանութի ունիմ ասէ դնել զանձն իմ, և իշխանութիւն ունիմ

տուէ իսկ, մի՛ յապաղեսցուք խոստովանիլ նմա զմեղս մեր, և խնդրել զթողութիւն մեղաց մերոց. զի մի՛ կորիցուք անապաշխար զյաւիտենական կորուստն։

Բանսարկուն սովոր է հեղգ առնել և յապաղեցուցանել զխոստովանութիւն և զապաշխարութիւն. այլ մի՛ յապաղեսցուք մեք, և առ սակաւ սակաւ յապաղմամբն ՚ի չարէն գողացեալ լիցուք ըստ ասացելումն. այլ որպէս խրատ տայ իմաստունն՝ * Մի՛ օր ՚ի յօր առներ դառնալ առ տէր։ Նոյն երանելին գրիգոր ածաբան տայ, * Հեղգ լեր առ ՚ի չարութիւնն ով մարդ, և արագ առ ՚ի բարեգործութիւնս։ Զայն զայս քարոզն խրատէ փութալ խոստովանութեամբ յապաշխարութիւն, զի մի՛ մահն արագեալ անապաշխար հանցէ յաշխարհէ աստի, և յաւիտենականաւն կորնչիցիմք կորստեամբ, այսինքն անպատասանաւն։

Այլ մինչդեռ ժամանակս ՚ի ձեռս է, գործեսցուք զբարիս ՚ի կեանս յայսմիկ։ Տէրն տայ, * Գայ գիշեր յորժամ ոչ ոք կարէ բարիս գործել։ Այն յաւիտենական խաւարն մեղաւորացն գիշեր է. յորժամ ոչ ոք կարէ բարիս գործել, և ոչ ապաշխարութեամբ քաւութիւն ստանալ։ * Զի ոչ ոք է որ ՚ի մահու յիշէ զքեզ տայ. կամ ՚ի դժոխս խոստովան առնի առ քեզ։ Զի է անօգուտ է անդ խոստովանութիւն և զղջումն. և ոչ կաշառս կամ բարեխօսք փրկութիւն է գտանել՝ ըստ գրեցելումն։ * Եղբայր ոչ փրկէ և ոչ փրկէ մարդ, և ոչ տայ ա՟յ զփրկանս իւր և ոչ զգինս փրկանաց անձին իւրոյ։ Այլ վտանգեալ յաւիտեան և կեցցէ ՚ի սպառ և ոչ տեսցէ զապականութիւն։

Իսկ ո՞ր իցեն յաւիտենական վտանգքն. մի՞թէ երկրիս հարստութիւնք և համբաւք, քաւ լիցի. այլ առ ա՟ծ սէրն և պատուիրանացն պահպանութիւնք, որոյ փոխարէն կեցցէ իսպառ և ոչ տեսցէ զապականութիւն։ Ապականութիւն է տանջանքն անհատ. որ անշէջ հրոյն այրեն և անմահ որդանցն գիշատեն զմեղաւորացն զմարմինս. և անմահ ապականութեամբ ապականեն և ոչ սպառեն։ Իսկ որ վտանգին առ յարդարութեան, անհատ և անսպառ ստասցին և հանապազորդս. այս է իսպառ։

Օրինակ վարուց մերոց ունելով զա՟մ սուրբս և զսիրելիս և կցայղթօղ նահատակս։ Զի թէ սիրել կամի ոք, ապա և ազգի ազգի օրինակս գտանէ ՚ի սրբոց ըստ իւրաքանչիւր կարգի. աղքատաց և ձոխաց. իշխանաց և ռամկաց. գիտնոց և տգիտաց. արուեստաւորաց և անարուեստից. զօրաւորաց և տկարաց. հիւանդաց և առողջից. տերանց և ծառայից. արանց և կանանց և ա՟մ չափոյ հասակի։ Այլ մեղաւորաց գտանին յաճախ օրինակք քաւութեան այնց. և մարթիմք ըստ իւրաքանչիւր վարուց ՚ի նոցանէ օրինակս գտանել. որք յաղթողքն եղեն սատանայի, նահատակեալ ընդ դէմ նորա։ Ո՛չ յանա-

առնուլ զնա · և ոչ ոք հանէ զնա յինէն · այլ ես դնեմ զնա անձամբ իմով։ Որ և յայտնի իսկ եղաջ զկամաւոր մահն, զի յառաջագոյն բազում անգամ կամեցան առնուլ զնա և ել 'ի ձեռաց նոցա։ Եւ 'ի գիշերին յորում մատնէր զանձն, կալաւ զոչս նոցա 'ի չմատնաչել զնա։ Եւ իբրև ասաց թէ՝ ես եմ զոր խնդրէքդ, յետս յետս տարեալ զարկեալ զգետնի։ Եւ 'ի ձեռս տալն զինքն՝ ասաց թէ վասն լնլոյ զգիրս մարգարէիցն, յանձն առնու զմահուանն · վասն որոյ և աշակերտին ասացեալ որ զունկն ծառային եհատ · և մատուցեալ բժշկեաց զունկն։ Եւ մինչև համօրէն կատարեաց զգործոյն վասն իւր՝ ոչ եհան զոգին · յաղագս որոյ և ասաց ծարաւի եմ։ Եւ զմատուցեալ քացախն հանդերձ լեղւովն՝ առեալ և ասէ, արդ ամ ինչ կատարեալ է · և ապա խոնարհեցուցեալ զգլուխն՝ աւանդեաց զոգին։

Ոչ առ ատելի ատելի զօրութիւն լռեալ արդ ամ մարդկեղ · այլ ուժգին ձայն արձակեալ և աղաղակեալ՝ հայր 'ի ձեռս քո յանձն առնեմ զհոգի իմ։ Յորմէ հարկաւորապէս և որ ընդ նմայ էին՝ զիշխանութիւն մեռանելոյն տեսեալ, խոստովանեցին ճշմարտապէս որդի ոչ լինել։ Բանզի և ձայնն այն զերկիր շարժեաց, զվարագոյր տաճարին եհերձ, զվէմս պատառեաց, զգերեզմանս եբաց, և զբազումս 'ի ննջեցելոց սրբոց յարոյց · զի ամենեցուն յայտնի լիցի թէ վասն զմեր մահ նախանանեալոյ մեռաւ, և յաղագս զմեր պարտականութիւն ազատելոյ եդ զանձն։ Բանզի և զլուսաւորսն խաւարեցուցանելով՝ յայտ արար թէ արարածոցս արարիչ է · և կամաւ և ոչ ակամայ կրէ զոր ինչ կրեաց։ Ով որ զվէմս հերձեաց, ոչ անկարանայր զխաչահանուան պայթել · և որ 'ի գերեզմանացն զմեռեալսն վերածեաց, ոչ անկարութեայր զբևեռան թօթափել և իջանել 'ի խաչէն։ Նա և ոչ սաստկութիւն ցաւոց արգել մեռուցանել զամենեցուն կենդանատուն · այլ զի ըստ եսայեայ յառաջաձայնութեան *Վիրաւորեցաւ վասն մեղաց մերոց, և պատժեցաւ վասն մերոյ անօրէնութեան։ Ինքն առէ վէրս և պատիժս յանձն էառ կամաւ և ոչ բռնադատեալ ուրուք։

Որդ՝ և մեք 'ի սոյն ժամու յորում դատապարտութիւն մեր բարձաւ, և մեղքն լուծան, և անէծքն եղծան, և մահ մեռաւ, և մեք կենդանացաք · և դրախտն վերստին բացաւ · և յերկինս եւս ճանապարհ մեզ հորդեցաւ։ Գոհացողութեամբ և մաղթանս առ ամ մատուցանեմք և ասեմք, Տէր զօրութեանց որ կամաւոր մահուամբդ քո 'ի ժամու յայսմիկ կենդանացուցեր զմեզ 'ի մեռելութենէ մեղաց մերոց։ Ով 'ի զերեշտակայինն զօրութեանց առերդ ոչ երբեք զարկեր մեռուցանել մարդկանս ակարութեան · այլ զի յերկուց մահուց կենդանութեան մեզ շնորհեսցես՝ կամաւորապէս մեռանիլ յանձն առեր · զի զմեռու-

Թեանս մերոյ զմահ և զմեղացն բարձցես 'ի մէնջ, անմեղիդ և անմա-
հիդ զմերն մեռանելով մահ:

Դու բեւեռեցեր զգիրք դատապարտութեան մերոյ 'ի խաչի քոյ: Զի 'ի մեղանչական մարմնոյս մերոյ առ ակէրն մեր մարմին և բեւեռեաց ընդ խաչին: Դու քանզի ծածկական դատաստանաւն, երբև դատակնքաւ մարմինս մեր ունէր զդատապարտութիւն խաչին և բեւեռացն. զադամայինն զոր ունէր տուեալ մարմին՝ 'ի նա բեւեռեաց, զմերն դատապարտութիւն 'ի բաց բարձեալ 'ի մէնջ: Քանզի որ ոչն արար մեղս՝ մարմինն դատապարտեալ ամ մարմնոյ ազատութիւն շնորհեսցէ. վասն որոյ և աւէ խեկ աղօթիցս քան:

Դու շնորհեցեր ազատութիւն ազգի մարդկան 'ի ծառայութենէ ապականութեան յազատութիւն փառաց հեղմամբ արեանդ քոյ սրբոյ: Զի 'ի ձեռաց ադամայ եղ ապականութիւն վասն ուտելոյ 'ի փայտէն գիտութեան զպտուղն. և ապականեցան մարդկան ոգիք մեղացն ախտիւք: Դու մարմինք ցաւալից մարմնով վտանգիւք 'ի հող դառնալ և յերկիր ապականիլ վճռեցան: Զոր և անբուննական ձեռացն բեւեռօք հոսեալ արիւնն ջնջեաց զապականութիւն յոգւոց և 'ի մարմնոց մարդկան. և ազատութիւն յերկուց ախտից շնորհեաց: Ոչ միայն յայնցանէ ազատեաց, այլ և փառաւոր արար. վասն այնորիկ տոաց, շնորհելով ազատութիւն փառաց: Քանզի ասէն առաքեալ, *Զորս կոչեաց՝ զնոսին և արդարացոյց. և զորս արդարացոյց՝ զնոսին և փառաւոր արար: Արդ գոհացեալ զպարգեւացն քո որ յայսմ ժամու՝ աղաչէ այսպիսի բանիւք:

Անկա՛լ և այժմ և զաղաչանս մեր և յաջողեա՛ մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք կալ յայսմ աշխարհի: Որ զայնչափ աւէ սէր առ մարդիկ ցուցեր 'ի ժամուս այս զքեզ մեզ եղեալ պարտահատոյց, խոնարհեցա՛յ 'ի սոյն ժամու պարգեւատուութեանս ընդունել զաղաչանս մեր. և աջողեա՛ մեզ հաստատուն կալ յուղիղ հաւատս, և սիրել և գործել զառաքինութիւն: Զի սիրելն զառաքինութիւն՝ զանձն է սիրել. և որ սիրէ զմեղս՝ ատէ զանձն ըստ գրեցելումն, զի մատնէ զինքն մշտնջենաւոր տանջանացն: Իսկ որ զառաքինութիւն սիրէ՝ սակաւ ինչ աշխատեալ, աստ յուսովն զուարճանայ, և անդ յաւիտենական բարեաւն հրճուի ընդ սուրբ հրեշտակս և ընդ արդարսն. քանզի և զայս յաջորդն յայս տանէ:

Դու յաւիտենական ուրախութեանցն արժանի լիցուք ընդ ամ սուրբս, և ընդ նոսին փառաւորեսցուք զհայր և զորդի և զհոգին սուրբ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Ո՞ր միտք իմանալ կարէ կամ լեզու ասել բաւէ զուրախութիւն զայն․ յորժամ սուրբքն փառաւորին անձամբ փառօքն․ և ինքեանք վասն անձանց և հրեշտակք վասն նոցա փառս այ փրկողին և պսակողին զնոսա միաձայնութբ վեր առաքեն։ Յորժամ ած ընդ նոսա՝ և ինքեանք ընդ ած և ընդ ինքեանցն բերկրին ՚ի փառս այ, յապականութէ և յանարգութէ և ՚ի մահուանէ յանապականութի փոխեալ և՚ի պատիւս անպատումս և՚ի կեանս․ ուստի մերժեալ են ցաւք և տրտմութիք և հեծութիք։ Վասնզի ոչ միայն այնց տեսութիւն և իւր ինքեան փառաւորութին բերկրէ զիւրաքանչիւրսն, այլ և ամ սրբոցն փառազարդութի, զիւրաքանչիւր ոք առանձինն ոչ զիւրսն բերկրէ։ Զի որպ ասաց առաքեալ, *փառաւորութի միոյ անդամոյն՝ բոլոր անդամոցն բերէ զխնդութիւն։

Պարծեալ և հրեշտակացն փառացն տեսութի, նոյնպէս որպէս զանձինս բերէ սրբոցն զբերկրութին աննախանձ յայն կեանսն․ ուր սուրբ երրորդութին ամենից ցուցանի թագաւոր և պարգևատու և ուրախացուցիչ։ Նա ամենեքեան ՚ի մի ականէ լուսոյ աղբիւրէն առլցեալք՝ գոհութիւնս մատուցանեն ամենապարգև տէրութեանն։ Վասնզի զայս փափագումն ընուլ մաղթէ աղօթիցս բան ոչ միայն անդ, այլ մինչդեռ ՚ի մարմինս եմք փառաբանակից լինել սրբոցն․ այսպէս ասելով, ընդ նոսին։ Այսինքն ընդ սուրբսն՝ փառաւորեսցուք զհայր և զորդի և զսուրբ հոգին․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Բազումողորմ ած և հաստիչ խաղաղութեան՝ հաստատեա զանձինս մեր քով խաղաղութեամբդ․ որով ունիս յիւրաքանչիւր կարգի զամ արարածս քո։

Վասն զի ողորմութեամբ կրեաց զոր ինչ կրեաց տէրն մեր․ այսինքն զմարմնանալն և զխաչելն և զմեռանելն։ Վասնզի ետես զմեզ ընդ անիծիւք և ընդ մեղօք և ընդ մահուամբ և ապականութբ, և ողորմեցաւ և փրկեաց կամաւոր չարչարանօքն և խաչիւ և մահուամբ։ Վասն այնորիկ անուն անուանէ բազումողորմ ած ասելով․ և խաղաղութեան կոչէ ՚ի նոյն միտս հաստատիչ։ Վասնզի ասէ առաքեալ *Արար խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ որ ինչ յերկինս և որ ինչ յերկրի։ Արդ նոյն ողորմութեամբն ասէ և ՚ի մեզ գթացիս։

Որով ունիս յիւրաքանչիւր կարգի զամ արարածս քո, և ուղիղ հրամանաւդ մատակարարելով։ Որպ զամ արարածս քո ուղիղ հրամանաւդ ՚ի կարգի ունիս և ոչ տաս թոյլ բնաւ իւրաքանչիւր սահմանն

անցանել։ Նոյնպէս և զմեզ քո խնամողութեամբդ հաստատեա՛ անխռովս մնալ յերևելի և յաներևոյթ փորձութեանց. զի մի՛ առ քեզ և մի՛ առ մարդիկ ամբոխեսցիմք ինչ. և մի՛ այլոց դրժանք՝ զմեզ մեղանչեսցեն։

Վասն զի այդ խոկ են կամք քո՝ խաղաղական և հոգևոր սիրով կալ մեզ յայսմ աշխարհիս։ Ո՜վ խաղաղութիւն ունիցիմք առ միմեանս և սէր հոգևոր. և զայն խաղաղութիւն խոստացար տալ առաքելոցն ասելով, *Զխաղաղութիւն զիմ թողում ձեզ. զխաղաղութիւն զիմ տամ ձեզ։ Նոյն վասն սիրոյ պատուիրեցեր թէ՝ *Յայսմ ծանիցեն ամենեքեան թէ իմ աշակերտք էք՝ թէ զմիմեանս սիրեցէք։ Արդ տուր մեզ զքո զաշակերտութեանդ ծանօթութիւն զսէրն. զի առանց քո ոչինչ կարեմք առնել։ Նոյնպէս և զհաստատեալ խաղաղութիւնդ ընդ աշակերտաց քոց և մեզ շնորհեա։ Ո՜վ խաղաղութեամբ և սիրով առ միմեանս կացեալք՝ քո գալստեանդ սպասեսցուք արթնութեամբ. զոր և յայս առնէ յաւելն,

Նաև սպասել արթուն մտօք յայտնութեան մեծին այ և փրկչին մերոյ յի քի։ Ո՜վ ի մի՛ աշխարհական հոգսովք թմբրեալք ոչ քնով՝ անփոյթ արասցուք հոգալ վ՟ն ահաւորին աւուրն յորում դու յայտնիս մեծդ ա՟ծ և փրկիչ մեր։ Այլ որպէս պատուիրեցեր մեզ արթուն կալ և սպասել քում գալստեանդ, և զնոյն արասցուք. զի ընդ պատրաստսն ընդ առաջ քեզ ելցուք։

Յորում արժանաւորք եղիցուք հանդիպել ամպովք ընդ առաջ տեառն յօդս։ Քանզի 'ի գալստեանն տեառն հրեշտակքն ժողովեն զընտրեալ սուրբսն, և յափշտակեն ամպովքն վերացուցանել յօդս ընդ առաջ տեառն։ Արդ՝ հայցէ աղօթիցս բան՝ զի յընտրելոցն լիցուք և ամպովք ընդ առաջ տեառն վերասցուք։

Զուարթերես կացցուք յաջմէ քումմէ ընդ ա՟մ սուրբս և սիրելիս անուան քոյ։ Ո՜վ 'ի կացուցանողէն որոշին ոդիքն և այծիքն. և կան ձախակողմեանքն ամօթով. զի ա՟մ գործք չար զոր գործեալ իցեն՝ կերպանան 'ի նոսա և յանդիմանեն զնոսա առաջի ահեղ ատենին քո։ Իսկ աջակողմեանքն զուարթերես կան առաջի քո, պարծեցեալ 'ի փառսն՝ զոր իւրեանց վաստակօքն ստացեալ իցեն։ Աղաչէ աղօթիցս բան՝ յայսպիսեաց լինել մեզ 'ի սրբոց և սիրելեաց քրիստոսի։

Ժառանգեսցուք զպատրաստեալ 'ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց զարքայութիւնդ։ Վասն զի 'ի սկզբանէ աշխարհի արդարոցն պատրաստեալ է անպատում բարութիւնքն. զոր յաւիտեանս յաւիտե-

նից վայելեսցուք ենն ընդ քո անմահ կենօք. զոր հանապազ աղաչել և խնդրել պարտիմք յոյժ և այնմ ժառանգութեան բաղձալ միշտ. զի հասանել կարասցուք ընդ սրբոցն, և ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Քարոզ.

Աղաչեսցուք զկենսատու Փրկիչն մեր քս որ կամաւոր խոնարհութեամբ իւրով զարարածս փրկեաց, և հեղմամբ արեան իւրոյ զթողութիւն շնորհեաց յուսացելոց իւրոց:

Աղաչեսցուք ասէ. այսինքն՝ սրտի մտօք պաղատեսցուք և՚ ի խորոց սրտէ զաղօթս առաջի ամենատեառն մատուսցուք. առանց որոյ՝ լեզուի աղաղակ ընդունայն է: Եւ զի փրկիչ է մեր յերևելի և յաներևոյթ թշնամեաց. այլ և կամաւոր մահուամբն որ ՚ի վերայ խաչին՝ փրկեաց զաւերեալս ՚ի մեղաց և զյաւիտենից կենդանութի մեզ պարգևեաց: Եւ սուրբ արեանն հեղմամբ զհաւատով յուսացեալս մեծապէս թողութեան արժանի արար, զոր միշտ հայցել հրամայէ ամենեցուն բան քարոզիս: Եւ ինքն ՚ի նոյն յորդորէ ասէ՝ Ամենակալ տէր ած մեր կեցո և ողորմեա:

Աղօթք.

Ընկեալ առաջի քո բարերար և բազումողորմ ած, աղաչեմք ամ սրտիւք մերովք. որպէս խոստացար ծառայից քոց և ասացեր թէ, *Զամ զոր ինչ խնդրիցէք հաւատով յանուն որդւոյ ՚ի հօրէ՝ տացի ձեզ:

Ընկալիր ոչ միայն զմարմնոյ խոնարհումն կոչէ զոր երկրպագեմք դիմօք որք առաջի այ անկանի, այլ և զհաւատով ՚ի նա անկանիլն և զնա տէր և ած խոստովանիլն. բստ դաւթայ՝ *՚Ի քեզ անկայ ես յարգանդէ, յորովայնէ մօր իմոյ դու ես ած իմ: Զոր թէ բստ մարմնաւոր ծննդեանն և թէ բստ աւազանին շնորհացն առնուցու որ՝ ոչ վրիպեսցէ: Նա և յոբ ասէ, *Իբրև զկաթն կթեցեր զիս և իբրև զպանիր մածուցեր յորովայնի մօր իմոյ:

Ընկեա՛լ առաջի քո ամէ։ Որպէս թէ ասիցէ, համարձակ առաջի ամենատես աչաց քոց ունիմ զմտաց խոց զհանդէս. և միշտ առ քեզ պաղատիմ՝ որ բարերար և բազումողորմ ասեր ես. որ բարեգործեցեր ինձ 'ի սկզբանէ. և միշտ բարեգործես յամենայնի առատապէս։ Որ և վասն բազում ողորմութե քո խոստացար ճշմարտապէս՝ պարգևել ծառայից քոց զամ հայցուածս, որք հաւատով յանուն քո խնդրեն։ Զի ամ ուրեք հաւատոց դէպք են. և սերտ և պինդ հաւատոց, որ հիմն և հաստատութի է ամ բարեպաշտութե։ Եւ նա է 'ի ծովու կենցաղոյս, որ ոչ տայ ընկղմել յալէկոծութեց սորին. այլ բարւոք նաւել և 'ի նաւահանգիստն ժամանել։ Եւ զի ասէ, Յանուն որդւոյ՝ 'ի հօրէ տացի խնդրողաց ամենայն խնդրուածքն։ Իբր ոչ եթէ որդի անկարանայ պարգևս տալ ումեք, այն որ ասաց կուրին; *Զինչ կամիս թէ արարից քեզ։ Եւ որդւոյ այրւոյն՝ *Պատանի դու քեզ ասեմ արի։ Եւ աշակերտացն, *Զխաղաղութի զիմ տամ ձեզ։ Եւ այլս բազումս այսպիսիս։ Բայց այսու զհամակամութի յայտ առնէ զերից անձնաւորութեանցն։ Նաև մեծացուցանէ զերախտիս որդւոյ 'ի վերայ բնութեանս. զի 'ի ձեռն որդւոյ իջանեն ամենայն պարգևք 'ի հօրէ յարարածս։

Շնորհեա՛ և այժմ հաւատացելոցս 'ի քեզ, և կատարեա՛ 'ի բարի զխնդրուածս մեր. զի 'ի քեզ եմք ապաւինեալ. և քո առատ ողորմութեամբդ մխիթարեա՛ զմեզ 'ի կեանս յայսոսիկ. և առաջնորդեալ հասո՛ յանձառ երկնից արքայութիւնդ 'ի փառաբանութիւն։

Շնորհել ասէ, և ոչ թէ ըստ արժանեաց ինչ պարտս հատուցանել. զի ամենայնիւքն ամ պարգևք են և տուրք և ընծայք. զոր շնորհէ ձրիաբար ծառայից իւրոց. զի ըստ գործոց ոչ ունիմք համարձակութիւն խնդրել ինչ. այլ միայն 'ի հաւատն ապաւինիմք։ Վասն որոյ և զբան հաւատոյ միայն բերէ առաջի ասելով, Շնորհեա՛ և այժմ հաւատացելոցս 'ի քեզ։ Որպէս թէ ասիցէ, զոր խոստացար պարգևել միշտ հաւատով խնդրողաց՝ և այժմ զնոյն հայցեմք զի շնորհեսցես հաւատացելոցս 'ի քեզ. որք զքեզ ճշմարտապէս որդի խոստովանիմք բնութենակից հօր։

Վասն որոյ աղաչեմք զի զամ խնդրուածս մեր 'ի բարի կատարեսցես. այսինքն՝ զի թէ մեք ագիտաբար խնդրեմք զայն ինչ որ ոչ է բարի, դու տէր ըստ քում մարդասիրութեանդ 'ի բարի կատարեա՛ զամենայնն. զի զայլ ոք ապաւէն և յոյս օգնականութե ոչ ունիմք բաց 'ի քէն տէր։ Վասն որոյ հայցեմք միշտ զի 'ի ձեռն առատ պարգևաց քոց մխիթարեսցես զմեզ համապազ յայսմ անցաւորեաց պանդխտական կեանս։ Եւ քոյին առաջնորդութեամբդ ժա-

մնասցուք 'ի քո անձառելի և երկնային թագաւորութիւնդ։ Ջե արժանի լիցուք և յանվախճան կեանս. զերգ միշտ փառաբանել ընդ ամենայն սուրբս քո և ընդ երկնային զուարթունս. զոր և յա-ջորդս յայտ առնէ,

'Ի փառաբանութիւն և 'ի պատիւ ամենասուրբ երրորդու-թեանդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ ննջեցելոց։

Վասն հոգւոցն հանգուցելոց աղաչեսցուք զփրկիչն մեր քս զի զնոսա ընդ արդարոցն դասեսցէ, և զմեզ կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։

Հրամայեաց քարոզս յառաջագոյն աղօթս առնել վասն կենաց ընթացից մարդկան, և վասն վճարելոց 'ի ցաւս և 'ի հիւանդութիւնս. որք դեռևս 'ի կենցաղումս տառապին. որոց և զքաւութիւն մեղաց խնդրել հրամայեաց, և զիջումն ողորմութե յոյժ առատապէս յարա-բածս։ Իսկ այժմ մաղթել հրամայէ վասն հոգւոցն հանգուցելոց որք ճշմարիտ հաւատով 'ի քս ննջեցին զի զնոսին դասաւորեսցէ 'ի լուսեղէն խորանս ընդ սուրբս ա̃մ. և զմեզ կեցուսցէ միշտ ողոր-մութեամբն իւրով. որպէս ասէ քարոզն բան,

Ամենակալ տէր ա̃ծ մեր կեցո՛ և ողորմեա՛։ Կեցո՛ 'ի վտանգէ նեղութեանս, և ողորմեա՛ վճարեցելոցս 'ի չարին հարուածոց. որք հա-ւատով կարդամք առ քեզ տէր աստուած մեր։

Աղօթք։

Քրիստոս որդի այ անոխակալ և բարեգութ, գթա՛ 'ի հո-գիս հանգուցելոց մերոց։ Յիշեա՛ և ա՛յց արա՛ 'ի փա-ռաւոր միւսանգամ գալստեանդ քո. դասաւորեա՛ պայծառացեալ ընդ սուրբս քո. զի դու ես տէր և արարիչ ամենեցուն, դատաւոր կենդանեաց և մեռելոց։

Քրիստոսդ անուն՝ ո՛չ սոսկ մարդկութեան է անուն և ո՛չ լոկ ա̃ծութեան. այլ օծեալ թարգմանի, այսինքն ա̃ծ և մարդ. վասն զի ա̃ծութեամբն եօծ զմարդկութի՛ն։ Նմա և աւետեաց է անուն. իբրու թէ՝ քս յոյս քրիստոնէից. որով յուսով վստահացաք բնու-թիւնս կոչել զա̃ծ հայր. զի ժառանգակից եղաք միածնի որդւոյ

նորա ըստ առաքելոյ. Թէպէտ նա բնութեամբ որդի, իսկ մեք շնորհօք։
Բնն որդի քո ասէ անոխակալ և բարեգութ, գթա՛ 'ի հոգիս հանգուցելոց մերոց։ Զմեծ գթութիւն քո յիշատակէ և զանոխակալութիւնն, զոր եցոյց առ ազգս մարդկան մարդասէր Տէրն։

Զի թէպէտ և յանցեաւ բնութիւնս պատուիրանազանցութեամբ 'ի դրախտին, և մինչև գրաւեցաւ ըստ արդարչադիր հրամանին, սակայն բարերար և քաղցր Տէրն ոչ արար անտես զանեղծուածս անարատ ձեռաց իւրոց. այլ գթածաբար զմեր զգեցաւ մարմին կամաւ հօր և համաձայնութեամբ սուրբ հոգւոյն։ Վասն որոյ ասէ, ո՛չ գթացար 'ի մեղօք մեռեալքս և կենդանագործեցեր միասին. և այժմ Տէր բարերար գթասցիս և 'ի հոգիս հանգուցելոցն որք հաւատով յանուն քո ննջեցին. և ողորմեսցիս նոցա ըստ մեծի ողորմութեան քում. որպէս և հետակայս ցուցանէ բանս։

Յերբեմ և այց արա 'ի փառաւոր միւսանգամ գալստեանդ քո։ Փառաւոր ասէ զերկրորդ գալուստն. զի առաջինն խոնարհութեամբ էր և ծառայական կերպիւ. իսկ զմիւսն՝ հայրական փառօք հանդերձ հրեշտակօք. Հեալ է գալ երկրի Տէր և դատաւոր. վասն որոյ ներումն խնդրէ յանցանաց, և այցելութեան 'ի քո ննջեցելոցն. Իսկ այց առնել՝ ըզխնամարկելն ասէ և զանուանէ կոչելն. զոր և յաջորդս ցուցանէ։

Դատաւորեա՛ պայծառացեալ ընդ սուրբս քո. Յաջինքն ընդ աբրահամեանցն և ընդ պետրոսեանց գլխաւորութեանցն դասակարգեա՛ պճնազարդեալ պայծառակերպութեամբ։ Զոր օրինակ թագաւորք երկրի ըստ արժանեաց բաշխեն զպատիւս. և կարգաւորեն զդասս զլխոցն զհարիւրաւորսն և զհազարաւորսն և զայլսն ամ. Յաջմի իմն աղաչէ բանս ասելով, դասաւորեա՛ զհոգիս հանգուցելոց մերոց ընդ երեսնաւորսն ընդ վաթսնաւորսն և ընդ հարիւրաւորսն, շնորհելով յառատ բարեաց բարերար կամացդ. Ոմանց զերկուց քանքարաց ունել զիշխանութիւն, ոմանց զհնգից, և ոմանց զտասանց. որպէս բարերար և արդարչական կամքդ դատեսցեն. զոր և ասէ բանս։

Զի դու ես Տէր և արարիչ, դատաւոր կենդանեաց և մեռելոց։ Որպէս այլ ոք ոչ գոյ արարիչ բաց 'ի քէն՝ այսպէս և ոչ այլ դատաւոր։ Զի այլ ոք ոչ գիտեմք, որ կարող է կորուսանել և կեցուցանել, և ըստ խորաքննչիւր գործոց հատուցանել արդարապէս, այլ միայն զմարդասէր Տէրդ. որում չէք այլ ինչ փոխարէն հատուցանել, բայց միայն զգոհութիւն և զփառս։ Զոր և զազօթիցս բան աւարտէ ասելով,

Եւ քեզ վայել է փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յորդորակ։

Փառաւորեսցուք և մեք զբարերար ած՛ն · զամենակալն և զանյիշաչարն · զգթածն և զմարդասէրն · զերկայնամիտն և զբազումողորմն · զներօղն և զքաղցրն · Որ ոչ ըստ մեղաց մերոց առնէ և ոչ ըստ անօրէնութեանց հատուցանէ · այլ՝ ներելով միշտ և երկայնմտութբ կոչէ յապաշխարութիւն։ Նաև յանձնէ եւս առ օրինակ ամենեցուն յառաջադէմ լինել հանապազ ՚ի գործս բարիս։ *Ուսարուք յինէն ասելով զի հեզ եմ և խոնարհ և անյիշաչար առ ամենեսեան։

Արդ որոյ աղաչեմ, պատկառեսցուք յօրինակէն · ամաչեսցուք ՚ի գազանաբարէն · զարթիցուք ՚ի թմրութենէ ծանրութեան չարին · սթափեսցուք յարբեցութենէ որ ոչ ՚ի գինւոյ · փախիցուք յօձէն կամակորէ · ատեսցուք զչարն · ատեսցուք զմեղս · դարձեսցուք ՚ի սիրոյ աշխարհիս · փոխիցուք ՚ի բնակարանս · դիմեսցուք առ ած՛ սիրով և յօժարութբ · փառաւորեսցուք զնա ՚ի գործս բարիս · զի *Զփառաւորիչս իմ ասէ փառաւոր արարից · և որ սիրէն զիս՝ սիրեսցի ՚ի հօրէ իմմէ։ Նաև զիւրն եւս խոստանայ զսէր և զերեւումն որ ՚ի մեր է քան զարժան և զչափ մեր։ Յաղագս որոյ ասէ մարգարէն խոտորելոցն յայսպիսի ամենաբարեաց տիրական սիրոյ և հարելոցն ՚ի սէր աշխարհիս։ *Որդիք մարդկան մինչև յե՞րբ էք խստասիրտք · ընդէ՞ր սիրէք զունայնութի և խնդրէք զստութիւն։

Արդ զի ամ՛ ոք իբրու ուրկանի զոհէ · և զիւրն ախտ ատաւածացուցանէ, ամբոխելով իւրաքանչիւր ոք ՚ի կամս միոց իւրոց։ Ոմն զփառաց փութայ լնուլ զփափագ · ոմն զագահութե և զընչասիրութե · ոմն զարբեցութե և զպոռնկութե · ոմն զվաշխից և զտոկոսեաց · ոմն զերկանաց և զկաշառակերութե · ոմն խաբէ և գողանայ։ Բայց ոմն ցանկայ և ոչ հասանէ · այլ ոմն ամբոխի յորժամ ՚ի կամացն վրիպի · միւսն կրճտէ զատամունս և մոլեգնի · այլ ոմն հառաչէ և յոգւոց հանէ · հաշի և մաշի և ՚ի նեղութենէն աժգունի · և եղուկ զինքն ասէ և վայ անձին կարդայ։ Եւ յորժամ զայս ոմանս բարւոյ իմիք դիպեալ տեսանէ, մախայ և ատէ · և ոխերիմ մտօք միշտ հայի · զանձն միայն համարի զրկեալ ՚ի բարեաց և զամենեսեան ՚ի փառս վայելեալ։ Եւ թէ նեղութեան իմիք պատահէ, կարճամտէ տխրի և նեղասրտի · և ոչ թողեալ ՚ի ձեռաց զինքն կարդայ։

Բայց վայ է ինձ և եղուկ եմ ես · զի անձամբ զանձին կիրս գրեցի · և անձամբ զանձն իմ դատապարտեցի · և զոր բանիւ զայս

պախարակեցի, գործով զնոյն եւ կատարեցի. և այժմ 'ի գրի արձանացուցանելով 'ի կրթութ և 'ի դաստիարակութիւն անձին: Նաև աղաչեմ զամենեսեան և ժամերով հայցեմ յամենեցունց, դարձջիք առ Տէր սրտի մտօք. և խնդրեսջիք զողորմութիւն 'ի բարերար տեառնէ մերմէ 'ի դէպ ժամանակի:

Զի՞ պարտ ունեք յուսահատ լինել վասն բազմութեան մեղաց կամ հեղգանալ յապաշխարութենէ. զի քաղցր և ողորմած է Տէր մեր: Մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է՝ դիմեսցուք առ նա զղջմամբ և արտասուօք, խոստովանելով զմեղս և աղաչելով զերեսս նորա հանապազ: Զի *Յորժամ հեծեծեսցես՝ յայնժամ կեցցես ասէ մարգարէն: Եւ առաքեալն ասէ, *Այս է ժամանակ ընդունելի. այս է օր փրկութեան: Մինչդեռ ժամանակս 'ի ձեռս է և 'ի շնորհաց աթոռն է Թագաւորն և բաշխէ իւրաքանչիւրոց պարգեւս որք խնդրեն հաւատով և յուսով: Զի յետ աստեացս վճարելոյ՝ միայն դատաստան է և քննութիւն ճշդիւ՝ և հատուցումն գործոց. և որք աստ անզեղջ և անապաշխար գնան առանց խոստովանութե, անդ ոչ է թողութիւն թէ և բազում անգամ լան և հառաչեն: Եւ յայտ 'ի յիմար կուսանացն է և 'ի մեծատանն կրից. զի խնդրեցին և ոչ առին: Վասն որոյ փութասջիք յաջակողմեան դասուն հանդիպել, և ընդ նոսին գոհանալով փառաւորել զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն:

---

Կարգաւորութիւն հասարակաց աղօթից երեկոյի ժամուն, որ կատարի 'ի դէմս որդւոյն ա̃յ: Եւ ասի՝ Ես առ ա̃ծ կարդացի, և այլն որ 'ի կարգին:

Երանելւոյն Խոսրովու՝ վասն երեկոյին ժամուն:

Նախ քան զերեկոյին պաշտամանն զքարոզս և զաղօթս մեկնել՝ կարեւոր համարիմ զոր ասելոցս եմ: Այս յոյժ կերեալ և զօրութիւն որ 'ի նմանէ և իմաստութեամբն 'ի գործ կամ 'ի ճանապարհս կամ 'ի զբօսանս ինչ զօրն կատարեալ, 'ի նմանէ կերակրեալ և 'ի նմանէ արբեալ և նովիմբ պահպանեալ, զիա՞րդ է զի առ նորա փառաբանութիւն. պղերդանան բազումք, և ոչ դայցեն երկիրպագանել և փառս տալ բարերարութեանն ա̃յ: 'Ի մարդոյ սակա-

ինչ երախտիս գտեալ՝ եթէ ոչ յոլով շնորհակալութիւն հատուցանեմք, ամարդի գտանիմք. և զպարգևատուն ցասուցանեմք. և զառաջիկային արգելումք զառ ՚ի նմանէ բարերարութիւն։ Ապա ած որքան բարկանայցէ ՚ի վերայ այնոցիկ՝ որ ՚ի նորա բարիսն վայելեսցեն և անշնորհակալ լինիցին։

Մանաւանդ զի և բազում և զանազան մեղօք զպարգևատուն ցասուցանեմք. և չար ընդ բարւոյ հատուցանեմք. զիա՞րդ ոչ փութայցեմք հաշտեցուցանել զնա նախ քան զգիշերին ՚ի վերայ հասանելն։ Եթէ ընդ ընկերին բարկութեան հրաման տայ յառաքելոյն չտալ արեգականն մտանել, քանի՛օն է հաշտ առնել զած՝ փութալ նախքան ՚ի բաց գնալ նորա ՚ի լուսոյ։ Եւ կամ վասն է՞ր իսկ եղաք բանաւորք և մտաւորք և զարդարեալս ոչ ծառայեցուցանեմք. եթէ զի ուտիցեմք և ըմպիցեմք և ցանկութեամբք մարմնոյ վարիցիմք։ Եւ վասն այսորիկ զիա՞րդ աւելի պատուեցիմք քան զանասունս. զի այս և նոցա ևս է։ Աշխատաքէն զի զած ճանաչիցեմք և նմա ծառայիցեմք և նորա փառաբանիչք լինիցիմք, վն այնորիկ ած արարեմք։

Երկինք երկիր՝ ծով և ամ որ ՚ի նոսա՝ վասն մարդկան եղեն և մարդկան պիտոյից վասն. և մարդս՝ ոչ վն ամենեցուն պարտական։ Եւ չառնէ ինչ փոյթ՝ սակաւ մտան յաւուրն ՚ի նորա անցուցանել ծառայութիւն. և զիա՞րդ ակն ունիմք զայսոսիկ վայելել և զանախն առնուլ։ Ինչա՛ օրն զբե խաղաղութբ. կերար. արբեր. վայելեցեր. ՚ի հանգիստ գիշերոյն մերձեցար։ Այդոքիկ ամենեքեան ո՞չ ապաքէն ՚ի խնամոց ՚ի գթութեանցն այ պարգևեցան քեզ։

Արդ՝ ե՛կ ՚ի միտս քո ով մարդ. և առ այն յորժէ զամ բարիսն քո գտանես՝ ժամանեա՛ հանապազ. մանաւանդ յսկզբան աւուրն և ՚ի կատարածի գոհացիր զպարգևատուէն։ Եթէ յանցեալ ինչ՝ նմա խոստովան լե՛ր. առաջի անկի՛ր. աղերսեա՛. հա՛շտ արա ընդ քեզ. և մի՛ տար զիտել թշնամւոյն եթէ ՚ի խռովութե է ընդ քեզ պահապանն քո. Զի մի՛ յարձակիցի ՚ի վերայ քո համարձակեալ. իբրև թէ թողեալ իցես ՚ի ձեռացն այ։ Եւ կամ թէ ոչ զգաստանաս ՚ի քուն կամ յարթուն սպան իսկ. և զքեզ արասցէ նոյնպէս։ Շնորհակալ լե՛ր զի պահեցար. և աղաչեա՛ զի յառաջիկայսն պահիցիս։

Զանքուն ակն ՚ի պահպանութի հայցեա՛, և անհոգութբ ննջիցես. զամենազօր աջն վերակացու արա, և համարձակ և աներկիւղ իցես ՚ի նստիլ ՚ի տան ՚ի գնալ ՚ի ճանապարհի, ՚ի վաստակ և ՚ի հանգստեան. Զբարձրեալն արա ապաւէն, և ոչ երկիցես յերկիւղէ գիշերի. և ոչ ՚ի նետէ որ թռչի ՚ի տուէ. Զարարչական աջն ՚ի ձեռն օգնական առցես, և զամ զոր ինչ առնիցես յաջողեսցի քեզ. և ընդ ամենայնի գոհացի՛ր զայ։ Զայն սակս և հարքն մեր կարգեցին յա-

ուսուցին և յերեկոյս ժողովել, և 'ի միասին միաբան զաղօթս և զգոհութիս առ ած մատուցանել, միմեանց օգնական լինել և նպաստամատոյց առ ած. Զի երեսօք զօրաւորք լիցուք, թէ և յանձանց անհամարձակք և տկարք իցեմք:

### Երանելւոյն Յովհաննու օձնեցւոյ:

Իսկ յերեկոյին միայնութեան աղօթելն՝ գոհութիւն է. վասն զի տիւն կատարելով ժամօքն լցեալ ըստ ժամուց, նաև պարգևօքն հասեալ 'ի խոնարհ լուսոյն մեծի, աւելի փոյթ ունին 'ի լռութիւն որովայնին յաղագս պակասութեան գիշերոյն: Վասն որոյ զխաւարին գիշերոյն զմասն ածեալ աղօթէ եկեղեցի ըստ մարգարէին ասելով, *Ես առ ած կարդացի և լուաւ ինձ: 'Ի մի ժամանակի ասէ կարդացի՝ և յերեկոյին լուաւ ինձ. յերեկոյս՝ յայսմ աշխարհի, որ կարծեալ է օրս. 'ի վաղորդեան՝ 'ի յարութեանն. 'ի հասարակ աւուրս՝ յորժամ դատաստանն դնի անստուեր լուսով երրորդութեանն, և սատանային տայն յանցաւորաց: Զորոյ զօրինակն ասա կարդացեալն աղօթք 'ի դէպ 'ի սկիզբն աւուրն, և ճաշք պատարագին 'ի հասարակին երթայ երբ օրինօք լինի. և 'ի կատարմանն հայցել բարիս, և ապա գոհանալ զանցելոյն. Իսկ մերոցս մտաց կերակուր՝ լռութիւնն է իմանալի առաքինութե զոր կատարեմք աղօթիւք 'ի սկզբան աւուր, 'ի միջօրէի, և ընդ երեկոյս. յերիս հատուածս կենաց մերոց ըստ շրջաբերութեան ժամանակաց:

Զկնի համառօտ սկզբանս՝ և ութսներորդ հինգերորդ սաղմոսն կանոնեալ է խորհրդաբար. խոնարհեցո տր զունկն քո և լուր: Որդ կնոջն յանցաւորի ծնունդ՝ հիւանդ գոլով բնութիս 'ի թունաւոր օձին խածմանէ, աղօթեալ աղերսեմք զբնութեանս մեր կազմիչն: Յաւուր նեղութեան կարդացի. և մեծ եղև ողորմութիւն քո. անօրէնք յարեան 'ի վերայ իմ դևք. և կեցո զորդի աղախնոյ քոյ զևացի. և արա առ մեզ նշան բարի զգրոշմն նշանի քոյ. զոր ատեցէ ատելին չար և պատկառեալ 'ի զօրութենէն անպարտելւոյ, զամօթն յաւիտենից զգեցցի. իսկ ես օգնեալ 'ի քէն տէր մխիթարեցայց յաւիտեան:

Իսկ ձկթ սաղմոսն 'ի դէմս նախահօրն աղօթէ. Արկեցի զիս տէր. և զդատապարտեալ վաղնջուց տարագեալ յիշատակ. Եւ ձխ սաղմոսն. Տէր կարդացի առ քեզ. և հայցէ պատարագ երեկոյի զհամբարձումն ձեռացն լինել, և խունկ ընդունելի զաղօթսն: Յիշել զհամբառ-

իւրոյ ներգործի սքանչելապէս 'ի տէրութենէ իւրմէ առ արարածս իւր․ զոր օրհնէ աղօթիցս բան ըստ թելադրութեան մարգարէին զոր յառաջագոյն նախաձայնեալ ասէր, *Օրհնեալ են փառք տն 'ի տեղւոջէ իւրմէ։ Եւ այսու՝ հրեշտակականացն նմանիմք դասուց, որք միշտ յօրհնութիւն հանդիսանան փառացն այ։

Որ արարեր զլուսաւորս 'ի բարձունս։ Զհրեշտակական դասակարգութիւն հրանիւթ բնութի արարչագործեալ, և լուսեղէն կազմեալ, որք երկրորդ լոյսք յարարչականդ լուսոյ գոյացան, 'ի պէտս իմանալի աշխարհիդ առ կայացեալք։

Յերկնից լոյս ծագեցեր ընդ ամ տիեզերս։ Զերից աւուրցն սփիռ և տարած լոյսն ասէ․ որ նախ քան զգոյանալ լուսաւորացդ տարածեցաւ 'ի վերայ երկրի ընդ առաւօտս, և ընդ երեկս 'ի տեղի իւր հաւաքէր ըստ հրամանի արարչին։

Արարեր զարեգակն լուսատու տունջեան, զլուսին և զաստեղս լուսատու գիշերոյ և զլոյս հրագի։ Որպէս արարիչ և մարդասէր՝ ամենայնի խնամարկեալ․ ոչ միայն զտիւն մեծագոյն լուսովն արեգական զարդարեալ առ 'ի զբօսանս մարդկան և 'ի պէտս գործոյ, այլ և զգիշեր լուսնիւ և աստեղօք պայծառացուցեալ․ զի և յայնմ ևս վայելեսցեն մարդիկ․ և ծանիցեն զարարիչն մեծասքանչ զօրութիւնն։ Եւ զի 'ի յարկս և 'ի բնակութիւս լուսինն և աստեղք ոչ բաւականապէս ներգործեն լուսովն իւրեանց որպէս զարեգակն, և զայն ևս ոչ տրար անտես մարդասէրն տէր․ Այլ և զլոյս հրագի պարգևեաց 'ի պէտս այնորիկ, որով բազում լինի արդիւնաւորութիւն յերկրաւորսն և 'ի վաստակաւորսն։ Եւ որպէս զգալի լուսով զզգայարանս զուարճացոյց արարիչն մծ, այսպէս և 'ի ձեռն բանական լուսոյ զիմանալի հոգիս մեր պայծառապէս զարդարեաց 'ի գովեստ փառաց իւրոց։

Դու ես լոյս գովելի, տուիչ և առաջին լոյս․ Զի լոյսք ամ ասէ 'ի քէն են էացեալք․ և դու միայն ես անեղ և արարչական լոյս․ որ զամ կատարես ըստ պատշաճ ախորժից։ Եւ գովելի ասէ, վասն զի խաւար զնա ոչ փոխանակէ․ և ընդ սաստկութեան երբէք ոչ անկանի։ Իսկ տուրք ասելն, զի նա միայն է տուրք և տուող 'ի սխալանաց, որ ոչ երբէք ընդ կարեօք անկանի, կամ ընդ հնազանդութեամբ նուաճի։

Զի թէ հրեշտակականն լոյս որ երկրորդք կոչին յետ առաջին լուսոյն՝ ընդ սխալանօք անկան ոմանք 'ի նոցանէ և ընդ մեղօք գրաւեցան թէպէտ և դժուարաշարժք էին 'ի չարիս․ և սկզբնահարք եղեն մեղաց, գտիչք չարեաց և մեղուանդիչք՝ որպէս ասաց տն 'ի

որբոցն ։ Իսկ մարդկայինս բնութիւն դիւրամէտ և շուտասասանող , երկրաւորական և հեշտասիրութեամբ գոլով , միշտ ընդ մեղօք անկանի ընդ զանազան արկածից չարեաց ։ Իսկ արարչականն լոյս միայն է սուրբ յամենայնէ և զովելի և անաղջին լոյս ․ որպէս ասէ , * Որ զնա յանձն լնու առատապէս ․ և ննջեցուցանէ որպէս և կամի ։ Եւ անաղջին լոյս ասէ , զի սկիզբն և կատարած ամենայնի ինքն է , որ ամենեցուն զլի-նելն տայ և զպահելն գոլն շնորհէ ։

Դէքէն փախչի խաւարն ։ Զի հատանիչ է լուսոյ և հալածիչ խաւարի որպէս տէր և զօրաւորէ , որ իջանէ հզօրեղապէս ամենայնի ։ Զի թէ զգալի և եղական լուսոյս այսորիկ շնորհեալ է զօրութիւն փախստական առնել և հալածել զընդդիմակն իւր խաւար ․ ապա որչափ ևս առաւել ինքն որ անեղ բնութիւն է արարչական և իմանալի լոյսն՝ սաստկապէս 'ի բաց հալածէ զնա ընդդիմակ զօրութիւն խաւարի ․ և լուսով գիտութեան զուարճացուցանէ զամենեսեան ։

Եւ զլոյս քո կենդանի տէր ծագեա՛ 'ի սիրտս մեր ։ Զի այսու միայն չեմք բաւական առ 'ի կեալ , եթէ ոչ՝ զխաւար մեղաց և զտգիտութեան՝ ողորմութբ և գթութբ 'ի մէնջ 'ի բաց հալածես ․ այլ զկենդանիդ տէր աղաչեմք զի և զկենդանի և զկենդանարար լոյս քո ծագեսցես 'ի սիրտս մեր որ է բանական միտս ․ զի զգալի սորին՝ լուսոյ ազդումն ոչ պիտանանայ ։ Եւ կենդանի լոյս ասէ 'ի կենդանի տեառնէն ծագեալ ․ զի նա տէրութիւն անցանէ և նորայն միայն է յաւիտենական ․ ըստ այնմ , * Աստուած կայ և մնայ յաւիտեան ։
Եւ նա լոյս փոփոխի և այլայլումն կրէ և զնմանութիւն մեռելութեան ընդունի յինքեան ․ իսկ նորայն լոյս միայն է անշփոթ և անփոփոխելի բնութիւն , կենդանի և կենդանարար ․ որ ամենեցուն զանմահութիւն պարգևէ ։ Զոր և մաղթէ բան աղօթիցս՝ զառհաւատչեայ յաւիտենական կենդանութեանն առաւել ծագել 'ի սիրտս մեր ․ և մինչդեռ եմք 'ի մարմնի՝ լուսաւորել զաչս ոգւոց մերոց ․ որով և զյաւիտենական կենդանութիւն ժառանգեսցուք յերկրին կենդանեաց ։ Եւ այսմ մեծաձիր և ամենասուրբ պարգևաց ար-տուր և փոխարէն այլ զի՞նչ է հատուցանել 'ի մէնջ , եթէ ոչ՝ զոր հետևեալս ցուցանէ բան յաւարտման աղօթիցս ասելով այսպէս ,

Եւ մեք միաբան տասցուք օրհնեա՛լ է անուն սուրբ փառաց քոց ։ Եւ քեզ երգեմք զօրհնութիւն և զփառս Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

և 'ի հնոց է ասացեալ։ Նաև և զայս՝ թէ ո՛վ ումեմք է ասացեալ, ոչ գիտեմք. բայց յիմ կիրակէմուտս երգեմք. և զհոգին՝ Հօր և որդւոյ հաւասար փառաբանեմք. զայս բարբառ ասէ։ Եւ ոմանք մայր բանիս զԱթանագինէս եպիսկոպոս ասեն զսեբաստացին, զի յիւրում ժամուն փոքր ինչ նշանակութիւն տայ բանիս ճշմարտութեան։

Լոյս զուարթ սուրբ. փառաց անմահի հօր. երկնաւորի սրբոյ կենարարի յս քս։ Յամենայն այսպէս է ասացեալ, երկնաւորի սրբոյ երանելւոյ յս քս. Զմի և զնոյն ունի զօրութիւն. զի կենարարն և մշտնջենաւոր կենդանութեան նշանակէ. և երանելւոյն՝ զամ բարեաց պարգեւութիւն, որ յատուկ աստուծոյ է։

Լոյս զուարթ սուրբ. փառաց անմահի հօր. երկնաւորի սրբոյ կենարարի յս քս։ Զսկիզբն բանիս առ որդի դնէ. և լոյս զուարթ կոչէ, որ զանմահութիւն յայտ առնէ և զմշտնջենաւորութիւն և զյաւիտենականն լինելն։ Վասն զի ճաճանչ է մշտնջենաւոր լուսոյն, և հայելի անարատ ամենակալին այ հօր, և ճառագայթ փառաց և կերպարան անսկզբնաւորին, և հօրն երկնաւորի սահմանն և բանն և կնիք։ Վասն զի զհայր ոչ գիտէաք, եթէ ոչ որդւոյ էր ասացեալ *Ես և հայր իմ մի եմք. և որ ետեսն զիս՝ ետես զհայր. և հայր յիս և ես 'ի հայր։

Եւ զոր օրինակ յորժամ զծայրակարծիս նշոյլս ճառագայթից արեգականն տեսանեմք՝ զուարճանամք և 'ի գիտութիւն գամք բոլորակութեան նորին. և զուարթութիւն մեր թուի 'ի տեսանելն։ Նոյնպէս և զհօր գիտութիւն որդւովն ընդունիմք, թէպէտ և տկարանամք ապացոյցս առ 'ի բացայայտել։ Զի էութիւն որդւոյ անձնաւոր է և զօրաւոր, և բովանդակ յինքեան ունի զհօր ազդեցութիւն. վասն որոյ և լոյս կոչէ զորդի, ըստ ինքեան տեառն բանին որ ասէ՝ *Ես եմ լոյս աշխարհի։ և թէ՝ *Ես լոյս աշխարհի եկի։ և թէ՝ *Գնացէք ընդ լոյս մինչդեռ զլոյսդ ընդ ձեզ ունիք։

Եւ զուարթ և սուրբ ասէ։ Վասն զի ընդ մեր կիրս մարդկայնոյ եկեալ ազատ 'ի մեղաց, որպէս ասէր համարձակ զոր այլ ոք ոչ կարէ ասել։ *Ո՞վ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց։ և թէ՝ *Գայ իշխան աշխարհիս այսորիկ և յիս ինչ ոչ գտանէ յիւրոցն արկածից։ Եւ զի մեղք են թառամեցուցիչք զուարթութեան. որպէս խորշակ տապոյ՝ խոտոց և ծաղկանց։ Իսկ տէրն վասն զի ոչ գործէր մեղս և ոչ գտաւ նենգութիւն 'ի բերան նորա, անթառամելի պահեաց 'ի մարդեղութեան իւրում զզուարթութիւն իւր։ Զայսպիսի զուարթութիւն ունէր և բնութիւն մեր 'ի դրախտին մինչ էր յանմեղութեանն. և 'ի յանցանելն զպատուիրանաւն՝ կորուսաք զզուարթութիւնն։ Եւ հրեշտակք որք կացին [illegible] յիւրեանց սահմանի՝ զուարթունք կոչին. իսկ սա-

ղայէլ կոչեցաւ զզուարթութիւն անուանն և սատանայ կոչեցաւ, որ է՝ հա-
կառակ։ Զի ուր մեղք է, անդ զուարթութիւն ոչ է. իսկ ուր ան-
մեղութիւն է, միշտ զուարթ կոչի։ Եւ այս է ըստ իմում բանիս
զուարթն և սուրբն։

Իսկ զի ասէ, Փառաց անմահի Հօր։ Ընծայունակ անուն է. զի Հայր ասելն՝ զորդի նշանակէ, և որդին՝ զՀայր։ Եւ զի փառաց և զօրութեան անուն է. ըստ այնմ, *Հայր՝ փառաւորեա զանուն քո, որ է զորդի քո։ Զի փառք Հօր կոչի որդի, որպէս և որդւոյ Հայր։ Եւ անմահի Հօր ասէ, որ զարարչական և զանեղ բնութիւն յայտ առնէ. զի անմահութիւն անեղին է տիրապէս։ Զի հրեշտակք թէպէտ և անմահք կոչին, սակայն եղանակաւ են. և մարմին նոյնպէս ի շնորհացն նորա մահ կոչի. որպէս և սատանայի յետ սխալանացն անուն մահ կոչեցաւ. որպէս առաքեալն ասէ, *Ցնային թշնամին խափանի մահ։ Եւ զոր օրինակ զգալի կենդանիքս թէ զատուցեալ օդոյս ոչ հաշակեն՝ մեռանին. այսպէս և բանաւորքն եթէ մի ժամ ոչ ընդունին ի շնորհացն նորա՝ մեռանին։

Իսկ մի ոք ըմբռնեսցէ զեւցէ բանիս, եթէ սատանայ մեռաւ և դեռ ևս կայ յանմահութեան. այլ գիտել պարտ է, թէ ըստ իւրում բնութեանն մեռեալ է. զի անմարմին է բնութիւն, և անմարմնոց զմարմնաւորի մահ ոչ կարէ մեռանել։ Այլ զի ասէ առաքեալ, *Ցանկութիւն յղացեալ ծնանի. և մեղքն կատարեալ զմահ ծնանին։ Եւ զոր օրինակ, Ադամ յորժամ հաշակեաց զպտուղն՝ ի մեռելոց համարի էր. թէպէտ ինն հարիւր երեսուն ամ այլ ևս եկաց։ Նոյնպէս և սատանայ յորժամ մերժեցաւ յիւրոցն փառացն, անկաւ ի սահմանէ իւրմէ և մահացաւ ըստ իւրում բնութեան։ Նաև տևելն նորա և երկարաձգելն՝ ըստ ներելոյն այլ է առ ի յօգուտ մեզ. ըստ այնմ, *Մի սպանաներ զնոսա, զի մի մոռասցին զօրէնս քո։

Երկնաւորի սրբոյ կենարարի։ Զի որ զերկինս ձգեաց որպ խորան և իւր կոչեաց աթոռ՝ երկնաւոր ասի. ոչ որպէս հրեշտակք ասին երկնաւորք, այլ որպ տէր ամենայնի. ըստ այնմ, *Սուրբ է տր ած մեր, որ ի բարձունս բնակեալ է։ Որպ ասէ, Երկնաւորի սրբոյ կենարարի։ Որ Հայր է փառաց և զանմահութի սեպհական ունի յինքեան՝ երկնային և սուրբ է և կենդանարար. ըստ այնմ, *Սուրբք եղերուք զի ես սուրբ եմ տէր ած ձեր։ Եւ որ կեանք է՝ կենաց բաշխօղ է։ *Որպ Հայր ունի կեանս յանձին ասէ, իշխանութի ետ և որդւոյ ունել կեանս յանձին։ Եւ ի ձեռն նորա ամ հաւատացելոց. զի որպ որ ի մահ մերձենայ՝ մահու լինի ընդունակ. այսպէս և որ ի կեանք հայի՝ կեանս կրէ յինքեան։ Իսկ յս քս ասելն, փրր-
կիչ և օծեալ լսի ըստ եբրայականին։

Եկեալքս 'ի մտանել արեգականն՝ տեսաք զլոյսդ երեկոյիս։ Վասն զի 'ի յարութեան երեկոյիս ժողովեալ միաբան առ 'ի տօնախմբել զօր փառաւոր և կենսակիր յարութեան քո, տեսաք զլոյսդ իմանալի, յերեկոյիս ժամու ազդումն ընկալեալ 'ի սքանչելարար շնորհաց քոց։ Եւ յերեկոյացեալ դարուս մարմնաւորի անօրէնութեան քո շնորհս ծագեալ 'ի նսեմացեալ ակն ոգւոց մերոց, ծանեաք զլոյսդ իմանալի։ Որ յերեկոյացեալ ժամուս ծագեցաւ մեզ յարութեան քո սուրբ ճառագայթ․ վասն որոյ զգոհութիւն հեռակայ բանս ցուցանէ․ որպէս ասէ,

Օրհնեմք զՀայր և զՈրդի և զսուրբ Հոգին ա͞յ․ և ամենեքեան ասեմք ամէն։ Քանզի կամաւ Հօր և հաճութե͞բ սուրբ Հոգւոյն եղև մարմնաւորիլ անօրէնութե͞ն որդւոյ․ վասն որոյ զերիս անձինսն գիտէ և միով տէրութեամբ փառաւորէ ասելով, Օրհնեմք զՀայր իբր զպատճառ որդւոյ ծննդեանն։ Եւ զՈրդի ծնեալ 'ի Հօրէ բնութենակից և Հօր հաւասար․ և զՀոգին բղխումն 'ի Հօրէ։ Վասն զի յերեսին մի է ա͞ծութիւն և երեքեանն մի՝ յորս ա͞ծութիւն ըստ մեծին աստուածաբանի։

Եւ ամենեքեան ասեմք ամէն։ Զի է երկուց և երից վկայութե͞բ հաստատուն է ըստ օրինացն, ապա ո՞րչափ ևս առաւել յորժամ բազմեալքս ա͞մ 'ի միասին ամէն ասելով վկայեմք։ Եւ զամէնն՝ եղիցի ասացին որք քննեցինն, կամ ճշմարիտ, կամ ստոյգ, կամ է։

Արժանաւորեա՛ զմեզ յամենայն ժամ օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ երրորդութեանդ։ Մեծ հոգ յանձին պարտ է բերել զի արժանի լինիցիմք անուանն ա͞յ օրհնաբանիչք գտանիլ։ Զի թէ նախ սրբել պարտ է, և ապա 'ի սուրբս մերձենալ․ ապա ո՞րչափ ևս առաւել յորժամ առ ա͞ծ ոք հայի, որ սրբութիւն է սրբոց։ Զի թէ այլ ինչ ոչ գոյր փոխարէն հատուցումն, այն բաւական է զի անուանն ա͞յ օրհնաբանօղ գտանիմք։ Եւ փառաց անուն ասէ, զի բնութեան անուն ոչ գիտեմք ա͞յ․ բայց միայն 'ի միոյն զոր առ Մովսէս ասաց, *Ես եմ ա͞ծ որ էն։ Իսկ դրական անուանցն ոչ գոյ բաւ․ վասն զի կոչի տէր և ա͞ծ, արարիչ, թագաւոր, լոյս, բարի, գթած, մարդասէր, հզօր․ և այլս բազումս, որոց ոչ է թիւ։

Եւ զի օրհնել ասէ զանուն փառաց ամենասուրբ երրորդութեանն։ Օրհնել և գովել և փառաւորել, գոհանալ, բարձր առնել, և շնորհս ունել, և մեծացուցանել, և այլ սոյնպիսիքս զմի և զնոյն ունին դիտաւորութիւն․ զի փոխարէնք են 'ի մէջ երախ-

տեառն այ՟ ։ Եւ չիք այլ ինչ ՚ի մեզ՝ որ այնքան ուրախ առնէ զա՟ծ, որպ՟ օրհնութիւն եւ գոհութիւն եւ փառաբանութիւնն եւ նմանք սոցին ։

Մանաւանդ յորժամ ՚ի նեղութիւնս եւ ՚ի վիշտս գոհասցի ոք. կամ յորժամ ՚ի զուր դատապարտի ոք. կամ յորժամ փոխանակ բարեաց չար ընդունի եւ գոհանայ ։ Այդքիկ առաւել ուրախ առնեն զա՟ծ՝ քան զայլ ա՟մ բարեգործութիւս. եւ թէ եւ աղօթս եւս առնիցէ ՚ի վերայ նեղչացն, յայտնապէս նման լինի որդւոյն այ՟ ։ Եւ զի մեծագոյն ընծայ է օրհնութիւն, հանապազ զայս մատուցանեմք այ՟. որովք համարձակութի առնումք ՚ի մուտս սրբութեանցն եւ յանդիման լինելոյ երեսացն այ՟ ։ Եւ զերիս անձինս յիշէ ասելով,

Արժանաւորեա՛ յա՟մ ժամ օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ երրորդութեանդ ։ Զի յա՟մ ժամ ունիմք հրաման ՚ի տեառնէ աղօթել. զի թէ այլոց բարեգործութեանց չափ կայ եւ սահման, այլ աղօթից ոչ եդաւ սահման, այլ միշտ աղօթել. որպ՟ հնոյն խրատէր ասէր ա՟ծ, *Խօսեսցիս զոքօք ՚ի նստիլ ՚ի տան ՚ի գնալ ՚ի ճանապարհի ՚ի ննջել եւ ՚ի յառնել ։ Եւ ՚ի նորումս տէրն, *Արթուն կացէք եւ յա՟մ ժամ աղօթս արարէք ։ Եւ ոչ ոք կարէ ընդդիմանալ. զի հրաման է տէրունական՝ թէ ՚ի հնին եւ թէ ՚ի նորս յա՟մ ժամ աղօթել ։ Եւ որք յարթնութեան միշտ յաղօթս խոկան, ՚ի ննջելն ՚ի նոյն դեգերին. նաեւ ՚ի ճաշակելն եւս աղօթեն ։

Որպ՟ գրեալ է թէ՝ ոմն ՚ի հարանցն յորժամ ճաշակէր ՚ի սեղանն ընդ եղբարսն զմարմնաւոր կերակուրն, զմի ձեռն յերկինս ամբառնայր եւ աղօթէր, եւ ձայնիւ երգով օրհնէր զա՟ծ յաղօթսն ։ Զոր ոչ է հնար յա՟մ ժամ ա՟մ ումեք ձայնիւ աղօթել. այլ ձայնիւ խմն ինձ զհաճոյական աղօթսն, որպ՟ մովսէսին որ ոչ բարբառէր. եւ ա՟ծ ասէր, *Զի՞ գոչես առ իս ։ Նոյնպէս եւ եղիային. որ զգլուխն ՚ի մէջ ծնկացն խոնարհեցուցեալ զերից ամաց պապքումն երկրի զովացուցանէր եւ բարբառ ոչ լինէր լսելի ։ Նաեւ հրեշտակք իմանալի գոլով բնութիւն, զգալի ձայնիւ ոչ երբէք հանդիսանան յօրհնութիւնն այ՟. եւ մեք թէ ասա ՚ի հաճոյսն այ՟ պարապիմք, յերկրին կենդանեաց նոցին լինիմք ձայնակիցք իմանալի ձայնիւ օրհնել զա՟ծ ։ Եւ այս վասն յա՟մ ժամ օրհնելոյ զանուն փառաց ամենասուրբ երրորդութեանն ։ Եւ զի՝ երեքն կատարեալ է, ունելով սկիզբն՝ մէջ՝ եւ աւարտ. վասն որոյ երեք եւ մի ասի, մի եւ երեք ։ Զի աւելին ՚ի բազմաստուածութիւն ցնդի, եւ պակասն թերի գտանի. իսկ երեքն կատարեալ է որպէս ասացաւ. որ վայելէ ՚ի կատարումն ամենեցուն կատարունութեանն ։

Արժանաւորեա՛ ասէ զմեզ յա՟մ ժամ օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ երրորդութե՟, որ այս զկենդանութի.

վասն որոյ և աշխարհս գեղեց փառաւորէ ։ Միշտ և յարաժամ պար-տիմք կանխել առ ած ամ յօժարութեամբ , զի մի՛ ապերախտ գտանի-ցիմք ոչ հինն խորհել . որոց սակս ած մարգարէին , *Ծանեաւ եզն զստացիչ իւր , և էշ զմսուր տեառն իւրոյ , և իսրայէլ զիս ոչ ծա-նեաւ ։ Նաև յայնժամ մինչդեռ ծառայք երևեսցուք այ , յորժամ միշտ զխրատն այ գործեսցեմք և առ նա միշտ փափագանօք դիմեսցեմք , և առաջի նորա հնազանդ անկանիցիմք , և զերեսս նորա միշտ արտասու-օք աղաչեսցուք ։ Յայնժամ անհնար է թէ ոչ առնուցումք զ-խնդրուածս , որ ըստ կամաց նորա լիցի ։ զի քան զմեզ հայր գթած է , և քան զմեզ մայր գորովագութ ։ *Եւ զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր ։ աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա ։

Որ տայ սաէ կենդանութիւն ։ Թէպէտ և ամ գոյից կեանս շնորհէ . ոմանց զգալի , և ոմանց զգալի և զբարբառ գալի ։ Բայց ևս առաւել մարդկայինս ազգի յետ իմանալեացն դասուց , ըստ կրկնակի բնութեանս մերոյ կրկին շնորհէ և զկենդանութի ։ Բանիւ որպէս տայ անասնոց կերակուր և զառաւրեառութի օդոյ և ձագուց ագ-ռաւուց և ամ կենդանեաց ։ Թէպէտ և ոմանք առանց օդոյս առա-ևառութեան կեան ըստ սահմանելոյն այ , որպս ազգ մեղուացն , և նմանք նոցին՝ որպս սաեն . և զմարմնաւոր պէտս մարդկան որպս զայլ կենդանեաց տնօրինէ ։ Նաև վասն բանականիս ոգւոյ յայտնապէս հրամայէ տրն , *Ո՛չ եթէ հացիւ միայն կեցցէ մարդ , այլ ամ բանիւ որ ելանէ ՚ի բերանոյ այ ։ Եւ արդ՝ որպս զգալի կերակրովք մարմնոյ տայ կենդանութի ած կենդանիին յաւիտենից , այսպէս և իմանալի հոգւոյս շնորհէ զկենդանութիւն հին և նոր կտակարանօք և ամ պատուիրանօք իւրովք ։

Վասն որոյ և աշխարհս գեղեց փառաւորէ ։ Աշխարհ է որ յերկինս և յերկրի և որ ՚ի միջի սոցին կան , որպս յառաջնոցն ասա-ցաւ ։ Եւ վերին աշխարհ կոչի երկինք և երկնից երկինք , ընդ որում և հաստատութիւն . զոր հնգերորդ տարր ասացին արտաքինքն ար-տաքոյ չորից այսոցիկ ։ Եւ բնակիչք վերին աշխարհին յայտ է զի անդադար կան ՚ի փառաբանութի , և երբէք հանգիստ ոչ առնուն ։ Զոր օրինակ զգալիքս եթէ դոյզն ինչ ժամ զօդոյս առլեառութի ոչ ճաշակեն՝ մահանան . սոյնպէս և իմանալիքն թէ փոքր ինչ ժամ դադարին ՚ի փառաբանութենէն , ոչ կարեն կեալ ըստ իւրեանցն սահմանի ։

Իսկ երկինքն՝ մեծութբն իւրով և խորանարդ զմբեթաւն և բոլորակութեամբն մատուցանէ փառս այ . և միշտ հնչէ գալուստ որպս սաէ՝ պատմէ զմեծութի արարչին ։ Իսկ արեգակն և լուսին և

պատրօղն բազմաց. և մի՛ քարշեսցէ՛ զարշօղն վեհից։ Մի՛ մոլորացուսցէ միշտ մայրն մեղաց և հայրն չարեաց, զոնէ աւօրին չյափշտակել, այսօր ինձ ասելով և վաղիւ քո. և այսօրն ոչ երբէք պակասի։

Վասն որոյ և մեք զգուշասցուք միշտ յամենայնի. զամ տացուք քո. զամ ընծայեսցուք հօրն փառաց. զամ մատուսցուք արարչին։ Մի՛ զերդաբոյթն միայն, մի՛ զԹաղանթն և զձորայ քաղցթին. մի միայն զքահանայական մասն զերին և զակն աչոյ, այլ և զձախն աջ տարասցուք բոլորովիմբ բոլորապատուղ։ Մեզ նոքեանս մատուսցուք բոլորիցն քո, և ամենայնիւ յամենայնի փառաւորեսցուք զփառաւորեալ սուրբ երրորդութիւնն յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Մեծին Խոստովանողի՝ ասելի երեկոյեան քարոզին։

Արդ՝ յերեկոյն հասեալք՝ նախ համաձայնեալք բովանդակ ժողովուրդն ՚ի ճրագացն օրհնութիւն գոհանալով վասն լուսաւորացն, որ ՚ի տունջեան զմեզ լուսաւորեն և ՚ի գիշերի. և վասն լուսոյ ճրագացն, և հայցեն զկենդանի լոյսն քո լուսաւորել զսիրտս. և ՚ի փառս քո ամենազօրին գիտաւորեն։ Ապա սովորութեան վերաձայնէ զերեկոյին գոհութիւն ըստ նմանութեան առաւօտուն և պատարագին գոհութեան և այսպէս ասէ։

Քարոզ երեկոյին։

Հասեալք ՚ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր փառաւորեմք զքեզ տէր Աստուած մեր։

Քանզի աղաչէր մարգարէն զհամբարձումն ձեռաց լինել պատարագ երեկոյի. և մեք համբառնամք փոխանակ պատարագացն ըզձեռս մեր առ անկարօտդ Աստուած, զանմարմնականս զմեզ պատարագելով քեզ պատարագ կենդանի. զոր սրբելով ընկալցիս բանաւոր պաշտամամբ ՚ի հաճոյս քո, զի տէր մեր և Աստուած մեր ես և ամ բարեաց տուօղ։

Եւ փառաւորեմք զքեզ որ շնորհեցեր մեզ զսոյն խաղաղութիւն անցուցանել և հասանել ՚ի ժամ երեկոյիս։ Ի բազմօրոգայթ կեանս ասէ խաղաղութիւն զօրս շնորհեցեր և հասուցեր զմեզ յաջողութիւն տունջեանս յերեկոյի պաշտաման ժամս։

Արժանաւորեա զմեզ սուրբ սրտիւ հրեշտակային երգով փառաւորել զքեզ տէր Աստուած մեր։ Վասն զի բազմադիմի են երախտիք

քո, պահպանելով զմեզ, կերակրելով, առաջնորդելով, և յաջողելով մեզ և փրկելով։ Այլ արդ 'ի խուռն սրտէ արտասուաց զհրեշտակային երգս մատուցանել առ քեզ Տէր։ Հանապազ զայս աղաչեմք՝ 'ի գութ ածելով զքեզ թէ Տէր մեր ես և Աստուած. որ հանապազ զմեզ 'ի գութ ածս յորդորէ, կեցո և ողորմեաց մեզ։

Մաղթանք։

Հանեալք 'ի ժամ երեկոյիս ամենեքեան անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։ Առաջնորդին ընթանամք աւագանէն դարձեալ ողորմութիւն վասն ամ բարեաց աունջեանն, և վասն միաբան ժողովելոյ առ Աստուած և պաշտօն նորա։

Յովհաննու օձնեցւոյ՝ վասն Մեսեղիքայն։

Եւ սակայն ընտանեաց նուիրելոյ չորք դորանկից գինւոյ մեզ պատկերանի վկայեցն խոստովանական համարձակութեան, որք զարիւնս անձանց նուիրեցին։ Որոյ հանգէս մեսեղին կայ առաջի խաչին; և ուղղեալ աղօթք՝ խնկոցն նման, որով զուարճանայ եկեղեցի։ Զի եթէ բանական Տէր պատարագ առն 'ի պօղոսէ, նա 'ի սաղմոսաց ոմն նաշէհ; ոմն իւղ, ոմն գինի, ոմն խունկ գեղեցիկ։ Որպէս խնկարկու հաշտարարն և սաղմոսն ցուցանէ զհամբարձումն ձեռաց պատարագ. և ժողովեալ զիւրին միոս քահանայն յինքն՝ միջնորդ Տէր և մարդկան 'ի մէջ անցեալ՝ զամենեցուն աղօթս 'ընծայ մատուցանէ Տէր։

Խոստովանու՝ սակս քարոզին։

Աղաչեսցուք զամենակալն Աստուած զՀայր տեառն մերոյ յի քի զԹագաւորն խաղաղութեան։ Խրատէ զմեզ յիսկզբան քարոզութեան զամ ինչ յոյ համարել, զնա Տէր Տէր ճանաչել, զնա խաղաղութեանց Թագաւոր և տուող իմանալ։ Զի ինքն իսկ ասաց մարգարէիւն, * Ես եմ որ առնեմ զխաղաղութիւն և հաստատեմ զչար։ Զի եթէ զայս հաստատիցեմք 'ի միտս մեր, ոչ բախտից ոչ աստեղաց ոչ դիպուածոց և ոչ պատահմանց համարիցիմք զբարիսն զոր ունիցիմք

ի ձեռս, այլ՝ նախախնամութեանն նո՟յ և ողորմութեանն. Այնպէս և թէ ի կապանս ինչ անկեալ իցեմք և ըմբռնեալ իցեմք, և զայն՝ յոյժ և կամ ՚ի նե Թըշնամւոյն գերեալ իցեմք, կամ ՚ի խռովս, կամ վասն յորդորութիւն յանձինս. Եւ այսպիսի խորհրդով՝ բարեացն շնորհ ունիցիմք նմա. և ՚ի փորձութեանս համբերութիւն կրելով, յանձինս ՚ի հաշտութիւն զա՟ծ ածցուք:

Յաղագս խաղաղութեան ա՟յ աշխարհի և հաստատութեան սուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցւոյ: Ամենայն ջերմեռանդ սէր ունելով առ ա՟յ մարդիկ, մինչ զի վա՟ ա՟յ աշխարհի խաղաղութեան հոգալ և աղաչել զա՟ծ: Եւ աղաչելն՝ քան զխնդրելն առաւել ունի զկամացն բաղձանս. որպէս զի սաստիկ ցանկութեամբ պաղատել վասն աշխարհի խաղաղութեան, և առաւել հաստատութեան սուրբ եկեղեցւոյ: Որպէս զի մի՛ աստանութիւն ինչ յայլազգեաց կամ ՚ի հերձուածողաց է. այլ զի խաղաղութեամբ հաստատութեամբ ՚ի հաւատս և ՚ի բարեգործութիւնս ունիցի ըստ առաքելական քարոզութեանց. վասն այնորիկ յաւելու զառաքելականն: Եւ որպէս վասն աշխարհի խաղաղութեան զամենայնն յաւելու, նոյնպէս և վասն եկեղեցւոյ ընդհանրական ՚ի մի բերէ, այսինքն՝ տիեզերական. զի վասն ա՟յ տիեզերաց եկեղեցեաց աղաչեսցուք զա՟ծ՝ հաստատուն պահել յառաքելադիր սահմանն: Եւ զի զա՟յ եկեղեցիս որ ըստ առաքելոցն դաւանութեան են՝ մի՛ համարեսցուք. քանզի և ոմանք միայնոյ միաբանական սուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցւոյ ասեն ՚ի քարոզս: Զոր և երանելին Եպիփան յիշէ ՚ի սաղմոսաց մեկնութեանն թէ՝ վասն այնորիկ միայնոյ միաբանական եկեղեցւոյ ասեմք, զի ա՟յ կաթողիկէ եկեղեցի նո՟յ ՚ի ծագաց մինչ ՚ի ծագս երկրի մի և միայն ասի:

Ի պատմութիւնս խաղաղութեան տացէ մեզ տէր ա՟ծ մեր: Այսինքն՝ զխաղաղութիւն յարտաքին թշնամեաց, զխաղաղութիւն ՚ի թագաւորաց և ՚ի զանազան պետաց, ՚ի զօրաց, ՚ի զօրագլխաց, կրկին ՚ի մտաց և ՚ի մերային իսկ խորհրդոց: Որպէս զի ա՟յ ուրեք խաղաղութիւն մեզ և մերոցն լինիցի. և նոքա առ մեզ և մեք առ նոսա խաղաղութեան լիցուք և աղօթեալք յա՟յ խոնարհութեան ՚ի խաղաղութեանցն նո՟յ որ կարողն է. առ ա՟յ պատերազմունս յաղթութիւն տալ, որք ՚ի մարդկանէ կամ ՚ի դիւաց շարժեցին. քանզի այսպէս ասէ, զխաղաղութիւն տացէ բազմութեան մեզ տէր ա՟ծ մեր. և զթագաւորս խաղաղականս առաքեսցէ առ մեզ վասն մեծի սուրբ փառաց ահաւոր անուանն իւրոյ. զպետս գաւառաց, զզօրավարս՝ զզօրագլուխս՝ զժողովուրդս՝ զդրացիս, զմուտ և զելս մեր խաղաղութեամբ պահեսցէ, որ զա՟յ պատերազմունս թշնամւոյն խափանէ: Որպէս ասացի՝ զդիւաց և զմարդկան. և յաղաչելն՝ զայս ա՟յ խոնարհութեան ուսուցանէ հայցել:

ոչ 'ի մեր արժանաւորութէ յուսալ առնուլ զհայցուածսն․ այլ նախ՝ զի տէր ա̃ծ մեր է՝ հարկի ողորմել մեզ․ Եւ դարձեալ վասն մեծի և նր փառաց ահաւոր անուանն իւրոյ շնորհեսցէ մեզ զխաղաղութի․ զի փառաւոր կոչի անունն իւր սուրբ․ Նա զոր 'ի սկզբանն եր-գամենակալն՝ և 'ի վերջոյ յաւելու, Ամենակալ տէր ա̃ծ մեր կեցո և ողորմեա մեզ․

---

Աղօթք․

Լուր ձայնից մերոց տէր ա̃ծ մեր․ ընկալ զաղաչանս մեր․ զհամբարձումն ձեռաց մերոց և զբանս աղօթից․

Նոյնպէս համարիմ թէ լաւ սաղմոսին մտաց որ յերեկոյան ա-սել կարգեցաւ, է սկիզբն աղօթիցս․ Ով իմն ասէ, * Տէր կար-դացի առ քեզ և լուր ինձ․ նայեա 'ի ձայն աղօթից իմոց 'ի կարդալ իմում առ քեզ․ և թէ՝ * Ուղիղ եղիցին աղօթք իմ որպէս խունկ առաջի քո տէր, համբարձումն ձեռաց իմոց պատարագ երեկոյի․

Իսկ յաղօթս ասէ,

Լուր ձայնից մերոց տէր ա̃ծ մեր․ ընկալ զաղաչանս մեր․ զհամբարձումն ձեռաց մերոց և զբանս աղօթից, սրբելով զերեկոյին պատարագս մեր 'ի հոտ անուշից 'ի հաճոյս քեզ պատրաստել․

Ներ. յայսմ վայրի զտագնապս ունի զիմաստ բանիս, 'ի գեղեցիկս ասացեալ երանելոյն յովհաննու ոսկեբերանի թէ՝ * Զայն և կար-դացումն՝ է՛ ջերմագութ սրտի առ ա̃ծ պաղատանս, բուռն զոր հոգևոր առնել զբերանն, և ո̃ք ունել յա̃մ աղօթս․ Որպ̃ հրով բորբոքել զսիրան 'ի սէրն ա̃յ՝ հոգւով, և զաղօթսն զխունկն անուշ՝ դնել 'ի վերայ զի բուրեսցէ առաջի ա̃յ․ Եւ զի թէ սրբեալ իցէ ձեռն յա-գահութէ 'ի զրկանաց 'ի կաշառոյ զանաւագան և յայլ մեղաց ըսպա-սաւորութէ, համբարձումն այնպիսւոյ ձեռինն պատարագ ա̃յ լինի․ Նա թէ աղծեալ մեղք իցեն, փոխանակ ոսկի ձգին յերկինս՝ բարկութիւն անդուստ իջուցանել․ Վասն այնորիկ նախ զանիրաւ-ութիւնն 'ի ձեռաց թօթափել արժան է, և ապա լուանալ զաղտե-ղութի նորին ողորմութե․ և այնպէս առ ա̃ծ ամբառնալ և խնդրել 'ի նմանէ լսել ձայնի աղօթիցն, և ընդունել զաղաչանս զհամբար-ձումն ձեռաց և զբանս աղօթից, և սրբել զպատարագ երեկոյին․ որ սրբի հոգւովն սրբով․ որպ̃ ասաց պօղոս, * Զի եղիցի պատարագն հեթանոսաց ընդունելի, սրբեալ հոգւովն սրբով․ Նոյնպէս լինի

պատարագաւն հաճոյ այ լիցուք և ընդունելի • այսպէս ողջակէզ յետ զպա-տարագն անուշահոտ պատարագանելոյ՝ այսպիսի ինչ փոխադարձել ՚ի մեզ:

Յաւել ՚ի մեզ տէր ամենակալ զհաւատ՝ զյոյս՝ զսէր և զամ գործս առաքինութե: Հաւատս խնդրեցին յաւելուլ առաքեալքն • և մեք ՚ի նոցանէ խրատեալք զնոյն աղաչեմք: Յուսով լի՛ տուր առաքեալ լինել հռոմայեցւոցն • յորժամ ամ խնդութի և խաղաղութի լինի ՚ի հոգւոյն սրբոյ: Սանորոյ մեծաւ պաղատանօք խնդրես-ցուք զայնքան բարեաց զհամբերձումն ձեռաց պարգևիչն • իսկ սէր ընդ այ և ընդ մերձաւորն՝ միաւորէ, և քո աշակերտութե տայ ծա-նօթս • զոր և մեծ առաւելութե հաստատել ՚ի մեզ մաղթեմք •

Եւ զամ գործս առաքինութե: Ամենայն գործք առաքինութե ՚ի հաւատոց և ՚ի յուսոյ և ՚ի սիրոյ բղխեն • զի թէ զհաւատս և զյոյս և զսէր արժանացուք ստանալ, դիւրաւ զամ առաքինութիւս ուղղե-ցեմք և կամարարք այ լինիցիմք • զոր և տաէ իսկ,

Որպէս զի ըստ կամաց քոց բարեխիղճ միշտ կրօնաւորեալք բարեպաշտութե: Քո կամքդ տաէ զբարին սիրէ • արդ զի տէր մեր և ած ես՝ հարկաւ ծառայիցս և արարելոցս ՚ի քէն՝ ըստ կամաց քոց լինել պիտոյ է: Եւ յայս թէ և մեք յօժարիմք, առանց քո ոչ ինչ կարեմք առնել • վասն այնորիկ պաղատիմք որպէս զի հաւատով և յու-սով և սիրով լցեալք ըստ բարեսէր կամաց կրօնաւորեսցուք բարե-պաշտութե: Կրօնք՝ վարուցն և կարգացն կոչէ • բարեպաշտութե զվարս աշխարհիս ուղղել պարտ է • պաշտելն և սպասաւորելն՝ ծա-ռայելն է • բարի ծառայութիւն՝ ըստ կամաց զտէրն պաշտելն է: Իսկ որ ոչ է՛ ըստ տն կամաց, չէ՛ բարեպաշտ • այլ դատնացուցիչ: Արդ հայցելով ըստ կամաց երկնաւոր տեառնն բարեպաշտել՝ յեւս համարձակութիւն եղանէ: Եւ որ է այն • ծառայք տան կամարարք տերանց՝ վստահութե ունին զցայգ և զցերեկ խնդրել ՚ի տերանցն զիւրեանց պէտս և զայլոց: Արդ՝ եթէ լիցի մեզ կամարարս, և բա-րեպաշտս լինի քեզ:

՚Ի տուէ և ՚ի գիշերի արժանաւորք եղիցուք յաղագս անձանց մերոց փրկութե և վասն հոգևորական կենացն աղաչել զքեզ տէր: Այսպիսի եղիցուք նղաւորք, որպէս զի համարձակապէս զտիւ և զգի-շեր առաջի այ կացցուք • և փրկութիւն անձանց մերոց և ընկերացն խնդրեսցուք • զի միամտեալք, զերեկոյս յայտ առնէ:

Իսկ վասն հոգևոր կենացն աղաչելն զի՛նչ է • եթէ ոչ՝ * Զի մի՛ ըստ մարմնոյ կայցեմք և մեռանիցիմք որպէս տաէ առաքեալն: Սմ զի.

հոգւով զգործս մարմնոյ սպանցուք և կեցցուք զի որդիք Այ լիցուք։ * Զի որ հոգւովն Այ վարին՝ նոքա են որդիք Այ։ Այնպիսիքն իբրև ՚ի հօրէ վստահութբ զիւրեանցն և զայլոցն խնդրեն և առնուն զպէտս։

Եւ գտանել ՚ի քէն շնորհս և ողորմութի։ Ո՜ Թէպէտ բիւրապատիկ հաճոյանամք, սակայն տուրք Այ շնորհք և ողորմութիւն են, այսինքն՝ ձրի և ողորմելով։

Եւ գոհութեամբ փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՀոգին սուրբ․ այժմ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Հանապազ զամենայնոյն յարէ գոհանալովն, ուսուցանելով Թէ ըստ ամի գոհացօղք պարտիմք լինել Այ․ Թէ ՚ի բարօրութե՝ և Թէ յոչ ախորժելի կեանս իցեմք։ Եւ հայցեմք ոչ միայն յայս կեանս լինել փառաբանիչս Այ, այլ և ՚ի հանդերձեալն․ քանզի զայս նշանակէ ասելն ՚ի փառս առյն․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Քեզ երկրպագանելով տէր ած մեր։ Ո՜վ բերկրական ձայնիւ որք միտս ունիմք․ քանի՞ հեշտալի է զամենեցունց ածն մեզ ընտանեբար կոչել սրտի մտօք, նմա երկրպագանել, մնալ տեսութե առաջի նորա կալ ասելով,

Քեզ երկրպագանելով տէր ած մեր, գոհանամք զքէն յաղագս խաղաղութե անցուցանել ՚ի մէնջ զերկարութիւն տունջեանս շնորհելոյ։

Արդարև մեծ գոհութի երկրպագութբ պարտիմք մատուցանել Այ խաղաղութե յերեկոյն հասելոյ․ քանզի անթիւ ՚ի բազմութենէ են խռովութիք վտանգիչք մարդկան, որք ըստ հոգւոյ և մարմնոյ պատահին։ Եւ Թշնամին կենաց մերոց ամենայնիւ ընդ ամենեսեան մարտնչի, գործակից իւր ՚ի մարդկանէ առնլով։ Բազում անգամ և զանդամս մարմնոց մերոց ընդ դէմ վարէ մեզ ՚ի հոգւոյ և ՚ի մարմնոյ դէտս վտանգելով․ յաճախապէս և խորհրդովք մերովք մարտնչի և կռուի ընդ մեզ։

Արդ մինչ Այ պահպանելովն և օգնելովն յերեկոյն հասանեմք խաղաղութե ընդ աւուրն երկարութի անցեալք, ապա սիրով շնորհակալուք մերում տեառն լիցուք․ որ պահէն և փրկէն և զօրացուցանէն և յաջողէն ՚ի գործս բարիս և լնու զպէտս մեր, և ՚ի նաւահանգիստ գիշերոյն հասուցանէ խաղաղութեամբ։ Այլ իբրև վասն

անցելոցն գոհանամք արժանապէս , վասն առաջիկայից խնդրել վստահանամք · վասն այնորիկ և յարէ ՚ի գոհութի̃։

Տուր մեզ տէր աղաչեմք զքեզ՝ զերեկս և զառաջիկայ գիշերս առանց մեղաց և առանց գայթակղութե̃ անցուցանել։

Արդարև յոյժ աղաչելի է զերծանել ՚ի խաբից սատանայի և ՚ի գայթակղութեանց նո̃ յերեկոյի և ՚ի գիշերային ժամու։ Վ̃ն որոյ և ոչ լոկ ասէ թէ տուր մեզ տէր , այլ յաւելու թէ՝ աղաչեմք զքեզ · և ապա աղաչէ հաստատուն կալ ՚ի սէրն ն̃ոյ և ՚ի պատուիրանապահութեան՝ այսպէս ասելով ,

Հաստատուն կալ և մնալ ՚ի սէր և ՚ի պատուիրանապահութե̃ քում։ Սոքա իրերօք կազմին · քանզի երբեմն ասէ տէրն , *Եթէ սիրէք զիս՝ զպատուիրանս իմ պահեսջիք։ և թէ՝ *Պահիցէք զպատուիրանս իմ, կացջիք ՚ի սէր իմ։ Զի սէրն քո̃ ժրացուցանէ և յորդորէ ՚ի պատուիրանապահութիւն · և պատուիրանացն քո̃ պահպանութի՝ սիրոյ նո̃ հաստատութի առնէ · ըստ ասացելոյն թէ՝ *Հաստատուն կացէ՛ք ՚ի սէր իմ։ Եւ ՚ի նոյն յարէ *Թէ պահիցէք զպատուիրանս իմ, կացջիք ՚ի սէր իմ։ Զայս միտս աղօթիցս բան մաղթէ։ Հաստատուն կալ և մնալ ՚ի սէր և ՚ի պատուիրանապահութեան քո։ Ո՛չ մի ժամ կամ օր կամ տարի , այլ հանապազ։

Խնդրելով զխաղաղութի ա̃մ աշխարհի , եկեղեցւոյ քում հաստատութիւն , և անձանց մերոց փրկութիւն։

Արդարև՝ որ հաստատեալ է ՚ի սէրն քո̃ և պահէ զպատուիրանս նորա , նա հանապազ հոգայ վասն աշխարհի խաղաղութե̃ և սուրբ եկեղեցւոյ հաստատութե̃ , և վասն անձին և ընկերին փրկութե̃ · և զնոյն հանապազ խնդրէ ՚ի քէն։ Վասն զի որ սիրէ զա̃ծ՝ նման նմին սիրէ զա̃մ մարդոյ պէտսն։

Զի ընդունելով ՚ի քէն զհայցուածս մեր , զմեծ վայելչական փառաբանութի միշտ ՚ի բարձունս առաքեսցուք ամենասուրբ երրորդութե̃դ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն։

Չիք ՚ի մեզ կար ըստ արժանեաց փոխադարձել ըստ ն̃ոյ բարեացն անկարօտին · բայց միայն զի գոհասցուք և փառս տացուք նմա և այնու մեք փառաւոր լիցուք։ Ո՛չ եթէ նմա ինչ յաւելումն արասցուք , որ փառաւորեալն է յամենայնի · զի գրեալ է , *Զփառաւորիչս իմ փառաւորեցից։ Իսկ զինչ է վայելչականն · վ̃ն զի վայելէ ն̃ոյ յա̃մի գոհութե̃ և փառաբանութե̃ բան , որ արժանի է փառաբանութեան · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն։

Յովհաննու օձնեցւոյ՝ վասն երեքսրբեան երգին։

Ոհետ որոյ և խորհրդաբար կարգեալ է երից սրբասացու-
թեանցն երգ, ըստ տեսլեան մարգարէին և մեկնութե-
ան աւետարանչին։ Զի զփառս խաչին ետես եսայի և խօսեցաւ վասն
նորա. զնոյն և հայրապետն յայտնեաց բարբառ. * փառաւոր արա-
րի, և դարձեալ փառաւոր արարից։ Իսկ ինքն յաղագս իւր վկայէ
յասելն, * Այժմ փառաւորեցաւ որդի մարդոյ։ Վասն որոյ ոչ վայ-
րապար մեք 'ի կիր առնումք զխաչեցարն 'ի գլուխ սրբասացութեցն։
Իսկ քանզի սուրբ է որդի և հզօր և անմահ. և կամօքն հօր և հա-
ճութեամբ հոգւոյն եկն նա 'ի չարչարանս խաչին. և նովաւ իսկ ծա-
նեաք զհայր և զհոգին։ Իսկ մի պախարակեսցեն այսպէս խորհե-
ցողքն զերից սրբասացութեանս երգ. որք և ամօթ են վարկանին
զփրկութեանն մերոյ անօթ։

Եւ մեզ յայլ ինչ մի լիցի պարծիլ ըստ առաքելոյ, բայց
միայն 'ի խաչն տեառն մերոյ յի քի։ Իսկ մեզ առկայացի այս, զի և
ոչ ժամ իսկ է. այլ այսքան, զի ծանիցուք զայս հրեղէն պարիսպ
եկեղեցւոյ։ Իսկ շուրջ արկեալ է 'ի գլխաւորական աղօթս առաւօ-
տի, և խորհրդական ժամուն երրորդի, և երեկոյի, երիցս անգամ
յաւուրն զնոյն եռակի կրկնելով։ Իսկ զի զխաչին երախտիքն ծան-
եաք, ընդ նմին և զմայրն լուսոյ յիշատակեմք և աղերսեմք 'ի բարե-
խօսութիւն առ այն որ հանգեաւն բնակել յորովայնի նորա և խաչիւն
սրբով փրկել զմեզ։ Իսկ այսպէս փոխանակ օրհնաւոր գառանցն ա-
ռաւօտնոյ և երեկոյնոյ մատուցելոց, յեկեղեցւոյ աստի մատուցանի
խոստովանութիւն՝ սրբոյ անուան նորա 'ի պտղոյ շրթանց, և յանբիծ-
վարուց ուղղութիւն։

Եւ ասի մաղթանք՝ Փրկել զմեզ, և քարոզ՝ Վասն լսելի լինելոյ, և աղօ՝ փոխս։

Համբարձի զաչս իմ 'ի լերինս. և այլն։ Զի պաշտպանիցիմք
տէրունական աջովն այ. ուստի և ակն ունիմք զօգնութե
ընդունել յարարողէն երկնի և երկրի։ Իսկ զի յարևու փորձու-
թեանցն մի խորշակահար լինիցիմք, այլ պահելով զմեզ 'ի մեղանաց
ապրիցիմք և յամ որոգայթից հոգւով և մարմնով։ Տէր պահեսցէ
զմուտ քո ծննդեամբ յաշխարհ, և զել քո մահուամբ՝ յայսմ հետէ
մինչև յաւիտեանս, յաստեացս մինչև 'ի հանդերձեալ յաւիտեանն։

Աղօթք՝ զկնի Համբարձման։

Հայր գթած՝ արարիչ և բարեխնամող ամ՟ արարածոց։ Հայր սաելով՝ զվերջասին ծննդին յաւուրանեն առաջի արկանելով ՚ի գութ զամ՟ խոնարհեցուցանել կամի. վասն այնորիկ և զգթածն յաւել և զխնամօղն։ Ո՜վ Հայր և գթած և խնամօղն՝ ոչ անտես առնէ զորս յորդեգրութի՟ ընկալաւ. մանաւանդ զի ոչ Հայր միայն է, այլ և արարիչ. և վասն զի ամ՟ աշխարհի զողորմութի՟ կամի հայցել, վասն այնորիկ յարէ զայն թէ՝ արարիչ ամ՟ արարածոց։

Ընկալ զպատարագս ծառայից քոց։ Ո՜վ Հայրական և արարչական գթոյդ, թէ և մեղուցեալ իցեմք, ընկալ զպատարագս մեր. զի և ծառայք քո եմք, և Հայր զքեզ կոչեմք։

Ողորմեա՛ ՚ի վերայ ամ՟ աշխարհի. հիւանդաց՝ վշտացելոց՝ ճա-նապարհորդելոց՝ նաւորդաց՝ խոստովանողաց՝ ապաշխարողաց, և հոգւոցն հանգուցելոց։

Վասն զի կամի ամ՟ զամենեցունց փրկութի՟, և սիրէ զի մեք խնամ տանիցեմք և զիրերաց զօգուտն հայցիցեմք, վասն այնորիկ մաղ-թեմք ամ՟ աշխարհի զողորմութի՟ և կարգ ըստ կարգէ ամենեցուն զոր թուեցաքն։ Եւ այս, ոչ միայն զողորմելեացն յաւելումս, այլ յաւե-լումս զինչ պէտք են հասարակաց մեզ՝ դու ինքնին գիտես առաւել քան զոր խնդրեմք և իմանամք։ Եւ վասն զի առատ ես պարգևօք բարերարութի՟՝ և զպէտս մեր գիտես, ողորմել հայցեմք և գթալ հայրաբար, և յամի քեզ փառս վերառաքեմք. քանզի յարէ ՚ի նոյն,

Եւ ընդ քեզ Հօր արարչի և որդւոյդ միածնի հանդերձ կենդանա-րար և ազատիչ սուրբ Հոգւովդ վայելեն փառք իշխանութի՟ և պատ-իւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յովհաննու Օձնեցւոյ։

Եւ այս սաղմոսօղքն հասարակ մաղթեն՝ ընդ հովանեաւ բարձրելոյն լինել, և յերկիւղ հանգստեանն արժանաւո-րել, և ասէն յորսողին փրկել որոգայթից զինու Աստուծոյ պահպա-նութեամբ։ Եւ զի թաքնաբար ընդ խաւար շրջի որոգայթադիրն, զօրացո՛ սակս զընթացս սրտից մերոց՝ զգլխաւորական չարութիւն

չարաչարին։ Վասն որոյ և յայսմ գիշերի առ քեզ համբառնամք զմտաւորական աչս իբր ծառայք առ տէր, զի 'ի ծփական տառապանաց զերծուսցես զմեզ. և ընդունիցես զոգիս մեր անխարդախս կանխել առ քեզ 'ի մէջ գիշերոյ և յառաւօտի, և զկամաւորն մատուցանել քեզ պատարագ բանաւոր։ Եւ քարոզն միաբան խնդրել զայսոսիկ յաղօթս։

Իսկ քահանայն միջնորդէ աղօթիւք առ կենացն անմահից յաւ յա՛ քն, կատարել 'ի բարի զաղօթսն՝ բարեխօսութեամբ սրբուհւոյ ածածնին և հանգստական վկայիցն։ Եւ ժողովուրդն զքահանայն տէր անուանելով աղաչէ յիշել յաղօթսն զպաշտօնեայս ընդ հոգւոյ և մարմնապէս, և զծնօղսն, և զայլն ևս մի ըստ միոջէ։ Իսկ նա համառօտելով ասէ,

Յիշեա՛ զամ հաւատացեալս և փրկեա՛ յիւրաքանչիւր վտանգից և 'ի փորձութեց. զի յամենուն արժանապէս փառաւորի ամենասուրբ երրորդութիւն. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Քարոզ ապաշխարողաց Խոսրովու։

Եկեալքս 'ի խոստովանութիւն ապաշխարութեան հաւատով զայս միածնի որդւոյն այ դիցուք 'ի սիրտս մեր։

Տեսանեմք, զի չասաց լոկ զապաշխարութիւն. այլ նախ զխոստովանութիւն և ապա զապաշխարութիւն. զի առանց խոստովանութեան չէք հնար քաւութիւն գտանել։ Վասն այսորիկ պարտ է փութալ 'ի խոստովանութիւն քահանային խոստովանիլ միանգամ, և այ հանապազ, և այնպէս պաղատել հաւատով և յուսով։ Թէպէտ և բիւր չարեօք յառաջինսն վիրաւորեալ իցեմք, հաւատասցուք 'ի մարդասիրութեանն քո քաւութիւն և թողութիւն գտանել. զի զայս հրամայէ քարոզն։

Հաւատով զայս միածնի որդւոյն այ դիցուք 'ի սիրտս մեր, խնդրելով 'ի նմանէ զքաւութիւն և զթողութիւն յանցանաց մերոց։ Եւ 'ի հաստատել զայսն՝ զբարերարութեան քո զգործս և զբանս որպէս զառհաւատչեայ առաջի դնէ։

Վասն զի նա ինքն է նախախնամօղն աստուած յաւիտենական որ եկն կամաւ հօր փրկել զարարածս. և ասաց զինքն լինիլ քաւիչ մեղաւորաց՝ յոյս ապաշխարողաց, շնորհելով հանգիստ աշխատելոց, ընդունելով զծանրաբեռինս և զպարծանեալս մեղօք

յապաշխարութիւն քննութեանն։ Նախախնամութեանն այն է, որ յա-ռաջինն լինի առ հայր ուրուք․ քանզի և արուեստ իսկ աստուծոյ բարերարութեանն այս է՝ նախահոգական լինել առ իւր արարածս։ Քանզի յառնելն զմարդն՝ նախ զերկինս և զերկիր պայովքն արար, և ապա զմարդն գոյացոյց․ և յառաջ զդալարի, և ապա զանասունս։

Նոյնպէս և՝ իսկ նախքան զելանել մարդկան յարգանդէն՝ և կամ անասնոցն ծննդոց, լնու զստինսն կաթամբք առ նոցա պէտս և սնունդս։ Այլ և զստինս կանանց և զօրէ նոցա երբ ժամանակ լինի ծննդականութեան՝ նախակարգէ։ Իսկ զհոգեւորն նախախնամութիւն նախ արարածովքս եցոյց զի ծանիցի արարիչն սոքօք, յետ այսր սրբովք հարովք առաքելովք և մարգարէիւք, և իւրով իսկ մարմնաւորովն։ Յետ այսր՝ առաջնորդովք և գրովք սրբովք ազգի ազգի ուղղութիւնս ցուցեալ ինքեամբ և ընտրելովքն խորովք․ և մեղաւորացն եւս օրինակ ցուցեալ ի հինսն և ի նորսն․ այլ և մարգարէիւքն կոչեալ զամ մեղաւորս յապաշխարութիւն՝ և ի քաւութիւն յուսադրել։ Եւ զիւր գալուստն՝ մեղաւորաց վասն ասէ․ և երթողաց առ ինքն՝ յաշխատութենէ մեղաց և ի բեռանց, նոցա հանգիստ խոստանայ․ այս է զոր ասէն,

Շնորհելով հանգիստ աշխատելոց։ Իսկ՝ ընդունելն զծան-րաբեռնեալս և զանարժանեալս յապաշխարութիւն քաւութեան՝ այս է, որ ոչ բանիւք միայն, այլ և արդեամբ եցոյց զընդունելութիւն մեղա-ւորաց։ Որպէս զմաքսաւորն առաքեալ և աւետարանիչ արար․ և միւս մաքսաւորին՝ տանն փրկութիւն ետ։ Զպոռնիկն մերձիլ յամենա-սուրբ ոտս իւր արժանացոյց, և ի պատրող աչացն արտասուացն լուանալ, և վաթարեալ գլխոյն հերօքն մաքրել։ Որոյ ոչ միայն մե-ղացն թողութիւն ետ, այլ և աշխարհաքարոզ զնորա ուղղութիւն ա-ւետարանաւն արար․ և զաւազակն յառաջ եմուծ քան զամենեսեան ի դրախտն։ Զպետրոս ոչ միայն յուրացութեան գլորմանէն կանգ-նեաց, այլ և գլուխ առաքելոցն և հիմն եկեղեցւոյ և փականց արքայ-ութեան լինել պատրաստեաց։ Զսոսա և զայլս բազումս արժանեալս ի մեղս՝ այսինքն զաշխատեալս ի չարեաց ծանր բեռինն յայս, ի սոյնպիսի բարեաց հանգիստ շնորհեաց քաւութեան։

Արդ եկայք ամենեան խոնարհեալ անձամբ՝ բեկեալ սրտիւք՝ անկցուք և լացցուք առաջի տեառն արարչին մերոյ։ Այս է դեղ ամ վերայ չարեաց՝ խոնարհամիտ և բեկեալ սիրտ․ զոր ոչ արհամար-հէ ած, այլ և պատարագ հաճոյական է նմ խոնարհն։ Այն է որ զհայրն ի մեղաւորն նմ առնէ․ որպէս ասաց ինքնին մարգարէիւն՝

ղութիւն մեղաց ։ Ուր ոտն՝ դարձեալն յապաշխարութիւն ․ որպէս կանո-
նաւ խոստացաւ ՚ի ձեռն մարգարէին , * Դարձարո՛ւք առ իս եւ ես
դարձայց առ ձեզ ․ զի ոչ կամիմ զմահ մեղաւորին , որպէս զդառնալն
նորա ՚ի չար ճանապարհէն եւ զկեալն ։ Զայս եզեկիէլ մարգարէ որ
յերեսաց Այ ասէ յապաշխարութիւն յորդորելով զմեղուցեալսն ։
Իսկ տէրն դարձեալ իսկ ասացեր բերանովդ քով սրբով եթէ՝ * Ո՛չ
եկի կոչել զարդարս , այլ զմեղաւորս յապաշխարութիւն ․ Զայս ա-
սաց տէրն յորժամ բամբասեցաւ ՚ի փարիսեցւոցն թէ ուտէ եւ ըմպէ
ընդ մեղաւորս եւ ընդ մաքսաւորս ․ Վասնզի վասն բժշկելոյ զնոսա՝
յանձին կալաւ ընդ անիրաւսն զանխտրականապէս ժողովեալսն ուտել ։
Արդ մեք զայսպիսի մարդասիրութիւն յիշելով ասեմք թէ՝ որ մար-
գարէիւն խոստացար դառնալ առ դարձեալսն առ քեզ , եւ քո ամե-
նասուրբ բերանովդ ասացեր յապաշխարութիւն ընդունել զմեղաւորսն ։

Արդ ողորմեա՛ց ած ՚ի վերայ ապաշխարողացս ․ ընկա՛լ զանցս
զաղօթս զխնդրուածս զպաղատանս զխոստովանութիւնս ։ Թէ եւ ար-
ժանի գործս չունիցին , զի ողորմած ես՝ ողորմեա՛ եւ ընկա՛լ զաղա-
չանս զաղօթս եւ զխոստովանութիւնս ։ Աղօթք է աղերսել ինչ , խնդր-
ուածք է կարեւոր պիտոյիցն յայտնութիւն ․ պաղատանք է՝ մինն վասն
պատուհասի սպառնալեաց երկիւղիւ պաղատանս մատուցանել եւ
տագնապաւ աղերսել առ ներումն ։

Գթութիւն քով թող սոցա զմեղս եւ զյանցանս եւ զպարտիս ։
Դարձեալ ՚ի գթութիւն տպաւորելի գթալ եւ թողուլ զմեղսն ։ Մեղք
եւ յանցանք եւ անօրէնութիւնք , ամենեքեան անօրէնութիւնք եւ պարտիք
են ։ Բայց թէ զանազանէ ոք զմեղսն , ասաց եւ զյանցանսն՝ զպատ-
ուիրանաւն Այ զյանցանելն ․ իսկ զպարտիսն՝ զոր պարտիք , առանձա-
նացեալ՝ եթէ ոչ ապաշխարեսցեմք ։

Մարդասիրութիւն քո բժշկեա՛ զվէրս զհարուածս զբեկումն
որ եղեւ ՚ի թշնամւոյն եւ ՚ի մոլար խաբէութենէ նորա ։
Տէ՛ր՝ եւ սա ՚ի մարդասիրութիւն քուսայ բժիշկ վիրացն լինիլ ․
զանազանէ զանուանսն եւ սա , զի ամն սաստիկ վիրաւորեալ է եւ ամն
նուազ հարուածեալ է եւ ամն խորտակումն ընկալեալ ։ Իսկ պատճառ
ամենեցուն՝ նենգութիւն սատանայի է , որ խաբէ եւ մոլորեցուցանէ
զոչ զգուշացօղսն ։

Որպէս զի սոքա առողջացեալք միաբանգամ հոգւով եւ մարմնով
մնասցեն յեկեղեցի քո սուրբ ։ Պաղատանս մատուցանէ քահանայն զի
զամ հիւանդութիւնս բժշկեսցէ եւ ՚ի սուրբ առողջութիւն հասուսցէ ։
Զի միաբանգամ յեկեղեցի մտանել արժանասցին եւ ժողովրդեանն

* Յո՞ հանգեայց. եթէ ոչ ՚ի հեզս և ՚ի խոնարհս և որք դողան ՚ի բանից իմոց: Զայնպիսիսն ոչ հայի և եթ, այլ և հուպ կայ ՚ի նոսա՝ այլ և կեցուցանէ: * Մե՛րձ է տէր առ այնոսիկ որ մաշեալ են սրտիւք, և զխոնարհս հոգւով կեցուցանէ: Արդ եթէ յանձն բերկեալ մերձ է Աստուած՝ որ այնպիսի խոնարհի միտք և բեկի սրտիւ, նա յարտասուաց ոչ երբեք դադարէ. այլ ՚ի սուգ է հանապազ, առաջի անկանի արարչին իւր. յորմէ և մխիթարի և երանելի լինի: Բայց ոչ վայրապար յաւել մարգարէն զասելն, * Անկցուք և լացցուք առաջի տեառն արարչին մերոյ: Զորմէ քարոզս զգանս էառ. այլ զի ՚ի միտ առցուք թէ ո՞ւմ մեղաք. արարչին, որ արարն զմեզ ՚ի բանէ. վասն իւր նմանօղ լինելոյ, վասն հաճոյ իւր լինելոյ, վասն ծառայելոյ ըստ կամաց հաւանչին, և վասն այսց Աստուած եդեալ ՚ի նմանէ: Փոխանակ այսոցիկ դառնացուցիչք լեալ, յերեսս լալ և ողբալ պարտիմք առաջի նորա. զոր թէ արասցուք, զթայ վասն արարչական սիրոյն, ներէ և ոչ խնդրէ վրէժ. քանզի և քաղցրն ՚ի սոյն յօդէ զայս:

Ո ի անցուսցէ ՚ի մէնջ զցասումն պատուհասի յանցանաց մերոց: Մեք յիշելով զարարչէն երախտիս և զմեր ապերախտութիւն, ՚ի լալն այսու գամք եթէ իցեմք երկիւղածք ՚ի տեառնէ: Արդ արարչն ՚ի գթոյն չէարէ զլացելոյս պատժել, այլ և մխիթարութեան տանէ. արա յաղօթս զգանն փակէ:

Մենակալ տէր Աստուած մեր կեցո՛ և ողորմեա՛ մեզ:

---

Աղօթք խոստովանու.

Աստուած բարձրեալ գովեալ և փառաւորեալ: Ի սկզբան աղօթիցս յուշ առնեմք անձանց զքո մեծութիւնն և զմեր յանդգնութիւն, և դարձեալ՝ զքո ներողութիւն առ մեզ. զի Աստուած է, և զի բարձրեալ է ՚ի վերայ երկնի և երկրի, և զի գովեալ է ՚ի բնութենէ և ՚ի գործոց և յերախտեաց իւրոց, և փառաւորեալ է յամենեցունց: Արդ մեր արհամարհեալ զնա և զպատուիրանս նորա, և նա երկայնամտէ և ներէ, և անսայ ապաշխարութեան. և ՚ի դառնալն՝ [illegible] [illegible] և ընդունի խնդութեամբ. վասն որոյ և ասէ,

Ո՛վ երկայնամիտդ ես քաղցրութեամբ քով: Նայս սակս ներողութեանդ մինչդեռ ՚ի մեղս իցեմք: Բազմողորմ և բազմաշնորհ ես առ ամենեսեան որ կարդան առ քեզ, խնդրեն զգթութիւն և զթո-

ղութիւն մեղաց: Այս առ դարձեալսն յապաշխարութիւն. որպէս կանխաւ խօսեցաւ 'ի ձեռն մարգարէին, *Դարձարո՛ւք առ իս և ես դարձայց առ ձեզ. զի ոչ կամիմ զմահ մեղաւորին, որպէս զդառնալն նորա 'ի չար ճանապարհէն և զկեալն: Զայս եզեկիէլ մարգարէ ոչ յերեւաց որպէս ասէ յապաշխարութիւն յորդորելով զմեղուցեալսն: Եւ տէրն դարձեալ իսկ ասացեր բերանովդ քով սրբով եթէ՝ *Ո՛չ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն: Զայս ասաց տէրն յորժամ բամբասեցաւ 'ի փարիսեցւոցն թէ ուտէ և ըմպէ ընդ մեղաւորս և ընդ մաքսաւորս: Քանզի վասն բժշկելոյ զնոսա՝ յանձին կալաւ ընդ անիրաւսն զանիրաւաբար ժողովեալսն ուտել: Արդ մեք զայսպիսի մարդասիրութիւն յիշելով ասեմք թէ՝ որ մարգարէիւն խոստացար դառնալ առ դարձեալսն առ քեզ, և քո ամենասուրբ բերանովդ ասացեր յապաշխարութիւն ընդունել զմեղաւորսն:

Արդ ողորմեա՛ց Աստուած 'ի վերայ ապաշխարողացս. ընկա՛լ զսոցա զաղօթս զխնդրուածս զպաղատանս զխոստովանութիւնս: Թէ և արժանի գործս չունիցին, զի ողորմած ես՝ ողորմեա՛ և ընկա՛լ զաղաչանս զաղօթս և զխոստովանութիւնս: Աղօթք է աղերսել ինչ, խնդրուածք է կարևոր պիտոյից յայտնութիւն. պաղատանք է՝ մինն վասն պատուհասի սպառնալեաց երկիւղալից պաղատանս մատուցանել և տագնապաւ ստիպել առ Ներումն:

Գթութեամբ քով թող սոցա զմեղս և զյանցանս և զպարտիս: Դարձեալ 'ի գթութիւն ապաւինի գթալ և թողուլ զմեղսն: Մեղք և յանցանք և անօրէնութիւնք, ամենեքեան անօրէնութիւնք և պարտիք են: Բայց թէ զանազանէ ոք զմեղսն, ասաց և զյանցանսն՝ զպատուիրանաւն ոչ զյանցանելն. իսկ զպարտիսն՝ զոր պարտիմք, տանջանաց է՝ եթէ ոչ ապաշխարիցեմք:

Մարդասիրութեամբ քո բժշկեա՛ զվէրս զհարուածս զբեկումն որ եղև 'ի թշնամւոյն և 'ի մոլար խաբէութենէ նորա:

Տէ՛ր՝ և ասա 'ի մարդասիրութիւն յուսայ բժիշկ վիրացն լինել. զանազանէ զանուանսն և ասա, զի ոմն սաստիկ վիրաւորեալ է և ոմն նուազ հարուածեալ է և ոմն խորտակումն ընկալեալ: Եւ պատճառ ամենեցուն՝ նենգութիւն սատանայի է, որ խաբէ և մոլորեցուցանէ զոչ զգուշացօղսն:

Որպէս զի սոքա առողջացեալք միւսանգամ հոգւով և մարմնով մտցեն յեկեղեցի քո սուրբ: Պաղատանս մատուցանէ քահանայն զի զամենայն հիւանդութիւնս բժշկեսցէ և 'ի սուրբ առողջութիւն հասուսցէ: Զի միւսանգամ յեկեղեցի մտանել արժանասցին և ժողովրդեանն

ոյ փառաբանակից լինել. քանզի ամենեքեան որք ՚ի քս մկրտեցան, քն անդամք և մարմինք եղեն։ Իսկ մերժուցեալքն՝ ըստ առաքելոյն պօղոսի ոչ կարեն անդամք քն լինել. *Զի որ մերձենայ ՚ի պոռնիկն՝ նորա մարմին է։ Եւ ինքն իսկ տէրն ասէ, *՚Ի բաց կացէք յինէն ամենեքեան, որք գործէիք զանօրէնութիւն։ Վասն այնորիկ և յեկեղեցւոյ արտաքսեն զանօրինեալն. զի եկեղեցին քի տունն է, և ՚ի նմա որոց յառամգաստի միաբան ընդ քի ոգիքն. և յանցաւորքն յերեւաց նորա ընկեցեալք են։ Մինչև սուրբ խոստովանութեամբ և ապաշխարութեամբ վերստին առողջանայցեն որքեալ ՚ի մեղաց՝ արտասուացն աւազանաւ. որով մաքրեալքն դարձեալ յեկեղեցի հօտացն հօտանարանն մտանել և ՚ի ժողովուրդն քի խառնիլ, և ընդ հրեշտակս և ընդ սուրբս քի՝ մասնակցանել գոհութեան քի։ Վասնզի յեկեղեցիս քի միաբանութիւն լինի հրեշտակաց և սրբոցն ոգւոց։ Նոքա՝ արտաքսեալ խոնարհ հոգւով և բեկեալ սրտիւ սուգ առցեն և ողբասցեն յայնպիսի վրիպանս. զի հասցեն ՚ի գթութեցն քի քաւութեան. և առողջասցին և ՚ի սուրբսն խառնեսցին, և ՚ի ժողովուրդսն միասցին. որք ասեն թէ՝

Եւ ընդ ժողովրդեան քում հանցեն զօրհնութիւն և զփառս հօր և որդւոյ և հոգւոյդ սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Սակս կիրակէի արձակման աղօթից։

Թագաւոր խաղաղութեան՝ օգնական և փրկիչ անձանց մերոց քս ած մեր, պարսպեալ պահեա՛ զհաւատացեալ ժողովուրդս քո ընդ հովանեաւ պատուական և սբ խաչի քո ՚ի խաղաղութիւն։

Զմարգարէին առեալ զբան. զոր կանխագուշակ տեսութեամբ պատմաբանեալ ասէր՝ ՚ի դէմս քրիստոսի, *Ես կացի թագաւոր ՚ի նմանէ ՚ի վերայ սիօնի լերին սրբոյ նորա։ Եւ դարձեալ ասէ, *Թագաւորեաց ած ՚ի վերայ հեթանոսաց։ և թէ՝ *Ասեմ զգործս իմ թագաւորի։ Եւ այլ ուր յայտնապէս ասէ, *Տր թագաւորեաց՝ վայելչութիւն զգեցաւ խաչիւն։ Զի թէպէտ և ածութեամբ էր թագաւոր յառաջ քան զյաւիտեանս ՚ի վերայ ամենայնի, այլ զմարմնով թագաւորելն ասէ. և զի արար խաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ, վասն որոյ և թագաւոր խաղաղութեան կոչէ։

Օգնական և փրկիչ անձանց մերոց քս ած մեր։ Օգնական եղև բնութեանս որ ակարացեալ էր ՚ի մեղաց, և փրկեաց ՚ի ծառայ-

ութենէ սատանայի․ ըստ առաքելոյ, *Ո՛չ ապականացու արծաթեղէնօք և ոսկեղէնօք փրկեցայք․ այլ պատուական արեամբն քո։ Վասն որոյ աւրապէս ցուցաւ մեզ տէր և Թագաւոր և օգնական քո անձ մեր․ քո՛ ըստ մարմնական անօրէնութեն, որով փրկեցաք․ և անձ՝ ըստ արարչական տէրութեանն։

Պարապեալ պաշտեմ զլուսացեալ ժողովուրդս քո ընդ հովանեաւ պատուական և սուրբ խաչի քոյ 'ի խաղաղութի։ Մեծ է խնամք բարերարին մոյ առ արարածս, բայց ևս առաւել առ հաւատացեալ ժողովուրդս և առ երկիւղածս իւր ցուցանէ զխնամական գթութիս իւր․ ըստ այնմ, *Բանակք հրեշտակաց տեառն շուրջ է զերկիւղածովք իւրովք և պահէ զնոսա։ և Թէ՝ *Զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր։ Եւ դարձեալ Թէ՝ *Եղիցի ձեռն քո 'ի վերայ առն, աջ քո 'ի վերայ որդւոյ մարդոյ։ Այս է զոր բան աղօթիցս խնդրէ պարիսպ և պաշտպանութիւն․

Իսկ զի ասէ, ընդ հովանեաւ պատուական և սուրբ խաչի քոյ։ Խաչդ անուն յառաջ մինչև էր քո՛ 'ի նմա բևեռեալ՝ նախատանաց էր անուն և չարագործաց պատժարան։ Վասն որոյ և անօրէն հրէայքն այլ ազգ մահուամբ ոչ կամեցան զտէրն սպանանել, բայց միայն խաչիւ․ զի յամենեցունց մահապարտ և չարագործ կարծիցի որպէս զաւազակն․ վասն որոյ և ընդ նոսա խաչեցին։ Իսկ տէրն որ մարմին զգենլով զմեղանչական մարմինս սրբեաց և մաքրեաց, այսպէս 'ի խաչին բևեռելով՝ պատուական և սուրբ արար զխաչն․ և ետ պարիսպ ամրութեան և զէն անվթար հաւատացելոց իւրոց։

Եւ զորօրինակ որք ընդ հովանեաւ ծառոց կամ այլ իմիք տաղաւարին, անվնաս մնան 'ի տապոյ արեգականն։ Ըստ այսմ օրինակի որք ընդ հովանեաւ պատուական և սուրբ խաչին պահպանին, ամրացեալ և խաղաղացեալ մնան յամ մեքենայից սատանայի, իբր զքաղաք ամուր եօթնեկի պարսպօք զօրացեալ․ զոր և միշտ 'ի մեզ լինիլ մաղթեսցուք։ Վասն զի միշտ դարանամուտ լինի չարն․ և ջանայ որսալ 'ի կորուստ զորդիս մարդկան․ ոչ միայն զհոգիս վիրաւորելով, այլ և զմարմինս չարաչար վտանգօք լնու։ Ոմանս՝ 'ի զանազան մեղս գթեցուցանէ, և յոմանց վերայ զտունս փլուցանէ․ զայլ ոմանս՝ դահավէժ կամ ջրախեղդ գետակուր և ծովամոյն առնէ․ զկէսս՝ գազանակուր և աւազակախողխող առնէ․ կիսոց՝ զիւրովին տալ երթալ և անձնասպան լինիլ, զորոց ընդ մարմնոցն և զհոգիսն կորուսանէ և բաժին խաւարին առնէ։ Մոգից աւել և զորս կախարդանօք դիւթութեամբ և դեղատուութբ և այլ զանազան չարեօք սովոր է կորուսանել զձօնիչսն և զձօնեալսն։

Եւ արդ՝ յայսմ ամենայնէ այնոքիկ զերծանին, որք միշտ ընդ

Յովհաննու պատուական և սուրբ խաչին պաշտպանին․ և զօրութե՟ն նորին՝ յերևելի և յաներևոյթ թշնամեաց ձողոպրին։ Որպ՟ և մեծին կոստանդիանոսի երևէր նշան խաչին և յաղթութիւն շնորհէր․ և ամենեցուն նոյնպէս լիցի։ Ո՟ման որոյ և արժանի լինելին սա և ՚ի հանդերձեալ երկրին հաւատացեալք անդադար փառաւորել զսուրբ զերրորդութիւնն․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

Յորդորակ։

Եւ արդ՝ զայս ամ՟ գիտելով սիրելիք բազում փոյթ յանձին կալցուք ընդ հովանեաւ կենսատու խաչին պաշտպանիլ յերևելի և յաներևոյթ թշնամեաց․ զի արժանի լիցուք արժանապէս փառաւորել զարժանին ամ՟ փառաց և պատուոյ զհայրն ամենակալ և զորդին միածին և զհոգին ճշմարիտ։ Եւ այս որպ՟ լինի։

Յորժամ արժանի լինիմք ամ՟ արթնութե՟ պահել զպաշտպանութի՟ ոգւոց մերոց, և զպատմուճանն որ յաւազանէն՝ ոչ աղտեղացուցանել։ Յորժամ զգուշասցուք գործոց բարեաց և առաքինասէր վարուց․ և պահութե՟ և աղօթիւք արժանի լիցուք բերել յանձին զնմանութի՟ անմարմնոցն դասուց։ Յորժամ միմեանց հնազանդեսցուք, զմիմեանս լաւ համարել քան զանձինս․ և աղօթից սաստիկ կացցուք․ և ՚ի պէտս սրբոց հաղորդեսցուք․ և օտարասիրութե՟ զհետ երթիցուք․ զաղքատս կերակրելով, զմերկս զգեցուցանելով, ՚ի տես հիւանդին ոչ դանդաղելով, որբոց և այրեաց ունկնդիր լինելով․ նեղելոց զըկելոց և կարօտելոց օգնականութի՟ և կարեկցութի՟ առնելով և զպէտս լնլով, և զպարտատեարս վտանգելոց անտես ոչ առնելով, յընտանեաց զաւակի զակն ոչ դարձուցանելով, ոչ հատուցանել չար փոխանակ չարի, կամ բանբասանս ընդ բանբասանաց, ոչ տալ թոյլ մնանել արեգական ՚ի վերայ բարկութեան, այլ թէ հնար իցէ ընդ ամ՟ ումեք զխաղաղութի՟ ունել, և զանձն օրինակ տալ գործոց բարեաց և անարատ վարուց առ ամենայն ոք։

Լալ ընդ լացօղս և խնդալ ընդ խնդացօղս․ և գթալ առ ամենեսեան, և սէր սուրբ ունել ընդ ամ՟ ոք, և սերտիւ սիրել և գթալ ՚ի վերայ վտանգելոց, և զմիմեանց բեռն բառնալ։ Մ՟ի բանիւք և եթ սիրելով, այլ արդեամբք և գործովք կարեկից լինելով առ ամենեսեան, և բաշխելով զկարևոր պէտս գթով և սիրով։

Որպիսի ոք աբրահամն էր աղքատասէրն՝ օտարասէրն, որ ուխտ դնէր անձինն առանց հիւրի ոչ ճաշակել։ Որ ընդ օտարացն

և զԱ̃ծ ընդունէր․ որ զսէրն Ա̃յ առ սիրելիսն Ա̃յ ցուցանէր․ մանաւանդ թէ առ նմանեսն և փոխանորդսն։ *Որովհետև արարիք, ասէ, միում ՚ի փոքրկանցս՝ ինձ արարիք։

Որպիսի՛ ոք յոբն էր, որ զինչսն ոչ անձին և եթ ունէր, այլ հասարակաց։ Որ աչք էր կուրաց, և ոտք կաղաց, հանդերձ մերկոց, և կերակուր կարօտելոց․ որ յարկ էր հանգստեան աշխատելոց, և յանձանձիչ վշտացելոց։ Որ ողորմութեան աղբիւրն էր և համբերութեան ապացոյցն․ որ զինչսն յորժամ ունէր՝ ոչ իւր ունէր, այլ իբր ղակերունի բարւոք մատակարարէր։ Եւ յորժամ յընչիցն վրիպէր, իբրև զքեռն ծանր ՚ի բաց եդեալ համարէր․ որ ընդ ընչիցն և զանձն ևս տայր սիրոյն Ա̃յ փոխարէն․ և համբերութեամբ տանէր եօթնամենայ վշտացն և նեղութեացն։ Եւ զի ոչինչ պատուական Ա̃յ սիրոյն փոխանակեաց, ոչ զինչս, ոչ զորդիս, նա և ոչ զանձն ևս։ Վասն որոյ՝ վերստին այսրէն կրկին ընդունէր զԱ̃ծ․ և ՚ի հանդերձեալսն զյաւիտենական կեանս ժառանգէր։

Որպիսի՛ ոք մովսէսն էր հեզն և հանդարտն յամենայնի․ որ և յԱ̃յ բերանոյն վկայէր *Ծառայն իմ մովսէս հեզ է քան զամ̃ ոք։ Ընդ որում և բերան ՚ի բերան խօսէր Ա̃ծ․ որ և յայտնի ցուցանէր զհեզութիւն ասելով, *Տէր՝ եթէ թողուս զյանցանս ժողովրդեանս, թող․ ապա թէ ոչ, և զիս ջնջեա՛ ՚ի դպրութենէ քումմէ յոր գրեցեր։ Որ և վասն անձին արհամարհանաց ոչ ցասնոյր, այլ խոնարհութեամբ տանէր․ իսկ վասն փառացն Ա̃յ՝ բազում բարկութեամբ վրէժխնդիր լինէր։ Մինչ զի զտախտակսն որ յԱ̃յ՝ խորտակէր, և զյանցաւորսն սատակէր․ զբարւոք նախանձն Ա̃յ նախանձէր, և արտաքին հաճոյ գտանէր, և առնոյր վերստին զօրէնսն․ զհիւանդացեալ ժողովուրդն կազդուրեցուցանէր, և յերկիր աւետեաց առաջնորդէր յօրինակ փրկչին մերոյ Քրիստոսի։

Որպիսի՛ ոք դաւիթն էր թագաւորն և մարգարէն և Ա̃ծահայրն կոչեցեալ․ որ համարձակութեամբ ասէր ցԱ̃ծ, *Յիշեա՛ տէր զդաւիթ և զամ̃ հեզութիւն նորա։ Ոչ զմի կամ զերկու կամ զեւս ասելի, այլ զամ̃․ զի ոչ ստէր որ ասէրն, *Կորուսանէ տէր զամենեսեան որ խօսին սուտ։ Եւ յայտ յիրացն սաւուղի է և յաքիտոփելայ և ՚ի նաթանայ յորժամ յանդիմանէրն։ Զի ոչ ընդդէմ դառնայր իբր զթագաւոր և հակառակէր ասելով՝ *Ո՞վ դու և ուստի՞ յորոց արժանաւորաց, և կամ թէ քեզ զի՞ փոյթ է։ Այս սովորութիւն է մարդկան ասել ՚ի ժամու յանդիմանութեան, որ անմտաբար վարին յայնպիսի իրս։

Այլ զի՞նչ. զանձն օրինակ բարեաց տայր իւր զղջացելոց. յոգւոց հանելով և ասելով մեղայ տեառն, որով թողութեան գտանէր. զի ասէր մարգարէն, * Եւ տէր անցոյց զքեզ զմեղս քո։ Բայց ոչ յանհոգս լինէր վասն այսորիկ, այլ հանապազ արտասուս գնայր և արտասուօք զանկողինսն թանայր, 'ի մէջ գիշերի խոստովան լինէր իրաւանցն ոյ։ Սատակէր 'ի հեծութեանն, և 'ի մոխրիս հանգստեանն լայր դառնապէս։ Զմոխիր փոխանակ հացի ճաշակէր, և զըմպելին արտասուօք խառնէր. և անմխիթար միշտ լինէր, մինչև յիշումն ոյ ուրախ զնա առնէր. թէ որ ստեղծն, նոյն և գթացի հայրաբար։ Որոյ 'ի դառնագոյն վշտամբերութենէն նեխեին վէրքն և փտեին յինքեան. և ոգին նորոգէր 'ի ցաւոց մարմնոյն և լոյս մտացն վերստին արծարծէր. և շնորհք մարգարէութեանն 'ի նմին մնայր. և օրինակ բարի իւր զղջացելոց լինէր որոց ասացաւ. զի ած հաշտէր, և ընդ սատեացս և հանդերձելոցն լինէր ժառանգաւոր։

Որպիսի ոք և պօղոսն էր. անօթն ընտրութե, տեսօղն դրախտին փափկութե, փողն տարսօնացի, քարոզն հեթանոսաց։ Որ ընդ ամենայնի իւր լինէր. որ ասէր յայտնապէս, * Ո՞ հիւանդանայ և ես ոչ հիւանդանամ. ո՞ գայթակղի և ես ոչ տապանամ։ Որոյ զայրանայր հոգին յորժամ յանաստուածութե զոք տեսանէր. և 'ի վանազան հնարս մտանէր զփրկութի մարդկան շահել։ Եւ սկսեալ յերուսաղէմէ մինչև 'ի լիւրիկէ լի առնէր զաւետարանն, աշխատասէր ստիպքն անձանձիր միշտ ընթանալով։ Որ և գորովագութ սիրով դողայր միշտ 'ի վր աշակերտելոցն, և 'ի ձեռն գրոց զյողդողդեալսն վերստին միշտ հաստատէր և կազմէր ժողովուրդ սեպհական ոյ, նախանձաւոր գործոց բարութեան։ Եւ զայլապէս աւետարանօղսն արտաքոյ իւրոց քարոզելոցն՝ նզովից մտանէր, թէ և երկնային ոք լինէր հրեշտակ։ Որ և ըղձիւք ևս խնդրէր նզով լինել 'ի քէ վասն մարմնաւոր ազգականացն, թէ հնար լինէր փրկութեան հասանել։ Այն՝ զոր երկնի և երկրի և սատեացս և հանդերձելոցն և թէ այլ արարածք լինէր՝ անհնար էր մեկնել 'ի սիրոյն քէ։

Յաղագս որոյ 'ի հրէից հնգիցս քառասուն՝ միով պակաս գանէր. երիցս ձաղկելով և միանգամ քարկոծ լինելով, և զտիւ և զգիշեր մի՝ յանդունդս ծովու տառապէր։ Որ զքրիստոսին վասն քի սիրէր և վասն նորին չարչարիւր. և զպակասութի չարչարանացն քի 'ի մարմնի իւրում միշտ լնոյր։ Որոյ աշխարհ 'ի խաչ ելեալն էր և ինքն աշխարհի. և քիւ միշտ խօսէր և զհոգին սուրբ յայտնապէս յինքեան ասէր. և զամենեսեան կամէր զի հանգոյն ինքեան ժուժկալեսցին. և կուսանաց զհաճոյից տեառն միշտ հոգալ ասէր. որ

Որ հասարակորդ առնէր զաղքատսն ստացուածոցն, և նեղութեանցն և վշտացն ուրախութիւն առնէր. դու գոնեայ սակաւ ինչ կարկառեա կարօտելոցն, և 'ի վիշտս մի՛ տրտնջար.

Աբրահամ ընդ հաւատոցն և զգործսն առնէր բարի՝ զօտարասիրութիւն և զհիւրընկալութիւն, և հող և մոխիր զինքն կոչէր. դու և զեկեալ հիւրսն մի՛ դարձուցաներ, և մեծամտութեամբ մի՛ ամբարտաւաներ. այլ ընդ խոնարհս զիջանիջիր.

Եթէ զայս առնիցես և զայլսն նմանս, ճշմարտապէս ծառայ այ գտանիցես և 'ի բարւոյ մասին լինիցես. և ընդ սրբոցն դասուց զանսպառ բարիսն և զանվախճան կեանս ժառանգիցես.

Որոց լեցի ամենեցուն մեզ հասանել, շնորհօք և մարդասիրութեամբ տեառն մերոյ և փրկչին յի քի. Ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն.

Կարգաւորութիւն հասարակաց աղօթից խաղաղականի ժամուն, որ կատարի 'ի դէմս հոգւոյն սրբոյ. Եւ ասի՝ Օրհնեսցից զՏէր յամ ժամ, և այլն որ 'ի կարգին.

Յաղագս խաղաղականին աղօթիցն.

Իսկ հանգստեան ժամու աղօթքն վասն զի կարգեալ է առ 'ի զմեզ զգաստացուցանել, և պարտիմք ուշիւ մտօք առ 'ի խորս նայել. զի կարող լինիցիմք օգտել առ 'ի գրելոցն յիշատակէ.

Իսկ արդ՝ հանգստեան կոչի աղօթք, և խաղաղական ասի. վասն զի օրինակ է իջանելոյն 'ի գուբ գերեզմանին. Իսկ որպէս 'ի մահիճ իջանելով հանգչիմք յաշխատութեց և խաղաղանամք 'ի խորհրդոց, զնմանութի բերեմք զմահուն հանգստեան և զխաղաղանալն 'ի զբաղմանց կենցաղոյս. Վասն որոյ և յորժամ 'ի մահիճս ննջիցեմք, պարտիմք զմտաւ ածել ասելով, ո՞ գիտէ եթէ օրինակս 'ի ճշմարտութիւն փոխեսցի. և այլ ոչ յառնեմ յանկողնոյս, այլ փոխեցիմ 'ի ննջմանէս 'ի ննջումն մահու. Նոյնպէս և 'ի յառնելն միշտ զմահն ասելով՝ ո՞ գիտէ եթէ յերեկոյն հասանիցեմք եթէ ոչ.

Բայց և զայսմանէ ոչ է արժան զանգիտանել․ զի եկեղեցիք հայաստանեայց բազում ինչ թերևրեալ են ՚ի սահմանէն, և ապաւեալ ՚ի կարգաց, զի զարևագալին աղօթսն ՚ի յառաւօտին յարեն և միայն աղօթս միջոց ոչ առնելով․ և շատք ևս այն են՝ որ ՚ի գիշերոյն աղօթսն յարեն։ Յառաջ քան զօրհնութիւնն և զթագաւորքն՝ ասեն, Երեքի անուն մին օրհնեալ, և յարուցելոց, և զառաւօտու զաղօթս։ Իսկ այլ սկսանին զօրհնութիւն և զթագաւորքն և զհարցն․ և յայժ անմտաբար է այս և անկարգ։

Իսկ զխաղաղականին աղօթքն՝ յերեկոյին ժամն յարեն, կամ յառաջ ասեն քան զերեկոյին ժամն զկնի սաղմոսին ասելով՝ ՚Ի տուէ կարդացի և գիշերի առաջի քոյ։ և թէ՝ Շնորհեա՛ անխռով զգիշերս։ և թէ՝ Խաղաղացո՛ զմեզ ՚ի գիշերիս։ և թէ՝ Պահեա՛ յերկիւղական գիշերիս։ և թէ՝ Փառաւորեա՛ զխաւարային խորհուրդս։ Իսկ այլք ասեն, Ես առ Աստուած կարդացի և լուաւ ինձ յերեկոյս։ Եւ յայժ ծաղու է արժանի։

Նաև այս ամենայն ՚ի տարապարտութէ լինի և յանփոյթ առնելոյ, ՚ի հոգւոց և ՚ի զբաղմանց կենցաղոյս, և ՚ի միշտ զերկրաւորս խորհելոյ քահանայից, և աշխարհական վարուք վարելոյ։ Զի շատք ևս այն են, որք ոչ գիտեն թէ յետ խաղաղականին աղօթից՝ այլ չէ արժան ընդ ումեք խօսել։ Նաև ահիւ և թողութե պարտ է ննջել, և յանկողնին հանդէս առնել մտացն թէ ՚ի մանկութէ մինչև ՚ի նոյն ժամն ինչ մեղք է գործեալ․ կամ յանցեալ աւուրն ինչ է սխալեալ բանիւ կամ գործով և կամ խորհրդով, և զղջալ յանկողնին։ Նաև մեք յառաջինկայս դարձցուք քան զոր հանդերձեալ եմք տեսանել եթէ տէր ուղղեսցէ ՚ի շաւ և յօգուտ լուսոյ․ և ոչ թէ ՚ի պարծանս անձին, կամ յարժանաւորութիւն ինչ ապաստան լինելով։

Եւ արդ՝ կարգեալ է ՚ի սկիզբն խաղաղականիս աղօթից բան ըստ պատշաճի որ ասէ,

Տէր Աստուած փրկութեան իմոյ ՚ի տուէ կարդացի և գիշերի առաջի քոյ։ ՚Ի սկիզբն բանիս խոստովանի զիշխանական տէրութիւն այս․ զի տէր է փրկութեան և Աստուած ողորմութեան․ որ միշտ խնամէ զարարածս իւր, և ունկնդիր լինի պաղատանաց որք կարդան առ նա ՚ի տուէ և ՚ի գիշերի․ որպէս ասէ, ՚Ի տուէ կարդացի և գիշերի առաջի քո։ ՚Ի տունջեան ասէ կարդացի վասն քաւութեան մեղաց իմոց, և այժմ ՚ի մուտ գիշերոյս զնոյն պաղատիմ։ Իսկ թէ ոք տիւ զբարեգործութեան ժամանակն ասէ, և գիշեր յորժամ ՚ի մեղս ինչ շաղախեցի՝ ոչ մեղանչէ։ Զի թէ ոք յորժամ առողջ իցէ հոգւով՝ վստահութե կարդայ․ այլ և ՚ի մեղանչելն չէ պարտ յուսահատիլ և կասիլ յաղօթից, այլ միշտ պաղատիլ առ տէր զի թողութեան

հայցէ։ Մեկնէ և մեղաւորին առ ած, *Ընդունիք զնա առանձինս զարդարութիւն իմ։ Ո՛չ այս վասն զղջման ... է և յաղաղախաղութիւն կոչելոյ։ Այլ զի բերանն է քահանայն ժողովրդեանն՝ ընդ ամենեցուն աղօթէ և վասն ամենեցուն պաղատի. և ասէ,

Մ՛տցեն աղօթք իմ առաջի քո տէր. խոնարհեցո ունկն քո 'ի խնդրուածս իմ։ Որպէս առ կուռանելիս ասացաւ թէ՝ *Աղօթք քո և ողորմութիւնք ելին յիշատակաւ առաջի այ։ Այլ մարգարէն ասէ, *Զհեծութիւն կապելոց լուաւ տէր. և թէ՝ *'ի նեղութեան կարդացի առ տէր և լուաւ ինձ և եհան զիս յանդորր։ Զայս հայցէ բան աղօթիցս. և ընդ փառաբանութեանն և գոհութեան մատուցանէ սուրբ երրորդութեանն։

Այլ ապա սկսանին սաղմոս չորք ըստ քառանկիւնեալ բնութեան. իսկ ոմանք հինգ սաղմոս ասեն ըստ հինգ զգայութեանցս մաքրութեան, և ըստ նախադրութեան գիշերային սաղմոսացն։ Այլ է առաջին որ ասի այս, 'ի կարդալ իմում լուաւ ինձ ած՝ յայսմ կենաղոյս ըստ արդարութեան, զի սատանայի չեմ ինչ մեղուցեալ։ Այլ թէ՝ Մատուցէք պատարագ արդարութեան զանձանցն պաշտօն։ Տէր մի սրտմտութեամբ քով յանդիմանիր զիս վասն մեղաց իմոց։ և Մինչև յե՞րբ տէր մոռանաս 'ի կենդանեաց յայս, որ է ժամանակ ապաշխարութեան։ Այլ ո՛չ մոռացօնք ոչ է. այլ վասն անտես առնելոյն ասէ։ Մինչև ցե՞րբ բարձրանայ թշնամին 'ի վերայ իմ։ Զի յորժամ դու վրէժխնդիր ոչ լինիս չարին, նա մեծաբանէ 'ի վերայ իմ։ Ա՛ծ որոյ Դարձ առ ինձ ած փրկելով յաղթէ որ ոչ է սուրբ 'ի բանս իւր։ Այլ զասուրբս ասա՝ իրաւ պարտ է իմանալ։ Առաքեա տէր զլոյս քո՝ որով զերծայց 'ի տգիտութեանց և խաւարանալեացայց զքեզ փրկիչ։ Աստուած յօգնել ինձ նայեաց, զի առանց քո չեմ բաւական յաղթել չարին. իսկ թէ դու օգնեսցես՝ թշնամին ամաչէ. և որք զքեզ խնդրեն՝ ցնծասցեն, զանուն քո մեծացուցանելով 'ի փրկչին քո։ Իսկ են ոմանք որ ասեն՝ և տէր զօրութեան ասեն, և պատշաճաւոր է։ Զի խաչին յիշատակ յանձն առա լինի. և պարտ է ասել զի երախտիք նշանին յայտնին և ած փառաւորի փառաւորեալն յաւիտեան։

նին , և աստուածադրեալ զինքն խաչին՝ ննջէր։ Այլ ահա զարհուրեցուցիչ դեւքն անդր հասեալ լինէին արհաւիրս առնելով . և հուպ եկեալ զնշան խաչին տեսանէին և ձիչ բարձեալ ասէին , եկայք ՚ի զարմացումն . անօթ ունայն՝ կնքեալ մատանեաւ . զի հրէայն ոչ ունէր զմկրտութիւն սուրբ աւազանին , և անդէն չիք լինէին դեւքն։ Իսկ հրէայն տեսեալ զզօրութիւն սրբոյ խաչին սխրանայր . և յարուցեալ յառաւօտուն ընթացեալ պատմէր եպիսկոպոսի քաղաքին և մկրտիւր։

Իսկ ՚ի մարմնական թշնամեաց զի փրկէ նշանն տէրունական՝ յայտ ՚ի մեծէն կոստանդիանոսէ է և յայլոց բազմաց . որք զօրացան նովաւ և յաղթեցին . և երևելի և հզօր եղեն ՚ի վերայ թշնամեաց։ Վասն որոյ զայս գիտելով՝ յամ ժամու և յամ իրս խաչիւն ամրացուսցուք զանձինս , ՚ի նստիլ ՚ի տան և ՚ի գնալ ՚ի ճանապարհի , ՚ի ննջել և ՚ի յառնել , ՚ի բանս և ՚ի գործս , ՚ի կերակուրս և յըմպելիս , և յամ շարժմունս . զի միշտ պահպանեալ լիցուք փրկական սուրբ խաչիւն։

Արժանաւորեա՛ տէր զերեկս զայս խաղաղութեամբ , և առանց փորձութեան անցո զմեզ . արժանի արա տէր զգիշերս զայս խաղաղութեամբ և առանց մեղաց պահելով։

Զի հոսանուտ ունիմք բնութիւն և փորձիչն միշտ դարանամուտ լինի առ ՚ի գայթակղեցուցանել զմեզ ՚ի զանազան փորձութիւնս և ՚ի մեղս . ըստ այնմ , *Ոսոխն ձեր սատանայ իբրև զառիւծ գոչէ . և խնդրէ թէ զո՞ կլանիցէ։ Այլ մեք թէ միշտ պնդապահիմք առ տէր խնդրելով զօգնականութիւն , փրկիմք ՚ի մեքենայից նորա և ՚ի խաղաղութեան վայելեմք։

Ընդ մեզ տէր ած , գիտասջիք հեթանոսք և պարտեցարուք . զի ած ընդ մեզ է։ Այլ լուարուք զայս ՚ի ծագաց մինչև ՚ի ծագս երկրի . զի ած ընդ մեզ է։

Հեթանոսն աստ կոչի եթէ դիւաց և եթէ մարդկան։ Այլ յորժամ զած ընդ մեզ ունիցիմք հաւատովք և բարեգործութեամբք , ամ հակառակորդ թշնամիքն ՚ի պարտութիւն մատնին . և ՚ի ծագաց մինչ ՚ի ծագս երկրի լսելի լինին սքանչելիք բարերարին այ։ Այլ ծանիցեն ճշմարտապէս թէ՝ *Մերձ է տէր առ այնոսիկ որ մաշեալ են սրտիւք . և զխոնարհս հոգւով՝ կեցուցանէ։ և թէ՝ *Զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր . աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա։

Այլ հզօրացեալքդ պարտեցարուք . զի ած ընդ մեզ է։ Այլ զի թէպէտ և դարձեալ զօրանայք , դարձեալ ՚ի պարտութիւն մատնեա-

ձեր․ զի ած ընդ մեզ է։ Եւ զխորհուրդն զոր խորհիք՝ խափանէ տր․ զի ած ընդ մեզ է։ Եւ զբանն զոր խօսիք, մի մնասցէ առ ձեզ․ զի աստուած ընդ մեզ է։

Բազմադիմի և զանազանք են խորհուրդք մարդկան առ՚ի նենգել, և ևս առաւել դիւաց․ որպէս ասէ մեծն Եւագրիոս եթէ՝ *Դևք միմեանց հակառակ են, և ՚ի մարդկան կորուստ միաբանին։ Եւ թէ՝ *Դևն պոռնկութե հակառակ է դիւին հպարտութեան․ զի զոր սա շինէ, նա քակէ զհպարտութիւնն յընկենուլն ՚ի պոռնկութիւն։

Եւ արդ՝ եթէ դևք և եթէ մարդիկ անյագաբար միշտ խոկան ՚ի նենգել որք յայնոսիկ են պարապեալ։ Եւ թէպէտ բազումանգամ յաղթահարին, ոչ երբէք դադարին ՚ի խորհելոյ զչար․ այլ դարձեալ հնարս խնամեն թերևս կարասցեն զամագիւս լինել, որպէս և ՚ի սևանայ կղզւոյն է յայտ․ վս֊ որոյ և զերգս ասի երգել ՚ի յայանիլ դաւաճանօղ թշնամեացն։ Եւ զոր օրինակ մեծ և կարծրագոյն վէմ յեզր ծովու հաստատուն կցէ, և բազմադիմի ալեաց յարուցմունք ոչ կարիցեն սասանել զնա․ այլ հաստատուն կայ և միայ յանշարժութեան։ Նոյնպէս որք հաստատուն յած կցեն խարսխեալք, և զշինուած առաքինութեանն ՚ի վերայ հաստատուն վիմին հաւատոյ կցէ արկեալ, թէ և ամ յողդողդմունք շարժեսցեն ՚ի մարդկանէ և ՚ի դիւաց մաքառիցեն, պարտաւորեալ դացին։ Մինչ զգուշանալ պարտ է ՚ի հանճոյն այ որով փրկութի գտանի․ իսկ եթէ և երբեմն արդարք մատնին ՚ի վիշտս և ՚ի նեղութիս, և այն ևս ՚ի թոյլտալոյ և ՚ի խնամոցն այ է վասն բազում իրաց։

Եւ՝ զի թէ փոքր ինչ կասեալ լինին արդարք յառաքինութէ և կամ մեծամտեալ ՚ի գործս բարիս, և թոյլտայ ած գալ փորձութեանց ՚ի վերայ այնպիսեացն զի զգաստասցին։ Եւ է՝ զի մատնէ ած երբեմն զարս արդարս ՚ի փորձութիւն վասն առաւել սիրոյ և մաքրմութեան․ զի երևելի լիցին յերկրի՝ և յերկինս պայծառասցին․ որպէս աբրահամ, յոբ, և դաւիթ, և այլք բազումք ՚ի սրբոցն։

*Բանզի յերկիւղէ ձերմէ մեք ոչ երկիցուք և ոչ խռովեսցուք․ զի ած ընդ մեզ է։ Եւ զտէր ած մեր փառաւոր արասցուք և նա եղիցի մեզ յերկիւղ․ զի ած ընդ մեզ է։ Եւ յուսացեալ եղիցուք մեք ՚ի նա՝ և նա եղիցի մեզ ՚ի սրբութիւն․ զի ած ընդ մեզ է։ Եւ յուսացեալ եղիցուք մեք ՚ի նա՝ և նա եղիցի մեզ ՚ի փրկութի․ զի աստուած ընդ մեզ է։

Որ յուսայ ՚ի տէր ասէ մարգարէն՝ իբրև զլեառն սիոն ոչ սասանեսցի․ զի լերինք շուրջ են զնովաւ հրեշտակաց բազմութիւնք և տէրն հրեշտակաց։ Եւ ոչ թողու զգաւազան մեղաւորաց ՚ի վիճակս

նին , և տեառնագրեալ զինքն խաչիւն՝ ննջէր։ Այլ ահա՛ զարհուրեցուցիչ դեւքն անդր հասեալ լինէին արհաւիրս առնելով. և հուպ եկեալ զնշան խաչին տեսանէին և ճիչ բարձեալ ասէին , եկա՛յք 'ի զարմացումն. անօթ ունայն՝ կնքեալ մատանեաւ. զի հրեայն ոչ ունէր զմկրտութի սուրբ աւազանին , և անդէն չէք լինէին դեւքն։ Իսկ հրեայն տեսեալ զզօրութի սրբոյ խաչին սխրանայր. և յարուցեալ յառաւօտուն ընթացեալ պատմէր եպիսկոպոսի քաղաքին և մկրտիւր։

Իսկ 'ի մարմնական թշնամեաց զի փրկէ նշանն տէրունական՝ յայտ 'ի մեծէն կոստանդիանոսէ է և յայլոց բազմաց. որք զօրացան նովաւ և յաղթեցին. և երևելի և հզօր եղեն 'ի վերայ թշնամեաց։ Վասն որոյ զայս գիտելով՝ յամ ժամու և յամ իրս խաչիւն ամրացուսցուք զանձինս , 'ի նստիլ 'ի տան և 'ի գնալ 'ի ճանապարհի , 'ի ննջել և 'ի յառնել , 'ի բանս և 'ի գործս , 'ի կերակուրս և յըմպելիս , և յամ շարժմունս. զի միշտ պահպանեալ լիցուք փրկական սուրբ խաչիւն։

Արժանաւորեա՛ տէր զերեկս զայս խաղաղութեամբ , և առանց փորձութեան անցո՛ զմեզ. արժանի արա՛ տէր զգիշերս զայս խաղաղութեամբ և առանց մեղաց պահելով։

Զի հոսանուտ ունիմք բնութի և փորձիչն միշտ դարանամուտ լինի առ 'ի գայթակղեցուցանել զմեզ 'ի զանազան փորձութիւնս և 'ի մեղս. ըստ այնմ , *Ոսոխն ձեր սատանայ իբրև զառիւծ գոչէ. և խնդրէ թէ զո՛ կլանիցէ։ Այլ մեք թէ միշտ պաղատիմք առ տէր խնդրելով զօգնականութի , փրկիմք 'ի մեքենայից նորա և 'ի խաղաղութեան վայելեմք։

Ընդ մեզ տէր ած , գիտացէ՛ք հեթանոսք և պարտեցարու՛ք. զի ած ընդ մեզ է։ Այլ լուարու՛ք զայս 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի. զի ած ընդ մեզ է։

Հեթանոսն ազգ կոչի եթէ դիւաց և եթէ մարդկան։ Այլ յորժամ զած ընդ մեզ ունիցիմք հաւատովք և բարեգործութեամբք , ամ հակառակորդ թշնամիքն 'ի պարտութի մատնին. և 'ի ծագաց մինչ 'ի ծագս երկրի լսելի լինին սքանչելիք բարերարին այ։ Այլ ծանիցեն ճշմարտապէս թէ՝ *Մերձ է տէր առ այնոսիկ որ մաշեալ են սրտիւք. և զխոնարհս հոգւով՝ կեցուցանէ։ և թէ՝ *Զկամս երկիւղածաց իւրոց առնէ տէր. աղօթից նոցա լսէ և կեցուցանէ զնոսա։։

Այլ հզօրացեալքդ պարտեցարու՛ք. զի ած ընդ մեզ է։ Այլ զի թէպէտ և զօրացեալ զօրանայք , դարձեալ 'ի պարտութի մատնեա-

ջիք. զի ած ընդ մեզ է։ Եւ զխորհուրդն զոր խորհիք՝ խափանէ տէր. զի ած ընդ մեզ է։ Եւ զբանն զոր խօսիք, մի՛ մնասցէ առ ձեզ. զի աստուած ընդ մեզ է։

Բազմադիմի և զանազանք են խորհուրդք մարդկան առ՚ի նենգել, և ևս առաւել դիւաց. որպէս ասէ մեծն Եւագրիոս եթէ՝ *Դևք միմեանց հակառակ են, և ՚ի մարդկան կորուստ միաբանին. և թէ՝ *Դևն պոռնկութեան հակառակ է դիւին հպարտութեան. զի զոր սա շինէ, նա քակէ զհպարտութիւնն յընկենուլն ՚ի պոռնկութիւն։

Եւ արդ՝ եթէ դևք և եթէ մարդիկ անյագաբար միշտ խոկան ՚ի նենգել որք յայնոսիկ են պարապեալ։ Եւ թէպէտ բազում անգամ յաղթահարին, ոչ երբէք դադարին ՚ի խորհելոյ զչար. այլ դարձեալ հնարս խնդեն թերևս կարասցեն դաւագիւտ լինել, որպէս և ՚ի սևանայ կղզւոյն է յայտ. վն որոյ և զերգս ասի երգել ՚ի յայտնիլ դաւաճանող թշնամեացն։ Եւ զոր օրինակ մեծ և կարծրագոյն վէմ յեզր ծովու հաստատուն իցէ, և բազմադիմի ալեաց յարուցմունք ոչ կարիցեն սասանել զնա. այլ հաստատուն կայ և մնայ յանշարժութեան. Նոյնպէս որք հաստատուն յած իցեն խարսխեալք, և պշինուած առաքինութեանն ՚ի վերայ հաստատուն վիմին հաւատոյ իցէ արկեալ, թէ և ամ յորդորդմունք չարաց ՚ի մարդկանէ և ՚ի դիւաց մերձենիցեն, պարտաւորեալ դարձցին։ Մի՛այն զգուշանալ պարտ է ՚ի հաճոյսն այ որով փրկութի գտանի. իսկ եթէ և երբեմն արդարք մատնին ՚ի վիշտս և ՚ի նեղութիս, և այն ևս ՚ի թոյլտուոյ և ՚ի խնամոցն այ է վասն բազում իրաց։

Եւ՛ զի թէ փոքր ինչ կասեալ լինին արդարք յառաքինութէ և կամ մեծամտեալ ՚ի գործս բարիս, և թոյլ տայ ած գալ փորձութեանց ՚ի վերայ այնպիսեացն զի զգաստասցին։ Եւ է՝ զի մատնէ ած երբեմն զսուրբս արդարս ՚ի փորձութիւն վասն առաւել սիրոյ և մտերմութեան. զի երևելի լիցին յերկրի՝ և յերկինս պայծառասցին. որպէս աբրահամ, յոբ, և դաւիթ, և այլք բազումք ՚ի սրբոցն։

*Բանզի յերկիւղէ ձերմէ մեք ոչ երկիցուք և ոչ խռովեսցուք. զի ած ընդ մեզ է։ Եւ զտէր ած մեր փառաւոր արասցուք և նա եղիցի մեզ յերկիւղ. զի ած ընդ մեզ է։ Եւ յուսացեալ եղիցուք մեք ՚ի նա՝ և նա եղիցի մեզ ՚ի սրբութիւն. զի ած ընդ մեզ է։ Եւ յուսացեալ եղիցուք մեք ՚ի նա՝ և նա եղիցի մեզ ՚ի փրկութի. զի աստուած ընդ մեզ է։

Որ յուսայ ՚ի տէր ասէ մարգարէն՝ իբրև զլեառն սիօն ոչ սասանեսցի. զի լերինք շուրջ են զնովաւ հրեշտակաց բազմութիւնք և տէրն հրեշտակաց։ Եւ ոչ թողու զգաւազան մեղաւորաց ՚ի վիճակս

արդարոց. վասն որոյ աներկիւղ միշտ լինին 'ի յարկածից թշնամեաց և անխռով խաղաղութե(ամբ) վայելեն 'ի սէրն նմ: Եւ տարբերելն ասէ ;
* Յոյս որ տեսանի՝ չէ՛ յոյս. այլ որ առ յապայս ակն ունելի է, և 'ի դէպ ժամանակի հանդերձեալ է կատարումն առնուլ: Զի թէ ոչ յուսայ որք վարձուց հատուցումն ընդունել 'ի կատարածի, առա-ջարկութեան բարեաց փոյթ ոչ կարէ առնել:

Զի թէ ոչ յուսայր աբէլ, հաճոյական պատարագ զխորդ-մատուցանէր նմ. և ենովս յուսով կոչէր զանունն նմ յօգնականութ(իւն): Որպէս և նոյ զամս հինգ հարիւր կուսութե(ամբ) այսու յուսով ան-ցուցանէր. վասն որոյ հաճոյ գտաւ նմ և երկրորդ աշխարհի սկիզբն եղև: Նոյնպէս և աբրահամ 'ի յոյս յայս զորդին իւր պատարա-գէր նմ. և հայր ազգաց բազմաց կոչիւր, և երդմամբ նմ զօրհնութիւն ժառանգէր: Տովբիթ և յոբ հայր համբերութեան գտանէր, օրի-նակ բազմաց լինելով. և յոյս վկայէր յայտնի լինել ամենեցուն: Այսու յուսով և մովսէս զտէր ապաւէնն կարդայր. և սովիմբ օրի-նադրէր ժողովրդեանն իսրայէլի: Նաև դաւիթ հալածական լինէր 'ի յոյս յայս. և մարգարէքն ամենայն յանգստոնջն իւրեանց նեն-գեալք լինէին:

Եւ զի՞նչ է ինձ երկայնել զբանս. առաքեալքն սովիմբ քարո-զէին ընդ տիեզերս նմ. ստեփաննոս քարկոծիւր. և վկայքն նմ նա-հատակէին 'ի յոյս յայս: Եւ զոր օրինակ հուր՝ զայլս 'ի բաց մաքրէ յոսկւոյ և սրբէ զնա, այսպէս և յոյսն որ առ ա̃ծ և համբերութիւն 'ի վիշտս՝ զոգիս մարդկան մաքրէ և սրբէ և փրկութե(ան) արժանացու-ցանէ, սիրելի և մտերիմ ծառայ նմ գործելով: Նաև յոյսն անսահ-ման և բացարձակ իմն է և ընդ նմ երկարաձգի. զի որքան է ա̃ծ, է և յուսալ 'ի նա: Եւ որպէս զնմ ինչ զոր տեսանէ ոք զչափ և զձև առնու և 'ի միտս իւր կշռէ զորքանութիւնն. իսկ զորս ոչ տեսանէ՝ անպարունակելի միայ և յանբաւս առնէ:

Նոյնպէս իմն և զյոյսն է տեսանել. զի որքան մտօք ոչ պա-րունակի, յև՛ս բարձրագոյն առնէ և օր ըստ օրէ պայծառանայ: Եւ յոյս երբեք զկայ ոչ առնու կամ մտօք ստակի, ոչ աստ և ոչ 'ի հան-դերձեալ աշխարհին: Ըստ որքան է ա̃ծ որոյ սանձս, է և յու-սով բարեաց ակն ունել ընդունել յաստուծոյ և տալ և յանվախճան կեանսն, հրեշտակաց և մարդկան և նմ բանական բնութեանս: Զի միշտ սրբէ և պայծառացուցանէ և ծածկեալս գործէ, և յա-ռաջադէմս առնելով միշտ 'ի նա:

Եւ աշխատաւորիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ ա̃ծ. զի ա̃ծ ընդ մեզ է: Զի որ օրինակ մարմնաւոր ծնունդքն մանկունք կոչին

ծնողաց, և պարծին նոքօք 'ի մէջ մարդկան. և ամ ուրեք յիշեն և խրախանան և 'ի բազմաց երանին: Ոչ է 'ի հիմն յօրհնութե մասին եդ ած զորդեծնութիւնն. և բարգաւաճեալս կոչեաց պատուաւորս երևեցուցանելով: Այսպէս և որք հոգևոր ծննդեամբն են սքան-չացեալ, հրաշալի երևին 'ի մէջ մարդկան և գովելի առաջի այ. և հա-մարձակութե ասեն՝ Ահաւասիկ ես և մանկունք իմ զոր ետ ինձ ած: Որպէս առաքեալ պարծանս իւր կոչէր զժողովուրդսն: *Զի ամ տուրք բարիք և պարգևք կատարեալք յայ շնորհին մարդկան ըստ առաքելոյ: *Եթէ չարչարիցի ոք 'ի ձէնջ սակ վասն քի՝ այն շնորհք յաստուծոյ է:

Եւ որք բանիւ վարդապետութե աշխատին՝ ծնօղք կոչին ըստ պօղոսի: *'Ի քս յս աւետարանաւն ես ծնայ զձեզ: Այլ և ծնօղս ունիմք 'ի մեզ ինքեանս զմիտս մեր. և մանկունս զոր 'ի ձեռն զգայութեանցս յղացեալ ծնանիմք ծնունդ, եթէ բարի և եթէ չար: Եւ ոչ չար ծնունդքն նախատինք են մարդկան և ամօթ, այսպէս և բարի ծնունդքն պարծանք են առ ած և առ մարդիկ: Եւ այս շնորհ միայն մարդկան տուաւ յայ, աճեցուցանել զքանքար պատուիրանին և զպարգևս շնորհին. զի հրեշտակք զայս ոչ ունին: Արդարև ոչ այսպէս արար ամ ազգաց տէր. և զգործս զայս ոչ շնորհեաց նոցա: Վասն որոյ զի՞նչ տացուք փոխանակ տեառն. այլ գոհութե զանուն նորին օրհնեսցուք հանապազ: Զի ոչ ըստ մե-ղաց մերոց արար մեզ, և ոչ ըստ անօրէնութեան մերում հատոյց. այլ ըստ բարձրութեան երկնից զօրացոյց զողորմութիւն իւր յեր-կիւղածս իւր:

Եւ ժողովուրդ որ նստէր 'ի խաւարի՝ ետես զլոյս մեծ. զի ած ընդ մեզ է: Եւ որ բնակեալ էք 'ի խաւարի և 'ի ստուերս մա-հու՝ լոյս ծագեսցէ առ ձեզ. զի ած ընդ մեզ է:

Մեծ լոյսն քս որ ասաց ես եմ լոյս աշխարհի, ճշմարտապէս ծագեցաւ հեթանոսաց ժողովրդեանն որ նստէին 'ի խաւարի կռա-պաշտութեան և 'ի ստուեր անհաւատութեան, միշտ դեգերեալ և տատանեալ յանձինս, ոչ ակն ունելով երբէք ծագման լուսոյն: Եւ զոր օրինակ՝ որ ընդ ծառով կամ ընդ քարիւ նստիցի՝ 'ի ստուե-րի է միշտ և ոչ ծագէ 'ի նա լոյս արեգականն՝ որքան 'ի ստուերն իցէ. իսկ յորժամ 'ի բաց յառնէ և արտաքս դիմէ առ լոյսն, տեսանէ ճշմարտապէս զպայծառութի լուսոյն: Այնպէս որքան ընդ մահու ստուերաւ նսեմացեալ նստէին մարդիկ՝ 'ի խաւարի անածութեան էին, և ընդ մահու գրաւեալ իշխանութեամբ և չարին վիճակեալ. ըստ այնմ, *Մահ հովուեսցէ զնս: Այսինքն՝ 'ի չարաչար ծառայութե

և վճիռս։ Նաև յորժամ այց առնէ մեզ՝ արժանին պարգևատրութեան ՚ի բարձանց և ընտրելոց, զկատարեալ արդարոց մերոց. և հրամայեաց դը-մէր յօժար կամօք՝ ՚ի յայն ա͞մ, ըստ խոստման աւետեաց բանին՝ * Գնացէք ընդ լոյս՝ մինչդեռ զլոյս ընդ ձեզ ունիք. զի մի խաւար ձեզ հասցէ։ Նոյնժամ կատարեսցի բանն հաւերժողին. * Տէր հովուեսցէ զիս և ինձ ինչ ոչ պակասեսցէ։ ՚Ի վայրի դալարոյ անդ բնակեցոյց և առ ջուրս հանգստեան սնոյց զիս։ Այսինքն զի ճշմարտապէս բնակիչքս ՚ի խաղաղութի և առատութեան մնչէս՝ առնուր զլոյսն մեծ գի-տութեան եկեալ հասանել։

Նաև քանզի մանուկ ծնաւ և որդի տուաւ մեզ. զի ա͞ծ ընդ մեզ է։ Նաև որոյ իշխանութի իւր ՚ի վերայ ուսոց իւրոց. զի ա͞ծ ընդ մեզ է։ Նաև որ կոչի անուն նորա մեծի խորհրդոյ հրեշտակ. զի ա͞ծ ընդ մեզ է։ Նաև սքանչելի խորհրդակալ. զի ա͞ծ ընդ մեզ է։ Նաև ա͞ծ հզօր իշխան. զի ա͞ծ ընդ մեզ է։ Նաև իշխան խաղաղութեան հայր հանդերձելոյ յաւիտենին. զի ա͞ծ ընդ մեզ է։

Նաև քանզի մանուկ ծնաւ մեզ և որդի տուաւ։ Բնութեանս վտանգելոյ ՚ի նախահօրն յանցանաց՝ մանուկ ծնաւ մեզ մարմնացեալ բանն ա͞ծ և որդի տուաւ խոստանացելոյս ՚ի բարեծնութի։ Նաև զոր օրինակ ծերացելոյ հօր՝ մանուկն ցուպ է և հաստատութի. այնպէս և հնացելոյ բնութեանս ՚ի մեղս՝ նորոգումն և հաստատութի և մխիթարութիւն տուաւ բնութենակից և աթոռակից հօր որդին. յոր օրհնեցան ա͞մ ազգ երկրի, և եկեղեցի ՚ի բազմորդութիւն անձեաց. ըստ այնմ, * Բազում եղեն որդիք ամլոյն առաւել քան զարամբւոյն։ Զոր և մարգարէն հիացմամբ ասէ, * Ո՞ լուաւ, ո՞ ետես, եթէ երկնեաց երկիր և ծնաւ ազգ մի ողջոյն միանգամայն։ Վասն զի երկնեաց սիոն և ծնաւ զմանկունս իւր։

Նաև որոյ իշխանութի իւր ասէ ՚ի վերայ ուսոց իւրոց։ Իշխանութիւն զխաչն է իմանալ. ըստ այնմ, * Չև էր հոգի. քանզի յ͞ս չև էր փառաւորեալ։ Նաև զի փառք և իշխանութի զխաչն կոչէ որպէս ասացաւ. զի փառքն այն է՝ որով թշնամին պարտի. և տ͞րն ՚ի խաչին պարտեաց զսատանայ։ Նաև յաղօթելն յորժամ ասէր տէրն, * Հայր փառաւորեա զորդի քո։ Նաև հայրական բարբառն վկայէր, և * Փառաւոր արարի և դարձեալ փառաւոր արարից։ Զի է զոր օրինակ իշխանութիւն իշխանին փառք կոչի իւր և պատիւ, այսպէս և տէրն խաչիւն եառ զիշխանութի ՚ի վերայ երկրի ըստ մարմնոյ. ըստ մարգարէին, * Տէր թագաւորեաց վայելչութի զգեցաւ։ Նաև ըստ իւրում տեառն բանին, * Տուաւ ինձ ա͞մ իշխանութի յերկինս և յերկրի։ Զի ա͞ծութեամբն յառաջ քան զյաւիտեանս էր իշխան ՚ի վ͞ր ա͞մ. իսկ մարմնով յետ խաչին ՚ի վերայ հաւատացելոց եառ զիշխանութի։

Նաեւ որ կոչի անուն նորա մեծի խորհրդոյ հրեշտակ եւ սքանչելի խորհրդակից։ Հրեշտակն պատմաւորի անուն է. եւ զի պատմաւոր եղեւ տէրն մեծի խորհրդոյ տնօրէնութեանն. վասն որոյ հրեշտակ կոչեցաւ մեծի խորհրդոյ. ըստ առաքելոյ, *Որ մտադիւրն ծառայեաց բազմաց։ Եւ թէ՝ *Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ ՚ի Քս եւ յեկեղեցի։ Իսկ զի ասէ, սքանչելի խորհրդակից. զի կամաւ հօր եւ հաճութբ հոգւոյն սրբոյ եղեւ մարմնաւորութիւն որդւոյն։ Նաեւ խորհուրդ գաղտնեան բանին այ՝ սքանչելեօք ծանուցաւ սրբոց մարգարէիցն. որպս ասէր մովսէս, *Մարգարէ յարուսցէ ձեզ տէր ած ձեր յեղբարց ձերոց։ Նաեւ դաւիթ, *Սքանչացաւ գիտութի քո յիս։ Նաեւ ամբակում, *Տէր լուայ քո լուր եւ երկեայ. տէր նայեցայ ՚ի գործս քո եւ զարմացայ։ Նաեւ ինքն տէրն առ հայր խորհրդաբար ասէր, *Հայր կամիմ զի որպս դու յիս եւ ես ՚ի քեզ, զի եւ սոքա ՚ի մեզ լիցին. զի եղիցուք կատարեալք ՚ի մի։ Որ է արդարեւ սքանչելի խորհրդակցութիւն։

Նաեւ ած հզօր իշխան. եւ իշխան խաղաղութեան հայր հանդերձելոյ յաւիտենին։ Զի իշխանութիւնն այ ոչ է իբր զմարմնաւոր թագաւորաց, որ երբեմն զօրանան եւ այլ երբեմն ակարանան. այլ իշխանութի նորա իշխանութի յաւիտենից, եւ տէրութի նորա յազգէ յազգ. զի տէր հզօր է զօրութբ, եւ տէր կարող ՚ի պատերազմի։ Նաեւ այն զի ասէ,

Իշխան խաղաղութե եւ հայր հանդերձելոյ յաւիտենին։ *Զի արար խաղաղութիւն ասէ առաքեալն արեամբ խաչին իւրոյ որ ինչ յերկինս եւ որ ինչ յերկրի։ Եւ թէ՝ *Մինչ թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ այ մահուամբ որդւոյ նորա։ Նաեւ ինքն տէրն, *Զխաղաղութիւն զիմ թողում ձեզ։ Զի քաղցր է խաղաղութեանն իրք եւ անխռովելի, եւ ոչ համարատուելի. զի ինքն ած է խաղաղութիւնն։

Նաեւ հայր ասէ հանդերձելոյ յաւիտենին։ Զի արարչութբ ոչ զամ արար յոչ էից, այսպէս եւ հանդերձեալ յաւիտեանն նմա է արարած։ Նաեւ արարչութբն հայր կոչի իբր զծնօղ եղելոցս եւ յառաջ բերող, յորոց փառաւորի միշտ.

Նաեւ զինի այսորիկ զհամբառնալ ձեռացն ասէ սրբութեամբ, եւ զխոստովանիլ խորհրդոց բանից եւ գործոց առ յառաջատեսն եւ ծածկագէտն, եւ յողորմութիւն այ միշտ յուսալ եւ խնդրել ՚ի նմանէ յիշման արժանի առնել, յորժամ վարձս բարեաց պարգեւեսցէ արժանաւորացն։ Զի եւ մեզ լիցի ողորմութի գտանել ՚ի նմանէ եւ ՚ի մի բերան փառաւորել զհայր եւ զորդի եւ զսբ հոգին ընդ վերնոցն դասուց. այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Յորդորակ։

Յանկասցուք և մեք ողորմութեան տեառն․ և խնդրեսցուք 'ի նմանէ զայցելութիւն 'ի դէպ ժամանակի․ զի մի՛ հարսնարանին արտաքոյ գտցուք որպէս յիմար կուսանքն․ որք եղկելի գտան քան զամենեսեան։ Ո՜ ի կուսութիւն ճնշեցին զմարմինս․ և ներութիւն և վշտօք զկեանս անցուցին․ և ժուժկալութեամբ պատերազմեցան․ և վասն որոյ հանդիսանային՝ վրիպեալ գտան․ և լուան 'ի Թագաւորէն եթէ ոչ գիտեմ զձեզ․ և ողորմելի կենօք զամօթի հարկանէին։

Այլ արդ՝ տէր մարդասէր և քաղցր ընդէ՞ր ոչ գիտես զմեզ․ վասն քո կուսութիւն նահատակեցաք․ վասն քո աղօթիւք և ճգնութեամբ տքնեցաք․ վասն քո ամ ներողութեանց և վշտաց ժուժկալութեամբ տարաք․ ընդէ՞ր ոչ գիտես զմեզ։ Ամէն ասեմ ձեզ ասէ՝ եթէ ոչ գիտեմ զձեզ․ ոչ զի ոչ պահեցէք կամ ոչ ժուժկալեցէք և ճգնեցայք 'ի գործ մշակութեան ձերոյ․ զի զոր արարէք գիտեմ տեսութիւ և վկայեմ ճշմարտապէս։ Այլ ընդէ՞ր ոչ գիտես զմեզ ով տէր բարերար։ Ո՜ ի կարօտեալսն ոչ կարեկցեցէք ձեռն յողորմութեան․ զի զմերկն ոչ զգեցուցէք․ զի զօտարն և զաղքատն անտես արարէք․ զի զփառանգելոյն ոչ ողորմեցայք․ զի զհիւանդս և զբանտարգեալս ոչ տեսիք․ զի զօտարս ոչ ժողովեցէք․ զի զվշտագնեալսն ոչ մխիթարեցէք․ զի զկեղեքեալսն և զբռնադատեալսն ոչ յանձանձեցէք․ վասն որոյ ասեմ եթէ ոչ գիտեմ զձեզ։

Աւա՜ղ թշուառութեանն․ աւա՜ղ եղկութեանն․ աւա՜ղ ողորմելի կենացն։ Ո՜ պատերազմ պատերազմեցան․ զնահատակութիւն նահատակեցան․ զճգնութիւն կրեցին, և 'ի հանդիսադրէն ոչ պսակեցան։ Որոց 'ի դէպ էր ասել, ով տէր բարերար և քաղցր և ողորմած․ 'ի զուր վաստակեցաք, 'ի զուր տարաք զկուսութիւն և զջան ամ արութեան և ժուժկալութեան՝ որովհետև զայդ էաք լսելոց։

Զարհուրեսցուք աղաչեմ, զարհուրեսցուք և առաւել ևս գողասցուք, և մի՛ մոռասցուք զսոսկալի կիրս զայսոսիկ․ մի՛ ապաստան լիցուք միայն 'ի պահս և յաղօթս, 'ի կուսութիւն և 'ի ճգնութիւնս։ Այլ թէ կամիմք ողորմութիւն գտանել յԱյ՝ ստասցուք և մեք զողորմութիւն յամ ժամ։ Այս զի ողորմութիւն 'ի սիրոյ գայ յառաջ, և սէր ամ է ճշմարտապէս․ և որ արտաքոյ է ողորմութեան՝ օտար է 'ի սիրոյ․ և որ 'ի սիրոյ օտար գտանի, յայտ է թէ հեռի առնէ զանձն յԱյ․ ապա յիրաւի ոչ գտանէ այնուհետև ողորմութիւն յԱյ։ Այս տես թէ յոր վիհ կորստեան ընկենու զմեզ անգթութիւն և անկարեկ-

ցութիւնն · զի զինչ այլ մեծագոյն կորուստ կայցէ քան զօտարա-նալն յԱյ և 'ի սիրոյ նորին ։

Եւ զայս գիտելով եղբարք՝ ստասցուք զողորմութի՛ն առատա-պէս յամ ժամ · զի 'ի դէպ ժամանակի գտցուք և մեք զողորմութիւն յողորմածէն Այ ։ *Չափ բարւոք առէ Թաթաղուն զեղուն շարժուն տացեն 'ի գոգս ձեր · և որով չափով չափէք չափեսցի ձեզ ։ Իսկ ողոր-մութիւն ոչ միայն 'ի գոյից է առնել և 'ի ստացուածոց , այլ և բա-նիւ վարդապետութեան խրատական հանճարով ։ Զի որչափ մեծ է ոգի քան զմարմին , մեծ է և ողորմելն ոգւոյ քան զմարմնոյ ։

Եւ զինչ և շնորհէ՛ Ած մարդոյ , զայն պաշտօնէ 'ի նմանէ 'ի գործել ։ Վասն որոյ Թէ ըստ հոգւոյ և Թէ ըստ մարմնոյ յարաժամ ստասցուք զողորմութի յօժար կամօք և զուարթառատ սրտիւ · զի և խոստացելոց բարեացն արժանի լիցուք շնորհօքն և մարդասիրութե Տեառն մերոյ և փրկչին յի քի ։ Ընդ որում հօր միանգամայն և հոգւոյն սրբոյ վայելէն փառք իշխանութի և պատիւ · այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից , ամէն ։

Երանելւոյն Խաչատրոյ առ Բրուդիեն ։

Միաբանութե ամենեքեան գոհացարուք զՏեառնէ որ իւ-րով ողորմութեբն առաջնորդեաց մեզ 'ի գործս առու-ջեան ։ Համապատ 'ի քարոզութեան զմիաբանութիւն խնդրէ · զի այնպէս առնել լինի գոհութի և խնդիրքն յԱյ ։

Գոհացարուք զՏեառնէ որ իւրով ողորմութեբն առաջնորդեաց մեզ 'ի գործս առունջեան ։ Քանզի 'ի նմանէ է ամ գործոց մերոց յաջողուածք և ամ պիտոյից մերոց լրումն ։ Զոր Թէ և մեղաւորք իցեմք , ողորմութեբն զամ պէտս մեր պարգևէ ։ Ծագէ արեգակն չարաց և բարեաց · և տեղայ արդարոց և մեղաւորաց ։ Բանայ զձեռն և կերակրէ զամենեսեան քաղցր կամօք իւրովք · այլ և պաշտպանէ զամենեսեան , ոչ զմարդիկ միայն , այլ և զանասունս ։

Արդ՝ հրամայէ գոհանալ վասն առունջեան գործոյն և պիտոյիցն և առողջութեանցն · ասա և զայն Թէ , Շնորհեաց գալ 'ի հանգիստ գիշերս ։

Հաստոյց առէ զամենեսեան 'ի գիշերս խաղաղութե 'ի հանգիստ ժամանակս ։ Արդարև մեծ է ողորմութիւն Այ առ արարածս իւր · բայց առաւել մեծ պարգևք են գիշերոյն հանգիստք · յորում ամ

աշխատեալք եւ ծախեալք գործովք եւ հոգւովք, եւ որք հարկին 'ի բռնաւորաց յազգի ազգի տաժանմունս. եւ վտանգեալք բազմադէմ վշտօք, դադարին յիւրաքանչիւր արկածից. եւ գիշերային փոքր մի յիւրաքանչիւր կրից եւ աշխատութեանց թեթեւացեալ լինին։ Քանզի որպէս կարծեմ, լիալուսին հաւասար բոլոր գիշերացդ վասն այնորիկ ոչ կարգեաց Ած, զի մի՛ սովորեցուք կամայ եւ ակամայ խոնջել յիւրատուընջեան գործոցն. այլ յոր փոփոխմամբ՝ 'ի հանգստեանն մխիթարութեան անզերծ մնասցուք։ Իսկ թէ կարի հարկս հանդիպեսցի 'ի գործս կամ 'ի ճանապարհ, զայն լնուցումք լուսով աւուրս ինչ. եւ զհանապազորդեան հանգիստ գիշերոյն մի՛ մոռասցուք։ Այս ըզ հանգստեանն պէտս պահպանութեն՝ աղաչել հրամայէ. վն այնորիկ

Իսկ մեք աղաչեսցուք զբարեգութն Ած լինել պահապան անձանց մերոց. եւ նա իւրով ողորմութեն պահեսցէ զմեզ անխռով 'ի տուէ եւ 'ի գիշերի։

Տեառնէն, դարձեալ ողորմութե լսել վստահացուցանէ զաղաչանսն. վասն որոյ եւ ասէ, Աղաչեսցուք զբարեգութն Ած, եւ նա իւրով ողորմութեամբն պահէ անխռով զտիւ եւ զգիշեր։ Անխռովն՝ անփորձ է։

Իսկ առաջնորդեալ հաստատեսցէ զմեզ յաւիտենական ուրախութիւնսն, զոր խոստացաւ տալ սիրելեաց իւրոց Ճշմարիտն Ած։

Ոչ միայն 'ի խաղաղութեան կալ աղաչէ զբարեգութ եւ զողորմած տէրն, այլ եւ առաջնորդել յարդարութի եւ հասուցանել յաւիտենական ուրախութիւնս։ Յաւիտենական ասէ անսպառն. զոր անմահութե վայելեն սուրբքն յանվախճան կեանսն, ըստ անսուտ խոստմանն Ճշմարտին Այ. որպէս ասէ, Յս Քս Տր մեր կեցո եւ ողորմեա։

Նորին վասն Աղօթիցն։

Տէր բարերար որ մեծաւ գթութեամբ քով պատրաստեցեր զյաւիտենական հանգիստ առաքինութե աշխատելոցն։ Բարերար ասելով՝ զբարիսն որ 'ի նմանէ 'ի հոգի եւ մարմին շնորհեցաւ, յիշելով գոհութիւն մատուցանեմք։

Մեծաւ գթութե քով պատրաստեցեր ասէ զյաւիտենական հանգիստ առաքինեացն. Գութդ քո մեծ եւ անչափ՝ ստիպեաց պատրաստել զայն զանչափ զանճառ եւ զանվախճան հանգիստն. զի սակաւ ժամանակս աշխատեալ՝ յաւիտենական ընդ քեզ հանգիցեն։ Իսկ ոչ

միայն տուաքինեացն պատրաստեցեր զայն, այլ և զմեղաւորս կոչեցեր ապաշխարութի՛ւ: Վասնզի ասացեր՝ *Եկա՛յք առ իս ամ՛ աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ: Այս է զոր աղօթիցս բան առէ,

Կոչեցեր առ քեզ քաղցր ձայնիւ զծանրաբեռինս և զտարժանեալս մեղօք, հանգիստ նոցա խոստանալով: Քաղցր է արդարև՝ ձայնն այն որ զմեղաւորս յապաշխարութի՛ւն կոչէ. որ ոչ միայն ազատէ ՚ի տանջանաց, այլ և արքայութեան հանգստեանն արժանացուցանէ ընդ սուրբս իւր: Զմեղացն ծանրութիւն բեռն ՚ի բաց բառնայ ՚ի նոցանէ, և յանպատում կեանսն առաջնորդէ յանմահ և յանանց հանգիստն:

Շնորհեա՛ և մեզ տէր անխռով հանգստեամբ զգիշերս անցուցանել: Աղաչեմք զի զհանգիստ քնոյ զոր ետ մեզ՝ շնորհեսցէ անխռով. զի ոչ դեւք և ոչ ՚ի գազանաց և ՚ի սողնոց կամ յայլ անասնոց կամ ՚ի մարդկանէ վնասել կարասցեն. և ոչ զարհուրանք երազոց տագնապեցուցանեն. այլ խաղաղական հանգստեամբ զտկարութիւնս մեր զօրացուցանել: Եւ ապա յետ այսր վասն միւսոյ հանգստեանն զբանն յառաջ ածէ:

Եւ ՚ի ծանրութենէ մեղաց զաշխատեալքս յապահովացս ողորմութեամբ քով: Որդ՛ մարդասիրութե՛ զմարմնաւոր աշխատութիւնս նորոգես հանգստեամբ գիշերոյն, այսպէս և զհոգիս մեր զաշխատեալս ՚ի մեղաց յապահովեցո. այսինքն է դադարեցո յալէկոծութենէ մեղաց: Ոչ ըստ արժանի մերոյ ապաշխարութեան, և կամ ՚ի բարին յառաջանալոյ. այլ՝ ողորմութեամբդ քով. զի և քո ողորմութիւնդ իսկ է պատճառ ՚ի մեղաւորս խնայելոյ և յապաշխարութի՛ կոչելոյ: Որով և զմեզ յապահովս արասցես յամ՛ մարմնաւոր ցանկութեց, որ զհոգւորին ընդ դէմ ոգւոց: Եւ ՚ի պարկեշտ և ՚ի խաղաղարար և յարդարավարօրով կեանս փոխեսցես: Այս և վասն երրորդ բուն և անսպառ և ուրախալից հանգստեանն պաղատի:

Արժանաւորս արա՛ զմեզ մշտնջենաւոր հանգստեանն ընդ ամ՛ սուրբս քո: Վասնզի զսուրբս քո որք աստէն ընդ նեղութիւնս և ընդ աշխատութիւնս անցին վասն սիրոյ քո, առ քեզ ժողովեալ հանգուցանես յայն երկայն ամին անչափութեան:

Որում հանգստեան և զմեզ արժանաւորեսցես, և ընդ նոսին արժանացուսցես քեզ փառս և գոհութիւն մատուցանել: Վասնզի յայն ամս յարէ ՚ի նոյն,

Եւ ընդ նոսին փառաւորել զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին· այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Պարգևատու բարեաց և աղբիւր խաղաղութեան տէր ա̃ծ մեր։ Տեսանեմս, համակ զբարութեանցն ա̃յ նախ գոհանալով. խրատեն զմեզ սուրբքն, և ապա խնդրել զոր ինչ խնդրելն կամիցիս։ Զի այս գործ շնորհակալու ծառայիցն է՝ հանապազ գոհանալ ըզ պարգևատուէն։ Յառաջնումն գրուածն այսպէս դնէ զսկիզբն. Տէր բարերար՝ որ մեծաւ գթութեամբ քո պատրաստեցեր զյաւիտենական հանգիստն, և որ զկնի։ Իսկ յերկրորդումս, Պարգևատու բարեաց և աղբիւր խաղաղութեան տէր ա̃ծ մեր։ Գրեթէ ըզ յակոբայ առաքելոյ զբանսն երկրորդէ՝ որ ասէ, *Ամենայն տուրք բարիք և ա̃մ պարգևք կատարեալք ՚ի վերուստ են իջեալ առ ՚ի Հօրէն լուսոյ։ Զայն և սուրբ լուսաւորիչն մեր ասէ, վասն ա̃յ թէ՝ Աղբիւր է ա̃մ բարեաց. և ՚ի նմանէն բաշխին պարգևք յարարածս։ Արդ՝ գոհացեալ զպարգևողէն զբարիս և զխաղաղութիւն բղխողէն աղբիւրաբար, մաղթէ զխաղաղութեան բարիսն որ լաւագոյն է քան զա̃մ պարգևս. առանց որոյ և ոչ այլ բարիքն հաստատին։

Յամենայն սատանայական խռովութեանց խաղաղեցո զմեզ և զխորհուրդս մեր ՚ի գիշերիս յայսմիկ և յամենայն ժամանակի։

Բազում պատերազմունք են սատանայի և դիւաց ընդ մեզ և ընդ խորհուրդս մարդկան զանազան կարծիք։ Եւ որ խաբեն զչարն բարի ցուցանելով. և է որ անհնար զառաքինութիւն դնէ և քաղցրացուցանէ զմեղսն։ Եւ որ յամօթոյ կամ յերկիւղէ կամ յաշխատանաց՝ ՚ի մեղս զառածեն. է որ ՚ի ձեռն մարդկան չար գրգռեն ՚ի չարիս։ Եւ զի և բռնութեամբ մարդկան պատերազմէ ՚ի դարձուցանել զմեզ ՚ի չարիս։ Եւ զի և զարհուրանս և երկիւղս արկանէ ՚ի քուն կամ յարթուն առաջի երևմամբ, կամ յոգիսն՝ կերպարանէ արհաւիրս տեսիլս և երևմունս. կամ ՚ի քուն երկեցուցանէ ազգի ազգի դիմօք և իրօք, և ՚ի մեղս ևս խոնարհեցուցանէ. և երազս բազումս և պատիրս խաբս բազմապատիկս ցուցանէ։ Զայս և որ սոցին նման խռովութիւնս ՚ի վերայ մարդկան բերէ։ Այն է զոր ասէ, Յա̃մ սատանայական խռովութեանց խաղաղեցո զմեզ և զխորհուրդս մեր ՚ի գիշերիս յայսմիկ և յա̃մ ժամանակի։ Այս յարէ ՚ի նոյն.

Որ̃ զի առաջնորդեալք յանցաւոր կենցաղոյս։ Իբր ՚ի սատանայական հաղբից փրկեսցես զմեզ, կարասցուք զարժանն գնալ

տուարակ։ Զորմէ և զվերցուցանելն խնդրէ և զողորմելն. և զամենեսեան ՚ի նոյն յորդորէ ասելով՝ տէր ողորմեա. զի հայր է քարոզօղն ժողովրդեանն։

Այլօք։

Շնորհատու բարեաց՝ տուր անմահ տէր, փարատեա յանձանց մերոց զաղջամղջին և զխաւարային խորհուրդս. ՚ի պատրանաց բանսարկուին պահեա զմեզ. և շնորհեա հաւատով պայծառանալ յամենասուրբ երրորդութիւնդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Զանազանք են շնորհք բարեաց հեղեալ յարարչէն ՚ի յարարածս իւր։ Այլ են տուեալ մարդկայինս բնութե ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, և այն տուեալքս են և լիապատար ըստ մեծամեծութեան արարչին։ Այլ զի անմահ է բաշխօղն շնորհաց, անմահ է և շնորհն իւր յարարածս իւր։

Բայց դու տես ինձ և զոր մարդեղութեամբն քո և քարոզութե առաքելոցն ես տուեալ յաւէտս առ հաւատացեալ քրիստոնեայս. որպէս և ա̃ծաբան աւետարանիչն ասէ յովհաննէս, * Տեսէք եղբարք՝ որպիսի շնորհս ՚ի ձեռն իմ ետ ձեզ ա̃ծ, որպիսի ձիրս, որպիսի պարգևս; և որ ՚ի կարգին։ Այս բազումք են այն են, որ այժմ ոչ երևին զգալի աչացս այսոցիկ. այլ ՚ի դէպ ժամանակի ծանուցեալ լինին իմանալի հարանարանին։ Այլ թէ կամիս նկատել ինչ փոքր ՚ի շատէ զառաւելութի շնորհին, նայեաց ՚ի բարբարոսսն և յանքրիստոնեայսն, և տես թէ յորպիսի շնորհաց զրկութենէ են զրկեալ. և ծանիցես զունողացս առաւելութի, և գոհասցիս զտուօղէն։ Բայց ոչ է պարտ միայն ՚ի շնորհսն պարապական լինել. զի զհեղգացեալսն և զքանքարաթաքոյցն դատապարտեաց տէրն, իսկ աճեցուցանողացն փոխան բարիս հատոյց։

Փարատեա ասէ յանձանց մերոց զաղջամղջին և զխաւարային խորհուրդս, ՚ի պատրանաց բանսարկուին պահեա զմեզ։ Աղջամղջին ասէ և խաւարային, վասն զի խաւարն յայտնի ցուցանէ թէ ձախակողմեան է պտուղ, բայց քաղցրութեամբն մեղկէ և պատրէ։ Իսկ աղջամուղջն՝ մասն ինչ լուսոյ ունելով ընդ խաւարի, որով զպարզամիտսն դիւրաւ գթեցէ։ Իսկ որք զտէրն զօրավիգն ունիցին՝ յայսպիսեացս դիւրաւ զերծանին և շնորհի տեառն արժանանան, որպէս և հետակայ բանս ցուցանէ։

Շնորհեմ հաւատով ապաւինել յամենասուրբ երրորդու-թիւնդ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Վասն զի առանց հաւատոյ ամ ինչ անկարելի և ոչ աւազաշէն տունն է, և ոչ տունն հաստատութի․ զի հաւատն հիմն է ամ բարեգործութեան։ Վասն և տէրն հրամայէ թէ՝ *Զամ ինչ որ հաւատով խնդրէք՝ առ-նուցուք։ Նա զամ ասելով՝ եցոյց թէ՝ ուր բոլոր հաւատ իցէ, ոչ ինչ լինիցի անհնարին թէ և ՚ի կարի մեծագունիցն իցէ։ Վասն որոյ ասէ, շնորհեմ հաւատով ապաւինել յամենասուրբ երրորդու-թիւնդ՝ ոչ միայն այժմ և միշտ որ է աստի կենաց ընթացս․ թէպէտ և աստ գոն յաւիտեանք, այլ և յանծերանալին յաւիտեանս յա-ւիտենին։

---

### Յորդորակ։

Եւ մեք կալցուք ընդ առաջնոյս յանձինս մեր զհաստատութի հաւատոյն, յորդորել հանապազօր ՚ի գործս բարիս, ՚ի վերայ հաստատուն վիմի հիմունս արկանելով, և զշինուածս առաքի-նութեան գեղեցկայարմար յօրինելով։ Ո՛չ միայն ՚ի հաւատս ապաս-տան լիցուք․ զի մի՛ հրէականին նմանեսցուք ժողովոյ որ ասէինն, *Տաճար տեառն՝ տաճար տեառն։ Այսինքն թէ՝ որչափ տաճարս այս չէն է ՚ի միջի մերում, մեք հանգիստ եմք ամ և ոչ երբէք սասանես-ցուք․ այլ միշտ զուարճացեալք լիցուք։ Թէպէտ և գործս ոչ ու-նէին, զայս այսպէս կարծէին և յանձն ապաստան եղեալ յօրինայինս։ Որոց ասէր երեմիաս, *Տաճար տեառն է, բայց զայս գիտասջիք, զի երուսաղէմ կալթայ է ոչ ասէք․ և դուք մեռս որ եփիք ՚ի սմա վասն չարաց գործոց ձերոց։ Որպէս և եղեւ իսկ․ զի եկն բաբելացին այր-եաց զերուսաղէմ և զտաճարն, և զբնակիչս ՚ի նմա սատակեաց․ և ըզ-մնացեալսն գերի վարեալ եմուծ ՚ի բաբելոն։ Վասն մկրտիչն յովհան-նէս սաստէր նոցա ասելով, *Մի՛ համարիք ասել յանձինս թէ ու-նիմք հայր զաբրահամ․ ասեմ ձեզ՝ թէ կարօղ է ած ՚ի քարանցս յարուցանէ յարուցանել որդիս աբրահամու։ Որպէս և եղեւ իսկ․ զի յա-րոյց զքարացեալ հեթանոսս վերստին ծննդեամբ աւազանին․ ոչ միայն որդիս հաւատոցն աբրահամու, այլ և յորդեգրութի հօրն երկնա-ւորի և յեղբայրակցուն քի։ *Զի որք ՚ի քս մկրտեցայք՝ զքս զգեցայք։

Վասն որոյ առաւել զգուշանալ պարտ է, զի մի՛ վրիպեսցուք ՚ի շնորհացս զոր ընկալաք։ *Զի ոչ եթէ դու զարմատն ՚ի

վեր ունիս առ Աստուածն, այլ ողորմածն գթեաց. զի դու ՚ի բուն ոստն պատուաստեցար: Եւ զի նա վասն չարութեան անկա- բարուիք է. և դու վասն բարւոյ պատուաստեցար: Զգո՜յշ լեր, դու- ցէ և դու անկանիցիս. զի որ ՚ի բուն ոստն ոչ խնայեաց, և ՚ի քեզ ոչ խնայեսցէ. եթէ մեղիցես և ոչ զղջասցիս և ապաշաւեսցես:

Նա զայս գիտելով սիրելիք՝ սրբեսցուք զանձինս մեր ՚ի մեղաց. կատարեսցուք զսրբութի անձանց մերոց ահիւն Տն: Մի յապաղեսցուք խոստովան լինել Նմա զմեղս մեր արտասուօք և ապաշխարութբ: Մի երբեք ճգնեալ և այսօր հեղգացեալ, կամ այսօր ջերմացեալ և վաղիւն գինըմպու: Միանգամ սգացեալ վասն մեղաց, և դարձեալ խրախացեալ անհոգութեամբ. զի ոչ եթէ երկրորդումք ոտիւք կաղայցէ որ և ոչ յայս լիցի: Նա ոչ միով ոտամբ յերկինս և միով յերկիր հայիլ ումեք հնարաւոր է, և ոչ երկնաւոր և երկրաւոր միով հաճոյանալ աստուծոյ:

Զի որ երբեմն շինէ և երբեմն քակէ, ոչ կարէ յաւարտ հասանել: Նա զի սէր աշխարհիս թշնամութի է առ Ած, ոչ յայտ առնէ Ածային առաքելականին յովհաննէս: Սա է քաղցնուլն և սաստ է ծարաւելն. զի յետ սատեալս վճարելոյ՝ դուռն ապաշխարութեն այլ ոչ գոյ: *Ահաւասիկ ժամանակ ընդունելի առ Աստուած, ահա օր փրկութեան. մի և մի ոք տայցէք պատճառս զի մի արատեսցի պաշտօնն: Զի հեղգութի և ծուլութիւն յորժամ մտեալ գտանէ ՚ի փոքրէն ՚ի մեծն ելանէ չարն, որպէս և եղև կորուսանն Իսրայէլի:

Վասն որոյ առաւել զգուշանալ պարտ է, զի մի զրկիցիմք ՚ի սատանայէ: Զի դրունք են զգայութիւնքս ՚ի քաղաքի բնութեա մերում. այսինքն է տեսանելիք, լսելիք, հոտոտելիք, ճաշակելիք, շօշափելիք: Նա այսոքիւք ամենեքումբք կռուի ընդ մեզ սատանայ. և ջանայ ՚ի ներքս վազել ընդ դրունս ընդ այսոսիկ զի ըմբռնեսցէ զամրութի քաղաքիս մերոյ. և ՚ի ներքուստ ՚ի դուրս դիւրաւ մարտնչիցի և յաղթիցէ մեզ:

Նա մեր զայս գիտելով՝ պարտիմք արթուն լինել միշտ և պատրաստ և կազմ. զի մի յանպատրաստից ըմբռնիցիմք: Զի որքան հսկէ տանուտէրն, գողք ոչ կարեն ական հատանել և գողանալ. այլ խոյս տուեալ փախիցեն: Գրեալ է ՚ի վարս հարանց եթէ՝ ճգնաւոր մի զերկոտասան ամ ՚ի պատուհանս և յօրէնս տեսան միշտ խոկայր և խորհէր: Նա զերկոտասան ամսն զայնոսիկ դեւն ՚ի դրանն կալով՝ ոչ կարէր ՚ի ներքս մտանել: Նա յորժամ դադարեաց և թուլացաւ ճգնաւորն ՚ի բարի խորհրդոցն, տեղի եգիտ դեւն և վազեաց ՚ի ներքս և ըմբռնեալ զմիտս ճգնաւորին ցնորեցուցանէր:

Վասն որոյ բազում հոգս յանձին բերել պարտ է. և բազում փորձս սատանայ 'ի Ձեռս առաքինութեան, զի 'ի բազում մեքենայից չարին զերծեալ գտանիցիմք. զի ոսոխն մեր սատանայ գոչէ ըստ առաքելոյն պետրոսի և խնդրէ թէ զո՛ կլանիցէ. զի անյագ է 'ի չարիս նենգութեանն, և երբեք հերիք ոչ առնէ. Այլ թէ 'ի դրախտէն խաբէլովն սա զմեզ ընկեց յերկիր անիծից և ընդ ծառայութեամբ գրաւեաց, ապա աստի յորժամ խաբիցէ՝ ո՞ւր կամիցի ընկենուլ. եթէ ոչ՝ յանդունդս դժոխոց։

Այլ արդ՝ զմտաւ ածցուք թէ վասն է՞ր եկաք յաշխարհս յայս. զի ոչ զօրէն անասնոց կայտառեսցուք 'ի վերայ երկրի զպորտ և զորովայն լնուլ. Զոր և առաքեալն նախատէ ասելով՝ *Կերակուր որովայնի և որովայն կերակրոյ. և ած զսա և զնա խափանեսցէ։ Զի մարմին ցանկայ հանապազ հակառակ հոգւոյ։ Այլ մեզ պարտ է զգուշանալ և գործել հակառակ մարմնոյ. որով կարասցուք մեզ յաղթող գտանիլ 'ի պատերազմի։

Այլ արդ՝ զի պատկեր ստեղծողին այ. ըստ այնմ, *Արար ած զմարդն 'ի պատկեր իւր։ Պարտիմք զնմանութիւն սկզբնատպին 'ի մեզ ինքեանս բերել։ Այլ որո՞վ կարիցեմք բերել արարածքս զարարչին նմանութիւն, հողանիւթ բնութիւն գոլով և ընդ մարմնոյ կարեօք անկեալ և զգայարանօք կապեալ ոչ շղթայիւք ոմամբք։ Իսկ այ ձեռք և ոտք և կամ բնաւ զգայարանս ինչ իմանալ կամ կարծել՝ անմտութիւն մեծ է։ Զի թէպէտ և լսեմք այսպիսի 'ի գրոց, ըստ մերում տկարութեանս ձևացուցանեն զբանն զոր մեք սովոր եմք ասել. զի ընտելականաւն կարիցեմք իմանալ։ Որպէս այն զի ասեմք, խոնարհեցո տէր զունկն քո և լուր, բաց զաչս քո և տես։ Զարթի՛ր ընդէ՞ր ննջես, արի՛ և մի՛ մերժեր զմեզ։ Ա՛ռ զզէն և զասպար քո և արի՛ յօգնել ինձ։ Այլ ած այսմ ամենայնի ոչ պիտոյանայ. զի կամքն գործ է կատարեալ. *Ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան ոչ ասէ մարգարէն։ Ապա յայտ է թէ իմանալեաւն և ներքին մարդովն եմք պատկեր այ. որով յայտ է թէ գայ հնար նմանել այ ըստ կարողութեան մարդկան, անախտականութեամբն՝ սիրովն՝ և ողորմածութեամբն՝ և կարեկցութեամբն։

Աղօթեաց տէրն 'ի վերայ խաչահանուացն ասելով, *Հա՛յր թո՛ղ դոցա՝ թէ զղջասցին և դարձցին, զի ոչ գիտեն զինչ գործեն։ Այլ դու թէ ոչ այնպէս որդեգրաբար առ հայր, այլ ծառայաբար առ տէր. որպէս սուրբն ստեփաննոս առ տէր ասելով, *Մի՛ համարիր սոցա զայս մեղս։ Այլ որպ նա շահեցաւ զանօթն ընտրութեան և այս

բաղումս, այնպէս և դու շահեսցիս զյոլովս և պայծառասցիս հոգւով։ Արժանացոյց տէրն զմատնիչն սեղանոյն և զոտն լուանալոյ և համբուրել ևս բաղում ջանիւ և յօժարութեամբ. զի կամէր շահել զփրկութիւն նորա մինչև 'ի վերջին կատարածն, և նա ոչ կամեցաւ. այլ ապականեալ կորեաւ, ոչ վայելելով 'ի փրկութիւն փրկագործողին։ Անձինն մեղս դիցէ և ոչ այնմ որ կամեցաւն կեցուցանել, և ինքն ոչ յօժարեաց։

Լեր և դու անոխակալ առ թշնամիս քո. թէ քաղցեալ է՝ հաց տուր նմա. և եթէ ծարաւի է՝ ջուր մատո. թէ մերկ է՝ զգեցո. և թէ յարկի է կարօտ՝ և զայն պատրաստեա և երանելի լինիցիս։ Եւ մի՛ ոք ոգխաբար ընդդէմ բերցէ բանիս ասելով թէ՝ քո՞ յետ մահու՝ արքայութեան ընդէ՞ր ոչ արժանացոյց զյուդա և զխաչահանուան։ Մի՛ ոք յանդգնեսցի և մի՛ ոք անմտասցի զայսպիսիս խօսելով ոգխաբար. այլ ուսցի և տեղեկասցի, որով կարասցէ հասու լինել և 'ի վերայ կալ զօրութեան բանին։

Արդար է դատաւոր, և անիրաւ ոչ առնէ դատաստան. զի խնամարկելն 'ի թշնամիսն՝ յայսմ կենցաղումս է, և զայն ոչ արար պակաս տէրն։ Իսկ որք անզեղջ աստի գնան անդ, այլ բարեաց ակն ունել ոչ է, այլ պատիժ պատուհասի ըստ տէրունական հրամանին։ *Մեղաւորքն աստ երթիցեն 'ի տանջանս յաւիտենից, և արդարքն 'ի կեանս յաւիտենից։ և թէ՝ *Ոմանց յարութիւն կենաց և ոմանց յարութիւն դատաստանաց։ Եւ դու յորժամ լսիցես յա̃ծային գրոց թէ՝ *Բարի արարէք ատելեաց ձերոց և աղօթս 'ի վերայ նեղչաց։ Յայսմ կենցաղումս խնամ թէ քեզ պատուիրէ առնել, և ոչ թէ 'ի հանդերձելումն. զի անտի կենացն դու ոչ ես տէր, այլ արարիչն ամենայնի որ ակնկալութիւն է ամենեցուն և յոյս հանդերձելոյ աշխարհին։

Սա և մեծն յոյժ ոսկի կոչեցեալն բերան՝ իբր բարկանալով ինձ սաստէ այնոցիկ և վրէժխնդիր լինի այնպիսեացն՝ որք խօսիցեն այնպիսի հայհոյութիւն վասն ա̃յ. և ասէ այսպէս, *Իբր քարիւ աստ հարկանեմ զբերան քո բանիւ ա̃ծային գրոց վարդապետութեան։ Զի յաստի կեանս միայն հրամայեաց զբարի առնելն թշնամեաց. զոր և ինքն աստ միշտ և հանապազ արար, յանձնէ օրինակ տալով ամենեցուն ա̃մ բարեաց։ Եւ դու այժմ թող զհարիւր դահեկանի չափ պարտս ծառայակցին քում, զի և դու գտցես անդ 'ի տեառնէ բիւր տաղանդացն թողութիւն. մանաւանդ թէ ևս առաւել բազմապատկաց։ Զի այնչափ ոչ կարէ մարդ մեղանչել մարդոյ՝ որպէս մարդ ա̃յ միշտ մեղանչէ. և դու թէ թողցես աստ զակաւն, գտցես և դու անդ բազմին թողութիւն։

Վասն որոյ և տէրն յաղօթսն զայս հրամայէ ասել միշտ և հանապազ, *Հայր մեր որ յերկինս. թող մեզ զպարտս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց: Եւ սուտ են որք շրջեն զբանն և ասեն՝, թող մեզ զպարտս մեր և արժանի արա թողուլ մերոց պարտապանաց: Զի տէրն զբարին միշտ մեզ օրինադրէ. զի որչափ և ասէ որ թէ արժանի արա թողուլ որ պարտին մեզ, բնաւ ՚ի զղջումն ոչ եկեսցէ և ոչ հոգ տարցէ թողուլ: Իսկ յորժամ ասէ՝ թող մեզ որպէս և մեք թողումք, յայնժամ զարհուրի և դողայ և թողու զպարտս ընկերին. զի տէրն յայս միտս և եղանակ բանիս այսպէս եդ առաջի: Զքեզ ինքնդ ասէ արարիր դատաւոր կամաց քոց. զի թէ թողուցես, և յինէն գտցես թողութիւն. և թէ ոչ թողցես, ոչ և յինէն ակն ունիցիս: Դու անձին քում ողորմեաց. զի որով չափես չափով չափեսցի քեզ:

Եկայեալ ճշդիւ զգերամանձն մեղաց ՚ի քումարկանդ. և մի խուզեսցես խնդրել զշնորհս յակն եղբօր քում: Կազմութիւն մարմնոյս մերոյ ոչ է իբրև զայլ կենդանեացդ՝ որ զգլուխն ՚ի խոնարհ ունելով միշտ ընդ երկիր պշնուն, զայն միայն շահ օգտի համարելով զաւուրեայ գտեալ կերակուրն: Իսկ մարդոյս կազմութիւն կանգուն գոլով ՚ի վեր միշտ զհայիլն դուշակէ առ Աստուած. ըստ առաքելոյն. *Զվերինն խնդրեցէք հանապազ ուր Քրիստոս նստի ընդ աջմէ հօր. զվերինն խորհեցարուք. զի յորժամ Քրիստոս յայտնեսցի կեանքն ձեր, յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք: Արդ յաղիսի յայս խոստացեալ ունիմք և այսպիսի մեծագոյն պատիւ կայ մեզ առաջի. և մեք իբր զանասունս անմիտս ՚ի սատանայական խաղս յօժարիմք:

Ոչ միայն բաւական զատելութիւն ՚ի բաց բառնալ, այլ և սէրն ՚ի տեղւոջն անկել: *Զի Աստուած սէր է. և որ կայ ՚ի սէր նորա՝ յԱստուած բնակէ և Աստուած ՚ի նմա. որպէս ասացն: Եւ թէ՝ *Յայսմ ճանիցեն ասաց տէրն թէ իմ աշակերտք էք՝ եթէ սիրիցէք զմիմեանս: Եւ լրումն օրինաց սէրն ասացաւ:

Եւ դարձեալ ոչ է միայն բաւական զհպարտութիւն և զամբարտաւանութիւն ՚ի բաց ընկենուլ և զնորանձև ամբարհաւանութիւն, այլ և զխոնարհութիւն ստանալ և զհեզութիւն և զցած ոգի լինիլ: *Զի որ խոնարհեցուցանէ զանձն՝ բարձրասցի ըստ տէրունական հրամանին: Եւ թէ՝ *Ուսարուք յինէն զի հեզ եմ և խոնարհ սրտիւ: Եւ մարգարէին դարձեալ, *Ես յո՞ բնակեցայց՝ եթէ ոչ ՚ի հեզս և և խոնարհս և որք դողան ՚ի բանից իմոց: Եւ դաւիթ Աստուածահայրն թագաւորն և մարգարէն իբր խրատս իմն ասելով ասէ, *Զսիրտ ս̃բ և զհոգի խոնարհ՝ Աստուած ոչ արհամարհէ:

Նա դարձեալ՝ չէ՛ եւ չէ՛ միայն բաւական զգուշութիւն եւ զգուշացումն ՚ի չարաց ընկենուլ, այլ եւ ողորմածութիւն եւ զձեռնարձակութիւն առատապէս ստանալ յամ̃ ժամ, եւ առաւել ե՛ւս յաւուրս պահոց։ Զի մի՛ լուիցէ ՚ի տեառնէ թէ, *Զայդպիսի պահս ոչ ընտրեցի ինձ ՚ի հաճոյս։ Այլ լո՛յծ զկնճիռն անիրաւութեան. քակեա՛ զխարդախութիւն. եւ զմուրհակ չարին անիրաւութեան յօժարութեամբ հերձեա՛. զի մի՛ ունայն լինիցի բողոքելն քո յորժամ ես ոչ լսիցեմ։ *Զողորմութիւն կամիմ ասէ Տէր եւ ոչ զզոհ։ եւ թէ՝ *Երանի ողորմածաց՝ զի նոքա ողորմութիւն գտցեն յա՛յս ՚ի դէպ ժամանակի։

Նաեւ մարգարէն քաջալերս տայ ասելով, *Զմեղս քո ողորմութեամբ քաւեսցես, եւ զանօրէնութիւնս քո տրովք անանկաց։ եւ թէ՝ *Բարձր ՚ի գլուխ պարծի ողորմութիւն առ դատաստանաւ։ եւ թէ՝ *Զտուրս զուարթառատս սիրէ Տէր։ Մի՛ ճշդիւ եւ մի՛ տրտնջելով եւ խոժոռ դիմօք, զի մի՛ անհաճոյ լիցի բարին. այլ յօժարութեամբ եւ առատութեամբ եւ պայծառ դիմօք եւ զուարթ երեսօք. զի այնպէս ընկալցի զփոխարէնն։ *Չափ բարւոք ասէ տէրն թաթաղուն զեղուն շարժուն տացեն ՚ի գոգս ձեր։ եւ թէ՝ *Որով չափով չափէք՝ չափեսցի ձեզ։

Սմ յառաջին տծասէր եւ բարեսէր թագաւորացն՝ գրեալ է թէ յորժամ ողորմութիւն առնէր՝ ասէր, այսօր թագաւորեցաք յորժամ ողորմութիւն արարաք։ Նա գիտէր սուրբք ողորմածն Տէր ասեն անպատակառ, տմ համարձակութեամբ ըստ կրկնակի բայից եւ բառից։ Նաեւ մարդկան սովորութիւն է՝ յորժամ ողորմութիւն տացէ ոք յումեքէ, եւ հարցանեն թէ ո՛վ ետ, ասէ համարձակութեամբ թէ Տէր ետ։

Ողորմութիւն դուստր է թագաւորի, եւ ունի համարձակութիւն առ հայր իւր. եւ համարձակութեամբ մուծանէ զտացօղն իւր առ թագաւորն։

Պահքն՝ ՚ի ճանապարհ հանէ զմարդ արքայութեան. եւ աղօթքն՝ մինչ ՚ի դուռն տանի. իսկ ողորմութիւնն՝ ՚ի ներքս մուծանէ յառաջատան առ թագաւորն երկնաւոր ըստ իւրում տեառն բանին թէ՝ *Ուր եսն եմ, անդ եւ պաշտօնեայն իմ եղիցի։ եւ թէ՝ *Եկայք օրհնեալք հօր իմոյ. ժառանգեցէք զձեզ պատրաստեալ զարքայութիւնս. Զի քաղցեայ եւ ետուք ինձ ուտել. ծարաւեցի եւ արբուցիք ինձ. մերկ էի եւ զգեցուցիք. հիւանդ էի եւ ՚ի բանտի՝ եւ եկիք առ իս. եւ թէ որովհետեւ արարէք միում ՚ի փոքրկանցս յայսցանէ յեղբարցս՝ ինձ արարէք։

Չէ՛ եւ չէ՛ միայն բաւական զմեղս մաքրել խոստովանութեամբ, այլ եւ ապաշխարութեամբ եւ գործովք բարեօք լնուլ զանկելն. Զի մի՛ դարձեալ անօթ լիցի չարին ըստ աւետարանական հրամանին թէ՝ այսն պիղծ որ վասն մեղաց թողլ առելոյն ոյ մնացեալ է ՚ի մարդ, յորժամ

ողորմութե՛ նորին ելեալ 'ի մարդոյ և հանգիստ ոչ գտեալ յանջրդին տեղիս յարդարոցն ոգիս, դառնայ և գտանէ զառաջին տեղին դատարկ 'ի բարի գործոց· յայնժամ երթեալ գումարէ ընդ ինքեան չարագոյնս քան զինքն դևս· ոչ միայն եօթն, այլ և հազարս և բիւրս։ Զի անուն եօթանդ՝ միայն բազմաւորութե է անուն· և տէրն առակաւ խօսի։ Արդ այն որ 'ի յայտնութեն ասէր առ մեծն յովհաննէս աւետարանիչ և ած-աբան, թէ առ հրեշտակս եօթն եկեղեցեացն ասա զայս և զայս ինչ։ Եւ այն ոչ թէ նոցին միայն էր պատուէր, այլ նոքօք ընդ ամ տիեզերաց եկեղեցիս խօսի· այսպէս և 'ի վերայ չարագոյն այսոցն է իմանալ։

Բայց մի ոք ագխատաբար կարծիցէ թէ տէրն այսահարացն միայն ասէ զայս, այլ և ամ մեղաւորաց· զի մեղաւորն որչափ 'ի մեղս է, բնակարան է սատանայի· և չար գործովք իւրովք կերակրէ զնա, և հանգուցանէ։ Իսկ եթէ յողորմութենէն այ զղջացեալ շարժի 'ի խոստովանութի և յապաշխարութի· և փոքր ինչ յառաջեալ 'ի բարիս, դարձեալ ծուլասցի և սիրէ զհեղգութի և զամայութիւն, և զոկի յայնմանէ որ բարի գործովքն կերակրէր զած, և բնակարան լինէր շնորհաց հոգւոյն սրբոյ։ Եւ տեսեալ թշնամոյն զոչ յօժարութի նորա 'ի բարիս, և զանխորժակօք դիմելն 'ի չարիս, ժողովէ զբազմութի չարագոյն այսոցն և մտեալ բնակէ իւր 'ի յարդարեալ տաճարի անհոգութե, արկանելով զնա 'ի վիհս կորստեան· այսինքն 'ի զանազան տեսակս մեղաց, բնականս և անբնականս։

Եւ զկնի այնորիկ ընկենու զնա 'ի թերահաւատութի և յանզգամութի և յուրացութի· և ապա յուսահատ առնէ զնա յողորմութենէն այ ասելով թէ՝ այլ ոչ գոյ քեզ թողութի· և ոչ ևս կարէս հասանիլ փրկութեան, վասն որոյ այնու կայ 'ի նոյն անառակութեն։ Եւ զած անողորմ ցուցանէ նմա, և զապաշխարութիւն դժուարին, զժամանակն երկար, և զինքն անարժան ողորմութեանն այ։ Եւ այնչափ տագնապէ զնա և 'ի նեղասրտութիւն արկանէ, մինչ զի 'ի խեղդմտաբերիցէ և զանձին ևս առնէ։ Եւ ահա եղև մարդոյն այնորիկ յետինն չար քան զառաջինն՝ ըստ տէրունական բանին։

Եւ ոչ տայ չար թշնամին եղկելոյն այնորիկ բնաւ ածել զմտաւ զհրամանս տէրունական թէ՝ *Դարձարուք առ իս, և ես դարձայց առ ձեզ։ և թէ՝ *Յորժամ հեծեծեսցես, յայնժամ կեցցես։ և թէ՝ *Եկայք առ իս ամ աշխատեալք և բեռնաւորք և ես հանգուցից ըզ ձեզ։ և թէ՝ *Ո՛չ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն։ Զի առաջին ճանապարհ առ ած՝ ոչ մեղանչելն է· իսկ երկրորդ՝ յետ մեղանացն զղջալ և ապաշխարել և ոչ յուսահատութ

կորնչիլ․ զի ոչ կամի տէր զմահ մեղաւորին․ այլ զդառնալն ՚ի չար ճանապարհէն և զկեալն։

Այլ արդ՝ ասէ Եսայի, *Ո՞ պատմեսցէ ձեզ զտեղւոյն յաւիտենից եթէ հուր զանձեալ կայ և տանջանք պատրաստեալ՝ ոչ զղջացելոցն ՚ի մեղս։ Այլ զի ամենայն հրով փորձելոց է՝ դաւիթ վկայէ․ *Աստուած մեր ասէ յայտնապէս գայցէ․ և հուր առաջի նր գնասցէ առ ՚ի փորձել զիւրաքանչիւրսն և ՚ի հատուցանել ըստ արժանեաց։ Այլ պօղոս ասէ, *Որ շինէ ՚ի վերայ հիմանն հաւատոյն փայտ խոտ եղէգն։ Այսինքն մեղս բնականս կամ անբնականս, յորժամ ա՟մ ինչ ՚ի հուր անցանէ, որոյ գործն այրի՝ տուժի և գործօղ մեղացն ՚ի հուր և ոչ մեռանի․ այլ կայ անմահ ՚ի տանջանսն յաւիտենից։

Իսկ որ շինէ ՚ի վերայ հիմանն հաւատոյն ոսկի արծաթ ակունս պատուականս՝ որ է բարի գործ և հաճոյական առաքինութիւնք, որ ոչ են կեղծաւորութ՟ն կամ մարդահաճութ՟ն և փառասիրութ՟ն։ Զի այնպիսիքն ոչ եթէ միայն ՚ի պսակացն զրկին որ վասն ա՟յ ոչ առնեն զառաքինութիւն, այլ և տանջին ևս։ Իսկ ճշմարտասիրացն և ըստ ա՟յ հաճոյիցն ճգնողացն, յորժամ գործն ՚ի հուր արկանի՝ ոչ այրի․ այլ և՛ս առաւել պայծառանայ ո՟պ ոսկի արծաթ և լուսատու քարինք, և գործօղն կայ և մնայ մշտնջենաւոր ՚ի կեանսն յաւիտենից ընդ հրեշտակս դասակցեալ ՚ի փառաբանութիւնն ա՟յ։

Այլ մեր դպրս ա՟մ գիտելով՝ միշտ զերկրաւոր գանձ և ընդ երկիր թշնումք և զերկրաւորս յաւէտ խորհիմք, զարդարելով զձիս և զջորիս, և զևս փառաթորագոյնս զպազանդաբարդ շունս։ Թողից ասել զյարկաց և զապարանից և զբարձրագունից տանց, զոսկեզօծ ձեղունից և զյախճապակեալ յօրինուածոց, և զկնձեւք և զզանազան պատկերովք ցցելովք։ Որոց ոգիքն ուրկացեալք և բազմապատիկ մեղօք փառնգեալք․ և նա զորմս տանցն պայծառացուցանէ և զինքն մոռացեալ է եղկելին։

Գրեալ է թէ յարտաքնոցն՝ իմաստասէր ոմն տուն շինեաց․ և զեղազգործ ոմն ասաց ցնա, ծեփեա՛ զտուն քո զի եկեալ գեղեցկացուցից զնա զանազան նկարուք պատկերաց և յանգուածոց յօրինուածովք։ Այլ ասէ իմաստասէրն, ե՛կ յառաջ նկարեա՛ և ապա ՚ի վր ծեփեսցիս․ զի զգարշելին ծածկելն է բարուոք քան թէ յայտնելն։

Այլ մեծն յոհան գրեալ է բերանն ոսկի, թէ զոմն իմաստասէր ՚ի հացկերոյթ կոչեցին․ և նա իբրև եմուտ ՚ի տուն և բազմեցաւ, նայեցեալ ՚ի վեր և ՚ի վայր և ՚ի չորեսին կողմունս տանն՝ ետես զանազան գունովք զարդարեալ․ և ազգի ազգի երանգովք պայծառացուցեալ․ և լցեալ զբերանն խխով՝ եթուք յերեսս տանուտեառն։

Իսկ իբրեւ հարցեալ եղեւ թէ ընդէ՞ր արարեր զայդ․ պատասխանեալ ասէ, եւ զի՞նչ վնաս արարի․ զոր դուք պատուեալ էիք եւ ես պատուեցի․ եւ զոր դուք ոչ էիք պատուեալ՝ եւ ոչ ես պատուեցի։ Հայեցայ յիմ տունս եւ տեսի զարդարեալ ամենեքումբք, եւ ոչ կարացի թքանել զի պատուած էր, եւ զերեսս տանուտեառն միայն տեսի անպատիւ, զի ոչ էր զարդարեալ առաքինութեամբ զներքին մարդն՝ եւ անդ թքի։

Իսկ թէ այսոքիկ առաքինիքն որ զճշմարիտ աստուածածանօթութիւն ոչ գիտէին՝ այսպիսի իմն նախանձ ունէին բարեաց գործոց եւ առաքինասէր վարուց, ապա ո՞րչափ եւս առաւել մեզ պարտ է բազում զգուշութեամբ եւ փոյթ ունել յառաքինութիւնս․ որք մեծագոյն շնորհի արժանացաք զաւազանամբն քո եւ պատուական խաչին փրկագործութեամբն։ Արդ մեք մինչ ՚ի խորին ծերութի աղալաբարուք շատաշուառ եւ բազմմեղջ զատանիւք, զանգաղօրօքս բունն հարեալ եւ զոչ մնացականսն ձախսացուցեալ։ Իսկ զքո՞ ՚ի դրունս տեսեալ բարեզգեալ եւ երկեթաւեալ, անանս առնեմք ոչ գթալով եւ ոչ ողորմելով եւ զպէտսն լնլով։ Իսկ երանի թէ այս միայն, այլ եւ նախատեմք եւս եւ բանբասեմք ունկայ անուն կարդալով ՚ի վերայ․ եւ արտմութեամբ եւ անօթալի գինօք դարձուցանեմք՝ եւ ո՞ր գեհեան զմեզ ոչ այրեսցէ, կամ ո՞ր տանջանք մեզ բաւական լինիցի։

Արդարեւ բարձաւ ՚ի մէնջ դայեր խնամոտն եւ հանձարեղ խորհրդական․ ամենեքեան խոտորեցաք ՚ի միասին եւ անպիտանացաք։ Իսկ հովիւն իբրեւ զհօտն, եւ առաջնորդն իբրեւ զառաջնորդեալսն․ իւրաքանչիւր ոք զիւր անձն պաշտէ եւ իւրում ունկանին զոհէ։ Քահանայն եւ կրօնաւորք, վանականք եւ աշխարհականք, վարդապետք եւ վերակացուք, ամենեքեան միապէս սիրեցաք զաշխարհ եւ որ ինչ յաշխարհի է։ Ամենեքեան միապէս սիրեցաք զչարիս ըստ իւրաքանչիւր չափու․ ամենեքեան միապէս զարատուղի գնացաք ՚ի ճանապարհէ բարի գործոց՝ յաջ եւ յահեակ խոտորելով։

Վասն որոյ զգուշացեալ՝ բնաւն հարցուք զառաքինութեանց գոնէ անագան իմն, եւ գործեսցուք զբարիս․ զի եւ երկնից արքայութեանն արժանի լիցուք փառաւորելով զՀայր եւ զՈրդի եւ զՍուրբ Հոգին․ այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Ա․ՒՐ․Տ․

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 14 | 7 | ուղեորդք | ուղեորք |
| 21 | 5 | (պոչաս) | որպէս |
| 36 | 35 | զպարգիս | զպարգեւիս |
| 68 | 13 | մշակքդ | մշակեքդ |
| 72 | 15 | շիղական | շիղ ական |
| 92 | 30 | զամենեցուցն | զամենեցունցն |
| 139 | 22 | ընդուել | ընդունել |
| 165 | 19 | յօրէնս | յօրինես |
| 189 | 08 | հաստատուն | հաստատուն |
| 218 | 15 | յօդէ | յօղէ |
| 224 | 10 | նեխեին | նեխէին |
| 224 | 11 | փառեին | փառէին |

